# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1883 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՅՈՒՆՈՒԱՐ 2021 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* عدد رقم ١٨٨٣ الخميس ١٤ يناير ٢٠٢١


## ՆԵՐՍՆ ՈՒ ԴՈՒՐՍԸ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

**ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԿԱՄ ՌԷԱԼՓՈԼԻԹԻՔԻ ԴԷՄ**

Եթէ կ՚ուզենք իրապէս վերացնել պատերազմները, շահագործումները, պետական սպանութիւնները, ցեղասպանութիւնները, ներազգային ու միջազգային ատելութիւնները, նախ եւ առաջ պէտք է դիմադրենք քաղաքականութեան այսօրուայ ընդհանուր, համաշխարհային վիճակը:

Այսօրուայ ռէալփոլիթիքը, անկասկած, իր մէջ կը բովանդակէ բազմախառն ու բազմադիմի խաղեր՝ անվերջանալի ու յարաճուն շահերու ոլորումներով, որոնք յաճախ անմարդկային են:

Ո՞վ ըսաւ որ ցեղասպանութիւնները մաս չեն կազմեր ռէալփոլիթիքին՝ քաղաքականութեան առաւելապաշտութեան:

Անմարդկային քաղաքականութենէն դէպի մարդկային քաղաքականութեան անցումը շատ մեծ ճանապարհ կը կանխատեսէ:

Փարիզի Քոմիւնը այն օրինակն է, կամ օրինակներէն մէկը, ուր պետութիւնները կրնան յարատեւել առանց հակամարտութեան, ազգերը կրնան ապրիլ իրենց կենցաղով, մշակոյթով, լեզուով եւ բարքերով՝ առանց վտանգուած զգալու, ուր տեղ չունին վերադիր ազգայնական հռետորաբանութիւնները՝ որոնք ազգը պաշտպանելէ աւելի կը պաշտպանեն զանոնք արտասանողները:

Դիմադրութիւնը ռէալփոլիթիքի այսօրուայ վիճակին դէմ կարելի է միայն միջազգային համակեցային հասարակական շարժումներով, համայնավարութեամբ՝ դասական մարքսիզմի, բայց ոչ երբեք խորհրդային մարքսիզմ-լենինիզմի օրինակով:

Բայց ընդունիլ ռէալփոլիթիքը, մտնել անոր մէջ, ըլլալ անոր մասը, եւ ըսել որ անկախ եմ, ազատ եմ, ինծի չի հետաքրքրեր ռէալփոլիթիքը, չեմ ուզեր լսել ռէալփոլիթիքին մասնակցող ուրիշին կարծիքը, այսինքն՝ ինքնահերքել այն ինչ որ ինքնակամ ընդունած եմ, վտանգաւոր խաղ մըն է:

Զդիմադրեցի ռէալփոլիթիքը եւ ուզեցի մաս կազմել անոր, ուրեմն պիտի խաղամ անոր կանոններով: Հայերս մտանք ռէալփոլիթիք՝ մերժելով անոր կանոնները: Գոնէ գաղափարախօսային-հռետորաբանական կողմը այդպէս ներկայացաւ:

Ստորեւ, մտորումներ այս մտնել-չխաղալու մասին:

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆ**

Բառ մը՝ որ շատ հաճելի է: Ի՞նչ կայ անկախ ըլլալէ աւելի հաճելի բան: Բայց ի՞նչ կը նշանակէ անկախութիւն:

Եթէ սկսինք մարդ անհատէն, ան կրնա՞յ անկախ ըլլալ:

Օրինակ, մտաւորականն ու արուեստագէտը կրնա՞ն անհատապէս անկախ ըլլալ:

Անոնք անհատապէս անկախ չեն կրնար ըլլալ, այն առումով, որ անոնց միտքը գործ ունի (ենթադրուած է գործ ունենալ) արտաշխարհի, շրջապատի, միջավայրի, գոյացող գաղափարներու, կատարուող գործողութիւններու հետ:

Անոնք անհատապէս անկախ կրնան ըլլալ, այն առումով, որ անոնց միտքը գործ ունի (ենթադրուած է գործ ունենալ) ենթակայական մտածումներու եւ գաղափարներու ներաշխարհին հետ, հեռու կանխամտածուած, կանխադրութային պարտադրանքներէ:

Այս առումով, անկախութիւնն ու ոչ-անկախութիւնը, արտաքին յարաբերութիւնն ու ներքին ազատագրուած ենթակայականութիւնը մէկ լումայի երկու երեսներն են: Միաժամանակ կը գործեն մարդու արտադրութեան մէջ:

Անհատ մարդէն դէպի պետական քաղաքականութիւն, կը ստանանք նոյն յարաբերութիւնը:

Պատերազմի ժամանակ Ժիրայր Լիպարիտեան գրեց, որ կառչեցանք ներսին՝ միայն ներսին, առանց արտաքինի կարծիքը նկատի առնելու. «Արեւմուտքը, Արեւելքը, Հիւսիսն ու Հարաւը աւելի քան 20 տարի է կ՚ըսէին մեզի՝ որ (ա) պիտի չճանչնան Ղարաբաղի անկախութիւնը, եւ բ) հայկական վերահսկողութեան տակ գտնուող Ղարաբաղին յարակից եօթը շրջանները կը համարեն գրաւեալ շրջաններ եւ, ինչ որ ալ ըլլայ անոնց վրայ մեր վերահսկողութեան պատճառները, մենք պէտք է վերադարձնենք զանոնք: Այս ընթացքին Ազըրպէյճան մեզի կ՚ըսէր՝ որ պիտի պատերազմի այդ շրջաններուն համար» (Jirair Libaridian, ‘What Happened and Why: Six Theses,’ *The Armenian Mirror-Spectator*, 24 November 2020):

Ասիկա ըսել չ՚ուզեր որ պէտք է յանձնուիլ՝ քանի որ դուրսը այդպէս կ՚ուզէ, այլ յստակօրէն կ՚ըսէ՝ որ պէտք է նկատի առնել արտաքինին կարծիքը եւ հաշուի նստիլ անոր հետ: Խօսքը տալ-չտալու մասին չէ: Խօսքը արտաքին ազդակի գոյութեան կարեւորութեան մասին է, մանաւանդ երբ այդ ազդակը գործունեայ է: Անհրաժեշտ է տեսնել այդ գործունեայ վիճակը եւ առնչուիլ անոր հետ, այլ ոչ թէ մեզի համար վերացնել անոր գոյութիւնը՝ երազային ազգայնապաշտութեան անունին տակ:

Բայց մեր, յատկապէս Սփիւռքի, քաղաքական «միտք»-ը կը ճանչնայ բացարձակ ինքնավարութիւն՝ «Մենք ենք, մեր սարերը», որմէ դուրս ամէն բան կ՚ենթարկուի մեզի, դուրսն ու արտաքինը մեզի համար բանաձեւեր ընդունելով կը դառնան հայասէր, իսկ եթէ չենթարկուին՝ կը դառնան վատ, չար, հայատեաց, բայց ոչ բանակցութեան ենթակայ:

Եւ ահաւասիկ, Սփիւռքի հիմնահոսանքային մտաւորականի եւ քաղաքական անկախութեան տարօրինակ յարաբերութիւն մը:

Սփիւռքի աւանդական կառուցուածքներուն ընդմէջէն աշխատող մտաւորականներուն նկատելի մասը կը մերժէ սեփական անձի անկախութիւնը, վերարտադրելով իր ներկայացուցած վերնախաւի պատումները: Վերարտադրութիւնը իրեն համար դարձած է այնքան բնական, այնքան ներքնականացուած, որ կը կարծէ ըլլալ անկախ: Իր անկախութիւնը իշխանական պատումի վերարտադրութեան նուիրած սփիւռքահայ մտաւորականն է որ այսօր մեծ մասամբ կը խօսի քաղաքական *բացարձակ* անկախութեան անհրաժեշտութեան եւ անոր պակասին մասին: Իր սեփական անկախութիւնը մերժածը կը խօսի Հայաստանի պետութեան անկախութեան մասին, անկախութեան այն տեսակին՝ որ կը մերժէ տեսնել արտաքինը:

Քաղաքականապէս անկախ կ՚ըլլանք արտաքին յարաբերութիւններու ընդմէջէն, ➩ 4

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ, ՎԼԱԴԻՄԻՐ ՊՈՒՏԻՆԻ ԵՒ ԻԼՀԱՄ ԱԼԻԵՒԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐՈՎ ԸՆԴՈՒՆՈՒԵԼ Է ՀԱՄԱՏԵՂ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ




Յունուարի 11-ին Մոսկուայում կայացած Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի, Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի եռակողմ հանդիպման արդիւնքներով ընդունուել է համատեղ յայտարարութիւն:

Յայտարարութիւնը ներկայացնում ենք ստորեւ.

«Ադրբէջանի Հանրապետութեան նախագահի, Հայաստանի Հանրապետութեան վարչապետի եւ Ռուսաստանի Դաշնութեան նախագահի յայտարարութիւնը, 11 Յունուարի 2021 թ.

Մենք՝ Ադրբէջանի Հանրապետութեան նախագահ Ի. Հ. Ալիեւը, Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Ն. Վ. Փաշինեանը եւ Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վ. Վ. Պուտինը յայտարարում ենք հետեւեալի մասին.

1. 2020 թ.-ի Նոյեմբերի 9-ի յայտարարութեան՝ տարածաշրջանում բոլոր տնտեսական եւ տրանսպորտային կապերն ապաշրջափակելու մասին 9-րդ կէտի իրականացման ➩ 2

## ԻՆՉ Է ԱՍԵԼ ՊՈՒՏԻՆԸ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ ՈՒ ԱԼԻԵՒԻՆ

Ռուսաստանի նախագահ Պուտինը Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ Յունուարի 11-ի երկկողմ հանդիպմանը յայտարարել է, որ ակնկալում է Ղարաբաղին վերաբերող բոլոր խնդիրների շուրջ համաձայնութեան ձեռք բերում:

«Իմ կարծիքով, իրօք, չնայած այն խնդիրներին, որոնց մասին դուք ասացիք, եւ որոնք դեռեւս մնում են չլուծուած, յուսով եմ, որ, այնուամենայնիւ, կը յաջողուի համաձայնութեան գալ բոլոր խնդիրների, այդ թւում՝ հումանիտար բնոյթի հարցերի շուրջ», - ասել է Պուտինը:

«Ընդհանրապէս, իմ կարծիքով, հանդիպումն օգտակար է այն առումով, որպէսզի հնարաւոր լինի որոշել տարածաշրջանի ապագան եւ տարածաշրջանում յարաբերութիւնների կառուցումը: Նախեւառաջ, իհարկէ, Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ: Ուզում եմ ասել, որ մեր յարաբերութիւնները եղել են, կան եւ կը լինեն դաշնակցային: Բոլոր առումներով մենք մտերիմ գործընկերներ ենք: Այսօր մենք շատ խօսեցինք տնտեսութեան մասին: Այս կապակցութեամբ կը ցանկանայի նշել, որ չնայած անցեալ դժուար տարուան՝ մենք գրեթէ 4%-ով աւելացրել ենք մեր ապրանքաշրջանառութիւնը: Այս ամէնը հիմք է տալիս յուսալու, որ Լեռնային Ղարաբաղի շուրջ իրավիճակի կարգաւորման հետ լուծումներ կը գտնենք յօգուտ հայ ժողովրդի, հայկական պետութեան եւ մեր երկկողմ յարաբերութիւնների»:

Իլհամ Ալիեւի հետ հանդիպմանը Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը գոհունակութիւն է յայտնել այն փաստի կապակցութեամբ, որ Ղարաբաղում հնարաւոր եղաւ դադարեցնել արիւնահեղութիւնը: Այս մասին յայտնում է Կրեմլի մամուլի ծառայութիւնը:

«Ես ուզում եմ գոհունակութիւն յայտնել, որ մեզ, այնուամենայնիւ, յաջողուեց դադարեցնել ռազմական գործողութիւնները, արիւնահեղութիւնը, եւ, ինչպէս մենք ➩ 3

ԶԱՀԱԿԻՐ

# ՔԱՐԻՒՂ ԵՒ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ

Հ. Ա

Շահան Նաթալի տարիներու ընթացքին հաւաքած է նիւթեր եւ գրած իր յուշերը՝ որոնք մինչեւ վերջերս մնացած են անտիպ իր ժառանգորդներուն մօտ Քալիֆորնիոյ մէջ: Մահացած է 1983-ին, Ուոթըրթաուն:

Հիմք ունենալով այս գրութիւնները, Նաթալիի թոռը՝ յայտնի հետաքննող լրագրող եւ մարդու իրաւունքներու աքթիւիսթ Արա Խաչիկ Մանուկեան, եւ Նաթալիի դուստրը՝ Սիլվա Մանուկեան (Արայի մայրը), 2018-ին անգլերէն լեզուով լոյս կ՚ընծայեն աւելի քան 700 էջերէ բաղկացած հիմնարար հատոր մը՝ *Betrayal: The Promise Never Kept: Genocide and the West's Secret War for OIL!* (Մատնութիւն. երբեք չպահուած խոստումը. Ցեղասպանութիւնը եւ Արեւմուտքին գաղտնի ՔԱՐԻՒՂԱՅԻՆ պատերազմը):

Հատորը հրատարակած է ընտանիքին պատկանող Շահան Նաթալի Ընտանեկան Հիմնադրութիւնը: Զայն կարելի է գնել Հիմնադրութեան կայքէջէն (https://snff.org/betrayal/): Գինն է՝ արտասահմանի փոստային հետ միասին, 130 տոլլար: Մինչեւ գիրքին ձեռքբերումը, պիտի փափաքէի ներկայացնել անոր ընդհանուր գիծերը, հիմնուելով երեք աղբիւրներու վրայ՝ զորս կարելի է ընդունիլ իբրեւ առաջնային.

- Հատորին անգլերէն համառօտագրութիւն (41 էջ)՝ որ մատչելի է pdf ձեւաչափով:

- *Armenian Teletime* հեռատեսիլի հաղորդաշար (անգլերէն), հաղորդավար՝ Թրիսթան Մուրադեան: Հաղորդումի հիւրն է Արա Մանուկեան: YouTube-ի մէջ տեղադրուած է Արա Մանուկեանի կողմէ 2018 Ապրիլ 13-ին. https://www.youtube.com/watch?v=vLRtuypAmAw&t=1218s:

- *Երգենք Հայերէն* հեռատեսիլի հաղորդաշար (հայերէն), հաղորդավար՝ Սարքի Մուրադեան: Հաղորդումի հիւրերն են՝ Սիլվա Մանուկեան եւ Արա Մանուկեան: YouTube-ի մէջ տեղադրուած է Արա Մանուկեանի կողմէ 2019 Մայիս 23-ին. https://www.youtube.com/watch?v=GUEjtuDfh68&t=1s:

Գրութիւնս ամբողջութեամբ հիմնուած է այս երեք աղբիւրներուն վրայ:

Շահան Նաթալի 1904 թուականին սկսած էր հաւաքել նիւթեր եւ գրի առնել յուշերը: Արա Մանուկեան 12 տարուայ աշխատանք կը տանի փնտռելու եւ գտնելու այդ նիւթերը հաստատող փաստաթուղթեր Անգլիայէն, Ամերիկայէն, անձնական դիւաններէ, մամուլէն եւ այլ աղբիւրներէ, զորս բոլորն ալ ներկայացուցած է Նաթալիի գրութեան համատեղ:

Յատկանշական է խորագիրը՝ *Մատնութիւն*: Ըսել կ՚ուզէ՝ պէտք չէ հաւատալ արտաքին ուժերու: Անպայմանօրէն յարաբերութիւններ մշակել արտաքին ուժերու հետ, վարել արտաքին քաղաքականութիւն, բայց վստահիլ միայն սեփական կամքին: Արտաքին ուժը՝ որքան ալ թուի վստահելի ըլլալ, մատնելու կարողութենէն զերծ պիտի չըլլայ բնաւ: Այս է Արա Մանուկեանի *Մատնութիւնը*:

Գիրքին 90 տոկոսը Նաթալիի յուշերը եւ Մանուկեանի հաւաքած փաստաթուղթերն են, 10 տոկոսը՝ Մանուկեան մայր ու զաւակի վերլուծութիւններն ու մեկնաբանութիւնները:

Գիրքին մէկ մասը յատկացուած է այն իրականութեան՝ թէ Միացեալ Նահանգները չատոնց ընդունած է Հայոց Ցեղասպանութիւնը եւ ինչ որ այսօր կը կատարուի կրկնութիւն մըն է: Մանուկեանին համոզումը այն է՝ որ փոխանակ դիմելու վերընդունումներու կրկնակի քայլերու, չատոնց ժամանակը հասած է դատական գործնապաշտ գործողութիւններու: Ասոր մասին *Զահակիր* ժամանակին արտայայտուած էր (*Զահակիր*, թիւ 1841), պիտի չկրկնեմ այստեղ:

Հակառակ այսօր ներկայացուած պատկերին, Միացեալ Նահանգները բաւական վնասներ հասցուցած է հայկական հարցին: Պատճառը Օսմանեան հողերուն վրայ գտնուող քարիւղն էր, որուն մասին ԱՄՆ իրազեկ էր չատոնց:

Օրինակ, Դեկտեմբեր 1915-ին, Ամերիկա-Թուրքիա կը կնքեն պայմանագիր, ըստ որուն Ամերիկան Թուրքիոյ պիտի տրամադրէ 200 հազար սուինով հրացաններ եւ 400 միլիոն փամփուշտներ: Զինամթերքը Սպանիոյ միջոցով կը ղրկուի Ռուսաստան եւ կը պահեստաւորուի այնտեղ: Պատերազմի աւարտին, Էնվէր փաշա կ՚երթայ Մոսկուա, կը բերէ զինամթերքը եւ կը յանձնէ Մուսթաֆա Քէմալին: Զմոռնանք, որ Սուլթանը ուժի մէջ էր 1918-1922 թուականներուն: Սուլթանի վերջնական տապալումը եւ Մուսթաֆա Քէմալի հաստատումը ամերիկացիներուն գործն էր:

Աhաւասիկ Մորկընթաու՝ զոր հերոսացուցած ենք: Ան կ՚աշխատէր հայերը պարպել Օսմանեան Հայաստանէն ու փոխադրել Ամերիկա, եւ այս նպատակով համաձայնած էր Թալէաթին հետ՝ որ չխանգարէ հայերուն մեկնումը: Ամերիկան այդ ժամանակ պէտք ունէր աժան ու հնազանդ աշխատուժի, ինչպէս նաեւ մտածող ու արտադրող միտքերու:

Մորկընթաու կը հետապնդէր նաեւ ուրիշ ծրագիր մը՝ Լեհաստանի հրեաները փոխադրել Թուրքիա, եւ փոխարէնը Թուրքիոյ հայերը փոխադրել Լեհաստան:

Ուրիշ շահագործող մըն էր Ճէյքըպ Շիֆ՝ այսօուայ «Հայասէր» Ատամ Շիֆի մեծհայրը: Մեծահարուստ մը՝ սեփականատէրը քարիւղի Kuhn, Loeb & Co. ընկերութեան, ան ֆինանսաւորած է Օսմանեան տարածութիւններուն վրայ կատարուած քարիւղի հետախուզական աշխատանքները, քարիւղին տիրելու նպատակով:

Նախագահ Թէոտոր Ռուզվելթ եւս ոչ-նպաստաւոր լուծումներու ճարտարապետ մըն էր:

27 Սեպտեմբեր – 10 Հոկտեմբեր 1919-ին, ԱՄՆ Սենաթի Արտաքին Յարաբերութիւններու ենթայանձնաժողովը Հայաստանի խաղաղութեան համար ունկնդրութիւններ կը նախաձեռնէ: Հայերը լաւ կազմակերպուած ելոյթներ կ՚ունենան եւ համակողմանիօրէն կը ներկայացնեն իրենց հարցը: Արա Մանուկեան ձեռք բերած է անոնց ամբողջական արձանագրութիւնը եւ հրատարակած հատորին մէջ:

Հայերուն առաջարկներէն մէկն էր՝ որ Ամերիկան իրաւունք տայ Ամերիկայի մէջ հաւաքել 40 հազար հայ կամաւորներ եւ զանոնք ղրկել Հայաստան իբրեւ զօրք: Եօթը ամիս ձգձգելէ ետք, Ամերիկան կ՚որոշէ չխառնուիլ գործին, այսինքն՝ կը մերժէ:

Կար քարիւղի գործօնը իբրեւ որոշիչ հանգամանք: Հայերը եւս իրազեկ էին Հայաստանի տարածքին վրայ քարիւղի գոյութեան մասին եւ ամէն ջանք կը գործադրէին զայն օգտագործել ի նպաստ Նոր Հայաստանի հիմնադրութեան՝ զերծ թրքական տիրապետութենէն:

Այս առումով կարեւոր դէմք մըն էր Արմէն Գարօ (Գարեգին Փաստրմաճեան), որ համապարփակ ծրագիր մը մշակած էր քարիւղը շահագործելու եւ երկաթուղիով փոխադրելու համար: Ունենալով յարաբերութիւններ Թալէաթ փաշայի եւ ամերիկացիներուն հետ, նպատակ ունէր այդ ծրագիրին միջոցով ուժեղացնել հայկական տարածքները իբրեւ հայկական գոյութիւն:

1919-ի Սենաթի ունկնդրութիւններուն, հայերը յստակօրէն կը դնեն քարիւղի եւ ընդհանրապէս հանքերուն հարցը:

Իր ելոյթին, մեծահարուստ Մովսէս Կիւլէսեան կը շեշտէ երկաթի, ածուխի, պղինձի եւ քարիւղի գոյութիւնը Հայաստանի տարածքին վրայ, նշելով որ պղինձի եւ ոսկիի հանքեր կը գտնուին Արարատին ստորոտը, որոնք երբեք չեն շահագործուած:

Վարդան Մալքոլմ (Մելքոնեան) իր ելոյթին ընթացքին կը ներկայացնէ մանրամասնութիւններ.

«Հիմա, հանքերու առնչութեամբ, կը գտնուին քանի մը արժէքաւոր հանքեր, եւ պէտք է աւելցնեմ որ 1909-ի ատենները, Նիւ Եորքի Kuhn, Loeb & Co.-ն [Ճէյքըպ Հ. Շիֆ] յատուկ յանձնախումբ կը ղրկէ Հայաստան՝ ուսումնասիրելու այդ հանքերը: Պատահաբար այդ ժամանակ կը գտնուէի Պոլիս, եւ Պր. Ջեսթըր՝ որ այս գործի ներկայացուցիչն էր, թուրքերուն կ՚առաջարկէ երկաթուղիի որոշ գիծեր կառուցել Հայաստանի ընդմէջէն – նկատի ունիմ Թրքահայաստանի – պայմանով որ այս ընկերութեան արտօնութիւն տրուի օգտագործել երկաթուղիին երկու կողմերը գտնուող հանքերը որոշեալ ժամանակի մը համար, որուն աւարտին երկաթուղին պիտի վերադարձուի կառավարութեան: Ասիկա կը մատնանշեմ իբրեւ կարեւոր իրողութիւն, քանի որ Kuhn, Loeb & Co.-ի նման կարեւոր ընկերութիւններ՝ որոնք հետաքրքրուած են դրամ ներդնել, կատարած են Հայաստանի հանքերուն եւ բնական աղբիւրներուն մասին յատուկ ուսումնասիրութիւն, եւ կը փափաքին մեծ գումարներ ներդնել զարգացնելու երկիրը՝ եթէ թրքական կառավարութիւնը տայ իր արտօնութիւնը: Այս նիւթին հետ կապուած պիտի կարդամ Հայկական Ճարտարագէտներու Ընկերակցութեան քարտուղար Կ. Յ. Պալեանի պատրաստած յիշատակագիրէն հատուածներ, որոնք կ՚առնչուին Հայաստանի բնական աղբիւրներուն, եւ այլն, հետ: [Կը կարդայ՝]»:

Կարդացած յիշատակագիրին մէջ կը նշուին Հայաստանի (Թրքահայաստանի) ածուխի, պղինձի, երկաթի, քրոմի, արծաթի, զինքի, աղի, զմրուխտի, ասֆալթի, ոսկիի, կապարի, բլատինի հանքերը իրենց վայրերով: Կը նշուի նաեւ քարիւղը՝ Տրապիզոն, Վանայ Լիճի արեւելքը, եւ այլուր (այլուրը չէ յիշատակուած): Վերջապէս, արդիւնաբերական ուրիշ կարելիութիւններ եւս, ինչպէս՝ բամպակ, գորգ եւ այլն:

Այս բոլորը Սենաթի առջեւ յիշատակելէ ետք, Մալքոլմ կը բացատրէ՝ որ Թուրքիա անկարող եղած է մինչեւ այսօր ըստ պատշաճի շահագործել այս աղբիւրները, քանի որ այնտեղ գոյութիւն ունի փտացած կառավարութիւն: Եթէ ➩4

1➩

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ, ՎԼԱԴԻՄԻՐ ՊՈՒՏԻՆԻ ԵՒ ԻԼՀԱՄ ԱԼԻԵՒԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐՈՎ ԸՆԴՈՒՆՈՒԵԼ Է ՀԱՄԱՏԵՂ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

նպատակով աջակցում ենք Հայաստանի Հանրապետութեան, Ռուսաստանի Դաշնութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան փոխվարչապետների համատեղ նախագահութեամբ եռակողմ աշխատանքային խումբ ստեղծելու մասին Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վ. Վ. Պուտինի առաջարկը:

2. Աշխատանքային խումբն առաջին հանդիպումը կ՚անցկացնի մինչեւ 2021 թ.-ի Յունուարի 30-ը, որի արդիւնքների հիման վրայ կը կազմի Յայտարարութեան 9-րդ կէտի կիրառումից բխող աշխատանքների հիմնական ուղղութիւնների ցանկը՝ որպէս գերակայութիւններ ընդունելով երկաթուղային եւ ճանապարհային հաղորդակցութիւնները, ինչպէս նաեւ կը սահմանի Ադրբէջանի Հանրապետութեան, Հայաստանի Հանրապետութեան ու Ռուսաստանի Դաշնութեան (այսուհետ՝ Կողմեր) միջեւ համաձայնեցուած այլ ուղղութիւններ:

3. Գործունէութեան հիմնական ուղղութիւններն իրականացնելու նպատակով աշխատանքային խմբի համանախագահները կը հաստատեն այդ ոլորտներում փորձագիտական ենթախմբերի կազմը, որում կը ներառուեն Կողմերի իրաւասու մարմինների ներկայացուցիչներ եւ կազմակերպութիւնների պաշտօնատար անձինք: Փորձագիտական ենթախմբերը, աշխատանքային խմբի նիստից յետոյ մէկամսեայ ժամկէտում կը ներկայացնեն նախագծերի ցանկ, որում կը ներկայացնեն անհրաժեշտ ռեսուրսներն ու միջոցառումները՝ դրանց իրականացման եւ Կողմերի կողմից ամենաբարձր մակարդակով հաստատելու համար:

4. Աշխատանքային խումբը մինչեւ 2021 թ. Մարտի 1-ը Կողմերի կողմից ամենաբարձր մակարդակով հաստատման կը ներկայացնի Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան տարածքով իրականացուող միջազգային փոխադրումների կազմակերպման, իրականացման եւ անվտանգութեան ապահովման համար անհրաժեշտ նոր տրանսպորտային ենթակառուցուածքների օբիեկտների վերականգնման եւ կառուցման միջոցառումների իրականացման ցանկ եւ ժամանակացոյց, նոյն կերպ Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան կողմից իրականացուող փոխադրումների համար, որոնք պահանջում են հատել Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան տարածքները»:

ՌՈՒՍԱՍՏԱՆ

## ՄՈՍԿՈՒԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ, ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԵՋԱՆԻ ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶՆԵՐԻ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Ռուսաստանի գլխաւոր դատախազի նախաձեռնութեամբ Յունուարի 12-ին տեղի է ունեցել եռակողմ հանդիպում Ռուսաստանի դատախազութեան աշխատակցի օրուայ առթիւ կազմակերպուած միջոցառումներին մասնակցելու նպատակով Մոսկուայում գտնուող Հայաստանի գլխաւոր դատախազ Արթուր Դաւթեանի, Ադրբէջանի Հանրապետութեան գլխաւոր դատախազ Քեամրան Ալիեւի, ինչպէս նաեւ Ռուսաստանի գլխաւոր դատախազ Իգոր Կրասնովի մասնակցութեամբ:

Հանդիպման նպատակն էր միջազգային իրաւական ոլորտում յետագայ շփումների ձեւաւորման, դրա համար անհրաժեշտ պայմանների, ինչպէս նաեւ արդիական մի քանի հարցերի շուրջ քննարկման ծաւալումը:

Այդ շրջանակներում որպէս միջազգային իրաւական գործակցութեան ծաւալման երաշխիք՝ Արթուր Դաւթեանը բարձրացրել է հրադադարի մասին 2020թ. Նոյեմբերի 9-ին ստորագրուած եռակողմ յայտարարութեան 8-րդ կէտի հնարաւորինս արագ կատարման անհրաժեշտութիւնը, Ադրբէջանում գտնուող հայ ռազմագերիների եւ պահուող այլ անձանց սեղմ ժամկէտներում Հայաստան վերադարձնելու, իսկ մինչ այդ նրանց կեանքի եւ առողջութեան երաշխաւորման, նրանց այլ իրաւունքների ապահովման հարցը:

Հայաստանի գլխաւոր դատախազը շեշտել է, որ ռազմագերիների եւ քաղաքացիական անձանց վերադարձը կարեւոր երաշխիք կը հանդիսանայ եռակողմ յայտարարութեամբ ձեռք բերուած միւս պայմանաւորուածութիւնների կատարման եւ տարածաշրջանում խաղաղութեան ամրապնդման համար:

Այս իմաստով Արթուր Դաւթեանը բարձրացրել է նաեւ տարածաշրջանը միջազգային ահաբեկչութիւնից զերծ պահելու, դրա դէմ ընդհանուր պայքարի խնդիրը:

Հանդիպման ընթացքում ձեռք են բերուել պայմանաւորուածութիւններ վերը նշուած, ինչպէս նաեւ իրաւական բնոյթի այլ խնդիրների շուրջ քննարկումներն աշխատանքային ռեժիմով շարունակելու վերաբերեալ:

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԿԱԼԱՆԱՒՈՐՈՒԱԾ ԵՐԿՈՒ ՍԻՐԻԱՑԻ ՎԱՐՁԿԱՆՆԵՐԸ ԵՆԹԱԿԱՅ ՉԵՆ ՓՈԽԱՆԱԿՄԱՆ

Հայաստանում կալանաւորուած երկու սիրիացի վարձկան ահաբեկիչները ռազմագերի չեն եւ ենթակայ չեն յանձնման կամ փոխանակման: Ազգութեամբ արաբ, Սիրիայի Արաբական Հանրապետութեան քաղաքացիներ Եուսէֆ Ալաբէթ Ալ Հաջին եւ Մուհհռաբ Մուհամմադ Ալ Շխերին մեղադրւում են Հայաստանի Քրէական Օրէնսգրքի 389-րդ յօդուածի (միջազգային ահաբեկչութիւն), 34-390-րդ յօդուածի 1-ին մասի 1-ին կէտի, 3-րդ մասի 1-ին կէտի (միջազգային մարդասիրական իրաւունքի նորմերի լուրջ խախտումները զինուած ընդհարումների ժամանակ) եւ 395-րդ յօդուածի 3-րդ մասի (վարձկանութիւն) յատկանիշներով: Նրանք մասնակցել են Արցախի դէմ Ադրբէջանի սանձազերծած պատերազմին եւ ձերբակալուել Արցախի պաշտպանութեան բանակի ուժերի կողմից: Գերիների փոխանակման «Բոլորը բոլորի դիմաց» սկզբունքի քննարկման ֆոնին վարձկան-ահաբեկիչների յանձնման անհնարինութիւնը վերջակէտ է դնում նրանց փոխանակման ենթադրութիւնների արծարծմանը, նշում է գործակալութիւնը:

1

## ԻՆՉ Է ԱՍԵԼ ՊՈՒՏԻՆԸ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ ՈՒ ԱԼԻԵՒԻՆ

խօսեցինք այսօրուայ աշխատանքի արդիւնքների մասին, խաղաղապահ առաքելութիւնը կատարում է իր գործառոյթը, եւ իրավիճակն, ընդհանուր առմամբ աստիճանաբար, վերադառնում է բնականոն հունին», - ասել է Պուտինը Ալիեւի հետ երկկողմ հանդիպման ժամանակ: «Եւ այն փաստը, որ այսօր մենք ստորագրեցինք համատեղ յայտարարութիւն, որը հիմնուած է իրավիճակը երկարաժամկէտ լուծելու ցանկութեան վրայ, իմ կարծիքով, չափազանց կարեւոր է», - յաւելել է Ռուսաստանի նախագահը:

Նրա խօսքով՝ այսօր Ռուսաստանի եւ Ադրբէջանի յարաբերութիւնները շատ յաջող են զարգանում, դա վերաբերում է առաջին հերթին տնտեսական բաղադրիչին: «Մենք ունենք համատեղ աշխատանքի շատ ուղղութիւններ եւ շատ համընկնող հետաքրքրութիւններ այս ոլորտում՝ տնտեսագիտութեան ոլորտում: Յուսով եմ, որ ընդհանուր առմամբ Հարաւային Կովկասում իրավիճակի կարգաւորման աշխատանքը օգուտ կը բերի, ինչպէս ես ասացի, նաեւ մեր երկկողմ յարաբերութիւններին: Ես ելնում եմ նրանից, որ այս կարգաւորումը թոյլ կը տայ մեզ էլ աւելի սերտ կառուցել մեր յարաբերութիւնները, էլ աւելի համակարգուած հիմքերի վրայ՝ ոչ միայն տնտեսութեան, այլ նաեւ հումանիտար ոլորտում»:

ԽՈՀԵՐ

## ԵՐԲ ՊԱՏՐԱՆՔԸ ԿԸ ՎԱՆԷ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Արիւնով ռոմանդիկ ժողովուրդ, իրականութիւն ենք համարեր այն ինչ որ բաղձացեր ենք», 1928-ին կը գրէր Շահան Նաթալի, նկատի ունենալով 1920-ի պարտութիւնները(1):

Այսօր՝ աւելի քան 90 տարի ետք, Ժիրայր Լիպարիտեան պիտի գրէր, նկատի ունենալով վերջին պատերազմին պարտութիւնը. «Մենք կը պնդէինք՝ որ խաղաղութեան ընտրութիւնը պարտուողականներու լուծումն էր. կարիք չկար ներդնելու այն բոլորը՝ ինչ ունէինք բանակցութիւններուն մէջ, կարիք չկար զոհաբերելու մեր երազներուն մաքրութիւնը»(2):

Նաթալի եւ Լիպարիտեան կը խօսին ռոմանթիք երազներու մասին, թէեւ երկուքն ալ իրենց շարադրութիւնները պիտի տանին տարբեր ուղղութիւններով, առաջինը շեշտելով կռուելու եւ պատերազմելու կամքի անհրաժեշտութիւնը, երկրորդը՝ բանակցային եւ դիւանագիտական կամքի՝ արգիլելու համար նոյն ինքը պատերազմը: Ռոմանթիք երազներ՝ որոնք շրջանցեցին իրականութիւնը, իրականութիւնը տեսնել ուզելու կամքը: Յարաբերութիւն մը պատրանքի (երազի) եւ իրականութեան:

Պատրանքն ու իրականութիւնը գոյութիւններ են, երկուքն ալ շաղկապուած են իրարու:

Պատրանքը մարդու *ներաշխարհն* է՝ գաղափարական աշխարհի գոյակիցը, որոնցմով անհատը կ՚ապրի ամէն պահ: Մարդը կ՚ուզէ կրել այդ պատրանքը (երազը), կը սիրէ զայն կրել: Անձնական համերաշխութիւն մը կ՚ընծայէ ինքնին (self) երբ գաղափարին կը կենակցէ պատրանքը: Ենթակայական ներաշխարհի այս տատանումները՝ գաղափարէն պատրանք, պատրանքէն գաղափար, շարժիչներն են մտայուզական կեանքի:

Առարկայական իրականութիւնը մարդու *արտաշխարհն* է: Այդ իրականութիւնը միջնորդըւած է տարբեր գործօններով, որոնցմէ գլխաւորներէն է լեզուն: Լեզուի միջոցով արտաքին իրականութիւնը հասանելի կը դառնայ մեզի: Իսկ լեզուն ինքը սահմանափակ է: Օրինակ, կ՚ըսենք՝ կատու: Բայց կատուն կրնայ ըլլալ էգ կամ արու: Կ՚ըսենք՝ էգ կատու: Բայց էգ կատուն կրնայ ըլլալ սեւ, ճերմակ, նարնջագոյն, աչքերը կրնան ըլլալ կանանչ, կապոյտ: Կ՚ըսենք՝ սեւ էգ կատու կանանչ աչքերով: Բայց ան կրնայ ունենալ տարբեր հասակ, ծանրութիւն, բնաւորութիւն, եւ այսպէս ամէն անգամ կ՚աւելցնենք նոր բառ մը: Ամենավերջը՝ չմոռցա՞նք արդեօք բառ-յատկանիշ մը: Անկասկած մոռցանք, կամ չկրցանք տեսնել, կամ չուզեցինք տեսնել: Չենք կրնար կատուն ընկալել, ներկայացնել իր բացարձակ իրականութեան մէջ այլ կ՚ընկալենք յարաբերական իրականութեան մէջ:

Առարկայական իրականութիւնը կը գտնուի մեզմէ անդին եւ կը գործէ տարածութիւններու մէջ: Պատրանքը արտատարածային ըներեւոյթ մըն է՝ որ կը գործէ մեր մէջ: Երկուքին յարաբերութիւնը բաւական բարդ է: Բառերը այդ արտաքինը կը դարձնեն ներքին: Որքան բառերը ըլլան սեւեռուն, ընտրուած, նոյնքան իրականութիւնը փոքրանալով կը դառնայ բացառական: Որքան բառերը ըլլան մեկնաբանելի, նոյնքան իրականութիւնը ընդարձակուելով կը դառնայ ներառական:

Բառի սեւեռումով կը հերքուի մեկնաբանութեան կարելիութիւնը: Կարելիութեան հերքումը պատրանքէն կը վանէ կենդանի գաղափարը, պատրանքը դարձնելով առարկայական իրականութեան փոխանորդ, իսկ պատրանքը դառնալով փոխանորդ՝ կը վերացնէ տարածութեան մէջ գործող առարկայական իրականութեան իսկականութիւնը՝ իր բոլոր կարելիութիւններով, հակադրութիւններով, հակասութիւններով, համադրութիւններով, տեսանելի ու անտեսանելիութիւններով հանդերձ:

Այսօրուայ ղարաբաղեան հարցին կապակցութեամբ, առարկայական իրականութիւնը ռէալփոլիթիքն է: Ռէալփոլիթիքը ոչ-մաքուր իրականութիւն մըն է, կապուած շահերու, ուժի, վանումի քաղաքականութեան հետ: Ասիկա է որ կը գործէ այսօր:

Եթէ կ՚ուզենք սկզբունքային դիմադրութիւն, ան պիտի ըլլայ նախ եւ առաջ ռէալփոլիթիքի դէմ՝ իբրեւ այդպիսին, համաշխարհային համակեցութեան եւ համախմբումի միջոցով: Պիտի նշանակէ իրականութեան փոփոխութիւն՝ ընդունելէ ետք ռէալփոլիթիքի իրականութիւնը:

Աւելի նեղ իմաստով, պայքարը պիտի ըլլայ ռէալփոլիթիքի ներսը, ընդունելով անոր արտածորած իրականութիւնները: Ղարաբաղի կապակցութեամբ, ռէալփոլիթիքը՝ իբրեւ առարկայական իրականութիւն, փոխարինեցինք խնդիրը յաւիտենական de facto պահելու եւ «ոչ մէկ թիզ հող»-ի պատրանքով: Ժիրայր Լիպարիտեան կը շեշտէ առարկայական իրականութենէն պատրանքի անցումը. «Մեր խնդիրը մեր քաղաքական մշակոյթն է, որ կը յենուի երազներու այլ ոչ թէ անհերքելի փաստերու վրայ. այն կերպով որ ռազմավարութիւն կը մշակենք, այն ձեւով որ դիւրութեամբ մէկ կողմ կը դնենք արտաքին աշխարհի եւ մեր հակառակորդներու ըսածն ու ըրածը՝ եթէ անոնք կը խանգարեն մեր նախապաշարումներն ու նախասահմանուած համոզումները: Մենք քաղաքական ռազմավարութիւնը կը յարմարեցնենք մեր ցանկութիւններուն, որոնցմէ մենք մեզի լաւ կը զգանք, փոխանակ հաշուի առնելու այն պարզ փաստերը՝ որոնց ամբողջականութիւնը կը կազմէ մեզի շրջապատող իրականութիւնը: Մեր խնդիրը այն է՝ որ թոյլ կու տանք մեր դատողութիւնը մթագնի մեր խնդիրներուն ամենաբարձր, ամնավսեմ եւ կատարեալ լուծումներով, մեր պատրանքներով: Մեր խնդիրը այն է՝ որ մենք յամառօրէն կը գերադնահատենք մեր կարողութիւնները, որպէսզի հարցականի տակ չդնենք մեր ռազմավարութիւնը եւ չխաթարենք մեր երազները: Մենք կը կարծէինք՝ որ «ոչ մէկ թիզ հող»-ի ռազմավարութիւնը ճիշդ էր որովհետեւ արդար էր մեր դատը: Եւ մենք կը հաւատայինք՝ որ կրնայինք թեքել թշնամիին եւ միջազգային հանրութեան կամքը եւ ստիպել իրենց մտածել ու զգալ մեզի նման»(3):

«Ոչ մէկ թիզ հող»-ը, «Արցախը Հայաստան է եւ վերջ» այն բառերն են՝ որոնք ռէալփոլիթիքի իրականութիւնը վերածեցին պատրանքի:

Յաղթանակը ինքը դարձաւ պատրանք: 1994-ի յաղթանակը իրականութիւն մըն էր հայերուս համար: Անիկա միակ իրականութիւն մը չէր՝ քանի որ Ազըրպէյճանի համար պարտութիւն մըն էր: Բայց քանի մը տարի ետք յաղթանակ (ինչպէս նաեւ պարտութիւն) մը կը դառնայ պատմութիւն, յիշողութիւն, եւ պէտք է պատրաստ ըլլալ նոր իրականութիւններու: Երեսուն տարի ապրելով միայն յաղթանակի պատումով, այդ բառը իրականութենէ վերածեցինք պատրանքի, որ արգիլեց մեզի տեսնել նոր կազմուող իրականութիւնները:

Պատրանքներէն մէկն է նաեւ բարեկամ երկիրներ գտնելու տենչը: Ռէալփոլիթիքի մէջ չկան բարեկամ-թշնամի երկիրներ, կան շահերու վրայ հիմնուած յարաբերութիւններ: Իրական յարաբերութիւնները չուզելով տեսնել, զարմացանք եւ զայրացանք որ Հայաստանի «բարեկամ» Ռուսաստանը զէնք կը վաճառէ Ազըրպէյճանին:

Պատրանք էր, երբ կ՚ըսէինք՝ որ պատերազմի պարագային ամբողջ քրիստոնեայ աշխարհը պիտի թիկունք կանգնի մեզի: Իսկ պատերազմի կորուստէն ետք նեղուեցանք՝ որ 4




## 1 ՆԵՐՍՆ ՈՒ ԴՈՒՐՍԸ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

արտաքինի հետ բանակցային կարելիութիւններու միջոցով, փոխադարձ վերաբերմունքի շնորհիւ: Անփոխադարձ անկախութիւնը կ՚առաջնորդէ ինքնակործանումի:

21-րդ դարու չափանիշով, քաղաքական անկախութեան կիրարկումը կը յանգեցնէ Հիւսիսային Քորէայի օրինակին: Անբաղձալի օրինակ մը:

Աւելի լայն իմաստով, կ՚առաջնորդէ կորուստներու:

### ԷՐՏՈՂԱՆԻ ԹՈՒՐՔԻԱՆ

Կարեւոր երեւոյթներէն մէկը, որուն մասին չխօսեցանք վերջին պատերազմի ընթացքին՝ Էրտողանի Թուրքիան է: Թուրքիան՝ ինչպէս որ կայ, այլ ոչ թէ ինչպէս կ՚ուզենք տեսնել: Ի՞նչ կատարուած է Թուրքիոյ մէջ Էրտողանի շրջանին:

Նախքան Էրտողանը, տասնամեակներ շարունակ Թուրքիան կը հանդիսանար ռազմապէս խորքային պետութիւն (deep state), ռազմական մեքենան հանդիսանալով պետութիւն՝ պետութեան մէջ: Այսինքն, ռազմական գործիչներուն ձեռքն էին պետութեան բազմաթիւ լծակներ: Ռազմական խորքային պետութիւնն էր որ կ՚որոշէր վարչապետն ու նախագահը, կը կատարէր յեղաշրջումներ, կը սահմանէր արտաքին պատերազմները: Էրտողան ռազմականութիւնը խորքայինէն դարձուց հիմնական պետական: Ասոր հասնելու համար խորքային պետութեան հակաժողովրդավարութիւնը դարձուց իր սեփականը, ծայրագոյն աստիճանի հասցուց թրքական ազգայնականութիւնը, ուժեղցուց իսլամական կրօնական պատումը, բանտարկեց, լռեցուց կամ բնաջնջեց ընդդիմադիր առողջ ձայնը: Բանակի տեսանկիւնէն վերացուց խորքային պետութիւնը, փոխարէնը յառաջանացնելով «պրետորական ռազմականութիւն», ինչպէս գրած է Մայա Սեքայն (*Ջահակիր*, թիւ 1876):

Իսկ գալիք 10 տարիներուն, ինչպէս կը նշէ Արտա Մեւլիւթօղլու, Թուրքիա պիտի դառնայ գլխաւոր ռազմական արտահանողներէն մէկը դէպի Ասիական-Խաղաղական տարածաշրջանը (*Ջահակիր*, թիւ 1876):

Կրնանք մինչեւ վերջ սեւցնել Թուրքիան՝ իբրեւ թշնամի երկիր: Շատ լաւ: Բայց եթէ սեւցնելու հետ պիտի չտեսնենք որ Թուրքիա այսօր դարձած է աշխարհի ամենահզօր ռազմարդիւնաբերող երկիրներէն մէկը, ուրեմն ունինք քաղաքական միտքի խնդիր: Սփիւռքի հիմնահոսանքը՝ անկասկած ունի:

Իսկ եթէ Արտա Մեւլիւթօղլու հասկցած է, որ 10 տարի ետք Թուրքիա պիտի դառնայ ալ աւելի հզօր, իսկ մենք չենք հասկցած՝ որ ճիշդ այս պատճառով 10 տարի ետք կրնայ աւելի վայրագ Ղարաբաղի պատերազմ տեղի ունենալ, ուրեմն ունինք քաղաքական միտքի խնդիր: Սփիւռքի հիմնահոսանքը՝ անկասկած ունի:

Զբաղած ենք անկարեւոր հարցերով: Էրտողանը այսպէս ըսաւ, այնպէս ըսաւ՝ ի՜նչ վատ մարդ է ան. Մաքրոնը քննադատեց Էրտողանը՝ ի՜նչ հայասէր են ֆրանսացիները. Ամերիկան լաւ դաս մը տուաւ Թուրքիոյ՝ ընդունելով Հայոց Ցեղասպանութիւնը: 17 կուսակցութիւններու վարչապետի թեկնածուի խօսքերով՝ նոյնիսկ ամբողջ աշխարհը դաշնակցութիւն պիտի կազմէ Թուրքիոյ դէմ. ի՜նչ բարի աշխարհ է: Չարի ու բարիի հեքիաթները հայկական քաղաքականութեան մէջ: Բայց եւ այնպէս, այս բոլորը չխանգարեց Թուրքիոյ գերռազմականացումը: Այս բոլորը դոյզն անգամ չազդեց Թուրքիոյ վրայ, ոչ ալ պիտի ազդէ:

Իսկ եթէ Էրտողան չար մարդ մըն է, ինչպէ՞ս պէտք է վարուինք այդ չարին հետ: Ժիրայր Լիպարիտեան ռուսերէն BBC-ի հարցազրոյցին կը շեշտէ այս կէտը. «Էրդողանն ու Ալիեւը շատ վատ մարդիկ են: Բայց եթէ այդպէս է, ապա առաւել եւս պէտք է կրկնակի զգոյշ լինել: Սա հայկական կեանքի պարադոքսներից է: Եթէ մենք գործ ունենք վատ մարդկանց հետ, եթէ նրանք ուզում են մեզ ցեղասպանութեան ենթարկել, ապա մենք պէտք է մեր ռազմավարութիւնն այնպէս կառուցենք, որ խուսափենք դրանից, չէ՞» («Մենք ժողովրդին մղում ենք ազգայնականութեան՝ պետականութեան փոխարէն. Ժիրայր Լիպարիտեան», թարգմանութիւնը Սիվիլնէթի, *Սիվիլնէթ*, 1 Դեկտեմբեր 2020):

Ի՜նչ ռազմավարութեան մասին է խօսքը…:

Ա.

## 3 ԵՐԲ ՊԱՏՐԱՆՔԸ ԿԸ ՎԱՆԷ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

քրիստոնեայ աշխարհը չհասկցաւ, թէ աշխարհի առաջին քրիստոնեայ ազգին չօգնելով վնասեց ինքզինքը:

Պատրանք է, որ Սեւրի դաշնագիրով կամ խորհրդարանական բանաձեւերով պահանջներ պիտի դնենք Թուրքիոյ առջեւ: Ահաւասիկ Թուրքիոյ օգնութեամբ գրաւուեցաւ Արցախի մէկ մասը: Թուրքիան նայեցաւ առջեւ, մենք՝ ետեւ, լաւ օգտուեցաւ ռէալփոլիթիքէն, մենք՝ ոչ:

Մեր բազմահազարամեայ պատմութեան գնահատումին համար ունինք միայն մէկ հիմնահոսանքային շարադրանք. յաղթանակ՝ հայ ազգի բացառիկութեան շնորհիւ, պարտութիւն՝ ներքին կամ արտաքին դաւաճանութեան պատճառով:

Ըստ այդ շարադրանքին՝ չենք յաղթած ճիշդ ռազմավարութեան եւ դիւանագիտութեան շնորհիւ, այլ յաղթած ենք ցեղային բացառիկութեան շնորհիւ, չենք պարտուած մեր թերութեան պատճառով, չենք պարտուած այդ նոյն յաղթարշաւ բացառիկութեան պատճառով՝ որ արգիլած է մեզի տեսնելու գործող իրականութիւնները:

Երեսուն տարի ապրեցանք յաղթանակի յաւերժութեան պատրանքով: Բայց արդեօ՞ք ազգային բացառիկութենէն եւ ռազմական առաւելութենէն անդին փորձած ենք դիտել 1994-ի յաղթանակին պատճառները: Յաղթանակն ալ, ինչպէս պարտութիւնը, մէկ-երկու դրոյթներու վրայ չի կրնար հիմնուիլ:

Յստակ չէ՞, որ պատերազմի մասին խօսողները անոնք են՝ որոնք ո՛չ մասնակցած են պատերազմի, ո՛չ նպատակ ունին մասնակցելու, եւ ո՛չ ալ իրենց զաւակները պիտի մասնակցին: Լուսինէ Յովհաննիսեան. «Եւ մի քիչ նուազ պատերազմի մասին խօսեն մարդիկ, որոնց փոքր ընտանիքից պատերազմի առաջնագծում մարդ չկայ, եւ հօրաքրոջ ծոռի հեռուսական մահով չապահովեն իրենց մասնակցութիւնը այդ զարհուրանքին, աղէտին, ողբերգութեանը»(4): Այդ խօսողներուն համար պատերազմը ինքը պատրանք մըն է՝ հեռու իրենց իրականութենէն:

Պարտութիւնը բարդուեցաւ մէկ բառի շուրջ՝ դաւաճանութիւն: Դաւաճան բառը եղաւ իրականութիւնը գաղափարի փոխադրող լեզուական օղակը, եւ գաղափարը մնալով անմեկնաբանելի դաւաճան բառին շուրջ՝ դարձաւ պատրանք: Պատրանք՝ չտեսնելու վերջին պատերազմին պատմական երեսունամեայ նախընթացին ողջ բարդութիւնը:

Բայց չէ՞ որ պատերազմը ինքը դաւաճանութիւն է մարդկութեան դէմ: Պատերազմը ինքնին պարտութիւն է: «Պատերազմը… յանուն յաղթանակի մղուող պարտութիւն է», ներկայ պատերազմի աւարտէն ետք իր գրական յօդուածին մէջ պիտի գրէր Յասմիկ Յակոբեան(5):

Արդեօք պիտի կրնայի՞նք 1994 Մայիսին եւս ըսել՝ պատերազմը պարտութիւն է…:

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Շահան Նաթալի (Նեմեսիս), *Թուրքերը եւ մենք (վերգնահատումներ)*, Աթէնք, Տպագր. Նոր Օր, 1928, էջ 6:

2. Jirair Libaridian, ‘What Happened and Why: Six Theses,’ *The Armenian Mirror-Spectator*, 24 November 2020, https://mirror-spectator.com/2020/11/24/what-happened-and-why-six-theses/.

3. Անդ:

4. Լուսինէ Յովհաննիսեան, «Պատերազմն էր դաւաճանութիւնը», *MediaLab.am*, 17 Նոյեմբեր 2020, https://medialab.am/111848/:

5. Յասմիկ Յակոբեան, «Պատերազմը», *Գրողուցաւ*, 19 Նոյեմբեր 2020, https://groghutsav.am/2020/11/19/հասմիկ-հակոբյան-պատերազմը:

## 2 ՔԱՐԻՒՂ ԵՒ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ

Միացեալ Նահանգները այդ տարածքները ընդունի հաստատել իբրեւ Հայաստան՝ ամերիկեան հովանաւորութեան տակ, ան մեծապէս պիտի կրնայ օգտուիլ տեղւոյն արդիւնաբերութենէն: Աւելին: Ան կ՚ըսէ նաեւ՝ որ ամերիկեան հովանաւորութեան պարագային, բազմաթիւ հայեր պիտի վերադառնան Հայաստան, ներդնեն իրենց դրամն ու փորձառութիւնը եւ նպաստեն ամերիկեան շահերուն:

Եօթը ամիս ետք, ԱՄՆ կը մերժէ նաեւ այս առաջարկը:

Այդ ժամանակ արդէն գիտակցուած էր՝ որ քարիւղի աշխարհի պաշարի մէկ վեցերորդը կը գտնուէր այն հողերուն վրայ, ուր կ՚ապրէին հայերը: Ազգային տարր մը՝ որ կը գտնուէր տակաւին չկազմաւորուած, բայց կազմաւորումի ընթացքին մէջ գտնուող թրքական ազգային պետութեան սահմաններուն մէջ, խնդիրներ պիտի յառաջացնէր իրաւունքի եւ սեփականութեան առումով: Հանքային գործօնը առաջ մղող հայերը՝ Արմէն Գարօ, Կիւլպէնկեան, Մալքոմ եւ ուրիշներ հասկցած էին, որ միատարր ազգային մեծամասնական պետութիւն մը անհրաժեշտ էր քարիւղի արդիւնաբերութեան եւ քարիւղային դրամագլուխի դրամատիրական շրջանառութեան համար, եւ քանի որ տուեալ տարածքներուն վրայ հայեր կը գտնուէին, կարելի էր այս նպատակով յառաջացնել հայկական պետականութիւն՝ Ամերիկայի հովանիին տակ: Բայց Ամերիկան նախընտրեց արդէն պատրաստ պետութիւնը՝ Թուրքիան, ի հաշիւ Ցեղասպանութեան, իսկ 1920 Սեպտեմբերէն կանանչ լոյս տուաւ Թուրքիոյ ընդարձակելու իր սահմանները Հայաստանէն ներս:

Մինչեւ այսօր քարիւղը այնտեղ է՝ Վանէն մինչեւ Սեւ Ծով, մինչեւ Մուսուլ:

*Մատնութիւնը*, արդարեւ, կարեւոր էջ մը կը բանայ՝ բացի մատնութենէն:

2016-ին կը հրատարակէի գիրք մը՝ *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ Հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը*: Արծարծուած գաղափարներէն մէկը այն էր՝ որ Հայոց Ցեղասպանութիւնը կարելի է նաեւ դիտել դրամատիրութեան ծիրին մէջ: Կը փորձէի ցոյց տալ, որ ԺԹ. դարուն արդէն կը կատարուէր դրամատիրական տարածութիւններու վայրագ վերաբաշխում՝ որուն ժամանակաւոր հանգուցալուծումը եղաւ Առաջին Համաշխարհային Պատերազմը: Այստեղ բաւական յստակօրէն բաշխուեցան կեդրոնական, գաղութատիրական եւ ծայրամասային դրամատիրական կազմաւորումները՝ ըստ ազգային պետութիւններու կառուցուածքային սահմաններուն: Այլեւ այդ նպատակով յառաջացան ազգային պետութիւններ: Հայոց Ցեղասպանութիւնը, տրամաբանօրէն, դրած էի այս ծիրին մէջ, առանց երբեք իրազեկ ըլլալու քարիւղի գործօնին՝ զոր առաջին անգամ յստակօրէն առաջ մղեց Արա Մանուկեան: Քարիւղը՝ իբրեւ դրամատիրական արդիւնաբերութեան արդի գործօն, կու գայ հաստատել տեսութիւնը:

Բայց ո՛չ դրամատիրութիւնը, ո՛չ քարիւղը, ո՛չ ալ հրահրողները եւ քուլիսային օգտուողները կրնան մեղմացնել բուն գործադրող ձեռքին ահաւորութիւնը եւ այդ առաջնային ձեռքի մշակած համապարփակ միջոցները հասնելու իր նպատակին. բոլորն ալ հաւասարապէս մեղսակից են Ցեղասպանութեան: Պարզապէս կարեւոր են շերտաւորումները, մեկնաբանութիւնները եւ խնդրականացումները:

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1884 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՅՈՒՆՈՒԱՐ 2021 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 75 Ե. ԴԿԼ

عدد رقم ١٨٨٤ الخميس ٢٨ يناير ٢٠٢١


## ՊԱՏԵՐԱԶՄԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՅԵՐԸ ՊԷՏՔ Է ՎԵՐԱՆԱՅԵՆ ՀԱՅԵԱՑՔՆԵՐԸ, ՓՈԽԵՆ ՀՌԵՏՈՐԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ. ԶՐՈՅՑ ԱՐԿԱԴԻ ԴՈՒԲՆՈՎԻ ՀԵՏ

*Ռուսաստանցի քաղաքագէտ, ԱՄՆ երկրների հարցերով փորձագէտ Արկադի Դուբնովի հետ Սիվիլնէթի Ստելլա Մեհրաբէկեանը զրուցել է ղարաբաղեան պատերազմի հետեւանքների, յետպատերազմեան պայմանաւորուածութիւնների, Ռուսաստանի եւ Թուրքիայի դերակատարութեան, Մինսկի խմբի մասին: Դուբնովն անդրադարձել է նաեւ Հայաստանում ու Ադրբէջանում ներքաղաքական իրողութիւններին: Հարցազրոյցը ռուսերէնից թարգմանաբար՝ ստորեւ (Թարգմանութիւնը՝ Սիվիլնէթի).*

**- Մոսկուայում երեք երկրների՝ Հայաստանի, Ռուսաստանի ու Ադրբէջանի առաջնորդների հանդիպման արդիւնքներից սկսենք. պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել եռակողմ աշխատանքային խումբ ստեղծելու շուրջ, որը զբաղուելու է տնտեսական, հաղորդակցութեան ուղիների ապաշրջափակմամբ: Չլուծուած են մնում Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի, գերիների վերադարձի հարցերը: Ըստ Ձեզ՝ որքանո՞վ են այս փուլում կողմերը շահագրգռուած տնտեսական օրակարգի առաջմղմամբ:**

- Կողմերը պէտք է որ շահագրգռուած լինեն. թերեւս դրան առաջին հերթին ձգտում է Ադրբէջանը՝ փորձելով ցոյց տալ, որ ճեղքում է այդ հակասութիւնը, երբ չկարգաւորուած տարածքային հարցերի պատճառով ամբողջ տարածաշրջանը գտնւում էր տնտեսական արգելափակման մէջ: Ադրբէջանը ուզում է ցոյց տալ, որ իր ռազմական ջանքերի շնորհիւ տնտեսութիւնը կը յաղթանակի, եւ մարդիկ աւելի լաւ կ՚ապրեն:

Հայաստանի տեսանկիւնից այդ շահագրգռուածութիւնը նոյնպէս պէտք է գերակշռի: Առայժմ կարելի է հասկանալ հայ ժողովրդի հոգեվիճակը, որը յուսալքուած է պարտութեան, մարդասիրական խնդիրների չլուծուած լինելու պատճառով (գերիների վերադարձ, զոհուածների մարմինների յանձնում): Ես կարծում եմ, այդ գործընթացն արգելակում է Ադրբէջանը՝ փորձելով այն օգտագործել որպէս փաստարկ կամ շանտաժի գործիք: Ես կարծում եմ՝ ի վերջոյ այդ խնդիրը կը լուծուի:

**- Խօսենք կարգավիճակի մասին: Վերջին մեծ ասուլիսի ժամանակ Ռուսաստանի արտգործնախարար Սերգէյ Լաւրովը յայտարարեց, որ Ղարաբաղի կարգավիճակը գիտակցաբար չի յիշատակուել Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութիւնում: Այդ հարցը, ըստ Լաւրովի, հակասական է եւ թողնուել է ապագային. դրանով զբաղուելու են ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահները: Հաշուի առնելով պատերազմեան եւ յետպատերազմեան շրջանում Մինսկի խմբի՝ մեղմ ասած պասիւութիւնը, տպաւորութիւն կայ, որ հարցը թողնելով ապագային՝ փորձ է արւում այն թողնել չլուծուած:**

- Լաւրովի խօսքերն այս անգամ ինձ մօտ առաջացրին ոչ թէ Մոսկուայի իրական մղումների ըմբռնում, այլ, ես կ՚ասէի, հիացմունք, որովհետեւ նա իրերն իրենց անուններով կոչեց՝ Մոսկուան այսօր շահագրգռուած չէ կարգավիճակի հարցի լուծմամբ. այն պէտք է սառեցնել: Ինչո՞ւ: Որովհետեւ այսօր անհնար է գտնել այնպիսի լուծում, որը կը բաւարարի երկու հակամարտող կողմերին, առաջին հերթին՝ Մոսկուային: Ի՞նչ է, Մոսկուան հէնց այնպէս, ամենաբարի մղումներից ելնելով, առանց հեռահար նկատառումների՞ է մտել տարածաշրջան, ինչը բերում է հսկայական ծախսեր նոյնիսկ այնպիսի երկրի համար, ինչպիսին Ռուսաստանն է: Ոչ, իհարկէ: Ինձ թւում է, որ Մոսկուան ունի հեռահար նպատակներ եւ յոյս ունի ապագայում այն տարածքը, որն այսօր վերահսկւում է Ռուսաստանի կողմից, վերածել Ռուսաստանի հովանաւորեալ տարածքի: Այսօր դա ձեւակերպել անհնար է. ինչո՞ւ դա չանել մի երկու սերունդ անց: Առայժմ Ռուսաստանը կ՚անի ամէն ինչ տարածաշրջանում կեանքը կարգաւորելու համար:

**- Ի դէպ, պարոն Լաւրովը «էկզոտիկ» է անուանել առաջարկն այն մասին, որ Ռուսաստանն ուզում է Ղարաբաղը ներառել իր կազմում: Ձեր կարծիքով՝ Մոսկուան մոլորեցնո՞ւմ է:**

- Մենք 20 տարի ապրում ենք մի իշխանութեան օրօք, որը, եթէ ասում է՝ երկու անգամ երկու հաւասար է հինգի, ուրեմն՝ երկու անգամ երկու հաւասար է չորսի:

**- Մինսկի խմբի մասին: Հաշուի առնելով դրա պասիւութիւնը, ինչպէս արդէն նշուեց, ի՞նչ կարելի է ակնկալել Մինսկի խմբից կամ արժէ՞ արդեօք որեւէ բան ակնկալել, թէ՞ այսօր այն ձեւականօրէն գոյութիւն ունի, միայն թղթի վրայ:**

- Մինսկի խումբը հրաշալի տանիք է, որի տակ երկար ժամանակ կարելի է իրագործել վաղուց ծրագրուած գործողութիւնների ուղղութեամբ միջոցառումներ: Մինսկի խումբը կարգավիճակի հարցում Մոսկուայի ցանկութիւնից տարբեր որեւէ որոշում չի կայացնելու: Մինսկի խումբը լինելու է ընդամէնը մի ձեւաւորում տեւական, անվերջանալի մի բեմադրութեան, որում ամէն անգամ եւս մէկ գործողութիւն է աւելանալու: Եթէ Լաւրովն ասում է, որ կարգավիճակի հարցն այսօր անհնար է լուծել, - իսկ Լաւրովն ասում է այն, ինչ կարծում է Պուտինը, - ո՞վ է Մինսկի խումբը:

**- Թուրքիան ղարաբաղեան պատերազմի անմիջական մասնակիցն էր, այդ փաստը, կարծում եմ, անառարկելի է: Այդուհանդերձ, այսօր թուրքական փորձագիտական շրջանակներում շրջանառւում է կարծիք, որ պատերազմից յետոյ Ռուսաստանը դուրս է մղել Թուրքիային Հարաւային Կովկասից: Դուք կիսո՞ւմ էք այդ կարծիքը:**

- Դեռ շատ վաղ է խօսել Թուրքերի պարտութեան մասին: Էրդողանն այնքան էլ հեշտ չէ, որ նրան զրկես Հարաւային Կովկասում դերակատարութիւնից: Պարզապէս պէտք է ֆիքսել, որ Թուրքիան գուցէ այսօր մի կողմ է քաշուել եւ չի պնդում: Մենք, դուք դեռ Թուրքիայի հետ գործ ենք ունենալու, միշտ ենք գործ ունենալու: Դրան պէտք է պատրաստ լինել եւ պէտք է հասկանալ, որ թշնամուն պէտք է դարձնել գործընկեր:

**- Այսինքն, այսօր Թուրքիան անտեսա-**

⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՒԵԼԻ ՔԻՉ ՀՈՂԱՅԻՆ ԿՈՐՈՒՍՏՆԵՐՈՎ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԿԱՆԳՆԵՑՆԵԼՈՒ ՈՉ ՄԻ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄԵՆՔ ՉԵՆՔ ՈՒՆԵՑԵԼ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Յունուարի 20-ի Ազգային Ժողով-Կառավարութիւն հարց ու պատասխանի ժամանակ ԲՀԿ խմբակցութեան պատգամաւոր Նաիրա Զօհրաբեանը վարչապետին հարցրեց. «Արդեօք չէք կարծո՞ւմ, որ բարոյական ու քաղաքական պատասխանատուութիւնը ենթադրում էր, որ Նոյեմբերի 10-ին այդ ցեղասպանութիւնից յետոյ ամենախայտառակ հայաստան փաստաթուղթն ստորագրելուց յետոյ դուք եւ ձեր իշխանութիւնը պէտք է հրաժարական տար: Ես խօսում եմ բացառապէս բարոյական պատասխանատուութեան մասին»: Նաիրա Զօհրաբեանն ասաց, որ Նիկոլ Փաշինեանը մեղաւոր է, քանի որ հնարաւորութիւն կար պատերազմի 4-րդ, 5-րդ, 19-րդ, 20-րդ օրը կանգնեցնել այս կործանարար պատերազմը, ունենալ աւելի քիչ տարածքային կորուստներ ու զոհեր, բայց չի արել:

Ի պատասխան Նիկոլ Փաշինեանն ասաց, որ աւելի քիչ հողային կորուստներով պատերազմը կանգնեցնելու ոչ մի հնարաւորութիւն մենք չենք ունեցել: «Դա միֆ է, միֆ է նաեւ այն, որ մենք պատերազմը կանգնեցնելու ուղղութեամբ քայլեր չենք ձեռնարկել», - ասաց Փաշինեանը:

«Արդեօք գտնո՞ւմ էինք, որ պէտք է հրաժարական տայինք: Եթէ գտնէինք այդպէս, հրաժարական կը տայինք: Եւ դա կը լինէր գուցէ շատ հեշտ լուծում, գուցէ կը լինէր նաեւ անպատասխանատու լուծում: Մենք պատրաստ ենք կրել մեր քաղաքական պատասխանատուութիւնը եւ կը կրենք բոլոր հնարաւոր պատասխանատուութիւնները, որոնք պէտք է օբիեկտիւօրէն կրենք: Եւ կը կրենք այդ պատասխանատուութիւնը մեր ժողովրդի առաջ, սրանից որեւէ մէկը չի խուսափի: Նաեւ պատասխանատուութեան մաս է ժողովրդին պատկանող իշխանութիւնը պաշտպանել, պահպանել այնպէս, որ որեւէ մէկը ժողովրդի իշխանութիւնը չխլի այնպէս, ինչպէս շատ երկար ժամանակ Հայաստանում խլուած է եղել: Եւ նաեւ այդ պրոցէսի հետեւանքով է, որ մենք այսօր յանգել ենք այսպիսի իրավիճակի», - ասաց Փաշինեանը:

ՌՈՒՍԱՍՏԱՆ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՄԻՇՏ ԱՌԱՋ Է ՏԱՐԵԼ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՅԱՐԱԿԻՑ 7 ՇՐՋԱՆՆԵՐԸ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ ՎԵՐԱԴԱՐՁՆԵԼՈՒ ԳԱՂԱՓԱՐԸ

2016 թուականի ապրիլեան պատերազմի աւարտից օրեր անց՝ Ապրիլի 7-ին տեղի ունեցած հարցազրոյցում Ռուսաստանի արտգործնախարար Սերգէյ Լաւրովը նշել է, որ ե՛ւ գործող նախագահ Վլադիմիր Պուտինը, ե՛ւ նախկին նախագահ Դմիտրի Մեդվեդեւը ակտիւօրէն առաջ են տարել մտքեր, որոնք թոյլ կը տային ապարգելափակել իրավիճակը՝ Ղարաբաղի յարակից շրջանների ազատման միջոցով՝ միաժամանակ Ղարաբաղի կարգավիճակի հարցի լուծման հետ:

Լեռնային Ղարաբաղին յարակից շրջանների՝ Ադրբէջանին վերադարձնելու մասին Սերգէյ Լաւրովը յայտնել է նաեւ 2020 թուականի Ապրիլին՝ յղում անելով 2010-2011 թուականներին մշակուած Կազանի փաստաթղթին, համաձայն որի, պէտք է լուծուէին մի շարք առաջնային խնդիրներ, մասնաւորապէս՝ Ադրբէջանին վերադարձուէին Լեռնային Ղարաբաղին կից շրջանները եւ ապաշրջափակուէին տրանսպորտային եւ տնտեսական հաղորդակցութիւնները:

ԻՐԱԶԵԿ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՄԻԱՒՈՐՈՒՄ

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

Արմենակ Շահ-Մուրատեանի Փարիզի ուսանողական շրջանը կարեւոր փուլ մը եղաւ իր յետագայ կենսագրութեան եւ գործունէութեան համար:

1904-ին կը հաստատուի Փարիզ եւ երկու տարուայ նախապատրաստութենէ ետք՝ 1906 Հոկտեմբերին կ'ընդունուի Փարիզի Երաժշտանոցը (Conservatoire de musique et de déclamation), որմէ շրջանաւարտ կ'ըլլայ 1910 Յուլիս 9-ին:

Քննութիւնները տեղի կ'ունենային բաց մրցոյթի ձեւով, որուն ներկայ կ'ըլլային ունկնդիրներն ու լրագրաքննադատները:

Վերջին մրցոյթին՝ 1910 Յուլիս 9-ին, Շահ-Մուրատեան կը ստանայ օփերայի երգեցողութեան առաջին մրցանակ:

Սոյն յօդուածը կ'ամփոփէ Շահ-Մուրատեանի Փարիզի ուսանողական շրջանի (1906-1910) ֆրանսական մամուլի գնահատականները, որոնց մեծամասնութիւնը կը վերաբերի Երաժշտանոցի բաց մրցոյթներուն: Այս շրջանի լրագիրներուն ֆրանսերէն ամբողջական բնագիրները կարելի է գտնել հետեւեալ հատորին մէջ՝ *Արմենակ Շահ-Մուրատեան. ժամանակագրութիւն, յօդուածներ, երգացանկ* (Գահիրէ, *Զահակիր*, Յաւելուած ԺԸ., 2018, էջ 60-137): Ներկայ յօդուածը հիմնուած է այս հատորին վրայ:

Շահ-Մուրատեանի ձայնը երգիչի այն յատկութիւնն էր՝ որուն բացառիկութեան մասին միաձայնօրէն համաձայն էին ֆրանսացի քննադատները, զայն նոյնիսկ համարելով Փարիզի Երաժշտանոցի ամենագեղեցիկ թենորը:

Քննադատներուն միջեւ տարակարծութիւնները կը սկսին այն պահուն՝ երբ մարդկային գործօնն ու ճիգը կը մտնէ այդ ձայնի գործածութեան եւ գործադրութեան համար: Այս առումով, թեքնիքի եւ մեկնաբանութեան նկատմամբ համաձայնութիւն չկայ:

Գալով ֆրանսերէն լեզուի առոգանութեան, քննադատութիւնը միաձայնաբար բացասական է: Հասկնալի է, որ Ի. դարու սկիզբը օփերաները ամենուրէք կը կատարուէին տեղական լեզուներով, հետեւաբար լեզուական գործօնի անհրաժեշտութիւնը ընկալումի բնական պահանջ մըն էր: Բնական է նաեւ, որ մինչեւ Փարիզ հաստատուիլը ֆրանսերէն չխօսող ուսանողը ունենար առոգանութեան եւ արտասանութեան լուրջ խնդիրներ: Բայց քիչ մը անբնական է, երբ այդ թերութիւններուն քննադատութիւնը ըլլայ անզիջողաբար հետեւողական եւ անոր մէջէն քննադատը արտայայտէ իր սեփական հանդուրժողականութեան եւ ներողամտութեան աստիճանը:

Աւելի վտանգաւորը առոգանութեան արեւելականացումն է, զայն հասցնելով բարբարոս տարաշխարհիկութեան աստիճանին:

Ի. դարու սկիզբը, ֆրանսական գաղութատիրութիւնն ու անոր հետ ուղղակիօրէն կապուած արեւելապաշտութիւնը (orientalism) հասած էին բարձրակէտային վիճակի, որուն ծիրին մէջ քննադատները դիտեցին Շահ-Մուրատեանը: Անցնելով առոգանութեան սահմանը եւ անկէ անկախ, ամբողջ Շահ-Մուրատեանի տիպարն էր որ տեղաւորուեցաւ արեւելապաշտութեան պատկերին մէջ՝ ընդհանրացուած Արեւելք, տարաշխարհիկութիւն, կանացի փափկութիւն ու սեռականութիւն, զգացումներու անսահմանութիւն, բարբարոսութիւն, ֆրանսական արեւելապաշտ նուագացանկի պարտադրութիւն:

Պէտք է նկատի առնել նաեւ, որ բոլոր աղբիւրները կը պատկանին լրագրային քննախօսութեան բնագաւառին՝ իրեն բնորոշ արագ, հակիրճ եւ կտրուկ շարադրութիւններով, դրական-բացասական յստակ բաժանումներով, ինչպէս նաեւ կրկնուող ածականներու շռայլութեամբ:

**Ա. ՁԱՅՆ ԵՒ ԹԵՔՆԻՔ**

Բացի սակաւաթիւ պարագաներէ, բոլոր քննախօսներն ալ համաձայն են ձայնին եւ թէմպրին բացառիկութեան նկատմամբ, քանիցս նշելով՝ որ Շահ-Մուրատեանի ձայնը Երաժշտանոցի ամենագեղեցիկ թենորն է, եւ գրելով՝ որ ան ունի հազուագիւտ երանգով, շատ գեղեցիկ, յստակ հաղորդականութեամբ, գերազանց, ինքնուրոյն, անհատական, սքանչելի, հնչեղ, թրթռուն, ընտիր, յստակ, բնական, ուշագրաւ, հրապուրիչ, գրաւիչ, գդուիչ, փաղաքշական, արտայայտիչ, ճկուն, հեզաճկուն, տաք, նուրբ, վճիտ, քնքոյշ, ջերմ, ծորուն, ընդարձակ, տարածուն, կորովի, ուժեղ, զօրաւոր, առոյգ, փայլուն, մետաղական, ոսկեգոյն, թանձր, վեհանձն, շնորհեալ ձայն եւ թէմպր, ուր քաղցրութիւնը միախառնուած է սերտութեան հետ:

Միանշանակ չեն թեքնիքական գնահատականները:

Դրական առումով՝ կ'երգէ դէպի առջեւ, լաւ կ'արձակէ հնչիւնը, դիւրութեամբ կրնայ ընդարձակել բարձր ձայնանիշները, ձայնը լաւ դիրքաւորում ու դրուածք ունի, լաւ տնօրինուած է:

Բացասական առումով՝ ձայնափողը լաւ չէ բացուած, անճիշդ է ձայնարձակումը, ունի զգալի ռնգային շեշտ, բարձր ձայնանիշները կը հրէ, երբեմն ձայնին արձակումը այնքան ապահով չէ:

Միեւնոյն մրցոյթին, միեւնոյն երգին ('Suspendez a ces murs mes armes') համար գրուած երկու քննախօսականներ կը հակասեն իրարու: Մէկը կը գրէ՝ «[Ո]ւնի լաւ ձայն մը՝ լաւ դրուածքով», ուրիշ մը՝ «Ձայնը՝ վատ դրուածքով»:

Անշուշտ, օփերայի երգեցողութեան մէջ, ձայնի եւ թեքնիքի անջատումը պայմանական է: Օփերայի երգիչի ձայնը եւ անոր թէմպրը կը բացայայտուին թեքնիքի միջոցով: Եթէ թենորի ձայնը լողին կը հասնի վերոյիշեալ յատկանիշներով, անոր ետեւը կանգնած պէտք է ըլլայ մշակուած թեքնիք: Այս պատճառով նախընտրեցի ձայնն ու թեքնիքը ներկայացնել յօդուածիս նոյն ենթամասին մէջ:

Ստորեւ, ձայնի եւ թեքնիքի հետ կապուած արտայայտութիւնները՝ հայերէն թարգմանութեամբ.

1. «Կարելի չէ երազել աւելի հրապուրիչ ձայն մը» [Տեսարան *Faust*-էն] ('Conservatoire', *Comœdia*, 18 janvier 1908, 2e année, no. 110, p. 4):

2. «Բայց ի՜նչ սքանչելի ձայն: Ի՜նչ հազուագիւտ թէմպր եւ ինչ հմայք իր ելեւէջներուն մէջ: Ձայն մըն է հրապուրանքի: Այս գնահատանքին մէջ ոչինչ կայ չափազանցուած» [*Joseph*, 'Vainement Pharaon'] ('Conservatoire', *Comœdia*, 22 janvier 1908, 2e année, no. 114, p. 3):

3. «[Ա]յս երիտասարդ հայ թենորը արժանի է [գովասանքի] իր ձայնի հմայքին եւ որակին համար: Թէմպրը հազուագիւտ հաճութիւն մը ունի» [Արիա *Les Abencérages*-էն] ('Conservatoire', *Comœdia*, 26 mai 1908, 2e année, no. 239, p. 3):

4. «Այս հայ թենորը ունի շատ գեղեցիկ ձայն մը, բարձր հրապուրանքով» [Տեսարան *Armide*-էն] ('Conservatoire', *Comœdia*, 8 juin 1908, 2e année, no. 252, p. 4):

5. «[Ե]րիտասարդ թենորը մեզի շռայլեց հմայիչ ձայնի մը հրապուրանքը» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Faublas, 'Avant les concours du Conservatoire: mines et talents', *Comœdia*, 24 juin 1908, 2e année, no. 268, p. 3):

6. «[Հ]մայիչ ձայնով» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Faublas, 'Les Concours du Conservtoire', *Comœdia*, 2 juillet 1908, 2e année, no. 276, p. 1):

7. «Պր. Շահ-Մուրատեան, Քազընէօվի աշակերտ, կ'երգէ [...] հրապուրիչ թէմպր ունեցող ձայնով մը՝ վճիտ ու տարածեալ, ինչպէս նաեւ լաւ տնօրինուած» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Robert Mondor, 'Les Concours du Conservatoire', *La Presse*, 3 juillet 1908, 75e année, no. 5869, p. 1):

8. «[Ո]ւնի թենորի գեղեցիկ ձայն մը» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Louis Schneider, 'Au Conservatoire: concours de chants', *Le Radical*, 3 juillet 1908, 28e année, no. 185, p. 2):

9. «Պր. Շահ-Մուրատեան (Պր. Քազընէօվի դասարան) կը հանդիսանայ մրցոյթին «ձայն»-ը: *Ժոզէֆի* արիային սկիզբը, կարծեցինք որ իր վիճակը կորսուած է՝ այնքան որ սխալ երգեց, բայց կրկնութենէն ոլսեալ անմիջապէս նկատեցինք որ մրցորդը թենոր մըն էր, ճշմարիտ թենոր մը՝ վեհանձն ու ընդարձակ ձայնով, դիւրութեամբ ամբարձող, պայծառ թէմպրով» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Robert Brussel, 'Les Concours du Conservatoire', *Le Figaro*, 3 juillet 1908, 54e année, no. 185, p. 5):

10. «[Ո]ւնի գեղեցիկ ձայն մը, հաւանաբար մրցոյթի ամենագեղեցիկը» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Montcornet, 'Concours du Conservatoire', *Le Petit parisien*, 3 juillet 1908, trente-troisième année, no. 11.570, p. 4):

11. «Ընտիր ձայնով միակ թենորն է՝ զոր ունկնդրեցինք» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Nozière, 'Les Concours du Conservatoire', *Gil Blas*, 3 juillet 1908, 29e année, no. 10.475, p. 3):

12. «Հայ թենոր՝ Պր. Շահ-Մուրատեան, ընդարձակ, հնչեղ ձայնով, լաւ երանգաւորուած» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] ('Concours du Conservatoire', *Le Journal*, 3 juillet 1908, dix-septième année, no. 5755, p. 5):

13. «Պր. Շահ-Մուրատեան [օժտուած է] թենորի շատ գեղեցիկ ձայնով» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Albert Blavinhac, 'Les Concours du 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԱՒԵԼԻ ՔԱՆ 7 ՀԱԶԱՐ ԱՐՑԱԽՑԻ ԵՐԵԽԱՆԵՐ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ

Հայաստանի դպրոցներում ներկայում աւելի քան 7 հազար արցախցի երեխաներ շարունակում են կրթութիւնը, թէպէտ, այս թիւը փոփոխական է: Յունուարի 25-ին *Արմենպրէս*ի մամուլի սրահում հրաւիրուած ասուլիսում Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարի տեղակալ Ժաննա Անդրէասեանը նշեց, որ այս փուլում մի գործընթաց է, երբ պարբերաբար ընտանիքները վերադառնում են Արցախ:

«Մենք ի սկզբանէ խնդիր էինք դրել, որ երեխաների փաստաթղթերի առկայութիւնը խոչընդոտ չլինի նրանց դպրոցում սովորելու համար: Ասեմ, որ հետեւողականօրէն այս հարցը կարգաւորում ենք», - ասաց Ժաննա Անդրէասեանը:

Ինչ վերաբերում է արցախցի երեխաներին դասագրքերով ապահովելուն, ապա նախարարի տեղակալը նշեց, որ հէնց սկզբից եղել է պայմանաւորուածութիւն, որ բոլոր դէպքերում նրանք պէտք է ապահովուած լինեն դասագրքերով: Մնացած բոլոր հարցերն էլ կարգաւորւում են մարզպետարանների հետ համագործակցութեամբ:

## ՄԵՆՔ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ ԵՆՔ ԺՈՂՈՎՐԴԻՆ, ԻՍԿ ԴՈ՞ՒՔ ՈՒՄ ԷՔ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ. ՓԱՇԻՆԵԱՆԸ՝ ՄԵԼՔՈՒՄԵԱՆԻՆ

Յունուարի 20-ին, Ազգային Ժողով-Կառավարութիւն հարցուպատասխանի ժամանակ ԲՀԿ խմբակցութեան պատգամաւոր Միքայէլ Մելքումեանը, դիմելով վարչապետին, ասաց. «Յուցաբերէք քաղաքական կամք. արտահերթ ընտրութիւնների մեխանիզմը ձեր հրաժարականն է՝ առանց նախապայմանների: Եթէ պաշտպանական եւ արտաքին քաղաքականութիւնը ձախողւում է, վարչապետն ունի՞ մեղաւորութիւն, թէ՞ ոչ: Ես կարծում եմ՝ ունի»:

Նրա խօսքով՝ 2010-ին ընդունուած վարչատարածքային բաժանման դրոյթը չի գործում այլեւս. «Յստակ է դա»:

Ի պատասխան վարչապետն ասաց. «Դուք ինչու էք անընդհատ մեզ խորհուրդ տալիս, թէ մենք ինչ անենք: Խորհրդարանական խմբակցութիւնով մենք կը քննարկենք եւ կ'որոշենք ինչ անել: Մենք ներկայացնում ենք ժողովրդին եւ պատրաստ ենք գնալ կանգնել ժողովրդի առաջ, իսկ դո՞ւք ում էք ներկայացնում»:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԴԱՍԵՐ ՔԱՂԵԼՈՎ ԱՆՑԵԱԼԻՑ՝ ՆԱՅԵՆՔ ԱՊԱԳԱՅԻՆ

Անցեալից դասեր քաղելով՝ կարծում ենք ներկայ պայմաններում պէտք է աշխատել ըստ հետեւեալի.

1. Օգնել վարչապետին ու ներկայիս իշխանութեանը իրականացնելու իրենց առջեւ դրած ու ծրագրած Արցախի վերականգնման աշխատանքները:

2. Նկատի առնելով երկրի ռազմական իրավիճակը՝ աւելի խիստ վերաբերմունք ցոյց տալ միասնականութիւնը խաթարող եւ հակաօրինական արարքներ ցոյց տուող անձանց նկատմամբ:

3. Ներքին բախումներից խուսափելու եւ երկրում լարուածութիւնը նուազացնելու համար բոլորիս համար էլ լաւ կը լինի, ինչպէս վարչապետն է յայտարարել, երկխօսութիւն սկսել խորհրդարանական արտահերթ ընտրութիւնների կապակցութեամբ բոլոր քաղաքական ուժերի հետ:

4. Անարդար ձեւով հարստացողների գումարները առգրաւել պետութեանը հզօրացնելու նպատակով՝ յատկապէս ռազմական բնագաւառում:

5. Չէզոքացնել, սահմանափակել եւ հսկողութեան տակ վերցնել բոլոր հակառուսական, սորոսական եւ ուրիշ երկրներից ֆինանսաւորուող ոչ-պետական կազմակերպութիւնները (NGO):

6. Ոչ մի վարկ չվերցնել Արժոյթի Միջազգային Հիմնադրամից եւ Համաշխարհային Բանկից: Հնարաւորինս միայն օգտուել հայկական կապիտալից:

7. ԱԱԾ-ի եւ պետական այլ կառոյցներում ընդգրկել մեծ փորձ ունեցող ու դպրոց անցած եւ մասնագիտացուած անձանց:

8. Դեմոկրատացնել տնտեսական համակարգը, որը կը նպաստի լայն մասսաների ներգրաւուածութեանը արդիւնաբերական ու ոչ-արդիւնաբերական կառոյցներում կամ ձեռնարկութիւններում:

9. Հեչտացնել արհմիութիւնների աշխատանքները տարբեր ձեռնարկութիւններում եւ հնարաւորութիւն ընձեռնել աշխատաւորներին ու աշխատավարձ ստացողներին, որ առանց վախենալու ստեղծեն իրենց արհմիութիւնները եւ պաշտպանեն իրենց եւ պետութեան շահերը եւ ոչ թէ՝ ձեռնարկութիւնների կամ սեփականատէրերի:

10. Բարձրացնել պետութեան դերը տնտեսական համակարգում:

11. Վերջ տալ ֆինանսական կապիտալի շահագործմանը եւ մեծ մասամբ ազգայնացնել բանկերը:

12. Վերջ տալ տարբեր ուժերի կողմից որպէս իշխանութեան պահպանման միջոց նացիոնալիստական կամ ազգայնամոլական գաղափարների տարածմանը եւ մասսաներին չշեղել նորմալ ու մարդկային կեանք ունենալուց: Բարձր գնահատել համամարդկային արժէքները եւ զարկ տալ այդ գաղափարների տարածմանը:

**ՀԱՅ ՁԱԽ ՖՈՐՈՒՄ**

Երեւան, 12 Յունուար 2021

---

## «ԱՐՑԱԽԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԽԼԵՑ ՄԵՐ ՏՈՒՆԸ, ՀԱՅՐԵՆԻՔԸ, ԵՐԵԽԱՆԵՐԻՍ ԱՆՀՈԳ ՄԱՆԿՈՒԹԻՒՆԸ, ՄԵՐ ԱՄԲՈՂՋ ՈՒՆԵՑՈՒԱԾՔԸ, ՆԱԵՒ ԵՂԲՕՐՍ». ՇՈՒՇԻԻՑ ՔԱՋԱՐԱՆ՝ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ ՍՊԱՍՈՒՄՈՎ

**ԱՐՓԻՆԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ**

Սեպտեմբերի 27-ին Արցախի դէմ Ադրբէջանի կողմից սանձազերծըւած պատերազմը եւ դրան նախորդած ապրիլեան պատերազմը ցաւ ու տառապանք են բերել Արմենուհի Մինասեանի ընտանիքին:

«Արցախեան երրորդ պատերազմը մեզանից խլեց մեր տունը, հայրենիքը, երեխաներիս անհոգ մանկութիւնը, մեր ամբողջ ունեցուածքը, նաեւ հարազատիս», - *Մեդիամաքի*ն ասում է Շուշիից 5 անչափահաս երեխաների եւ ամուսնու հետ Սիւնիքի մարզ՝ Քաջարան տեղափոխուած Արմենուհի Մինասեանը:

Մինասեանի ընտանիքը ոչ միայն չի հասցրել վայելել 10 տարի վարձով ապրելուց յետոյ Շուշիում նոր ձեռք բերուած, կահաւորուած տունը, չի հասցրել աւարտին հասցնել նոր գնուած հողատարածքի վրայ շինարարութիւնը եւ ձեռնունայն հեռացել տնից, նաեւ պատերազմը խլել է եղբօրը եւ առողջական խնդիրներ առաջացրել երեխայի մօտ:

«2016-ի պատերազմը իր հետքը թողել է իմ 4 տարեկան որդու վրայ, նա ունի խօսքի հաղորդակցութեան կորուստ:

«Էդ պատերազմի ժամանակ ես յղի էի, ինձ ասեցին, որ եղբայրս՝ Վազգէնը, մահացել է, զանգեցին ու ցաւակցեցին, բայց Շուշիից մէկ այլ Վազգէն էր մահացել, իրենք չփոթել էին: Ես վատացայ, հիւանդանոց ընկայ, էդ ապրումները երեխուն անցան: Հիմա հաղորդակցման խնդիր ունի, ամէն ինչ հասկանում է, իր ձեւով բացատրում, բայց չի խօսում:

«Մինչ պատերազմը մենք յաճախում էինք Ստեփանակերտի Քեբուլայն Քոքսի անուան վերականգնողական կենտրոն հոգեբան լոգոպեդի մօտ: Էստեղ երեխու հետ վճարովի հիմունքներով հոգեբան է աշխատանքում, Ստեփանակերտում անվճար էր», - ասում է Մինասեանը:

Արմենուհի Մինասեանը ցաւով նշում է, որ այս պատերազմն էլ եղբօրը խլեց, եթէ նախորդ անգամ շփոթմունք էր եղբօր զոհուելու մասին լուրը, այժմ՝ իրականութիւն: «Եղբայրս զոհուեց Շուշիում», - յուզուած ասում է Մինասեանը:

↳ 4

**ԽՈՀԵՐ**

## ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ՔՈՐՈՆԱ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Քորոնաժահրի հետեւանքով, բնականաբար, պիտի դադրէին կամ խիստ նուազագոյնի հասնէին սփիւռքահայ ակումբային ձեռնարկները: Անբնական պիտի ըլլար հակառակը:

Բայց Սփիւռքի մէջ, ինչպէս ուրիշ շատ բաներ, ասիկա եւս ունեցաւ իր զուարճալի կողմը:

Ինչո՞ւ ակումբային ձեռնարկներ կ՚ըլլային Սփիւռքի մէջ: Ըստ կազմակերպիչներու միահամուռ համաձայնութեան՝ հայապահպանութեան համար (ակումբ-ձեռնարկէն զատ հայապահպանութեան համար կը նշուի նաեւ դպրոցը): Ասիկա այն քիչ պարագաներէն է, երբ Սփիւռքը համաձայն է ու միաձայն: Ամէն տեղ հայապահպանութիւն է: Ամէն ղեկավար եւ անոր օգնող մտաւորական զբաղած է ուրիշի հայապահպանութեամբ, ուրիշի՝ բայց ոչ իրեն:

Իսկ ո՞վ պիտի հայապահպանէ իրենց՝ հայապահպանողներուն, երբ անոնցմէ մաս մը (բնականաբար, ոչ բոլորը, բայց «մաս մը» հասկացողութիւնն ալ շատ վտանգաւոր է) ուղղակիօրէն հայերէն չի խօսիր, կամ վատ կը խօսի, կամ իր տնօրինած հայապահպան հիմնարկներու պատերուն կը փակցնէ *միայն* անգլերէն եւ արաբերէն յայտարարութիւններ:

Թող այդպէս ըլլայ, ի՞նչ կը խանգարէ:

Կը խանգարէ, քանի որ այդ «մաս»-ը ինքը ուղեգրած է հայապահպանութեան նշանաբանը՝ ինծի եւ քեզի հայապահպանելու համար, եւ ինքը մնացած անհայապահպան:

Կը խանգարէ, քանի որ այդ «մաս»-ին գործընկերները՝ որոնք քիչ մը հայերէն գիտեն, չեն դիմադրեր երեւոյթը, այսինքն՝ կը բացայայտեն ներգրաւուածութեան պակաս, մինչդեռ հայապահպանութիւնն ինքնին պէտք է բացայայտէր ներգրաւուածութեան ամենաբարձր աստիճան:

Ուրեմն, ո՞վ պիտի հայապահպանէ չներգրաւուած, շրջապատէն անտարբեր հայապահպանողին:

Հակառակ հայապահպանութեան միաձայնութեան եւ հայապահպան ինքնըստրանի անհատներուն, արեւմտահայերէն լեզուն «միջազգային» յայտնի հիմնարկին կողմէ յայտարարուեցաւ վտանգուած: Հայապահպանութիւնը ձախողեցա՞ւ, թէ հայապահպանութիւնը յաջողեցաւ առանց լեզուական գործօնին: Ո՞վ պիտի հայապահպանէ վտանուած լեզուն հայապահպանողին եւ առանց (մինուս) լեզուն հայապահպանողին:

Ո՞վ պիտի հայապահպանէ հայապահպանողին:

Կարեւորը՝ հայապահպան ակումբն ու ձեռնարկն է եւ ձեռնարկին հետ բարձրացած լրագրային աղմուկը:

Հիմա այդ ձեռնարկն ալ չկայ եւ հանգըստացած ենք լրագրային աղմուկէն: Այսինքն, չկայ հայապահպանութիւն:

Կը կրկնեմ, ակումբային ձեռնարկները՝ իբրեւ մարդկային բազմութեան հաւաքոյթներ, պէտք էր ջնջուէին: Սփիւռքը այստեղ սխալ բան չըրաւ:

Խնդիրը այն է, որ եթէ ձեռնարկները կ՚ուղեկցէին հայապահպան աղմուկներով եւ գերգովասանական «քննախօսական»-ներով՝ գրուած կազմակերպող միութեան կողմէ պաշտօնապէս վճարուած «մտաւորական»-ի, կամ նոյնիսկ ձեռնարկի գլխաւոր մասնակցողներէն մէկուն կողմէ, ենթադրուած էր ձեռնարկներու բացակայութիւնը կամ ձեռնարկներ կազմակերպելու անկարելիութիւնը ինքնին յառաջացնէր, չըսելու համար նոյնքան, գէթ թեթեւ վրդովմունք եւ մտահոգութիւն:

Քանի որ քորոնա կայ, վերացած է «մենք ըրինք»-ի պարտականութիւնը: Արտաքին ազդակ մը, առարկայական դէպք մը պարտականութենէ ազատած է ենթական: Պարտականութիւն, բայց ոչ ներքին պահանջ՝ որ անխուսափելի է, ձեռնարկելու կամք՝ որ անկոտրելի է, ներկայանալու կիրք՝ որ անխորտակելի է: Գոնէ աղմուկները այնպէս կը ներկայանային՝ որ ձեռնարկները արդիւնքն էին ենթակայական պահանջի, անկոտրելի կամքի եւ անխորտակելի կիրքի: Իրարու միացած կամքն ու կիրքը արտաքին ազդակի մը հպումով չեն ջարդուիր, այլ կը փոխուին եւ տարբեր կառուցուածք կը ստանան, կը դառնան բողոքական՝ արտայայտուելով հանրային բունկումներով, գրաւոր բացայայտիչ մտահոգութիւններով, հոգեբանական մերժումներով, փոխանակ հանգիստ, անխռով եւ մանաւանդ յարմարաւէտ նահանջի:

Այն գրաւոր աղմուկը՝ որ կը հետեւէր ձեռնարկին, պիտի մնար գրաւոր աղմուկ՝ ձեռնարկին բացակայութիւնը տագնապող: Բայց քանի որ աղմուկ էր, իսկ աղմուկները կ՚ըլլան արտաքին դրդապատճառի հետեւանքը, լռեց դիւրութեամբ, լռեց առանց հառաչանքի:

Աղմուկները կը լռեն՝ երբ կ՚անհետանայ դրդապատճառը: Ենթակայական կամքն ու կիրքը կը յարատեւեն՝ առանց դրդապատճառի:

Սփիւռքեան պատկերի հարց մըն ալ կայ այստեղ:

Հայապահպանումը չափելու եւ տեսնելու միակ միջոցը եղած է «մենք ըրինք»-ը եւ այդ «ըրինք»-ներուն թուագրումը՝ ձեռնարկ, դպրոց, դպրոցական գոյք, դըպրոցի գրատախտակ, դասագիրք, մարզադաշտ, մարզախաղ, միլիոնաւոր տոլլարներ, ակումբներու եւ սրահներու մարմարեայ արդիականացում, եւ այլն: «Ըրինք»-ներու շնորհիւ այդ նոյն «ընող»-ները ստեղծած են Սփիւռքի գերդրական ինքնապատկերը, գրեթէ անփշրելի առանձնայատկութեամբ: Հիմա երբ ձեռնարկ չկայ, դժուար է ըսել՝ «մենք չըրինք», կամ «չըրինք մեզմէ անկախ պատճառներով», հետեւաբար՝ չհայապահպանեցինք կամ չկրցնաք հայապահպանել: Բացասականութեան նշան կայ այստեղ, որ պէտք չէ գոյութիւն ունենայ Սփիւռքի մէջ, նոյնիսկ եթէ այդ բացասականութիւնը կամքէ անկախ է: Գերդրականութեան պատկերին մէջ չի կրնար տեղաւորուիլ որեւէ բիծ: Վերջնականացուած պատկերը՝ վերջնական է:

Ուրիշ զուարճալի կէտ մըն ալ կայ:

Աւանդական լրագիրներու որոշ թղթակիցներ՝ որոնց գրական դրամագլուխը ձեռնարկները գովելն էր, մնացին մշակութապէս անգործ: Ի դէպ, Սփիւռքի մէջ շատ դիւրին է լաւ վճարուած մտաւորական դառնալ քանի մը ձեռնարկի փառաբանութիւնը գրելէ ետք: Հիմա այդ ձեռնարկն ալ չկայ...:

ՔԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## 1 ՊԱՏԵՐԱԶՄԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՅԵՐԸ ՊԷՏՔ Է...

նել, բայց ներկայ է քաղաքական գործընթացներում՝ Ռուսաստանի հետ համակարգուած:

- Անշուշտ: Էրդողանն ու Պուտինը անբաժանելի գործընկերներ են, որոնք բռնում են կոնտակտային մարտի եւ պարզ չէ՝ ով ով է: Սա ինքնավստահ մաչոների մի կծիկ է, որոնք երբեք չեն նահանջի, քանի ողջ են: Դուք երբեք չէք ունենալու հարեւաններ, որոնք ձեզ սիրում են: Պէտք է ձգտել ունենալ հարեւաններ, որոնք առնուազն ձեզ չեն սպառնում:

**- Պատերազմից յետոյ Ալիեւը բազմիցս յայտարարել է այն մասին, որ խնդիրն այլեւս լուծուած է, որ այն անցեալում է: Արդեօք կարելի՞ է ենթադրել, որ խաղաղութիւն է եկել կամ հիմք է դրւում աւելի ամուր խաղաղութեան համար:**

- Խաղաղութեան հարցերն այդքան արագ չեն լուծւում: Ըստ իս՝ ստեղծւում է ուժերի հաւասարակշռութեան համար հիմք: Այս տեսանկիւնից կարեւոր է հայերի դիրքորոշումը՝ արդեօք նրանք ձգտելո՞ւ են ռեւանշիզմի՝ յանուն ինչ-որ բանի, ցոյց տալու, որ իրենք անկոտրում են: Այո, մենք գիտենք հայերի մարտական ոգին, այո, դա սարսափելի ողբերգութիւն էր եւ այդպիսի ողբերգութիւններից խուսափելու համար պէտք է դասեր քաղել: Ես ինքս էլ պատերազմի սկզբին մտածում էի՝ դէ չեն կարող հայերն այսպէս պարտուել: Նրանք պարտուեցին առաջին հերթին իրենց անհեռատեսութեան պատճառով, իրենց ուժերն ու հնարաւորութիւնները գերագնահատելու պատճառով: Կրկնութիւնից խուսափելու համար պէտք է վերանայել աշխարհին սեփական հայեացքները:

**- Հայեացքները դաշնակիցներին՞, թշնամիներին՞:**

- Անկասկած: Ինձ զարմացնում էին Հայաստանի առաջնորդների յայտարարութիւնները պատերազմի ժամանակ, որ Ռուսաստանն անպայմանօրէն կ՚օգնի Ադրբէջանի դէմ պատերազմում, կը մտնի իր զօրքերով ու կը սկսի կրակել Գեանջայի, Բաքուի վրայ: Դա շատ միամիտ էր հնչում ու զարմանալի, մանաւանդ, որ հակառակ կողմն անելու էր ամէն ինչ՝ դրա առիթը չստեղծելու համար:

**- Ձեր վերջին հարցազրոյցներից մէկում նշում էք՝ Մոսկուային ձեռնտու է «Թոյլ Փաշինեան», «Թոյլ Փաշինեան» է ձեռնտու նաեւ Բաքուին: Ի՞նչ նկատի ունէիք:**

- Ես նկատի ունէի, որ եթէ այլ իշխանութիւն լինէր այսօր Երեւանում, այն փորձելու էր չէզոքացնել Փաշինեանի ստորագրած համաձայնութիւնները: Իսկ դա նշանակում է յետքայլ անել: Ի՞նչ է դա նշանակում՝ նոր պատերա՞զմ: Դա բերելու էր ձեռք բերուած համաձայնութիւնների խաթարման: Ռուսաստանն էլ կ՚ասէր՝ դէ որ այդպէս է, մենք գնում ենք: Եւ ի՞նչ էք անելու: Ալիեւը այդ դէպքում կ՚անի այն, ինչ պէտք է անէր՝ կը գրաւի առանց ռուսների մնացած շրջանները: Դրա համար Ռուսաստանին ձեռնտու էր ամէն ինչ թողնել՝ ինչպէս կայ, նկատի ունեմ Փաշինեանին: Նա պատասխանատու է եւ նա պայմանագրունակ է:

**- Ինչպէ՞ս էք գնահատում Ադրբէջանում տեղի ունեցող զարգացումները, ինչպէ՞ս էք տեսնում Ադրբէջանը կարճաժամկէտ հեռանկարում: Այսօր Ալիեւը յաղթողի դերում է:**

- Դժուար է ասել: Ակնյայտ է, որ իշխանութեան կառուցուածքը ենթակայ չէ փոփոխութեան, իսկ դա ամենակարեւորն է հայերի համար: Մարդիկ այնտեղ «պատուաստուել են» յետագայ նուաստացումներից, տեսել են, որ ադրբէջանցիները կարող են յաղթել, եւ դա կարեւոր է ազգային ինքնագիտակցութեան համար: Ադրբէջանի հետ այլեւս պէտք է վարել մի փոքր այլ հռետորաբանութիւն՝ հասկանալով, որ գործ ունէք արժանի հակառակորդի հետ: Պէտք է ելնել նրանից, որ Ադրբէջանն իր կառուցուածքով մնում է աւտորիտար պետութիւն: Բայց ես յոյս ունեմ, որ Ադրբէջանի իշխող վերնախաւի հռետորաբանութիւնը հարեւանների, Հայաստանի հասցէին, չեմ ուզում կոպիտ բառեր ասել, բայց կը լինի ոչ այդքան դրամատիկ-ոչ բարեկամական: Դրա նախադրեալները ես տեսնում եմ:

*Սիվիլ Նէթ*
21 Յունուար 2021

## 3 «ԱՐՑԱԽԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԽԼԵՑ ՄԵՐ ՏՈՒՆԸ, ՀԱՅՐԵՆԻՔԸ....

Մինասեանի ընտանիքը Սիւնիքում վարձակալել է 2 սենեակառնոց տուն, որտեղ բնակւում են ընտանիքի 7 անդամներով:

«Փոքր տուն ա, մի կերպ յարմարացրել ենք, դիւանները միացրել ենք, որ երեխեքը քնեն, լեժանկա ենք դրել, ապրում ենք», - ասում է Արմենուհի Մինասեանը:

Մինասեանի ընտանիքն այժմ դժուարութեամբ, բայց փորձում է նաեւ սեփական աշխատանքով վաստակել, ամուսինը շինարարութեամբ է զբաղւում, սակայն, Մինասեանի խօսքով՝ տան վարձը, կումունալներն ու երեխաների կարիքները բաւարարելու համար չի բաւականացնում: «Սիւնիքում էլ ցուրտ է, տաք հագուստ ու կօշիկ է պէտք: Կոմունալներն էլ շատ են, չենք հասցնում՝ գազը, լոյսը շատ են կազմում: Երեխային էլ հոգեբանի մօտ եմ տանում, ծախսերը շատ են», - նշում է Մինասեանը:

Մինասեանը դեռ չի պատկերացնում՝ ի՞նչ կը լինի ապագայում: Ասում է՝ մինչեւ համոզուած չլինեն, որ Արցախում անվտանգ է, չեն կարող վերադառնալ:

«Ասել են՝ Արցախի գիւղերում տուն են կառուցելու, ով առաջին 30-ը դիմեց, առաջինը իրենց են տալու: Մենք դեռ չենք դիմել, դիմում չենք գրել, սպասում ենք, ապահով լինի, իմանանք՝ անվտանգ ա, կը գնանք», - նշում է Մինասեանը:

*MediaLab.am*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք թէ Ազգային Բարերարուհի Մարկրիթ Պայծառ Յակոբեանի յիշատակին հաստատուած Հիմնադրամի 2020-ի եկամուտը կը կազմէ 3,450 Ե.Ո., որ պիտի բաշխուի հետեւեալ կերպով.

| Թիւ | Անուն | ԳՈՒՄԱՐ Ե.Ո. |
|---|---|---|
| 1 | Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հոգեւորականներուն | 300.00 |
| 2 | Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Սարկաւագներուն | 46.00 |
| 3 | Շնորհալի Երգչախումբին | 345.00 |
| 4 | Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 207.00 |
| 5 | Մերճանեան մանկապարտէզի ուսուցչուհիներուն | 540.00 |
| 6 | ԱՐԵՒ Օրաթերթին | 805.00 |
| 7 | ՅՈՒՍԱԲԵՐ Օրաթերթին | 805.00 |
| 8 | ՔԱՀԱԿԻՐ Շաբաթաթերթին | 403.00 |
| | **ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐ** | **3,450.00** |

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## 2 ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Conservatoire', *La République française*, 3 juillet 1908, trente-septième année, no. 13461, p. 2):

14. «[Ունի] կորովի եւ ճկուն ձայն մը» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] ('Les Concours du Conservatoire', *La Gazette de France*, 4 juillet 1908, 277e année, p. 3):

15. «[Ձ]այնը աւելի յաջող է միջին ձայնամասին մէջ քան բարձր ձայնանիշներուն» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (A. M., 'Au Conservatoire: concours de chant (hommes)', *Le Rappel*, 4 juillet 1908, 15 messidor, an 116, no. 13994, p. 2):

16. «Կ'առոգանէ դէպի առջեւ եւ լաւ կ'արձակէ հնչիւնը, կ'երգէ դէպի առջեւ եւ լաւ կ'արձակէ հնչիւնը, կ'երգէ դէպի իր առջեւը եւ իր ձայնը չարժուն է, շատ կը մօտեցնէ կիսաթոները, դիւրութեամբ կրնայ ընդարձակել բարձր ձայնանիշները՝ եթէ չփակէ որոշ ձայնանիշներ եւ գլուխը խոնարհելով չխափանէ ձայնի արտաբերումը: Ձայնի լաւ դիրքաւորում» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Docteur Pierre Bonnier, 'Clinique vocale', *Gil Blas*, 6 juillet 1908, 29e année, no. 10,478, p. 2):

17. «[Պր. Շահ-Մուրատեանի ձայնը] անկասկած հզօր չէ, բայց ծորուն է, տաք եւ լաւ հնչականացուած» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Pierre Lalo, 'La Musique', *Le Temps*, 7 juillet 1908, quarante-huitième année, no. 17179, p. 3):

18. «[Թ]ենոր մը նուրբ եւ լաւ կազմուած ձայնով» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Camille le Senne, 'Revue musicale', *Le Siècle*, 9 juillet 1908, soixante-treizième année, no. 26486, p. 1):

19. «[Ձ]այնը տարածուն եւ լաւ տնօրինուած, աւելի լաւ միջին ձայնամասին մէջ քան բարձր թառած ձայնանիշներուն» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Albert du Moulin, 'Les Concours du Conservatoire', *Le Grand national*, 9 juillet 1908, septième année, p. 2):

20. «Օժտուած թենորի գեղեցիկ ու շատ յստակ ձայնով՝ որ կը միախառնէ քաղցրութիւնը սերտութեան հետ, ան խիստ շնորհալի կերպով երգեց *Ժոզէֆի* ընտիր արիան» [*Joseph*, 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Arthur Pougin, 'Les Concours du Conservatoire', *Le Ménestrel*, 11 juillet 1908, 74e année, no. 28, pp. 217-218):

21. «[Ի]ր յստակ թէմպր ունեցող ձայնով» [Տեսարան *Armide*-էն] (Robert Mondor, 'Au Conservatoire: le concours d'opéra', *La Presse*, 12 juillet 1908, 15e année, no. 5878, p. 1):

22. «Պր. Շահ-Մուրատեան ունի թենորի գեղեցիկ ձայն մը, որ սակայն երբեմն խոյս կու տայ չափէն» [Տեսարան *Armide*-էն] (Montcornet, 'Concours du Conservatoire', *Le Petit parisien*, 12 juillet 1908, trente-troisième année, no. 11,579, p. 2):

23. «Խիստ շնորհեալ ձայն մը: Բայց չարաշահուած: Քանի մը կասկածելի ձայնանիշներ» [Տեսարան *Armide*-էն] (Faublas, 'Les Concurrents', *Comœdia*, 12 juillet 1908, 2e année, no. 286, p. 2):

24. «[Ո]ւնի քնքոյշ ձայնի մը թէմպրը, եւ այսքան» [Տեսարան *Armide*-էն] (Nozière, 'Concours d'opéra', *Gil Blas*, 12 juillet 1908, 29e année, no. 10.484, p. 3):

25. «[Ն]որեկ թենոր մը, որ հազուադէպ կ'երգէ ճշգրիտ» [Տեսարան *Armide*-էն] (Pierre Lalo, 'La Musique', *Le Temps*, 14 juillet 1908, quarante-huitième année, no. 17186, p. 3):

26. «Բայց Պր. Շահ-Մուրատեանի ձայնը ունի հաղորդական յստակութիւն. անիկա Երաժշտանոցի ամենագեղեցիկ ձայնն է: [...] Ահաւասիկ *բնական*, լաւ երանգաւորուած, հեզաճկուն ձայն մը, որ կրնայ երբեմն զօրաւոր ըլլալ: [...] Կարելի է մաղթել՝ որ նուազ թենորականացնէ (ténoriser)» [Տեսարան *Samson et Dalila*-էն] (Georges Pioch, 'Les élèves admis au concours publics du Conservatoire', *Comœdia*, 19 juin 1909, 3e année, no. 628, p. 3):

(Շար. 1)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1885 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՓԵՏՐՈՒԱՐ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՐԿ.

عدد رقم ١٨٨٥ الخميس ١١ فبراير ٢٠٢١


## ԿԵՂԾ ԼՈՒՐԵՐՈՒ ՏԱՐԱԾՔԸ

Լրատուութիւնը գրաւած է ամէն բան: Ան յաճախակի դարձած է պատմութիւն՝ փոխարինելով պատմութեան, իրականութիւն՝ իրականութեան փոխարէն:

Բայց այս ընթացքին ետեւը կանգնած են մարդիկ: Ոչինչ կը կատարուի առանց մարդու: Սակաւաթիւ մարդիկ՝ որոնք կ'արտադրեն փոխարինուած իրականութիւնը, մեծամիւ մարդիկ՝ որոնք կ'ընդունին զայն իբրեւ իրականութիւն:

Դպրոցն ու համալսարանը սորվեցուցած են մեզի ընդունիլ ուսուցիչներուն եւ դասագիրքերուն կողմէ փոխանցուած գիտելիքը եւ չվիճիլ անոր արժանահաւատութեան վրայ, ուսուցիչին տալով անձեռնամխելի բացառիկութեան արժէք: Եթէ կասկածի ենթարկես ուսուցիչին տուած գիտելիքը՝ ուսուցիչը քեզի կը ձախողեցնէ քննութեան: Իրական կեանքի մէջ, ուսուցիչն ու դասագիրքը փոխարինուած են լրատուամիջոցով: Հիմնահոսանքային լրատուամիջոցի գիտելիքը կասկածի չեն ենթարկեր: Վիճաբանութիւններ կը ձեռնարկուին արդէն արտադրուած լուրին շուրջ, բայց լուրի արտադրութեան եղանակը կամ նոյն ինքը արտադրութիւնը վիճաբանութեան նիւթ չի հանդիսանար:

Հետեւաբար, ով որ կը տիրէ գիտելիքի արտադրութեան վրայ, ով որ սեփականատէրն է արտադրութեան խողովակներուն, կը տիրէ գիտելիքին վրայ եւ զայն կ'արտադրէ ինչպէս հաճոյ է իրեն: Լրատուութեան պարագային, գիտելիքը լուրն է: Ով կը տիրէ լուրին վրայ, իշխանութիւններ կը տապալէ, յեղափոխութիւններ կը կործանէ:

Եւ միշտ հետաքրքրական է բացայայտել լուրերուն ետեւը կանգնած անձերուն անունները, այն անձերը՝ որոնք կ'արտադրեն լուրերը:

Հայաստանի եւ Սփիւռքի օլիկարքապատկան լրատուային ցանցերու սեփականատէրերու եւ քուլիսային ազդողներու մասին բաւական բան յայտնի է: Հասարակական ցանցերու առումով հարցը կը դժուարանայ, երբ Ֆէյսպուքի եւ վերջերս տարածում գտած Թելեկրամի էջեր՝ անանուն կամ կեղծ անուններով, կը ստանձնեն լուրեր տարածելու իրաւունքը: Իրականութեան մէջ՝ լուրեր *ստեղծելու* իրաւունքը:

*Փաստերի ստուգման հարթակ* կայքը վերջերս բացայայտեց Ֆէյսպուքի եւ Թելեկրամի անանուն եւ այլանուն էջեր, որոնք յարձակողական կերպով նուիրուած են ներկայ իշխանութիւնները վարկաբեկելով: Մէկը՝ Արթուր Վանեցեանի ֆէյսպուքեան էջերն են, միւսը՝ ՎԵՏՕ ծայրայեղական կազմակերպութեան Թելեկրամը:

### ԱՐԹՈՒՐ ՎԱՆԵՑԵԱՆ ԵՒ ՖԷՅՍՊՈՒՔ

Յովհաննէս Նազարէթեան եւ Նելլի Լազարեան կը բացայայտեն Ֆէյսպուքի առնուազն 160 օգտահաշիւներէ կազմուած ուղղորդուած «բանակ» մը (Յովհաննէս Նազարէթեան եւ Նելլի Լազարեան, «Արթուր Վանեցեանի «վիրտուալ հայրենիքը» կամ ընդդիմադիրի 160 ֆէյքերը», *Փաստերի ստուգման հարթակ*, 27 Յունուար 2021, https://fip.am/14585):

Այս ֆէյքերը «կառավարւում են *Հայրենիք* կուսակցութեան հիմնադիր Արթուր Վանեցեանին սատարելու եւ վերջինիս քաղաքական հակառակորդներին թիրախաւորելու նպատակով»:

Տեղի սղութեան պատճառով, այստեղ պիտի ներկայացնեմ ուսումնասիրութեան արդիւնքները: Մանրամասն փաստարկներուն համար կարելի է դիմել կայքէջը:

Նազարէթեանի եւ Լազարեանի Ֆէյսպուքի դիտարկումները ցոյց կու տան, թէ ինչպէս միեւնոյն պահուն 100 կամ աւելի օգտատէրեր կը տարածեն միեւնոյն լուրը (օրինակ՝ միանալ պատերազմէն ետք 17 կուսակցութիւններու կողմէ իրականացուող ցոյցերուն) եւ թէ ինչպէս միեւնոյն օգտատէրերը գրեթէ նոյն պահուն կը տեղադրեն միեւնոյն գրութիւնները:

Այս «բանակ»-ին էջերը կարծէք միեւնոյն մարդուն էջը ըլլան՝ օգտատիրոջ անունի եւ լուսանկարի տարբերութեամբ:

Կեղծ օգտահաշիւներուն մեծ մասը ունի 2-3 «անձնական» լուսանկարներ, որոնք տեղադրըուած են նոյն օրը: Հետազօտողները լուսանկարներու որոնումի միջոցով կը գտնեն մեծամասնութեան իրական տէրերը եւ կը թուեն անուններն ու մանրամասնութիւնները: Կը պարզուի, որ անոնց մեծամասնութիւնը ռուսական կայքերու օգտատէրերէ գողցուած անձնական լուսանկարներ են:

Ֆէյքերուն զգալի մասը կը տարածէ միեւնոյն լուսանկարները՝ նոյն ժամուն եւ նոյն ուղեկցող գրառումով:

Լուսանկար մը, որ կը վերաբերի 17 կուսակցութիւններու Դեկտեմբեր 2-ի երթին, 112 ֆէյքեր տեղադրած են իրենց անձնական էջին վրայ: Ուղեկցող գրառումն ու հաշթակը նոյնն են: Իսկ լուսանկարի տարածումի ժամը Դեկտեմբեր 2-ի ժամը 15:00-15:45-ն է, այսինքն, 45 վայրկեանի ընթացքին մէկ անձ մը միեւնոյն համակարգիչով յաջորդաբար տեղադրած է լուսանկարն ու գրութիւնը: Ուշադրութիւն, այստեղ խօսքը գրառումը կիսուելու (sharing) մասին չէ, այլ միեւնոյն լուսանկարի եւ գրութեան տեղադրութեան, միեւնոյն պահուն:

Նազարէթեան եւ Լազարեան կը գտնեն նաեւ այլ օրինակներ:

Անոնք կ'աւելցնեն. «Հետաքրքիր են նաեւ ֆէյքերի հաւանած ֆէյսբուքեան էջերի ցանկն ու նմանութիւնը: Գրեթէ բոլորի մօտ կարելի էր հանդիպել ընդամէնը մի քանի հաւանած էջ, որոնց ցանկում են *Հրապարակ* օրաթերթ եւ *Ilur* էջերը: Վերջինս բացուել է նախորդ տարուայ Յունիսի 6-ին եւ տարածում է ներկայ իշխանութիւններին նուաստացնող հրապարակումներ, լուսանկարներ, ինչպէս նաեւ ընդդիմադիր ուժերի ու գործիչների խօսքը, որոնցից առանձնանում են *Բարգաւաճ Հայաստան* ու *Հայրենիք* կուսակցութիւնների ներկայացուցիչների՝ առաւելապէս ղեկավարների յայտարարութիւնները»:

Նոյեմբեր 11-ին, ֆէյքերու բանակին մէկ մասը կը տեղադրէ Pressing հաղորդաշարին Վանեցեանի տուած հարցազրոյցին միեւնոյն հատուածը: Ֆէյքերը ոչ թէ կիսած են Վանեցեանի հարցազրոյցի այս հատուածը, այլ իւրաքանչիւրը առանձին իր էջին վրայ վերբեռնած անսխալօրէն նոյն հատուածը:

### MEDIAPORT, ԹԵԼԵԿՐԱՄ ԵՒ ԻՐԵՐԱՄԷՋ ՑԱՆՑԵՐ

Ուրիշ, աւելի վտանգաւոր աղբիւր մըն է Mediaport Թելեկրամի ալիքը, որուն մասին կ'անդրադառնայ Սեւադա Ղազարեան (Սեւադա Ղազարեան, «Mediaport-ի սրընթաց «կարիերան». ովքեր են կանգնած դրա յետեւում», *Փաստերի ստուգման հարթակ*, 2 Փետրուար

4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՄԱՐՄՆԱՒՈՐՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԵՒՈԼԻՒՑԻԱՆ

«Մեր սպան ու զինուորը լաւագոյնն են ռեգիոնում, բայց չունէին այն նուազագոյնը, ինչն անհրաժեշտ էր մարտահրաւէրներին դիմագրաւելու համար: Մեզ պարտադրուել է հինգերորդ սերնդի գերժամանակակից պատերազմ, եւ մեր բանակը չի ունեցել դրան համապատասխան սպառազինութիւն: Եւ այս Յունուարի 28-ը բացառիկ ծանր եւ հակասական տրամադրութիւններով լի օր էր», - այս մասին *Առաջին լրատուականի* հետ զրոյցում Յունուարի 29-ին ասաց վերլուծաբան Յակոբ Բադալեանը՝ անդրադառնալով հարցին, թէ ինչի մասին է վկայում Բանակի Օրուայ յետագիծը:

«Մենք ոչ թէ պարտուած բանակի հետ գործ ունենք, այլ անարդիւնաւէտ կառավարման հետ: Մեր բանակը դիմագրաւել է բազմակի աւելի ուժեղ եւ ժամանակակից ուժերի՝ ցոյց տալով, որ լաւագոյնն է, բայց վատագոյն է եղել Հայաստանի կառավարումը», - նշեց վերլուծաբանը:

Անդրադառնալով հարցին, թէ քաղաքական յայտարարութիւններից ելնելով՝ կարելի՞ է եզրակացնել, որ ներքաղաքական զարգացումների նոր փուլ է սկսւում, վերլուծաբան Արեգ Քոչինեանը նշեց. «Տրամաբանական է, որ այն չեշտակի արհաւիրքից յետոյ, որ տեղի ունեցաւ, Հայաստանում նոր քաղաքական փուլ է սկսուելու: Խնդիրն այն է, թե ինչ դերակատարներով, ուժերի ինչ յարաբերակցութեամբ է սկսուելու:

«Մեր հասարակութիւնը երկընտրանքի առջեւ է, մէկը էվոլիւցիոն ճանապարհն է, միւսը՝ դեւոլիւցիոն՝ յետընթացի ճանապարհը: Մեր պարագայում քաղաքական դեւոլիւցիայի ինդիկատորը Ռոբերտ Քոչարեանն է: Քոչարեանը մարմնաւորում է Հայաստանի դեւոլիւցիան:

Նրա կառավարման ժամանակահատուածում տեղի ունեցաւ ժողովրդավարութեան, ազատ խօսքի, ազատ տնտեսական համակարգի, կոռուպցիայի դէմ պայքարի յետընթաց: Թիւր դիսկուրս են ուզում մտցնել քաղաքական մտքի մէջ՝ կա՛մ ազատութիւն, կա՛մ անվտանգութիւն: Սակայն Քոչարեանի կառավարման տարիներին բանակի վրայ լուրջ ներդրումներ չեն արուել եւ բանակաշինութեան ուղղութեամբ լուրջ գործողութիւններ չեն իրականացուել: Քոչարեանի անձը անվտանգութեան կամ արցախեան յաղթանակի հետ կապելը համարում եմ մտացածին»:

## 17-Ը ԿՈՐՑՐԵԼ Է ՎՍՏԱՀՈՒԹԻՒՆԸ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄՕՏ. ՔՈՉԱՐԵԱՆԻ ՃԱՄՓՈՐԴՈՒԹԻՒՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆ ԴՐԱ ՇՈՒՐՋ Է

«17+»-ը կարծես թէ վերջին օրերն է ապրում: Վերջակէտը դրեց Ռոբերտ Քոչարեանը՝ յայտարարելով, որ մասնակցելու է խորհրդարանական ընտրութիւններին եւ «կրելու» է:

*Առաջին լրատուականի* հետ զրոյցում անդրադառնալով այս դիտարկմանը՝ Հանրային Խորհրդի նախագահ Ստեփան Սաֆարեանը նշեց. «Տեսնում ենք «17+»-ի ճգնաժամը, այժմ շատ աւելի քիչ ուժեր են դրա մաս կազմում: Տեսանելի է նաեւ, որ առնուազն երկու հարց քննարկւում է՝ շարունակել թէ չշարունակել Վազգէն Մանուկեանի գլխաւորութեամբ, եւ արդեօ՞ք շարունակել այն մարտավարութեամբ, որը որդեգրել էին Նոյեմբերի 10-ից»:

«Ինչու առաջացաւ առաջնորդի խնդիրը. վերջին շրջանում մարդեր կատարած նրանց այցերը ցոյց տուեցին, որ աւելի շատ սկանդալներն էին քննարկւում, քան այն, ինչ այնտեղ նրանք ասում էին: Բացի դրանից՝ նրանց ասելիքը նոյնական չդարձաւ հասարակութեան զգալի հատուածի պատկերացումների հետ: Ռ. Քոչարեանի յայտարարութեամբ պարզորոշ է դառնում, որ պրոցէսը յետագայում անձամբ ինքն է գլխաւորելու:

«Սրան գումարուեցին նաեւ մի քանի այլ ազդակներ: Նոյեմբերի 10-ի ներխուժումից, բռնութիւններից յետոյ

2

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

27. «Թենորի գեղեցիկ ձայն մը՝ արտայայտիչ եւ գրաւիչ» [Արիա *Freyschütz*-էն] ('Le concours du Conservatoire: la première journée', *La Presse*, 3 juillet 1909, 16e année, no. 6229, p. 1):

28. «Այսպէս, Պր. Շահ-Մուրատեան ունի խիստ գեղեցիկ ձայն մը. քանի մը թերութիւններ եւ ճշգրտութեան որոշ պակասներ, յատկապէս *ֆա* ձայնանիշին վրայ, խանգարեցին ստանալու երկրորդ մրցանակ» [Արիա *Freyschütz*-էն] (Arthur Coquard, 'Concours du Conservatoire', *L'Écho de Paris*, 3 juillet 1909, 26e année, no. 9100, p. 4):

29. «[Հ]այ մը՝ որ ունի Երաժշտանոցի ամենագեղեցիկ թենոր ձայներէն մէկը [...]» [Արիա *Freyschütz*-էն] ('Les concours du Conservatoire', *Le Soleil*, 3 juillet 1909, trente-sixième année, no. 184 p. 3):

30. «Պր. Շահ-Մուրատեան արաբ մըն է՝ թենորի ձայնով» [Արիա *Freyschütz*-էն] (Jean Drault, 'Au Conservatoire', *La Libre parole*, 3 juillet 1909, dix-huitième année, no. 6282, p. 2):

31. «Ուժեղ թենորի լաւ երանգաւորուած գեղեցիկ, թրթռուն եւ մետաղական ձայն մը: Հնչիւնի բարձր ճշդութիւն: [...] Ուժ եւ հնչականութիւն» [Արիա *Freyschütz*-էն] (Albert du Moulin, 'Semaine dramatique et musicale', *Le Grand national*, 24 juillet 1909, huitième année, p. 2):

32. «Այս թենորի երանգին գեղեցկութիւնը մշակուած է անցեալ մրցոյթէն ի վեր, բայց կը թուի ըլլալ վատ տնօրինուած. ձայնափողը լաւ չէ բացուած. խռովայոյզ. գործին ընտրութիւնը նուազ կը պատշաճի այս երանգի ջերմութեան համար եւ այս ձայնի արեւելեան եւ փափուկ նկարագիրին համար» [Արիա *Freyschütz*-էն] (L[ouis] L[alloy], 'Résultats des concours', *Bulletin français de la S. I. M.*, août-septembre 1909, Ve année, nos. 8-9, p. 770):

33. «[Ո]ւնի գեղեցիկ ձայն մը» [Տեսարան *Werther*-էն] (Georges Pioch, 'Concours d'opéra-comique', *Comœdia*, 6 juillet 1909, 3e année, no. 645, p. 2):

34. «Գեղեցիկ ձայն» [Տեսարան *Werther*-էն] ('Au Conservatoire: Lakmés, Carmens et Manons', *La Presse*, 7 juillet 1909, 76e année, no. 6233, p. 1):

35. «[Բ]աւական ջերմ ձայնով եւ փափուկ շեշտերով բացայայտեց Վերթէրի դժբախտ կիրքը» [Տեսարան *Werther*-էն] (Nicolet, 'Conservatoire', *Le Gaulois*, 7 juillet 1909, 44e année, no. 1158, p. 3):

36. «Ան ունի թենորի ուշագրաւ ձայն մը» [Տեսարան *Werther*-էն] (Jean Drault, 'Au Conservatoire', *La Libre parole*, 7 juillet 1909, dix-huitième année, no. 6286, p. 2):

37. «Թենորի շատ գեղեցիկ ձայն մը» [Տեսարան *Werther*-էն] ('Concours du Conservatoire', *La Lanterne*, 8 juillet 1909, trente-deuxième année, no. 11,763, p. 3):

38. «Իր ձայնը ճկուն է, հաճելի, առանց բռնութեան» [Տեսարան *Werther*-էն] (Ed. S., 'Théâtres: concours du Conservatoire', *Journal des débats politiques et littéraires*, 8 juillet 1909, 121e année, no. 188, p. 3):

39. «Վերթէր մը՝ լաւ երանգաւորուած ձայնով, բայց ոչ միշտ անթերիօրէն ճիշդ» [Տեսարան *Werther*-էն] (Pierre Lalo, 'La musique', *Le Temps*, 14 juillet 1909, quarante-neuvième année, no. 17549, p. 3):

40. «Այս երիտասարդ թուրքը ունի Երաժշտանոցի ամենագեղեցիկ թենորի ձայնը, ամենէն երաժշտականը: Կ'երգէ անզուգական դիւրութեամբ» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Edouard Helsey, 'Au Conservatoire: avant les concours', *Gil Blas*, 1er juillet 1909, 30e année, no. 10832, p. 3):

41. «[Թ]ենոր մը՝ որուն գեղեցկութեան տեսակը կը մօտէի Սամսոնի կատարեալ տիպարին» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra' եւ տեսարան *Samson et Dalila*-էն] (Georges Pioch, 'Concours d'opéra', *Comœdia*, 10 juillet 1909, 3e année, no. 649, p. 2):

42. «[Հ]ազուագիւտ երանգով թենոր *Lucie de Lammermoor*-ի էտկարին մէջ» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] ('Théâtres & concerts: concours du Conservatoire', *Le Matin*, 11 juillet 1909, vingt-sixième année, no. 9266, p. 4):

43. «[Ի]ր ձայնը՝ որ ունի գրաւիչ երանգ մը, ձեռք բերած է ընդարձակութիւն եւ որակ» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra' եւ տեսարան *Samson et Dalila*-էն] (Robert Brussel, 'Les concours du Conservatoire', *Le Figaro*, 11 juillet 1909, 55e année, no. 192, p. 4):

44. «Թենոր մըն է հաճելի եւ երբեմն ռնգային ձայնով» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Nozière, 'Au Conservatoire', *Gil Blas*, 11 juillet 1909, 30e année, no. 10842, p. 3):

45. «Պր. Շահ-Մուրատեան այս երիտասարդ հայ թենորն է՝ որ ոչինչ սորված է երգելէ. ան իրականութեան մէջ կ'երգէ անհեթեթ կերպով: Գեղեցիկ թէմպր մըն է, որ անճիշդ է ձայնարձակումի տեսանկիւնէն» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Louis Schneider, 'Au Conservatoire', *Le Radical*, 11 juillet 1909, 29e année, no. 192, p. 2):

46. «Գեղեցիկ ձայն» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] ('Au Conservatoire: Roméos en graine et Juliettes en herbe', *La Presse*, 11 juillet 1909, 76e année, no. 6237, p. 1):

47. «[Թենոր ձայնը՝] այնքան ճկուն եւ այնքան փաղաքշական» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Jean Drault, 'Au Conservatoire', *La Libre parole*, 11 juillet 1909, dix-huitième année, no. 6290, p. 2):

48. «[Ք]անզի իր թենորի ձայնը ունի գեղեցիկ եւ գրաւիչ որակ իսկ իր երգը հմտապէս առաջնորդուած է» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Ed. S., 'Théâtres: concours du Conservatoire', *Journal des débats politiques et littéraires*, 12 juillet 1909, 121e année, no. 192, p. 3):

49. «Ան ունի թենորի սքանչելի ձայն, ինքնուրոյն եւ անհատական թէմպրով. սխկա Պր. Շահ-Մուրատեանի ձայնն է: Բայց երիտասարդ արուեստագէտը տակաւին պէտք ունի կատարելագործումի» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Théodore Massiac, 'Les concours du Conservatoire', *La Petite république*, 12 juillet 1909, trente-quatrième année, no. 12141, p. 5):

50. «Գերազանց եւ գեղեցիկ ձայն մը» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] ('Au Conservatoire', *Le Grand national*, 12 juillet 1909, huitième année, p. 3):

51. «[Բ]աւական ջերմ ձայն» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Adolphe Jullien, 'Revue musicale: les concours du Conservatoire', *Journal des débats politiques et littéraires*, 25 juillet 1909, 121e année, no. 204, p. 1):

52. «Հզօր թենորի ջերմ ձայն մը: [...] Լաւ հնչականութիւն: [...] Ձայնի փայլուն ցոլացում» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Albert du Mulin, 'La semaine dramatique et musicale', *Le Grand national*, 27 juillet 1909, huitième année, p. 2):

53. «Իսկապէս ունի լաւ ձայն մը» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (Marguerite Casalonga, 'Au Conservatoire: concours d'opéra', *Comœdia illustré*, 1er août 1909, 1re année, no. 15, pp. 423-424):

54. «Պր. Շահ-Մուրատեան, յաղթահարելով իր երկչոտութիւնը, վերջապէս սլացք կու տայ իր ուժեղ եւ ջերմ թենոր ձայնին» [*Lucie de lammermoor*, 'Bientôt l'herbe des champs croîtra'] (L[ouis] L[aloy], 'Résultats des concours', *Bulletin français de la S. I. M.*, août-septembre 1909, Ve année, nos. 8-9, p. 779):

55. «Ջերմութեան եւ ուժի թենոր մըն է» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Georges Pioch, 'Les élèves admis aux concours publics du Conservatoire', *Comœdia*, 15 juin 1910, 4e année, no. 989, p. 2):

56. «Պր. Շահ-Մուրատեան խառնուածք ունի. ճարտար երգիչ մըն է՝ շատ լաւ դրուած, շատ վստահ ձայնով» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (José de Bérys, 'Les concours du Conservatoire', *Le Radical*, 28 juin 1910, p. 4):

57. «[Ձ]այնին թէմպրը չէ աճած անցեալ տարուընէ ի վեր, բայց ձայնը գեղեցիկ է» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Robert Brussel, 'Les concours du Conservatoire', *Le Figaro*, 28 juin 1910, 56e année, no. 179, p. 6):

58. «[Թ]եքնիքական արժանիքներով՝ որուն առջեւ կը խոնարհիմ, թէեւ ոչ առանց ափսոսանքի՝ որ իր այլապէս ոսկեգոյն ձայնը քիչ մը կորսնցուց իր թէմպրը» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Willy, 'Les concours publics du Conservatoire', *Comœdia*, 28 juin 1910, 4e année, no. 1002, p. 3):

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԻ ՔԱՆԻ ԿԵՆՏՐՈՆԻՑ ՄԵՐ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ ԻՐԱԿԱՆԱՑՒՈՒՄ Է ՏԵՂԵԿԱՏՈՒԱԿԱՆ ԴԻՒԵՐՍԻԱ. ԳՈՒՐԳԷՆ ԱՐՍԷՆԵԱՆ

Միաւորուած Աշխատանքային Կուսակցութեան նախագահ Գուրգէն Արսէնեանը վստահ է, որ ամէն օր պետութեան ու հասարակութեան դէմ մի քանի կենտրոնից իրականացւում է տեղեկատուական դիւերսիա: *Սիվիլ Նէթ* Արշալոյս Մղդեսեանի հետ զրոյցում նա նշում է, որ այդ յստակ կազմակերպուած տեղեկատուական հոսքերի նպատակն է հասարակութեան շեղումը իրական օրակարգից, այն է՝ պատերազմից յետոյ լուծել ծառացած խնդիրները, դասեր քաղել, նախաձեռնել արտահերթ ընտրութիւններ եւ լուրջ խօսակցութիւն ծաւալել հաղորդակցութեան ուղիների ապաշրջափակման հնարաւորութեան շուրջ: «Նրանք փորձում են ներշնչել հասարակութեանը, որ 2018թ. համրային կոնսենսուսով ձեւաւորած օրինական իշխանութիւնը սխալ է եղել», - ասում է Արսէնեանը եւ համոզմունք յայտնում, որ այդ ուժերը գիտակցում են՝ օրինական ընտրութիւնների միջոցով չեն կարող գալ իշխանութեան, այդ իսկ պատճառով փորձում են ներս մտնել «յետնամուտքով»:

## 17-Ը ԿՈՐՑՐԵԼ Է ՎՍՏԱՀՈՒԹԻՒՆԸ...

1

փորձեցին պատճենել 2018-ին կիրառուած տեխնոլոգիաները, կիրառել քաղաքացիական անհնազանդութեան մեթոդը: «17+»-ը խնդիր ունէր այն ժամանակուանից, երբ ընտրեց դատաւորի կարգավիճակը եւ վարչապետին սկսեց ներկայացնել որպէս պատերազմի թիւ մէկ պատասխանատու, եւ դա հակադրութեան մէջ էր հանրութեան պատկերացումների հետ, որովհետեւ հանրութիւնը ամենեւին այս պատերազմը չի համարում մէկ անձի պարտութեան պատմութիւն: Հասարակութեան գնահատականները նոյնական չեն եղել 17-ի որակումներին, որոնք փնտրում էին մէկ դաւաճանի:

«Բացի դրանից՝ այս ձեւաչափում ներգրաւուած են երկու նախկին նախագահները, եւ դաւաճանների ու մեղաւորների փնտրտուքում հասարակութիւնը չի կարող անտեսել այս ձեւաչափում ներգրաւուած ուժերի պատասխանատուութեան բաժինը: «17+»-ի եւ հասարակութեան կոնտակտը ի սկզբանէ դատապարտուած էր ձախողման», - ասաց Հանրային Խորհրդի նախագահը:

Ստեփան Սաֆարեանը նաեւ ընդգծեց, որ «17»-ն իր գրաւչութիւնը եւ վստահութիւնը կորցրել է նաեւ Մոսկուայի մօտ, եւ կարծիք յայտնեց, որ Քոչարեանի ճամփորդութիւնը Ռուսաստան դրա շուրջ է. «Քոչարեանը պիտի համոզի պայքարը շարունակել իր գլխաւորութեամբ եւ վստահեցնի, որ «կրելու է, եւ ռուսահաճոյ յայտարարութիւններով փորձի ստանալ աջակցութիւն»:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՄՕՏԵՑՈՒՄ, ՄՈԴՈՒԼԱՅԻՆ ՈՒՍՈՒՑՈՒՄ, ԱՇԱԿԵՐՏԻ ՇԱՀԵՐ. ՆՈՐ ՉԱՓՈՐՈՇԻՉԸ ՀԱՍՏԱՏՈՒԵՑ

Կառավարութիւնը Փետրուարի 4-ի նիստին հաստատել է հանրակրթութեան նոր չափորոշիչը, որը ձեւակերպում է դպրոցից պետութեան ակնկալիքներն ու պահանջները, սահմանում ուսուցչի եւ դպրոցի կողմից կազմակերպուող աշխատանքների սկզբունքներն ու հանրակրթութեան բովանդակութիւնը: Փոփոխութիւնների նախագիծը հանրային քննարկման էր դրուել անցեալ տարուայ Յունիսին:

Չափորոշչի դրոյթներն ութն են. դրանք ամբողջապէս վերափոխում են կրթական պրոցէսի տրամաբանութիւնը՝ առարկայացանկից եւ դասաժամերից սկսած՝ դասաւանդման մեթոդներով, գնահատման համակարգով աւարտուած:

Նիստի ընթացքում Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի (ԿԳՄՍ) փոխնախարար Ժաննա Անդրէասեանը մանրամասնել է, որ հանրակրթութեան նոր պետական չափորոշիչը հիմնուած է կարողունակութիւնների վրայ: Սա նշանակում է, որ հաւասարապէս շեշտադրըւում են գիտելիքը, հմտութիւնը, դիրքորոշումներն եւ արժէքային բաղադրիչը՝ որպէս հանրակրթութեան հիմնական անելիք:



փոխնախարար
Ժաննա Անդրէասեան

Փոխնախարարի խօսքով՝ սահմանուել են վերջնարդիւնքներ կրթական երեք աստիճանների համար՝ տարրական, հիմնական եւ աւագ, ինչը հնարաւորութիւն է տալիս խուսափել այս պահին գործող առարկայակենտրոն մօտեցումից, որի պարագայում շեշտադրւում է այդ առարկաների ինքնաբաւ գոյութիւնը դպրոցում, եւ անցում կատարել ինտեգրուած մօտեցման, որը հնարաւորութիւն է տալիս «տեսնել տարբեր կապերը, առանձնացնել խաչուող գաղափարները եւ ամէն առանձին առարկայի միջոցով հասկանալ, թէ ինչպէս ենք նպաստում այդ ընդհանուր վերջնարդիւնքներին հասնելուն»:

Սա, ըստ Անդրէասեանի, թոյլ կը տայ նաեւ խուսափել կրկնութիւններից, առաւել արդիւնաւէտ օգտագործել ժամանակը, որ մենք ծախսում ենք դպրոցում, ինչպէս նաեւ երեխայի ժամանակը եւ դրա շրջանակում հանրային զարգացման աւելի շօշափելի արդիւնք ստանալ:

Նոր չափորոշիչն, այսպիսով, նուազեցնում է դպրոցականների ծանրաբեռնուածութիւնը՝ առանց բովանդակային ծաւալը կրճատելու:

Հանրակրթութեան պետական չափորոշչում առանձնացուելու են 7 ուսումնական բնագաւառներ եւ դրանց շրջանակում դպրոցները ստանալու են ընտրութեան հնարաւորութիւն՝ օրինակելի պլանի հիման վրայ ձեւաւորել իրենց սեփական մօտեցումները, ինչն, ըստ էութեան, նպաստում է դպրոցների ինքնավարութեան զարգացմանը:

Սահմանուել են չորս պարտադիր առարկաներ՝ հայոց լեզու եւ գրականութիւն, մաթեմատիկա, հայոց պատմութիւն եւ օտար լեզու, որոնք երաշխաւորուած ժամաքանակ ունեն բոլոր դպրոցներում:

Անդրէասեանը նաեւ նշել է, որ աշակերտների կարիքներից բխող մօտեցումների եւ, մասնաւորապէս, աւագ դպրոցի ռեֆորմ իրականացնելու հնարաւորութիւն կը տայ նաեւ անհատական բաղադրիչը:

«Մենք կարողանալու ենք հրաժարուել այս պահին գործող հոսքային ուսումից եւ անցնել անհատականացուած դասացուցակի՝ ըստ առանձին աշակերտի նախասիրութիւնների եւ մասնագիտական կողմնորոշման: Սա նաեւ թոյլ կը տայ այս պահին գործող այն անհաւասար իրավիճակը, որ ունենք քաղաքներում առանձին աւագ դպրոցների եւ հիմնականում գիւղական համայնքներում տեղակայուած միջնակարգ դպրոցների աւագ դասարանների պարագայում՝ այդ անհաւասարութիւնը վերացնել»:

Աւագ դպրոցի ռեֆորմին, Անդրէասեանի համոզմամբ, նպաստելու է նաեւ մոդուլային ուսուցումը, ինչը հնարաւորութիւն է տալու աւագ աստիճանում ունենալ ուսումնական մէկ տարուանից աւելի կարճաժամկէտ դասընթացներ եւ առաւել արդիւնաւէտ կերպով շեշտադրել մասնագիտական կողմնորոշումը:

7-րդ դասարանից սկսած կը ներդրուի նաեւ նախագծային ուսուցում, ինչը հնարաւորութիւն կը տայ զարգացնել սովորողների ինքնուրոյն, հետազօտական եւ ստեղծագործական կարողութիւնները, ինչպէս նաեւ իրականացնել համայնքային նախագծեր:

Փոփոխութիւններ են իրականացուելու գնահատման գործընթացում: Միաւորային գնահատումը (գնահատականները) պէտք է գործի 5-րդ դասարանի երկրորդ կիսամեակից: Այսինքն՝ տարրական դպրոցում առաջարկւում է հրաժարուել միաւորային գնահատման գործող ձեւից եւ կիրառել աւելի խրախուսող գնահատման ձեւեր: Փոփոխութիւններով առաջարկւում է նաեւ հրաժարուել անբաւարար գնահատականային շեմից եւ 10 միաւորանոց սանդղակում իւրաքանչիւր միաւոր դիտարկել իբրեւ առաջընթաց:

ԿԳՄՍ փոխնախարարն աւելի վաղ յայտնել էր, որ նոր չափորոշչի ներդրումը նախատեսւում է 2022-23 թուականներին: Մինչ այդ նախարարութիւնը մտադիր է լայնածաւալ վերապատրաստումներ իրականացնել եւ փորձարկել առարկայական չափորոշիչներն ու ծրագրերը, որոնք մշակուել են այս չափորոշչի հիման վրայ:

ԽՈՀԵՐ

## ԴՐՈՒԱԳ ՄԸ 'ԱՈՒԱԼԷՄ-ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵՆԷՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Լէյտի Տաֆ Կորտոն (1821, Ուեսթմինսթըր – 1869, Գահիրէ) առողջական պատճառներով չկարողանալով հանդուրժել Անգլիոյ կլիման, 1862-ին կը փոխադրուի Եգիպտոս, ուր կը մնայ մինչեւ կեանքին վախճանը:

Գահիրէի մէջ իրեն թիկունք կը կանգնին հայ կաթողիկէ Եուսուֆ պէյ Հէքէքեան եւ տիկինը, որոնց մասին բազմաթիւ անձնական անդրադարձումներ կան հարազատներուն հասցէագրած իր յայտնի նամակներուն մէջ: Ուրիշ առիթով հետաքրքրական պիտի ըլլար ներկայացնել այդ անդրադարձումները, բայց այստեղ կ'ուզէի բաւարարուիլ մէկ երեւոյթով՝ որ կապուած է եգիպտահայ բարձր դասակարգի եւ *'աուալէմ*ի յարաբերութեան հետ:

ԺԹ. դարու Եգիպտոսի զուարճութեան (entertainment) բնագաւառին մէջ կը գործէին *'աուալէմ*ները՝ ուսեալ կիներ, որոնք կը զբաղէին բանաստեղծութիւն եւ երաժշտութիւն յօրինելով, յանկարծաբանելով (improvising), երգելով եւ պարելով: Բարձր դասակարգի զուարճացնողներ էին եւ ընդունուած էր՝ որ անոնք առանց քօղի երեւային եւ իրենց արուեստը ներկայացնէին միայն կիներուն առջեւ:

Այսպէս, Գահիրէէն գրած 1862 Նոյեմբեր 11 թուակիր նամակին մէջ, Լէյտի Կորտոն կը տեղեկացնէ՝ թէ ինչպէս Հէքէքեանի շնորհիւ ան կը հրաւիրուի հայու մը բնակարանը, ներկայ գտնուելու հայկական կնունքի հանդիսութեան, ուր կը լսուի արաբական երաժշտութիւն եւ *զաղարիթ*, եւ ամենակարեւորը՝ կիներուն համար կ'երգէ Եգիպտոսի ամենայայտնի եւ ամենասուղ երգչուհին՝ Սաքնէ.

«Անցեալ Հինգշաբթի, ամերիկեան ընդհանուր-հիւպատոսին հետ երկաթուղիով եկայ [Գահիրէ] եւ ստիպուեցայ մնալ Շեփըրտ Պանդոկը, ուր քնանալէ զատ շատ քիչ բան ըրի: Զարգացած հայ տարիքաւոր մը՝ Հէքէքեան պէյ, ամէն օր հոգ կը տանի ինծի, իսկ ամերիկեան հիւպատոսը նուիրուած է ինծի:

«Կիրակի օրը գացի հայկական կնունքի եւ լսեցի Սաքնէն՝ «սիրտերու վերականգնող»-ը: Իր հրաշալի անձով եւ վարվելակերպով ան նման է Ռաշէլին, իսկ իր երգը շքեղութիւն մըն է արտայայտութեան եւ կիրքի: Մեծ ֆանթազիա կար: Մարդիկ կը խրախճանէին ամբողջ տան տարածքով, մինչեւ փողոցները: Կը հնչէր արաբական երաժշտութիւն, կիները *զաղարիթ* կը ձայնարկէին, սեւամորթ ծառաները կը սպասարկէին անուշեղէններ, ծխափայտեր եւ սուրճ, եւ կը վարուէին կարծէք մաս կազմէին ընկերութեան: Այն ուժեղ տպաւորութեան տակ էի՝ որ կը գտնուէի Նուր Ալ-Տինի հարսանիքին վեզիրի դստեր հետ: [...]

«Սաքնէ՝ արաբ Կրիզին, 55 տարեկան է: Կ'ըսեն՝ որ դէմքը տգեղ է: Քօղով ծածկուած ըլլալուն տեսանք միայն իր աչքերը եւ բերանին նշոյլները՝ ջուր խմած ժամանակ: Բայց ան ունէր ընձառիւծի (leopard) կերպարանք, համակ նրբութիւն եւ գեղեցկութիւն, եւ իր տեսակին մէջ հոյակապ ձայն մը՝ Մալիպրանին նման բիրտ բայց ցնցող: Ինծի թուեցաւ 30, թերեւս 35 տարեկան ըլլալ: Երբ կը յանկարծաբանէր (improvised), կը յափշտակէր իր ողջ ոճի նրբութեամբ ու վայելչագեղութեամբ, եւ քիչ մնաց տեղացիներուն նման սրտագին գոչէի՝ «մաշա-ալլահ»: Ութ աւելի երիտասարդ «ալիմեհ»-ները (այսինքն՝ «զարգացած կիներ», զորս մենք անգլիացիներս կը կոչենք ալմէհ եւ կը կարծեմ անյարմար բառ մըն է ան) տգեղ էին եւ կը պոռչըտային: Իր երգերուն միջեւ Սաքնէ կը խօսէր հայ տիկիններուն հետ, որոնք անոր հետ կը վարուէին մեծ յարգանքով եւ գրեթէ իբրեւ բարեկամ: Ան մահմետական է, շատ հարուստ եւ գթասէր: Մէկ գիշերուայ երգեցողութեան համար կը ստանայ առ նուազն 50 ոսկի» (Lady Duff Gordon, *Letters from Egypt, 1863-65*, London: Macmillan and Co., 1865, pp. 9-10, 13-14):

Լէյտի Կորտոնի նկարագրածը եգիպտական բարձր դասակարգի ընդունելութիւն-հանդիսութեան տիպական պատկեր մըն է: Սաքնէի նման դէմքի մը ելոյթը ցուցանիշն է հրաւիրողներու բարձր վարքին եւ արժանապատուութեան:

Այսօրուայ դիտանկիւնով հետաքրքրական է դիտել, որ մահմետական *'աուալէմ* Սաքնէ կը հրաւիրուի երգելու հայկական քրիստոնէական կնունքի հանդիսութեան: Իսկ Սաքնէի բարեկամական խօսակցութիւնը հայ ազնուատոհմ կիներուն հետ պիտի նշանակէ՝ որ հայ դասակարգի եւ *'աուալէմ*ի յարաբերութիւնը յաջորդական աշխատանքի բերումով դարձած էր մտերիմ:

Կամ, կարելի է ըսել, հայ բարձր դասակարգը կրնար ինքզինքը նոյնացնել *'աուալէմ*ի հետ, որ յարգուած տարր մըն էր հասարակութեան մէջ, ի տարբերութիւն նոյն ժամանակ գործող կին զուարճացնող *ղաուազի*ներուն, որոնք կը ներկայացնէին «ցած» դասակարգը եւ որոնց հասարակութիւնը կու տար անբարոյականութեան հրապոյր մը:

Այդ նոյնացումը անկարելի բան մըն է *'աուալէմ*ներու այսօրուայ շարունակութիւնը հանդիսացող (անշուշտ, բոլորովին այլ հարթութեան վրայ եւ այլ բովանդակութեամբ) արեւելեան պարուհիներուն եւ եգիպտահայ ներկայ գաղութին միջեւ: Կրնա՞յ երբեւէ եգիպտահայութիւնը ինքզինքը նոյնացնել, օրինակ, Եգիպտոսի այսօրուայ թիւ 1 պարուհիին՝ Ծովինարին (Գրիգորեան) հետ: Անբարոյականութեան հարցը դարձած է համատարած՝ բոլոր պարուհիներուն նկատմամբ, առանց «բարձր»-ի եւ «ցած»-ի տարբերութեան, ամբողջ Եգիպտոսի (ոչ միայն հայկական) մակարդակով:

Առաւել եւս, եգիպտահայ ազգային արժանապատուութիւնը չի կրնար ինքզինքը նոյնացընել պարուհիներուն հետ, այն պարզ պատճառով՝ որ հայերս անոնց համար որդեգրած ենք Ի. դարու սկիզբը եւրոպացի արեւելապաշտներուն (orientalist) հնարած պորտապարուհի (belly-dancer) եզրոյթը, փոխանակ տեղական-եգիպտական արեւելեան պարուհի (*ռաքեսա շարքէյա*) անուանումին, չմոռնալով, որ *ռաքեսա շարքէյա*ն եւս եգիպտական շրջանակի մէջ կը կրէ անբարոյականութեան արգիլուած հրապոյր: Բայց պորտապարուհին աւելի ուժեղ է: Երկու եզրոյթներ նոյն արհեստին համար, մէկը՝ արեւելապաշտական, միւսը՝ տեղական: Հայերս՝ Արեւելք ըլլալով հանդերձ, նախընտրեցինք արեւելապաշտութիւնը:

Նոյնպէս, կրնա՞յ երբեւէ եգիպտահայութիւնը այսօր ինքզինքը նոյնացնել եգիպտական-արաբական երգ-երաժշտութեան եւ *զաղարիթ*ներուն հետ, առաւել եւս քրիստոնէական կնունքի ժամանակ:

Այս խնդիրները ԺԹ. դարուն տակաւին չէին դրուած, հետեւաբար, խնդրայարոյց չէին կրնար ըլլալ: Խնդիրը՝ չկար:

ՃԱՇԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

2

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

59. «[Ձ]այնը հնչեղ է ու ընդարձակ, բայց առանց հաճութեան» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Raoul Aubry, 'Courrier des théâtres: les concours du Conservatoire', *Gil Blas*, 28 juin 1910, 31e année, no. 12189, p. 3):

60. «Ընտիր ձայնով կիսատիպարային (demi-caractère) թենոր մըն է, որ լաւ հատուցանեց Քերիւպինիի *Abencérages*-ի արիաներէն մէկը» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Nicolet, 'Conservatoire', *Le Gaulois*, 28 juin 1910, 45e année, no. 11945, p. 4):

61. «[Ո]ւնի լաւ ձայն մը՝ լաւ դրուածքով» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Eugène Héros, 'Au Conservatoire', *La Lanterne*, 29 juin 1910, trente-troisième année, no. 12,120, p. 3):

62. «Ձայնը՝ վատ դրուածքով, ոչ ընդարձակութիւն ունի, ոչ ալ կորով» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Arthur Pougin, 'Les concours du Conservatoire', *Le Ménestrel*, 2 juillet 1910, 76e année, no. 27, p. 211):

63. «Պր. Շահ-Մուրատեան խիստ առոյգ թենոր մըն է, որուն թէմպրը բաւական ջերմ է միջին ձայնամասին մէջ, բայց որոշ դժուարութիւններով կը հասնի բարձր ձայնանիշներուն» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Pierre Lalo, 'La musique', *Le Temps*, 12 juillet 1910, cinquantième année, no. 17910, p. 2):

64. «[Տ]արօրինակ թենոր մը՝ անվստահ ու ռնգային, բայց հեշտ ու ուժեղ ձայնով, անկարող, ամէն պարագայի, դիմակայելու բեմը» [Տեսարան *L'Attaque du Moulin*-էն] (R. A., 'Les concours du Conservatoire', *Gil Blas*, 5 juillet 1910, 31e année, no. 12196, p. 3):

65. «Պր. Շահ-Մուրատեան չբարելաւեց իր ձայնի փայլուն որակը, բարձր ձայնանիշները կը հրէ հնչիւնէն դուրս ճիչեր արձակելու աստիճան, սորվելիք շատ բան ունի՝ որ հաւանաբար երբեք չիրականացնէ» [Տեսարան *L'Attaque du Moulin*-էն] (Georges Boyer, 'Les concours du Conservatoire', *Le Petit journal*, 5 juillet 1910, quarante-huitième année, no. 17, 357, p. 2):

66. «Պր. Շահ-Մուրատեան՝ որ ունի թենորի թանձր բայց անբաւական ձայն մը, յանիրաւի մրցեցաւ *L'Attaque du Moulin*-ի արիայով, որ շատ լարուած էր իր համար, առիթ տալով քանի մը ցաւալի անհարթութիւններու» [Տեսարան *L'Attaque du Moulin*-էն] (F. Mohisson, 'Concours du Conservatoire', *Le Journal*, 5 juillet 1910, no. 6491, p. 2):

67. «Պր. Շահ-Մուրատեան [...] տակաւին կը պահպանէ զգալի ռնգային չեշտ, որ խանգարեց իրեն վաստակելու այն յաջողութիւնը՝ որուն արժանի է իր գեղեցիկ ձայնը եւ խղճամիտ արուեստը» [Տեսարան *L'Attaque du Moulin*-էն] (Camille de Sainte-Croix, 'Le théâtre', *La Petite république*, 5 juillet 1910, trente-cinquième année, no. 12499, p. 2):

68. «[Ե]րբեմն ձայնին արձակումը այնքան ապահով չէ, բայց ձայնը ինքնին թենորի յստակ ձայն մըն է՝ ճկուն եւ հաճելի» [Տեսարան *Aida*-էն] (Adolphe Aderer, 'Au Conservatoire: le concours d'opéra', *Le Petit parisien*, 10 juillet 1910, trente-cinquième année, no. 12, 307, p. 2):

69. «[Ե]րիտասարդ օտար թենոր մը, որուն ձայնը փափուկ է եւ վեհանձն, բայց ունի ձայնական լուրջ պակասութիւններ» [Տեսարան *Aida*-էն] (Nicolet, 'Conservatoire', *Le Gaulois*, 10 juillet 1910, 45e année, no. 11957, p. 2):

70. «[Ա]ն երգեց *Aïda*-ի քանի մը բարձր ձայնանիշներ՝ որոնք կարեւորեցին իր ելոյթը» [Տեսարան *Aida*-էն] (Jean Drault, 'Au Conservatoire', *La Libre parole*, 10 juillet 1910, no. 6654, p. 2):

71. «Շատ գեղեցիկ ձայն» [Տեսարան *Aida*-էն] (Eugène Héros, 'Au Conservatoire', *La Lanterne*, 11 juillet 1910, trente-troisième année, no. 12,132, p. 2):

72. «Պր. Շահ-Մուրատեան ունի ամուր ձայն մը» [Տեսարան *Aida*-էն] ('Les concours du Conservatoire', *Le Journal du dimanche*, 15 juillet 1910, nouvelle série, no. 87, p. 458):

(Շար. 2)

1

## ԿԵՂԾ ԼՈՒՐԵՐՈՒ ՏԱՐԱՓԸ

2021, https://fip.am/14645):

Ան ստեղծուեցաւ պատերազմէն անմիջապէս ետք՝ 2020 Նոյեմբեր 11-ին: Սկիզբը կը ներկայացնէր յետագային կայանալիք իրադարձութիւններու մասին տեղեկութիւններ, որոնք հրապարակումէն օրեր կամ ժամեր ետք կը դառնային իրականութիւն: Օրինակ, Պաշտպանութեան Նախարար Դաւիթ Տոնոյեանի, Արտակարգ Իրավիճակներու (ԱԻՆ) նախարար Ֆելիքս Ցոլակեանի, Արտաքին Գործոց փոխնախարար Շաւարշ Քոչարեանի աշխատանքէ ազատումներուն մասին լուրերը: «Սա թոյլ է տալիս ենթադրել, որ ալիքի յետեւում կանգնած անձինք աղբիւրներ ունեն իշխանութեան մէջ», կը նշէ Ղազարեան: Աւելի յստակ, ներքին լրտեսական ցանցեր կը գործեն ներկայ իշխանութեան դէմ:

Նոյեմբեր 11-ին Mediaport կը յայտնէր, որ Երեւան մտնող բոլոր ճանապարհները փակած է ոստիկանութիւնը եւ մարդիկ ստիպուած քալելով կը տեղափոխուին, բայց իրականութեան մէջ ոստիկանութիւնը կը ստուգէր երթեւեկութեան միջոցները՝ պատերազմէն ետք ապօրինի զէնք յայտնաբերելու նպատակով, իսկ ճանապարհները փակ չէին եւ քալող մարդիկ չկային:

Նոյեմբեր 16-ին կը գրէր, որ Ազգային Ժողովի փոխխօսնակ Ալէն Սիմոնեան գործուղումէն չէ վերադարձած եւ թաքնուած կը մնայ Մոսկուա, քանի որ Ռուսաստանի հայ համայնքը կը փնտռէ զինքը՝ Արցախի հարցով հաշուեյարդար տեսնելու համար: Սիմոնեան օրեր առաջ վերադարձած էր Մոսկուայէն եւ Նոյեմբեր 16-ին կը վարէր ԱԺ-ի Նիկոլ Փաշինեանի եւ պատգամաւորներուն հանդիպումը:

Նոյեմբեր 20-ին կը տեղեկացնէր՝ որ մահացած է Արցախի թեմի առաջնորդ Պարգեւ Սրբազան, որ շուտով կը յայտնուի հանրութեան առջեւ:

Յունուար 17-ին կը գրէր, որ Փաշինեանի տիկնոջ՝ Աննա Յակոբեանին փոխանցուած է Տուպայի Ալիեւներուն պատկանող անշարժ գոյքի սեփականութեան ծրարը:

Եւ նման անթիւ սուտեր: Չհաշուելով դեղին մամուլի, դաւադրութեան տեսութիւններու, բամբասանքային տեղեկութիւններու անվերջանալի շարանը:

Ալիքը հանդէս կու գայ իշխանութիւններուն եւ անոնց մերձաւորներուն վերաբերեալ կեղծ տեղեկութիւններով, որոնք աշխոյժ տարածում կը գտնեն:

Ուսումնասիրելով ալիքը եւ զայն համեմատելով այլ աղբիւրներու հետ, Ղազարեան կը հասնի այն արդիւնքին՝ որ Mediaport «ուղիղ կապ ունի ծայրայեղ պահպանողական ՎԵՏՕ շարժման, ինչպէս նաեւ դրա հիմնադիր, նախկին ոստիկանապետ Վլադիմիր Գասպարեանի խորհրդական Նարեկ Մալեանի հետ»:

Ղազարեան կը յաջողի բաւական շատ փաստեր յայտնաբերել ու մանրամասնել, որոնց մասին անկարելի է այստեղ անդրադառնալ: Համառօտագրելու համար միայն քաղեմ, որ վերբեռնուած վիտէօները տեսագրողներուն մէջ կարելի է հանդիպիլ ՎԵՏՕ շարժումի անդամներ Աննա Յակոբեանին եւ Հերմինէ Գրիգորեանին, իսկ 17 կուսակցութիւններուն իրականացուցած ապակեդրոն բողոքի ցոյցերը լուսաբանելու ժամանակ, Mediaport տեսանիւթեր եւ լուսանկարներ կը տեղադրէ ճիշդ այն վայրերէն՝ ուր տուեալ պահուն կը գտնուի Նարեկ Մալեան:

Mediaport-ը՝ մէկ կողմէ, եւ Նարեկ Մալեանն ու ՎԵՏՕ-ի անդամները՝ միւս կողմէ, միաժամանակ կը հրապարակեն նոյն գրառումներն ու տեսանիւթերը, յաճախ նոյն նիւթերը տարածելով երկվայրկեաններու տարբերութեամբ: Յետագային Մալեան սկսաւ աւելի բացայայտ կերպով ծանուցանել Mediaport-ը:

Mediaport-ի միջոցով Սեւադա Ղազարեան կը բացայայտէ նաեւ ցանցային յարաբերութիւնները եւ լրատուամիջոցներու իրերամէջ ազդակցութիւնները:

Օրինակ, Mediaport-ի լուրերը անմիջապէս տարածող եւ անկէ անընդհատ մէջբերումներ կատարող *Tert.am* կայքը եւ *ArmNews* հեռատեսիլը «պատկանում են Քառեակ Մեդիա ընկերութեանը: Ընկերութիւնը հիմնադրուել է 2019 թ. Փետրուարին Հանրապետական Խմբակցութեան նախկին պատգամաւորներ Արման Սաղաթելեանի, Սամուէլ Ֆարմանեանի, Կարէն Բեքարեանի եւ Միհրան Յակոբեանի կողմից: Մինչ այդ, երկու լրատուամիջոցները մտնում էին Պանարմենիան Մեդիա Գրուպ ընկերութեան մէջ, որը պատկանում էր Վատիկանում Հայաստանի նախկին դեսպան, Սերժ Սարգսեանի փեսայ Միքայէլ Մինասեանին:

«Քառեակ Մեդիայի հիմնադիրները սերտ կապեր ունեն Նարեկ Մալեանի հետ, աւելին՝ վերջին շրջանում իրականացուող բողոքի ակցիաներին յաճախ մասնակցում են միասին»:

Ղազարեան կ'եզրակացնէ. «Փաստացի, թէեւ առկայ փաստերը ծանրակշիռ հիմքեր են տալիս պնդելու, որ Mediaport տելեգրամեան ալիքի յետեւում կանգնած է ՎԵՏՕ շարժումը՝ Նարեկ Մալեանի գլխաւորութեամբ, սակայն վերը նշուած լրատուականների կողմից «անյայտ» ալիքի ակտիւ տարածումն թոյլ է տալիս ենթադրել, որ Mediaport-ի յետեւում կանգնած է մի ամբողջ ցանց, որը այս ալիքի միջոցով տեղեկատուական դաշտը լցնում է կեղծ, մանիպուլեատիւ կամ բամբասանքի մակարդակի տեղեկութիւններով»:

### ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Բացայայտուածը լոկ փոքր մաս մըն է հասարակական ցանցերու ֆէյքերու «բանակ»-ի մը, որ կը հետապնդէ վերոյիշեալ միեւնոյն նպատակները:

Արդարեւ, *Փաստերի ստուգման հարթակը* երեւան կը հանէ քանի մը իրականութիւններ:

Ներկայ իշխանութեան մէջ սպրդած են անանուն անձեր, որոնք լուրերը կանխապէս դուրս հանելով, կը գործեն այն իշխանութեան դէմ՝ որուն մաս կը կազմեն: Ասիկա տրամաբանօրէն պիտի նշանակէ, որ իշխանութեան ներսը գործող այդ անձերուն հակափաշինեանական գործունէութիւնը շատ աւելի լայն է: Լուրերու կանխապէս դուրս արտածումը լոկ բացայայտուած կողմն է:

Լրատուային ցանցերու իրերամէջ առնչութիւնները նէօլիպերալ ընդհանուր համակարգի վտանգաւոր առանձնայատկութիւն մըն է: Տուեալ պարագային կը բացայայտուի Mediaport-էն մինչեւ Սերժ Սարգսեանի փեսան՝ Միքայէլ Մինասեանը գացող ուղի մը:

Կեղծ լուրերու տարափը գարձած է անսահման: Կեղծ լուրերը հասարակութեան համատարած համոզումի աստիճանին հասցնելը դիւրին աշխատանք չէ: Ան կը պահանջէ ունենալ լուրջ դրդապատճառ, կազմակերպուած խումբ, յարաբերութիւններու ցանց:

Կեղծ լուրեր տարածելը գիտութիւն է:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly



P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1886 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՓԵՏՐՈՒԱՐ 2021 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* عدد رقم ١٨٨٦ الخميس ٢٥ فبراير ٢٠٢١


## ՎԻԳԷՆ ՉԸԹԸՐԵԱՆ ԵՒ ՍՓԻՒՌՔԻ ԳՈՐԾՕՆԸ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

Փետրուար 10-ին, *ՍիվիլՆէթ* կը տեսասփռէ հարցազրոյց Ժընեւի եւ Ուէպսթըր համալսարաններու դասախօս՝ տոքթ. Վիգէն Չըթըրեանի հետ, ուր կը խօսի ղարաբաղեան վերջին պատերազմի ձախողութեան մէջ Սփիւռքի ունեցած դերակատարութեան մասին, իբրեւ արդիւնք վերջին 30 տարիներու սփիւռքեան քաղաքականութիւններուն:

Իր շահեկանութեան համար, յարմար դատեցի զայն գրառել եւ ներկայացնել *Ջահակիր*ի պատուական ընթերցողներուն, ձեւաւոր-ալեձեւ փակագիծերու ({}) միջոցով զանց առնելով քանի մը բառեր եւ անուններ՝ որոնք կ՚անցնին Սփիւռքի կարմիր գիծերը:

Սփիւռքի վերնախաւը կը յատկանշուի ինքնապաշտպանական անխոցելիութեամբ: Չունի ենթականերուն բարեկեցութեան պատասխանատուութիւն՝ քանի որ անոնց հարստութիւնն ու աղքատութիւնը կապուած են հիւրընկալ երկիրի կացութենէն, չունի պատերազմելու եւ հողեր կորսնցնելու վտանգ՝ քանի որ հողերը կը պատկանին հիւրընկալ երկիրին, չունի պատերազմներու հետեւանքով տեղափոխուած սփիւռքահայերը (Լիբանան, Իրաք, Սուրիա) վերաբնակեցնելու պարտականութիւն՝ քանի որ ինքը պատասխանատու չէ այդ արհաւիրքներուն: Այս բոլոր պատասխանատուութիւնները ունի Հայաստանը՝ Հայաստանի մէջ: Կարելի՞ է իր չունեցած պատասխանատուութեան անունով քննադատէ Հայաստանի ունեցած պատասխանատուութիւնը:

Սփիւռքը ոչ մէկ բանի ինքզինքը յանցաւոր կը զգայ, նոյնիսկ երբ պաշտօնապէս ԻՒՆԵՍՔՕ կը յայտարարէ արեւմտահայերէն լեզուին վտանգը, ճիշդ այն լեզուն՝ որուն պաշտպանութիւնը ստանձնած էր Սփիւռքի վերնախաւը, վերնախաւ մը՝ որուն կարեւոր մասը, յատկապէս Արեւմուտքի մէջ, հայերէն անգամ չի խօսիր:

Սփիւռքի անքննադատելիութիւնը (բացի յատուկ չափանշուած եւ ի վերուստ արտօնուած կեղծ ու անվնաս ազգային նիւթերէ) ցոյց կու տայ անոր անհամերաշխութիւնը ինքն իր հետ, ինքնապաշտպանուածութեան գրեթէ բացարձակ աստիճանը:

Բայց եթէ Սփիւռքը 30 տարի փորձած է մուտք գործել Հայաստանի քաղաքականութիւն՝ ձգտելով ոչ թէ ղեկավար առաջնորդի այլ ենթակայի կարգավիճակի, եւ այդ ենթակայի դրութեան մէջ ինքզինքը զգացած յարմար, հանգիստ ու քօղարկուած, ուրեմն ունի իր պատասխանատուութիւնը ներկայ պարտութեան մէջ: Ասոր մասին է որ կը փորձէ արտայայտուիլ Վիգէն Չըթըրեան, անկախ իր բերած առարկութիւններէն, որոնց մասին կրնանք համաձայնիլ կամ ոչ: Զրոյցին հիմքը Սփիւռքի ինքնավերափոխութեան հեռանկարն է:

*ՍիվիլՆէթ*ի հարցազրոյցը վարեց Արէն Քերթեշեան:

Ա.

**Արէն Քերթեշեան – Պատերազմի ընթացքին երկար խօսեցանք աշխարհաքաղաքական, քաղաքական, դիւանագիտական, ռազմական հարցերու մասին: Այսօր եկէք անդրադառնանք Սփիւռքին: Պատերազմի ընթացքին, սփիւռքեան համայնքները բաւական աշխոյժ էին: Ինչպէ՞ս կը գնահատէք սփիւռքեան համայնքներուն որդեգրած քաղաքականութիւնը, մօտեցումները, եւ այլն:**

Վիգէն Չըթըրեան – Այս պատերազմի ժամանակ ոչ միայն Հայաստանը եւ Ղարաբաղը պարտուեցան, Սփիւռքը եւս պարտուեցաւ: Եթէ վերցնենք վերջին 30 տարուայ Սփիւռքի տարած քաղաքականութիւնը, Սփիւռքի կառոյցներու, Սփիւռքի կուսակցութիւններու, Սփիւռքի հիմնական դերակատարներու, այդ հիմնական ուղղութիւններու մէջ այսօր կը տեսնենք որ Սփիւռքը պարտուած է: Ի՞նչ քաղաքականութիւն տարած է Սփիւռքը վերջին 30 տարիներու ընթացքին: 1988-էն ի վեր, Սփիւռքը պայքարած է հիմնական երեք ծրագիրներու շուրջ:

Առաջինը՝ Հայաստանին նեցուկ կանգնիլ եւ օգնել զարգացման մէջ: Այսօր կը տեսնենք, որ այդ երեք տասնամեակներու աշխատանքները բերած են պարտութեան. այսօր չունինք զարգացած Հայաստան, ունինք բաւական նախնական Հայաստան՝ որ չկարողացաւ դէմ կենալ այս պատերազմի վտանգին եւ պարտութեամբ վերջացաւ երկրորդ Ղարաբաղի պատերազմը:

Երկրորդ ծրագիրը որուն շուրջ Սփիւռքը պայքարած է՝ նեցուկ կենալ Ղարաբաղին: Դարձեալ այս ծրագրին մէջ Սփիւռքը պարտուած է:

Իսկ երրորդ հիմնական պայքարը զոր Սփիւռքը տարած է՝ 1915-ի Ցեղասպանութեան ճանաչումը: Այսօր կը տեսնենք որ այդ ճանաչման տուեալը ոչ մէկ տեղ հասցուցած է մեզ, եւ այդ պայքարը մեզի քաղաքական տուեալ չէ դարձուցած [կը վախնամ, որ Ղարաբաղի հարցը եւս յետագային միջազգային ատեաններուն մէջ բաւական աղմուկ բարձրացնել տալէ ետք նոյնպէս չդառնայ քաղաքական տուեալ, Ա.]: Այսինքն, երբ կը տեսնենք որ 2020-ին Թուրքիան ուղիղ կը միջամտէ Ղարաբաղի պատերազմին եւ Հայաստանն ու հայութիւնը մինակ կը դիմագրաւեն Թուրքիոյ այդ քայլը, ըսել է որ այդ 30 տարուայ պայքարը Ցեղասպանութեան շուրջ մեզ հասցուց պարտութեան: Ցեղասպանութիւնը չդարձաւ տուեալ:

Վիգէն Չըթըրեան

Ուրեմն, ես կը խորհիմ որ ժամանակն է վերանայելու Սփիւռքի տարած քաղաքականութիւնը, վերագնահատելու՝ արդեօ՞ք այս քաղաքականութիւնը ճիշդ էր, արդեօ՞ք միջոցները զոր ունէինք պէտք է այս ուղղութեամբ ըլլային, եւ զարգացնել ուրիշ քաղաքականութիւն: Ժամանակն է:

**Ա. Ք. – Ըստ ձեզի, ուրեմն, այդ երեք ուղղութիւններով ինչպէ՞ս պէտք է աշխատէր Սփիւռքը:**

Վ. Չ. – Հիմնական սխալը Սփիւռքին՝ Սփիւռքի կազմակերպութիւններուն, Սփիւռքի կուսակցութիւններուն, այն էր որ միջամտեց Հայաստանի ներքաղաքական կեանքին: Վերադառնալ սկիզբին՝ Մարտ 1988. Սփիւռքի երեք աւանդական կուսակցութիւնները դիրքորոշում ունեցան այստեղ զարգացող շարժումին դէմ՝ Ղարաբաղեան շարժումին դէմ, ըսելով որ մենք չենք կրող հակառուսական (այն ժամանակ՝ հակասովետական), Մոսկուայի դէմ քաղաքականութիւն որդեգրել, երբ ունինք Թուրքիա իբր թշնամի: Այսինքն, այդ ժամանակ Սփիւռքի երեք կուսակցութիւնները անծանօթ էին Հայաստանի մէջ զարգացող քաղաքական-ընկերային շարժման: Մէկ ու կէս տարի ետք, {Սփիւռքը} իր թեկնածութիւնը առաջարկեց այստեղ նախագահական ընտրութիւններուն {...}: Եկէք այս երկու գաղափարները քով-քովի դնենք, եւ տեսնենք որքան հսկայական է մեր սխալը: Չհասկնալով Հայաստանի մէջ զարգացող քաղաքական իրողութիւնները, {Սփիւռքը} 1990-ին կ՚առաջարկէր դառնալ Հայաստանի ղեկավար: Կը հասկնա՞ք ուր է սխալը: Մենք Սփիւռքի մէջ չէինք հասկնար, կարող է մինչեւ այսօր շատ բան չենք հասկնար Հայաստանէն, բայց կը փորձենք միջամտել Հայաստանի ներքաղաքական կեանքին: Նոյն բանը եղաւ 2018-ին:

Ես կը խորհիմ որ Սփիւռքը ինքը իրաւունք չունի միջամտելու Հայաստանի ներքաղաքական կեանքին: Իմ տեսակէտս այն է՝ որ Սփիւռքի քաղաքական հիմնական կառոյցներուն դերը Սփիւռքը ղեկավարելն է, եւ իրենք գալով Հայաստան եւ փորձելով Հայաստանի մէջ քաղաքական տուեալ դառնալ, թողեցին Սփիւռքը անղեկավար: Մենք այսօր 30 տարուայ ընթացքին հսկայական զարգացումներ տեսած ենք Սփիւռքի մէջ. Սփիւռքը ձեւափոխուած է, տեղափոխուած է, Սփիւռքը այլեւս չէ այդ հին Սփիւռքը: Այսօր Սուրիոյ համայնքը գրեթէ չկայ, Իրաքի մէջ

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑԻ ՈՐՈՇ ՄԵՍԻՋՆԵՐ ՄԱՆԻՊՈՒԼԱՏԻՒ ԷԻՆ. ՀԱԿԱԴՐՒՈՒՄ ԷՐ ՆԱԵՒ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ. Գ. ՄԱԴՈՅԵԱՆ

ԱՆԻ ԱՐԱՄԻ

Սերժ Սարգսեանի հարցազրոյցի որոշ մեսիջներ մանիպուլատիւ էին, սակայն որոշ հատուածը հակադրւում կամ պատասխան էր Ռոբերտ Քոչարեանին: *NewArmenia.am*-ի հետ զրոյցում նման տեսակէտ յայտնեց քաղաքական վերլուծաբան Գոռ Մադոյեանը:

Նա մանիպուլացիոն շարքի մէջ ներառեց 1 մլրդ 300 մլն դոլար ներդրման, 1000 անօդաչու սարքերի ձեռքբերման մասին յայտարարութիւնները:

«Մանիպուլացիա է նաեւ նրանով, որ առնուազն մինչեւ 2018 թ.-ի յեղափոխութիւնն իրենք ժամանակ ունէին այդ ծրագրերը կեանքի կոչելու համար, բայց պայմանական 100-500 Անօդաչու Թռչող Սարքեր (ԱԹՍ) չկային: Կամ ասում են՝ յաղթեցինք Ապրիլեան Պատերազմում, բայց ինչպէ՞ս են յաղթել, երբ 800 հեկտար տարածք են կորցրել: Աւելին՝ Անվտանգութեան Խորհրդի քարտուղար Արմէն Գրիգորեանն էլ օրերս յայտարարեց, որ Ապրիլին պատերազմը կանգնեցուել է Սերժ Սարգսեանի ինչ-ինչ խոստումների արդիւնքում: Սարգսեանը պնդեց, որ ինքն իշխանութիւնը յանձնել է ոչ թէ Նիկոլ Փաշինեանին, այլ Կարէն Կարապետեանին, ինչը նոյնպէս մանիպուլացիա է, քանի որ Նիկոլ Փաշինեանին խորհրդարանում ՀՀԿ-ն է ընտրել վարչապետ, իսկ ՀՀԿ-ն, չեմ յիշում դէպք, որ յայտարարած լինի, որ այլեւս Սերժ Սարգսեանի կուսակցութիւնը չի կամ չի առաջնորդւում Սերժ Սարգսեանի գլխաւորութեամբ», - ասաց նա:

Մադոյեանը մանիպուլացիա համարեց նաեւ Սերժ Սարգսեանի՝ բանակի հետ կապուած շեշտադրումները:

«Խօսել բանակի հետապնդումների մասին, որի արդիւնքում մենք պարտութիւն ենք կրել մանիպուլացիա է: Մի դէպք է եղել՝ կապուած Եուրի Խաչատուրովի հետ, բայց իշխանութիւնների քաղաքական որոշումն էր նրան ՀԱՊԿ-ից յետ կանչելը, վերջիվերջոյ, Հայաստանում անձեռնմխելիներ չկան: Բանակի ընդհանուր վիճակի մասին ասում է, որ մարտունակ բանակ է եղել, բայց տարածաշրջանի ամենաուժեղը չի եղել, կամ չխօսել ու նուազեցնել պատերազմում Թուրքիայի ներգրաւուածութեան մասին, սա էլ մանիպուլացիա է, քանի որ բոլորս գիտենք, որ փաստացի Հայաստանին յաղթել է Թուրքական շտաբը՝ Ռուսաստանի թողտուութեամբ ու Ադրբէջանի ձեռքերով», - շարունակեց Գոռ

↳ 2

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

## Բ. ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԴԵՐԱՍԱՆՈՒԹԻՒՆ

Մեկնաբանական հարցերը համեմատաբար աւելի յարաբերական կրնան ըլլալ քան ձայնական եւ թեքնիքական հարցերը:

Շահ-Մուրատեանի մեկնաբանութեան մէջ ֆրանսացի լրագրա-քննադատները գտած են՝ զգացում, զգայնութիւն, ճաշակ, կրակ, ջերմութիւն, փայլք, հմայք, հրապուրանք, թովչութիւն, նրբութիւն, անկեղծութիւն, խղճմտանք, ուշիմութիւն, արտայայտչականութիւն, անվեհերութիւն, տռամաթիք խառնուածք, իտալական օփերայի անհրաժեշտ չափազանցութիւն, բայց նաեւ սառնութիւն, տժգունութիւն, ճշգրտութեան պակաս, անպիտան ոճ:

Իբրեւ դերասան, Շահ-Մուրատեան երբեք անյաջող չէ, ունի արտայայտիչ, զգաստ եւ խոհական խաղարկութիւն, ունի դերասանական քաղցրութիւն եւ որոշ պարզ զգացում:

Դարձեալ իբրեւ դերասան, կը պակսին դերասանական ջերմութիւնն ու շարժումը, ունի քիչ մը բռնազբօսիկ եւ անպատշաճ շարժուձեւեր, կիսով չափ լարուած երկու բազուկներ եւ կորացած սրունք:

Ստորեւ, մեկնաբանութեան եւ դերասանութեան հետ կապուած արտայայտութիւնները.

1. «Իբրեւ դերասան, կը պակսին ջերմութիւնն ու շարժումը» [Տեսարան *Armide*-էն] (‘Conservatoire’, *Com dia,* 8 juin 1908, 2e année, no. 252, p. 4):

2. «Իբրեւ դերասան, ան ունի քաղցրութիւն եւ որոշ պարզ զգացում» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Faublas, ‘Avant les concours du Conservatoire: mines et talents’, *Com dia,* 24 juin 1908, 2e année, no. 268, p. 3):

3. «Ան ունի ընտիր յատկանիշներ բայց մասնաւորապէս քաղցրութիւն, քաղցրութիւն, քաղցրութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (La Lâche anonyme, ‘Avant les concours du Conservatoire: notes et portraits’, *Gil Blas,* 28 juin 1908, 29e année, no. 10.470, p. 3):

4. «[Ա]ն կ’երգէ զգացումով՝ ունի կրակ, փայլք, անկեղծութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Nicolet, ‘Conservatoire’, *Le Gaulois,* 3 juillet 1908, 43e année, no. 11220, p. 3):

5. «[Ո]ւնի խաղարկութիւն եւ զգայնութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (A. M., ‘Au Conservatoire: concours de chant (hommes)’, *Le Rappel,* 4 juillet 1908, 15 messidor, an 116, no. 13994, p. 2):

6. «[Ունի] արդէն ուշիմութիւն եւ արտայայտչականութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (‘Les Concours du Conservatoire’, *La Gazette de France,* 4 juillet 1908, 277e année, p. 3):

7. «Ան *Ժոզէֆ*ի արիան երգեց բարձր հմայքով եւ ճարպիկութեան ու անփորձառութեան բաւական զուարճանալի խառնուրդով» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Pierre Lalo, ‘La Musique’, *Le Temps,* 7 juillet 1908, quarante-huitième année, no. 17179, p. 3):

8. «Մեհիւլի *Ժոզէֆ*ի արիան երգեց իբրեւ արդէն կազմաւորուած արուեստագէտ» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Camille le Senne, ‘Revue musicale’, *Le Siècle,* 9 juillet 1908, soixante-treizième année, no. 26486, p. 1):

9. «Զգայնութիւն, նրբութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Albert du Moulin, ‘Les Concours du Conservatoire’, *Le Grand national,* 9 juillet 1908, septième année, p. 2):

10. «[Ա]ն խիստ շնորհալի կերպով երգեց *Ժոզէֆ*ի ընտիր արիան, ջերմութեամբ, թովչութեամբ եւ գեղեցիկ զգացումով»: [...] Ինծի կը թուի որ ան ունի խառնուածք, կամ առնուազն բնաւորութիւն» [*Joseph,* ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Arthur Pougin, ‘Les Concours du Conservatoire’, *Le Ménestrel,* 11 juillet 1908, 74e année, no. 28, pp. 217-218):

11. «Այպա ան կը խաղայ բաւական սառնօրէն եւ քիչ մը բռնազբօսիկ շարժուձեւերով» [Տեսարան *Armide*-էն] (Robert Mondor, ‘Au Conservatoire: le concours d’opéra’, *La Presse,* 12 juillet 1908, 15e année, no. 5878, p. 1):

12. «Եւ Պր. Շահ-Մուրատեան, որ կատարեալ կերպով երգեց տեսարան մը Կլիւքի *Armide*-էն, անկասկած աւելի բարձր գնահատական կրնար ստանալ, եթէ բացայայտէր աւելի փորձառու դերասանութիւն» [Տեսարան *Armide*-էն] (‘Au Conservatoire: le concours d’opéra’, *Le Matin,* 12 juillet 1908, vingt-cinquième année, no. 8902, p. 2):

13. «Կարելի չէ զինք դատել իբրեւ դերասան: Կը զգացուի՝ որ այդ երիտասարդ օտարը բացառապէս զբաղուած է արտասանութեամբ, որմէ անդին կ’արտայայտուի վատ կերպով» [Տեսարան *Armide*-էն] (Faublas, ‘Les Concurrents’, *Com dia,* 12 juillet 1908, 2e année, no. 286, p. 2):

14. «[Բ]աւական տժգոյն եւ աննշան *Armide*-ի մեծ տեսարանին մէջ» [Տեսարան *Armide*-էն] (Arthur Pougin, ‘Les Concours du Conservatoire’, *Le Ménestrel,* 18 juillet 1908, 74e année, no. 29, p. 229):

15. «Զայն ունկնդրեցի *Samson et Dalila*-ի մէջ, որ իր ընդունակութիւններուն յարմար է. կը փափաքէի՝ որ աւելի զօրացնէր հրաշալի ֆինալը՝ ‘D’Israël renaît l’espérance’: [...]: Իբրեւ դերասան, երբեք անյաջող չէ» [Տեսարան *Samson et Dalila*-էն] (Georges Pioch, ‘Les élèves admis au concours publics du Conservatoire’, *Com dia,* 19 juin 1909, 3e année, no. 628, p. 3):

16. «Վեպէրի *Freyschütz*-ի արիան՝ զոր ընտրած էր թեկնածուն, կրնայ ըլլալ կը գերազանցէր իր տռամաթիք կարողութիւնները» [Արիա *Freyschütz*-էն] (‘Le concours du Conservatoire: la première journée’, *La Presse,* 3 juillet 1909, 16e année, no. 6229, p. 1):

17. «Պր. Շահ-Մուրատեան [...] հաճոյք կը պատճառէ *Freyschütz*-ի մեծ արիայով» (Georges Pioch, ‘Dans la salle et sur la scène’, *Com dia,* 3 juillet 1909, 3e année, no. 642, p. 2):

18. «Կը մրցի *Freyschütz*-ով (Վեպէր), ուր, դժբախտաբար, անոր կը պակսի ճշգրտութիւնը՝ հիմնական թերութիւն մը երգիչի համար» [Արիա *Freyschütz*-էն] (‘Les concours du Conservatoire’, *Le Soleil,* 3 juillet 1909, trente-sixième année, no. 184 p. 3):

19. «Պր. Շահ-Մուրատեան վատ էր *Werther*-ի մէջ» [Տեսարան *Werther*-էն] (Montcornet, ‘Concours du Conservatoire’, *Le Petit parisien,* 7 juillet 1909, trente-quatrième année, no. 11.939, p. 2):

20. «Պր. Շահ-Մուրատեան [...] երգեց Մասընէի *Werther*-ը այնպիսի անկեղծութեամբ եւ ջերմութեամբ՝ որ վայելչօրէն կ’ապահովէ անոր աներկբայ յաջողութիւնը թատրոնի մէջ» [Տեսարան *Werther*-էն] (Camille de Sainte-Croix, ‘Concours du Conservatoire’, *La Petite république,* 7 juillet 1909, trente-quatrième année, no. 12136, p. 2):

21. «*Werther*-ի մէջ, Պր. Շահ-Մուրատեան կատարեց քանի սխալներ» [Տեսարան *Werther*-էն] (G. M., ‘Les Concours du Conservatoire’, *La Gazette de France,* 7 juillet 1909, 278e année, p. 3):

22. «Ջերմ Վերթէր մը՝ պարզ եւ հեշտասահ կեցուածքով» [Տեսարան *Werther*-էն] (‘Concours du Conservatoire’, *La Lanterne,* 8 juillet 1909, trente-deuxième année, no. 11,763, p. 3):

23. «Իր երգը բաւական ջերմ է» [Տեսարան *Werther*-էն] (Ed. S., ‘Théâtres: concours du Conservatoire’, *Journal des débats politiques et littéraires,* 8 juillet 1909, 121e année, no. 188, p. 3):

24. «Գալով Պր. Շահ-Մուրատեանի *Werther*-ին, իսկապէս մեծ բան մը չեմ տեսներ ըսելու» [Տեսարան *Werther*-էն] (Arthur Pougin, ‘Les concours du Conservatoire’, *Le Ménestrel,* 10 juillet 1909, 75e année, no. 28, p. 222):

25. «Պր. Շահ-Մուրատեան անսասելի մեղեդայնութեամբ կը պարզէ *Lucie de Lammermoor*-ի անհամութիւնը» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Edouard Helsey, ‘Au Conservatoire: avant les concours’, *Gil Blas,* 1er juillet 1909, 30e année, no. 10832, p. 3):

26. «Էտկարի դերերգը չբացայայտեց իր տաղանդը, միւս կողմէ ան կատարեց ուշագրաւ կրկներգ մը *Samson*-ի մէջ» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’ եւ տեսարան *Samson et Dalila*-էն] (Robert Brussel, ‘Les concours du Conservatoire’, *Le Figaro,* 11 juillet 1909, 55e année, no. 192, p. 4):

27. «Պր. Շահ-Մուրատեան մեզի երիտասարդացուց ցոլացնելով Էտկարի գերագոյն տրտունջը Լիւսիի հանդէպ, այնպիսի ձայնով եւ շեշտով՝ ուր ոչինչ կը գտնուի սկովտականութենէ» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Georges Pioch, ‘Dans la salle et sur la scène’, *Com dia,* 11 juillet 1909, 3e année, no. 650, p. 2):

28. «Ան կատարեց հատուած մը *Lucie*-էն՝ իտալական այս օփերային անհրաժեշտ չափազանցութեամբ: Քիչ մը ծիծաղելի էր» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Nozière, ‘Au Conservatoire’, *Gil Blas,* 11 juillet 1909, 30e année, no. 10842, p. 3):

(Շար. 3)

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՍ ՏԵՂԵԱԿ ԵՄ ՄԻԱՅՆ ՆՈՅԵՄԲԵՐԻ 9-Ի ԵՒ ՅՈՒՆՈՒԱՐԻ 11-Ի ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՄԱՍԻՆ. ԱԳ ՆԱԽԱՐԱՐ

«Ես տեղեակ եմ միայն Նոյեմբերի 9-ի եւ Յունուարի 11-ի փաստաթղթերի մասին», - կառավարութեան այլ նիստից յետոյ լրագրողներին ասաց Արտաքին Գործերի նախարար Արա Այվազեանը՝ պատասխանելով հարցին, թէ Դաւիթ Բէկ-Կապանի ճանապարհի վերաբերեալ ի՞նչ պայմանաւորուածութիւն կայ:

«Դուք հարցնում էք՝ ես տեղեակ եմ, թէ ոչ, ես ասում եմ՝ տեղեակ չեմ: Արտաքին գերատեսչութեան ղեկավարը պատասխանատու է արտաքին ոլորտի վերաբերեալ եւ պաշտպանում է Հայաստանի պետական ու ազգային շահը: Մեր ոլորտին վերաբերող գործառոյթները կատարում ենք լիարժէք: Դուք հարցրէք պարոն Աւինեանին», ասաց նախարարը:

Յիշեցնենք, որ Փետրուարի 10-ին Դաւիթ Բէկ-Կապանի ճանապարհի վերաբերեալ Ազգային Ժողովում հարց էին ուղղել վարչապետին, սակայն պատասխանել էր փոխվարչապետը եւ անորոշ պատասխան տուել, խօսելով ինչ որ պայմանաւորուածութեան մասին:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑԻ ՈՐՈՇ...

1

Մադոյեանը:

Ինչ վերաբերում է Ռոբերտ Քոչարեանի հետ կապուած հակադրումներին, քաղաքական վերլուծաբանը յիշեցրեց, որ Քոչարեանը յայտարարել էր, թէ մասնակցելու է հնարաւոր արտահերթ խորհրդարանական ընտրութիւններին, իսկ Սարգսեանն ուղիղ ասաց՝ իր թիմը չի մասնակցելու Նիկոլ Փաշինեանի կազմակերպած ընտրութիւններին:

«Սարգսեանն անընդհատ Փաշինեանին կապիտուլեանտ էր կոչում՝ ի հակադրութիւն դաւաճանի, որ քոչարեանական թիմի որակումն է: Նա ցոյց տուեց, որ Փաշինեանին չի համարում դաւաճան, այլ համարում է կապիտուլեանտ, ոչ խելացի ռազմական գործիչ, ամէն ինչ, բացի դաւաճանից: Քոչարեանն ասում էր, որ ինքը լինէր ղեկավարը, պատերազմ չէր լինի, թէ Էրդողանը Ստամբուլի մի թաղամասի չափ Հայաստանից ինչի պիտի վախենար, պարզ չէ, բայց Սերժ Սարգսեանն ասաց, որ պատերազմն անխուսափելի էր, քանի որ բանակցութիւնները փակուղի էին գնացել, իսկ պատերազմ լինէր, պարտուելու էին: Այսինքն՝ Սերժ Սարգսեանը կանխաւ գիտէր, թէ ինչ բանակ ենք թողել ու պարտութիւն ենք կրելու: Քոչարեանն ասում էր, որ այլ ուժեր են բերել Փաշինեանին, որ «սորոսականներն» են բերել, վատ պապիներ եւ այլն, իսկ Սարգսեանն ասաց, որ Փաշինեանին ընտրել է ժողովուրդը, բայց սխալուել է: Սարգսեանն ասում էր, որ ինքն էլ էր հողերը տալու, բայց աւելի սահուն», - եզրափակեց Գոռ Մադոյեանը:

*New Armenia*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԹԱՒՇԸ ՎԵՐԱՑՆԵԼՈՒ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՊԱՀԱՆՋԸ ՎԵՐԱԲԵՐՈՒՄ Է ԴԱՏԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ ՓՈՓՈԽՈՒԹԵԱՆԸ. ՄԱԿՈՒՆՑ

Ազգային Ժողովի Իմ Քայլը խմբակցութեան ղեկավար Լիլիթ Մակունցի կարծիքով՝ քաղաքացիների կողմից վարչապետին ուղղուած՝ Թաւիշը վերացնելու պահանջն առաջին հերթին վերաբերում է դատական համակարգում փոփոխութիւններին: *Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ Մակունցը նման տեսակէտ յայտնեց ԱԺ-ում լրագրողների հետ զրոյցում՝ անդրադառնալով հարցին՝ ինչո՞ւ իշխանութիւնն իր տուած խոստումը չի կատարում, որ քաղաքացիները փակում են մայրուղին՝ վարչապետից պահանջելով վերացնել Թաւիշը:

«Ես կարծում եմ, որ այդ արտայայտութիւնն առաջին հերթին վերաբերում է դատական համակարգում փոփոխութիւններին: Այստեղ քաղաքացիներն ունեն արդարադատութիւն իրականացնելու պահանջներ», - ասաց խմբակցութեան ղեկավարը:

Նա միեւնոյն ժամանակ կարեւոր համարեց հասկանալ, թէ ինչ է նշանակում «Թաւիշը վերացնել» արտայայտութիւնը: Մակունցը յոյս յայտնեց, որ քաղաքացիները նկատի չունեն, որ պէտք է օրէնքի դաշտից դուրս գալ, կատարել քայլեր, որոնք համատեղելի չեն օրէնքի, Սահմանադրութեան հետ:

## ՈՒՄ ԵՆ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ՀԱՄԱՐՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ՊԱՐՏՈՒԹԵԱՆ ՄԵՂԱՒՈՐ. ՀԱՐՑՄԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐ

Հայաստանում անցկացուած հարցման մասնակիցները յայտնել են, թէ ում են համարում արցախեան երկրորդ պատերազմում պարտութեան մեղաւոր: *Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ հարցման արդիւնքներն ասուլիսում ներկայացրեց GALLUP International Association-ի Հայաստանում լիիրաւ անդամ Էմ Փի Ջի ՍՊԸ տնօրէն Արամ Նաւասարդեանը:

Հարցման մասնակիցներին առաջարկուել է նշել առաւելագոյնը 2 տարբերակ: «Նախկին իշխանութիւնները» տարբերակն է նշել 32 տոկոսը, «Նիկոլ Փաշինեանը» եւ «Ներկայիս կառավարութիւնը» նշել է 28.8 տոկոսը, «Թուրքիան եւ նրա ռազմական աջակցութիւնն Ադրբէջանին» տարբերակն է նշել 16.1 տոկոսը, «Հայաստանը եւ Արցախը չեն պարտուել» նշել է 10.2 տոկոսը, «Հայաստանի զինուած ուժերի եւ Ղարաբաղի պաշտպանութեան բանակի առանձին սպաները»՝ 4.4 տոկոս, այլ պատասխաններ եղել են մօտ 19.2 տոկոս: Այս հարցին դժուարացել է պատասխանել 7.7 տոկոսը», - ասաց Նաւասարդեանը:

Քաղաքացիներին նաեւ հարցրել են, թէ արդեօք լսել կամ դիտել են երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանի եւ երրորդ նախագահ Սերժ Սարգսեանի վերջին ծաւալուն հարցազրոյցները, որոնցում նրանք մեկնաբանել են քաղաքական զարգացումները եւ արցախեան պատերազմի արդիւնքները: Նաւասարդեանը նշեց. «Մեր նախատեսածից մի փոքր շեղում եղաւ, մենք կարծում էինք, որ Սերժ Սարգսեանի հարցազրոյցը Երկուշաբթի օրը լինելու եւ աւարտուելու է, սակայն երկու մասով տեղադրուեց: Այդ առումով մի փոքր շեղում կարող է լինել ցուցանիշի մասով: Բայց ներկայացնում ենք այն, ինչ ստացել ենք»:

Այսպիսով՝ հարցուածների 26 տոկոսն է նշել, որ դիտել է Սերժ Սարգսեանի հարցազրոյցը, իսկ Ռոբերտ Քոչարեանինը դիտել է 35.1 տոկոսը: Նաեւ հարց է տրուել, թէ ինչպէս են գնահատում այդ հարցազրոյցները: Ինչ վերաբերում է Սերժ Սարգսեանի հարցազրոյցին, ապա դիտածների 15.9 տոկոսը լիովին դրական է վերաբերւում, աւելի շուտ դրական է վերաբերւում 22.6 տոկոսը: «Աւելի շուտ բացասական» տարբերակը նշել է 15.4 տոկոսը, իսկ 40 տոկոսը նշել է, որ լիովին բացասական է վերաբերւում: Ռոբերտ Քոչարեանի հարցազրոյցի առնչութեամբ՝ դիտածների 24.2 տոկոսը նշել է, որ լիովին դրական է վերաբերւում, 22.4 տոկոսը՝ աւելի շուտ դրական, «աւելի շուտ բացասական» տարբերակը նշել է 11 տոկոսը եւ 36.3 տոկոսը նշել է՝ «ընդհանրապէս բացասական»:

Փետրուարի 20-ին ժամը 15:00-ին ընդդիմութիւնը յայտարարել է մեծ հանրահաւաք: Ընդհանուր հարցուած քաղաքացիների 9.4 տոկոսն է նշել, որ մասնակցելու է:

Հարցումն անցկացուել է Հայաստանում 2021թ. Փետրուարի 15-ից-17-ը:

ԽՈՀԵՐ

## ԹԻՒԸ՝ ՍՓԻՒՌՔԻ ՍԻՐԵԼԻ ՋԱՓԱՆԻՇԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Թիւ՝ փոխանակ կենդանի փորձառութեան: Մարդկային փորձառութիւն՝ թիւի մէջ: Թիւ՝ իբրեւ անջատ միաւոր, այլ ոչ մաթեմաթիք: Թիւեր՝ որոնք կը սպաննեն նոյն ինքը մաթեմաթիքը:

Օրինակ, շատ վիրաւորական կը գտնեմ՝ երբ լրագիրները կը հրատարակեն հայկական վարժարաններու շրջանաւարտներուն անունները՝ իրենց թուանշաններով, բարձր թուանշան ստացողը՝ վերը, ցած ստացողը՝ վարը: Յաջորդ օրը գաղութը կը խօսի այդ թուանշաններուն մասին: Բարձր թուանշան ստացողը կը դառնայ խելացի, ցածը՝ անպէտք: Գաղութին համար շրջանաւարտին բացարձակ գնահատումին միակ աղբիւրը կը հանդիսանայ թուանշանը: Միջնորդ մը՝ թուանշանը, կը փոխարինէ անձի գիտելիքն ու մտաւոր կարողութիւնը, կը փոխարինէ անձն ամբողջութեամբ: Մենք տեղեակ չենք անձի մտաւոր կարողութեան, այլ տեղեակ ենք այդ կարողութիւնը ենթադրաբար արտայայտող թիւին: Չենք գիտեր ինչպէս կը մտածէ, ինչ են իր մտաւոր նախասիրութիւնները՝ եթէ երբեւէ ունի, բայց գիտենք որ խելացի է:

Թուանշանը կը նոյնացնէ տարբերութիւնները, բան մը՝ որ արդիականութեան յատկանիշներէն է: Օրինակ, 80-89% կամ 90-100% ստացողները կը դառնան նոյնակերպ մարդիկ, թուանշանի նոյնականութեան շնորհիւ կը վերածուին միանուագ (չ)մտածողներու: Մինչդեռ քաջ յայտնի է, որ չկայ երկու մարդ որ ըլլայ նոյնը, չկայ երկու անձ՝ որ անսխալօրէն նոյնատառ ու նոյնատարր մտածէ: Բայց կայ աշակերտութիւն եւ ուսանողութիւն՝ որոնք պէտք է անսխալօրէն նոյնակերպ պատասխանեն քննութեան հարցումներուն՝ ըստ իրենց դասաւանդուած գիտելիքներուն, հանգամանք մը՝ որ մեծապէս կը դիւրացնէ անոնց նոյնացումը թուանշաններու միջոցով: Պէտք է ստեղծուի համաշխարհային հասարակութիւն՝ որ նոյն ձեւով կը մտածէ, աւելի ճիշդ՝ չի մտածեր, նուազագոյն կը մտածէ, բայց նոյն բանը կը վերարտադրէ: Վերարտադրող համայնք՝ թուանշաններու միջոցով: Համաշխարհային միտում՝ զոր կը պաշտէ Սփիւռքը:

Թուանշան ստացողը՝ բարձր կամ ցած, այն է՝ որ կասկածի չէ ենթարկած իրեն տրուած գիտելիքը: Քանի որ այդ գիտելիքը ստացած է դպրոցին կամ համալսարանին մէջ՝ դասագիրքերու եւ ուսուցիչներու միջոցով, ուրեմն ան վաւերական է:

Մենք կտրականապէս անտեղեակ ենք՝ թէ բարձր եւ ցած թուանշաններ ստացողները ինչպէ՞ս կը մեկնաբանեն կենդանի կեանքի երեւոյթները, գործող քաղաքականութիւնները, կիրարկուող տնտեսութիւնները՝ որոնց մէջ կը գտնուին իրենք, այսինքն՝ որքան ներգրաւուած են իրենց իսկ ապրած փորձառութեամբ: Ենթադրուած է ներգրաւուած չըլլան եւ դառնան կեթթօյացած փրոֆեսիոնէլներ: Թուանշանը այդ կը պահանջէ:

Դպրոցի թուանշաններու հրապարակումով, արդարեւ, ուրիշ բան մըն ալ ըսել կ'ուզուի: Այն՝ թէ կրթական համակարգը, մեր պարագային՝ Սփիւռքի դպրոցները, կը գտնուին կատարեալ վիճակի մէջ. վկայ՝ բարձր թուանշանները:

Թուանշան է նաեւ բարեգործութիւնը, կամ աւելի նուազ հասկացողութեամբ՝ նուիրատուութիւնը: Նուիրատուութիւններու ցանկեր կը հրատարակուին սփիւռքեան մամուլին մէջ: Շատ տուողը՝ կը գրուի առաջինը, քիչ տուողը՝ վերջինը: Շատ տուողը կը դառնայ բարեսիրտ, հայասէր, ազգասէր, նուիրեալ, անձնազոհ: Բարձր թիւը մարդուն կը դարձնէ այս բոլորը: Քիչ տուողին մասին չի խօսուիր: Մարդ չի հարցներ, որ քիչ տուողը կրնայ եւս այս բոլորը ըլլալ, քանի որ իրապէս իր համեստ եկամուտէն է որ կը նուիրաբերէ: Հարուստը կը նուիրաբերէ յաւելեալ արժէքէն մաս մը՝ այդ նոյն յաւելեալ արժէքը աւելցնելու համար: Ջուննեւորը կը նուիրաբերէ իր բուն ունեցուածքէն՝ իսկական մարդասիրութենէ եւ հայրենասիրութենէ մղուած: Բայց որոշիչն է թիւը: Թիւը մարդուն կը դարձնէ հայրենասէր: Եւ կը գրուին յօդուածներ այդ հարուստ հայրենասէրին մասին՝ անոր տալով տարբեր ազգային գոյներ: Մէկ բան մը կը մոռնան նշելու. իր հարստութեան իրական քանակը եւ անոր իրական աղբիւրները:

Բայց թիւը Սփիւռքի համար նաեւ կարեւորութիւն ունի միութենական-աւանդական արուեստի եւ մշակոյթի առումով: Այսինչ միութիւնը տարին այսքան ձեռնարկ ըրաւ կամ այսքան գիրք տպագրեց: Կարեւոր չեն այնտեղ գործող անձերը: Կարեւորը՝ ղեկավարութեան յայտարարութիւնն է քանակի առումով: Գործող անձերուն անունները կը յիշատակուին, բայց ղեկավարական յայտարարութեան քանակային կողմը վեր է ամէն բանէ: Հօտը պէտք է ծառայէ վերադիր քանակի աճին: Երբեմն մէկ անձ մը՝ ամենանուազ վճարուածը եւ ամենաշատ աշխատածը, կը նպաստէ այդ թուաքանակի անհամեմատ աճին: Բայց ան կը մնայ հօտի կարգավիճակի մէջ, մինչ անոր արտադրած թուային արդիւնքը կը շահագործուի միութենական նպատակներով:

Եւս ուրիշ կէտ մը: Յաճախ կը լսենք՝ այսինչ գաղութը նօսրացած է: Նօսրացած կը նշանակէ թիւը նուազած: Հետաքրքրական բառ մըն է գաղութի թիւի նուազումը արտայայտելու համար, նաեւ դիւրին լուծում մը՝ ամէն անյաջողութիւն վերագրելու «նօսրացում» բառին՝ վերնախաւի կամքէն եւ բարի ցանկութենէն անկախ արտաքին դրութեան մը:

Բացի այդ, նօսրացումը վերնախաւի կողմէ գաղութի ամբոխավարական զանգուածայնացումի միջոց մըն է՝ ուր ամէն բան կը նոյնացուի թիւի քանակի հետ:

Բոլորովին անընդունելի է գործողութիւն մը եւ անոր ընթացքը կապել քանակի՝ թիւի շատութեան հետ: Ո՞րն է «ոչ-նօսր» գաղութի քանակը: Ոչ ոք գիտէ:

Զարմանալի է, երբ թիւը անպայմանօրէն կը կապուի որակի հետ: Գաղութի մէջ նոյն մարդիկն են, նոյն տեսակ մտածողները, նոյն մակարդակով կրթութիւն ստացած անձերը՝ ինչ ենթադրեալ «ոչ-նօսրացած»-ի ժամանակ: Նօսրացածի անդամները՝ բացի ժամանակաշրջանի տարբերութենէն եւ անոր թելադրած մտածողութենէն, ոչ մէկ տարբերութիւն ունին նախկին ոչ-նօսրացածներէն: Նոյն որակը կարելի է ստանալ քիչ մարդով՝ եթէ այդ քիչերը ճիշդ կողմնորոշում ստանան: Եթէ ժամանակին մէկ ձեռնարկի մէջ 20 անձեր կրնային բեմ ելլել՝ 200 հանդիսատեսի առջեւ, այսօր 2 անձեր կրնան ելլել՝ 20-ի առջեւ: Ասիկա ոչ մէկ կապ ունի որակի հետ: Բաց աստի, եթէ գաղութները հասկնային ինչ կը նշանակէ մտերիմ միտքի հաւաքոյթներ՝ ուր բոլոր ներկաները միասին ազատօրէն քննարկէին զանազան հրատապ հարցեր՝ համադրողի մը ուղեկցութեամբ, շատ աւելի միտք արտադրուած կ'ըլլար, քան բեմէն պարտադրաբար (չ)արտադրուող գիտելիքը՝ բեմի եւ հօտային հանդիսականներու աւանդական հայկական մեծ բաժանումով եւ խոր ճեղքուածքով:

Նուազ թիւը՝ ճիշդ համայնքային գործածութեամբ, կրնայ շատ աւելի մտաւոր գիտելիք արտադրել, քան բազմաքանակ բեմ-հանդիսատես, ղեկավար-հօտ ուժային պարտադիր փոխանցումը: Բայց քանի որ *համայնքայնութիւնը* այսօր սփիւռքահայ *համայնք*ներուն անհասանելի կողմերէն է՝ առաջնայինը ըլլալով վերնախաւի եւ անոր հետ կապուած մտաւորականարուեստագէտներու արհետական «աստղայնացում»-ը, թուային կողմը կը մնայ գերադասելի: Չկայ թիւ, չկայ որակ: Եւ վերջ:




ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն աղեքսանդրահայ մեր բարեպաշտ ժողովրդեան, կը ծանուցանենք,թէ **ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 15 ՓԵՏՐՈՒԱՐ 2021**-էն սկսեալ **ՄԵԾ ՊԱՀՈՑ** շրջանն է մինչեւ Ս.Զատկի Աւագ Շաբաթը:

Ուստի՝ **ՉՈՐԵՔՇԱԲԹԻ 17 ՓԵՏՐՈՒԱՐ 2021**-էն սկսեալ ամէն **ՉՈՐԵՔՇԱԲԹԻ** եւ **ՈՒՐԲԱԹ** Առաւօտները **ԱՐԵՒԱԳԱԼԻ** եւ Երեկոները **ԽԱՂԱՂԱԿԱՆԻ - ԵԿԵՍՑԷ** Արարողութիւններ տեղի պիտի ունենան տեղւոյս Ս.Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ մէջ:

Սկիզբ **ԱՐԵՒԱԳԱԼԻ** առաւօտեան ժամը **10.00**-ին:
Սկիզբ **ԽԱՂԱՂԱԿԱՆԻ** երեկոյեան ժամը **5.00**-ին:

Արեւագալի եւ Եկեսցէի համար ամէն **ՉՈՐԵՔՇԱԲԹԻ** եւ **ՈՒՐԲԱԹ** Առաւօտները եւ Երեկոները **ԵՐԹԵՒԵԿԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆԸ ԱՊԱՀՈՎՈՒԱԾ Է ՎԱՐԺԱՐԱՆԻ ԻՆՔՆԱՇԱՐԺՈՎ**:

Կը հրաւիրենք հաւատացեալները ներկայ ըլլալու Արեւագալի եւ Եկեսցէի սոյն արարողութեանց:

**Ս.Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութիւն**
**Աղեքսանդրիա**

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն աղեքսանդրահայ մեր բարեպաշտ ժողովրդեան, կը ծանուցանենք, թէ **ՄԵԾԻ ՊԱՀՈՑ** շրջանի իւրաքանչիւր **ԿԻՐԱԿԻ** պիտի մատուցուի Ս. եւ Անմահ Պատարագ, որուն ընթացքին պիտի պատգամուի օրուան խորհուրդը: Ամէն Կիրակի հետեւեալ յաջորդականութեամբ ըստ Օրացոյցի մինչեւ **ԾԱՂԿԱԶԱՐԴ**:

| | | |
|---|---|---|
| ԿԻՐԱԿԻ | **7** ՄԱՐՏ - | **Դ.**- ԿԻՐԱԿԻ ՄԵԾԻ ՊԱՀՈՑ -ՏՆՏԵՍԻ: |
| ԿԻՐԱԿԻ | **14** ՄԱՐՏ - | **Ե.**- ԿԻՐԱԿԻ ՄԵԾԻ ՊԱՀՈՑ -ԴԱՏԱՒՈՐԻ: |
| ԿԻՐԱԿԻ | **21** ՄԱՐՏ - | **Զ.**- ԿԻՐԱԿԻ ՄԵԾԻ ՊԱՀՈՑ -ԳԱԼՍՏԵԱՆ: |

**Ծնթ.**- Հաւատացեալներու երթեւեկը Վարժարանի ՕԹՈՊԻՒՍՈՎ ԱՊԱՀՈՎՈՒԱԾ Է:

.....

Ի գիտութիւն աղեքսանդրահայ մեր բարեպաշտ ժողովրդեան, կը ծանուցանենք, թէ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան տնօրինմամբ, **Ս. ԶԱՏԿԻ ՄԵԾ ՊԱՀՔ**-ին **ՉՈՐԵՔՇԱԲԹԻԷՆ՝ 17 ՓԵՏՐՈՒԱՐ 2021**-էն սկսեալ մինչեւ **Ս. ԶԱՏԻԿ, ԱՐԵՒԱԳԱԼԻ** եւ **ԵԿԵՍՑԷԻ** եւ **ԱՒԱԳ ՇԱԲԹՈՒԱՅ** Արարողութիւններու առթիւ, Ռամլէի արուարձաններուն մէջ բնակող եւ երթեւեկութեան դժուարութիւն ունեցող հաւատացեալները Եկեղեցի փոխադրելու եւ վերադարձնելու նպատակաւ, Պօղոսեան Ազգային Վարժարանի Օթոպիւսը պիտի շրջագայի Ռամլէի Արուարձանները:

**Ս.Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութիւն**
**Աղեքսանդրիա**



## ՎԻԳԷՆ ՉԸԹԸՐԵԱՆ ԵՒ ՍՓԻՒՌՔԻ ԳՈՐԾՕՆԸ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

Համայնք չունինք, Լիբանանի Համայնքի կէսէն աւելին այնտեղ չէ, Պարսկաստանի Համայնքի կէսէն աւելին այնտեղ չէ, իրենք տեղափոխուած են, բայց այս տեղափոխման ժամանակ իրենք տէր տիրական չունին: Եթէ Լիբանանի մէջ 50-է աւելի դպրոց ունէինք, այսօր քանի՞ դպրոց ունինք Թորոնթոյի մէջ, Լոս Անճելոսի մէջ, Մոնթրէալի մէջ, եւ այս դերը որ [Սփիւռքը պէտք է խաղար], Սփիւռքի ինքնութեան հետ հարցեր լուծելով, Սփիւռքի նոր համայնքներու հոգերը հոգալու, Սփիւռքի հին համայնքներու կառոյցները մակարդակի վրայ պահելու, այս բոլորը չեն ըրած եւ փորձած են Հայաստանի ներքաղաքական կեանքի մէջ դեր խաղալ, որ կը խորհիմ իրենց դերը չէ: Եւ մենք տեսանք, որ այդ դերը չհասցուց արդիւնքի:

**Ա. Ք. – Ձեւով մը համասփիւռքեան կառոյցները, Սփիւռքի կառոյցները վերակազմաւորելու եւ վերակազմակերպելու կոչ մըն է ձեր ըսածը:**

Վ. Ձ. – Այդ բոլորէն առաջ մենք պէտք է հասկընանք Սփիւռքը: Մենք շատ բան չենք գիտեր Սփիւռքի մասին: Համաձայն ենք որ Սփիւռքը բազմաշերտ է, բազմադասակարգային է, բազմալեզու է, քաղաքական հորիզոնները տարբեր են: Մենք չունինք այսօր գործիքներ նոյնիսկ հասկնալու ո՞ւր է Սփիւռքը, ի՞նչ է Սփիւռքը, Սփիւռքի հոգերը ի՞նչ են, Սփիւռքի առնչութիւնը հայկականութեան հետ ո՞ւր է, ինչպէ՞ս կարող է այսօր նոր Սփիւռքը պահպանել իր կապը հայկական աշխարհի հետ: Հին ձեւով կարելի չէ: Մէկ իրականութիւն է՝ երբ մարդ կ՚ապրի Հալէպի կամ Պուրճ Համուտի մէջ, իր կապը հայկական աշխարհի հետ, հայկական իրողութեան հետ մէկ տուեալի վրայ հիմնուած է: Երբ այդ մարդը կը տեղափոխուի Նիւ Եորք, նոյնը կարելի չէ: Աւելի, այսօր ունինք Հայաստանէն դուրս եկած հազարաւոր անհատներ, որոնց համար Սփիւռքը շատ բան չէ առաջարկած, եւ այլն: Այս բոլորը հասկընալու, սերտելու, բոլորին լուծումներ առաջարկելու համար, մենք այսօր գործիքներ չունինք: Մենք չունինք ուսումնասիրական կեդրոններ, չունինք համալսարաններ, մեր թերթերը աղքատացած են, քանի որ մեր հիմնական ուշադրութիւնը դարձուցած էինք Հայաստանի ուղղութեամբ եւ սլոկանը այն էր՝ որ հայ չենք կարող ըլլալ եթէ Հայաստանէն դուրս ենք: Հիմնական սխալը այդտեղ է: Մենք հարիւրաւոր տարի հայ եղած ենք հայկական պատմական հողերէն դուրս, մեր հիմնական թերթերը լոյս տեսած են հայկական պատմական հողերէն դուրս, եւ այլն: Մեր կուսակցութիւնները հիմնուած են հայկական պատմական հողերէն դուրս: Այսինքն, մենք չգիտնալով մեր պատմութիւնը, զարգացուցած ենք մէկ քաղաքականութիւն՝ որ կտրուած է հայկական պատմական իրողութենէն եւ Հայաստանը դարձուցած ենք ֆեթիշ: Հայաստանի հանդէպ զարգացուցինք որոշ քաղաքականութիւններ, զորս այսօր յստակ է այլեւս չենք կրնար շարունակել:

Պէտք է վերանայիլ այս բոլորը: Պէտք է վերասերտել մեր անցեալը, մեր պատմութիւնը, պէտք է սերտենք այսօրուայ Սփիւռքի իրողութիւնները՝ իրենց հոգերը, իրենց հարցերը, եւ այդ ուղղութեամբ աշխատանք տանիլ:

**Ա. Ք. – Իսկ վերջին պատերազմէն ետք, Սփիւռքի մէջ տրամադրութիւնները ի՞նչ են, ձեր բարձրացուցած հարցերը քննարկելու ուղղութեամբ խմորումներ կը տեսնէ՞ք:**

Վ. Ձ. – Այդչափ հեռու չեն զարգացած խմորումները, բայց կայ նոյն իրավիճակը ինչ որ կայ Հայաստանի մէջ: Մարդիկ զարմանքի առջեւ են, մարդիկ վիրաւորուած են, մարդիկ չհասկցան ինչպէս եղաւ այս պատերազմը եւ ինչպէս հասանք այս պարտութեան, առաւել, մարդիկ այն մթնոլորտի մէջ են ուր կը սեպեն թէ իրենք փորձեցին իրենց լաւագոյնը ընել, օգնել Հայաստանին, եւ զգացմունք մը կայ որ խաբուած են, Հայաստանը իրենց խաբեց: Այս բոլորը շատ դժուար է անշուշտ, մարդոց բացատրել ի՞նչ եղաւ, իրողութիւնը ի՞նչ է, ինչո՞ւ Հայաստանը պարտուեցաւ, ինչո՞ւ այս կորուստները, ինչո՞ւ հազարաւոր երիտասարդներ մահացան եւ վիրաւորուեցան, այս բոլոր բացատրութիւնները պէտք է մենք տանք, մենք՝ այդ մարդիկ որ գրել-կարդալ գիտենք, մենք որ համալսարանականներ կամ լրագրողներ ենք, մենք պարտական ենք այդ պատասխանը տալու, որպէսզի հասկնանք մեր յաջորդ քայլերը ինչ պիտի ըլլան:

**Ա. Ք. – Իսկ ի՞նչ լուծումներ կ՚առաջարկէք՝ աշխատանքային ճանապարհային քարտէզ մը:**

Վ. Ձ. – Առաջին բանը որ մենք պէտք է իրականացնենք, այն ուղղութիւնն է որ ես կ՚առաջարկեմ. պէտք է վերանայինք մեր 1988-էն, 1991-էն ի վեր զարգացուցած քաղաքականութիւնը, պէտք է շատ խիստ քննադատական աշխատանք տանինք...

**Ա. Ք. – Ո՞վ պիտի վերանայի, ո՞ր կառոյցները պիտի վերանային:**

Վ. Ձ. – Մենք բոլորս:

**Ա. Ք. – Կուսակցութիւննե՞րը, եկեղեցի՞ն, միութիւննե՞րը, անհատնե՞ր...**

Վ. Ձ. – ...Թերթեր, համալսարանականներ: Գիտէք, այս պարտութիւնը միինակ բանակի պարտութիւնը չէր: [Ճիշդ է,] հիմնականը ռազմական պարտութիւն էր, դիւանագիտական պարտութիւն էր: Բայց այս բոլորին ետեւ մենք բոլորս կանգնած ենք, մենք բոլոր սխալած ենք, եւ մենք բոլորս պէտք է հասկնանք *մեր* սխալը ուր էր, եւ հասկնալ անցեալի մեր սխալները ուր էին, որպէսզի կարողանանք ապագային ճշդել մեր սխալները, մեր սխալները չկրկնել: Եւ միակ ձեւը՝ վերանայինք մենք մեր համայնքի մէջ ինչ կատարեցինք, մեր խմբագրական կազմի մէջ ուր էին մեր սխալները, վերանայինք ինչ գրած ենք Ղարաբաղի մասին, Հայաստանի դիւանագիտութեան մասին, հայկական բանակի մասին, Հայաստան-Սփիւռք յարաբերութիւններու մասին, եւ գտնանք ուր էին մեր սխալները: Ոչ միայն գտնանք ուր էին մեր սխալները, այլ ինչու մենք այդ սխալները թոյլ տուինք, որպէսզի հիմնական բարեփոխում կատարենք մեր բոլոր հաստատութիւններուն մէջ: Իմ առաջարկս այս է:

**Ա. Ք. – Իսկ Հայրենիք-Սփիւռք յարաբերութիւնները ինչպէ՞ս կը տեսնէք:**

Վ. Ձ. – Հայաստան-Սփիւռք յարաբերութիւնները շատ սխալ հիմքերու վրայ էին: Հիմնական Սփիւռքը այնտեղ գոյութիւն չունէր: Հիմնական մօտեցումը այն է՝ որ մենք պէտք է գանք եւ օգնենք Հայաստանին՝ Հայաստանի պայմաններու հիմքի վրայ: Ես կը խորհիմ, որ ժամանակն է որ Հայաստան-Սփիւռք դառնան գործընկերներ, բայց որպէսզի դառնան գործընկերներ, պէտք է Սփիւռքը իր պատասխանատուութիւնը վերցնէ: Մենք այսօր չունինք Սփիւռքի մէջ ղեկավարութիւն, եթէ չունենանք ղեկավարութիւն, չունենանք մարդիկ որ կը հասկընան Սփիւռքի իրողութիւնները եւ իրականութիւնը, մարտահրաւէրները, դժուարութիւնները, այն ժամանակ չենք ունենար ղեկավարներ որոնք կը կարողանան տարբեր այս համայնքներուն, տարբեր շերտաւորումներուն ապագայ հարցերը լուծելու ուղղութեամբ աշխատիլ: Իսկ եթէ չունենանք նման մարդիկ, մենք չենք կրնար Հայաստանի հետ գործընկեր դառնալ, կը վերարտադրենք այդ յիմարութիւնը որ 30 տարուայ ընթացքին ըրինք. բերենք Սփիւռքի կոպէկները, Սփիւռքի ամէն մէկ անհատի կողք դրած փոքրիկ գումարներէն մէկ մաս մը՝ օգնելու Հայաստանին: Այս քաղաքականութիւնը վարեցինք 30 տարի, եւ այս քաղաքականութիւնը յանգեցուց պարտութեան, յանգեցուց այս դժուար կացութեան: Պէտք չէ կրկնենք նոյնը: Պէտք է տարբեր մօտեցումներ զարգացնենք:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1887 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՄԱՐՏ 2021 | *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՌԿ.* | عدد رقم ١٨٨٧ الخميس ١١ فبراير ٢٠٢١


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՎԵՐՆԱԽԱՒԸ

Հայաստանի ներկայ քաղաքական-տնտեսական վերնախաւային դաշտին վրայ կարելի է տեսնել քանի մը խաղացողներ եւ կարեւոր բացականեր, ինչպէս նաեւ կարելի է ակնկալել ապաիշխանական շարժումներ:

1. 17-Ը

Լրատուային առաջնային գիծի վրայ են 17-ը՝ Հայրենիքը «փրկող»-ները, որոնք ինքզինքնին կը ներկայացնեն իբրեւ ընդդիմութիւն: Պատերազմէն ետք մինչեւ այսօր անընդհատ կը փորձեն կազմակերպել ցոյցեր, երթեր եւ հանրահաւաքներ: Օլիկարքական հիմքի վրայ տիրապետելով Հայաստանի եւ Սփիւռքի լրատուութեան կարեւոր մասին վրայ (որոշ տուեալներով՝ Հայաստանի լրատուամիջոցներուն 80%-ը իրենց ձեռքն է), գայն կ՚օգտագործեն իրենց ձայնը բազմապատկելու համար:

Մեծամասնութիւնը զանազան պատճառներով յեղափոխութենէն ետք քաղաքական կեանքէն դուրս մնացած խումբեր են, կամ իրենց օլիկարքական պիզնէսը վտանգուած զգացող կուսակցական տարրը հագած անհատներ:

Իրազեկ Քաղաքացիներու Միաւորումը յատուկ թեքնիքով հաշուարկած է 17-ի հիմնական (ոչ-բոլոր) ցոյցերուն եւ հանրահաւաքներուն մասնակցողներուն թիւը (https://uic.am/category/ads).

5 Դեկտեմբեր 2020, Ազատութեան Հրապարակի հանրահաւաք, 7400 մարդ:

9 Դեկտեմբեր, ցոյց, 2400-2600 մարդ:

15 Դեկտեմբեր, ցոյց, 2700-2800 մարդ:

17 Դեկտեմբեր, երթ, 1700 մարդ:

22 Դեկտեմբեր, Հանրապետութեան Հրապարակի հանրահաւաք, 8500 մարդ:

23 Դեկտեմբեր 23, Հանրապետութեան Հրապարակի հանրահաւաք, 2100 մարդ:

28 Յունուար 2021, Հանրապետութեան Հրապարակի հանրահաւաք, 2150 մարդ:

12 Փետրուար, Ազատութեան Հրապարակի հանրահաւաք, 1800 մարդ:

20 Փետրուար, Ազատութեան Հրապարակի հանրահաւաք, 12000 մարդ:

23 Փետրուար, երթ, 1204 մարդ:

25 Փետրուար, երթ, 5400 մարդ:

26 Փետրուար, բողոքացոյց, 2100 մարդ:

27 Փետրուար, Բաղրամեան պողոտայի հանրահաւաք, 3300 մարդ:

1 Մարտ, Բաղրամեան պողոտայի հանրահաւաք, 5000 մարդ:

3 Մարտ, Բաղրամեան պողոտայի հանրահաւաք, 3900 մարդ:

6 Մարտ, Բաղրամեան պողոտայի հանրահաւաք, 4500 մարդ:

Բռնութեան խօսքը առաջնային է: Օրինակ, Փետրուար 20-ի Ազատութեան Հրապարակի հանրահաւաքին, 17-ի վարչապետի թեկնածու Վազգէն Մանուկեան, ի թիւս այլոց, կը յայտարարէ՝ որ «պէտք է պատրաստ լինել կայծակնային արագութեամբ ապստամբելով վերցնել իշխանութիւնը»:

Մէկ կողմ ձգենք բռնութեան իրական կիրարկումները՝ իրական ներխուժումները կառավարական տեղամասեր եւ լրագրողներուն հանդէպ ցուցաբերուած հայհոյանքները եւ աշխատանքի խափանումները, ամենավտանգաւորը Փետրուար 26-ի ֆաշիսթական տարրերու ներկայացում-բեմադրութիւնն էր Բաղրամեանի վրայ՝ 17-ի թոյլատրութեամբ եւ համակրութեամբ: Ծայրայեղ աջակողմեան ՎԵՏՕ շարժումի անդամ Նարեկ Մալեանի բեմադրութեամբ տեղի կ՚ունենայ *Ջաւշեսկուների գնդակահարութիւնը կամ մահ դաւաճաններին* խորագիրով ներկայացումը: Բեմադրութիւն մը Նիկոլ Փաշինեանի եւ իր կնոջ հրապարակային գնդակահարութեան:

Ինչպէս կը տեսնուի, լրատուային մեծաձայն աղմուկին եւ իրական գետինի վրայ գտնուող բազմութեան քանակին միջեւ կը գտնուի մեծ տարբերութիւն: Միաժամանակ, Երեւանի ժողովուրդը բնականոն կերպով կը շարունակէ իր առօրեայ կեանքը: Նոյնիսկ ժողովուրդին ուղղուած կոչը իրականացնելու ընդհանուր գործադուլ մնաց անհետեւանք:

Կը պահանջեն մէկ բան՝ Փաշինեանի հրաժարականը, շահագործելով դաւաճան բառը (այս բառի անմեկնաբանելի միասեւեռութեամբ հանդերձ) եւ իրենք իրենց ներկայացնելով հայրենիքի փրկութեան (այս հասկացողութեան անորոշ իմաստով հանդերձ) միակ կարելիութիւնը: Կը մերժեն արտահերթ ընտրութիւնները, կ՚ուզեն գալթել իշխանութիւնը: Անոնք այն խումբերն են, որոնք 25 տարի կեղծած էին ընտրութիւնները, կամ թիկունք կանգնած կեղծումներուն՝ ապահովելով Քոչարեանի եւ Սարգսեանի կեցութիւնները:

Յեղափոխութիւն բառը չեն գործածեր իրենց կատարածին համար:

Չունին ժողովուրդի կենսամակարդակի հետ կապուած, փտածութեան դէմ պայքարի, արդարադատութեան վերականգնումի որեւէ ծրագիր:

Ամբողջ յետպատերազմեան շրջանին ցուցաբերեցին ոչ մէկ գործնական օգնութիւն պատերազմի տուժողներուն նկատմամբ:

Կը փորձեն իրենց ելոյթներուն մէջ ցոյց տալ կատարեալ ռուսամէտութիւն՝ Ռուսաստանի հաւանութիւնը ստանալու մտադրութեամբ:

Նոյեմբեր 9-ի ստորագրութիւնը կ՚անուանեն «կապիտուլացիա», բայց խօսք կու տան իշխանութեան գալերնէն ետք «կապիտուլացիա»-յի համաձայնագրութիւնը չխախտել, թէեւ սկիզբները կոչ ուղղած էին նոյնիսկ ջնջել ստորագրուած համաձայնագիրը:

17-ի երեւցող անդամները եւ հռետորաբանները նախայեղափոխական շրջանի դէմքերն են: Եւ այստեղ կարելի է զարմանալ, բայց նաեւ բացատրութիւն փնտռել: Յեղափոխութեան ճնշումին տակ հեռացած կուսակցութիւնները ենթադրուած է վերանային ինքզինքնին: Ենթադրուած է նորոգեն եթէ ոչ իրենց խօսքը, գոնէ հանրութեան առջեւ երեւցող դէմքերը: Բայց իրականութիւնը ցոյց կու տայ, որ կա՛մ իրենց ներքին կազմակերպուածութեան աստիճանը թոյլ չի տար նորոգուելու եւ կը բաւարարուին եղածով, կա՛մ այնքան ինքնավստահ կը զգան՝ որ կարիք չեն տեսներ նորոգուելու: Նոր դէմքերու երեւումը քաղաքական քայլ մը պիտի ըլլար՝ մաքրելու իրենց անցեալը եւ վաստակելու աւելի լայն շրջանակներու համակրութիւնը:

17-ի ապագան տակաւին յստակ չէ, բայց անկասկած պիտի փորձեն ընդլայնել իրենց վերնախաւային հենքը՝ ներգրաւելով վերնախաւային համակարգի ներկայացուցիչներ (բանակի պատասխանատուներ, կրթական համակարգերու ղեկավար մարմիններ, եւ այլն), հասնելու իշխանական առաւելութիւններու:

Առ այժմ, անոնց հասարակական համակրութիւնը շատ տկար է, եւ այս է պատճառը որ անոնք անընդհատ կը դիմեն ոչ թէ յեղափոխական շարժումի կամ զանգուածները շարժելու միջոցին, այլ իշխանութիւնը գալթելու եւ յեղաշրջումի կարելիութեան:

Համաձայն եմ Րաֆֆի Տուտագլեանին, որուն վարած Թուֆէնկեան Հիմնադրամը հսկայական անձայն աշխատանք կը տանի իրական գետինի վրայ Արցախի վերաշինութեան համար.

«Ես կողմնակից եմ Փաշինեանի հրաժարականին եւ արտահերթ ընտրութիւններուն: Որքան արագ, այդքան լաւ:

«Բայց ես չեմ կրնար կանգնիլ քաղաքական այն ուժերու կողքին, որոնց կարկառուն ղեկավարներէն մէկը կը յայտարարէ՝ «տուէք ինծի իշխանութիւն, եւ ես քանի մը օրէն Ադրբէջանի մէջ մնացած գերիները տուն բերեմ»:

«Ես չեմ կրնար կանգնիլ այն ուժերուն կողքին, որոնք Բաղրամեան պողոտան փակելէ ետք խորոված կը պատրաստեն եւ յետոյ երկրի ղեկավարին եւ իր տիկնոջը գնդակահարումը կը բեմադրեն, եւ լայվ կը տարածեն աշխարհով մէկ:

3

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԱՐՏ 1

Արդէն յստակ է, որ օլիկարքական հակայեղափոխական շարժումը՝ իր ձեռքը ունենալով դատական կազմին կարեւոր մասը, ձախողեցուց Մարտ 1-ի դատավարութեան ընթացքը: Մարտ 1-ի պատասխանատուները տակաւին իրաւականօրէն չդատապարտուեցան, եւ ոչ ալ պիտի դատապարտուին:

10 սպանեալները կը մնան ամուրի՝ Տիգրան Խաչատրեան, Գոռ Քլոյեան, Տիգրան Աբգարեան, Արմէն Ֆարմանեան, Դաւիթ Պետրոսեան, Համլէտ Թադեւոսեան, Յովհաննէս Յովհաննիսեան, Գրիգոր Գէորգեան, Սամուէլ Յարութիւնեան, Զաքար Յովհաննիսեան:

Մարտ 1-ի գործով տուժողներու իրաւայաջորդներու պաշտպան Սեդա Սաֆարեանի խօսքով՝ քրէական գործը այժմ նոյն տեղը կը գտնուի՝ ինչ երկու տարի առաջ. «Մարտի 1-ի գործն առաջ չի գնում, եթէ այն առաջ գնար, Հայաստանում շատ գործընթացներ կանխատեսելի կը լինէր ե՛ւ իշխանութեան ե՛ւ մարդկանց համար»:

Ըստ Սաֆարեանին, «միայն Ռոբերտ Քոչարեանը չէ, որ դիմադրում է գործի քննութեան համար, Խաչատուրովը, Սէյրան Օհանեանը, Արմէն Գէորգեանը, Վարդան Օսկանեանը, որի անունն էլ կայ այս գործում, Օգանովսկին, Օնիկ Գասպարեանը, Արցախում շատ-շատերը եւս չեն ցանկանում, որ այս գործը պատշաճ քննուի, եւ համակարծիք են Ռոբերտ Քոչարեանի հետ, որի պաշտպաններն ամէն ինչ անում են, որպէսզի դատական նիստը չմտնի դատաքննութեան փուլ»:

Ըստ իրեն, ներկայ իշխանութեան միակ մեղքը այն է՝ որ չկարողացաւ պատշաճ արդարադատութեան համակարգ ստեղծել:

Անտարես հրատարակչութեան տնօրէն Արմէն Մարտիրոսեան, Մարտ 1-ին *Առաջին լրատուականի* հետ ունեցած զրոյցին, ներկայ քաղաքական իրավիճակին սկիզբը կը դնէ 2008 Մարտ 1-ը. «Եթէ թոյլ չտայինք, որ 2008-ի Մարտի 1-ը լինէր, եթէ աւելի շատ մարդիկ դուրս գային փողոց, եւ թոյլ չտայինք ճնշում գործադրել Սահմանադրական Դատարանի կամ զօրքի վրայ, եթէ յետագայում միահամուռ կերպով մերժէինք Սերժին, եթէ թոյլ չտայինք, որ 2013-ին Րաֆֆի Յովհաննիսեանը գիջէր, 2015-ին թոյլ չտայինք Սահմանադրութեան նենգափոխումը եւ 2018-ից սկսած՝ ամէն ինչ անէինք, որ այս իշխանութիւնը արագացնէր վեթինգը եւ բարեփոխումները, ապա այսօր այս իրավիճակում չէինք լինի»:

2021 Մարտ 1-ի երեկոյեան ժամը 6 ու կէսին, վարչապետ Նիկոլ Փաշինեան կը հրաւիրէ ժողովուրդը մարտմէկեան հանրահաւաքի Հարապետութեան

2

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

29. «Որոշ արտայայտչականութեամբ, ճշգրտութեամբ եւ անկեղծութեամբ կատարեց *Lucie de lammermoor*-ի վերջին տեսարանը՝ ‘Bientôt l’herbe des champs croîtra’» (Louis Schneider, ‘Au Conservatoire’, *Le Radical*, 11 juillet 1909, 29e année, no. 192, p. 2):

30. «[Կ’]երգէ բաւական ճաշակով: Արտայայտիչ եւ զգաստ խաղարկութիւն» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (‘Au Conservatoire: Roméos en graine et Juliettes en herbe’, *La Presse*, 11 juillet 1909, 76e année, no. 6237, p. 1):

31. «Ողբերգեց *Lucie de lammermoor*-ի Էտկարտ Ռաւենսվուտի դերերգը եւ վերջին տեսարանը՝ որ կը կոչուի գերեզման: Անտանելի նպաստաւոր էր իրեն համար, արխոզոն իրեն արժանի դարձուց անկեղծ ծափահարութիւններու: Կարելի էր այստեղ կանգ առնել: Ալլեկրոն, որ կը յանգի անձնասպանութեան յուսահատութեան դաշոյնով, քիչ մը պաղութիւն արձակեց, յատկապէս որովհետեւ շարժուձեւը վատ պատրաստուած էր բեմական առումով: Շատերը նոյնիսկ հաճոյքով ունկնդրեցին զինք» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Nicolet, ‘Conservatoire: concours d’opéra’, *Le Gaulois*, 11 juillet 1909, 44e année, no. 11593, p. 3):

32. «Պր. Շահ-Մուրատեան, թենոր, որ մրցեցաւ ոչ շատ արդիական տեսարանի մը մէջ՝ *Lucie de lammermoor*, օփերա-քոմիքէն աւելի ուրախ եղանակով» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Auguste Germain, ‘Concours du Conservatoire’, *L’Écho de Paris*, 11 juillet 1911, 26e année, no. 9108, p. 4):

33. «[Ճ]աշակով երգեց *Lucie*-ի արիան» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Mauprey, ‘Courrier des spectacles’, *Le Siècle*, 15 juillet 1909, soixante-quatorzième année, no. 26849, p. 3):

34. «*Lucie*-ի գերեզմանի տեսարանը հազիւ նպաստաւոր է իր համար» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Arthur Pougin, ‘Les concours du Conservtoire’, *Le Ménestrel*, 17 juillet 1909, 75e année, no. 29, p. 229):

35. «[Հ]աճոյք պատճառեց *Lucie de lammermoor*-ի գերեզմանի հինգած տեսարանին մէջ» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Adolphe Jullien, ‘Revue musicale: les concours du Conservatoire’, *Journal des débats politiques et littéraires*, 25 juillet 1909, 121e année, no. 204, p. 1):

36. «Պարզ եւ անկեղծ խաղարկութիւն: [...] Դիմադրութիւն, նրբութիւն, ճաշակ» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Albert du Mulin, ‘La semaine dramatique et musicale’, *Le Grand national*, 27 juillet 1909, huitième année, p. 2):

37. «Երբեմն կը պակսի քիչ մը ջերմութիւն, որ կը զարմացնէ ինծի» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Marguerite Casalonga, ‘Au Conservatoire: concours d’opéra’, *Com dia illustré*, 1er août 1909, 1re année, no. 15, pp. 423-424):

38. «[Ի]ր խոհական խաղարկութիւնը զուրկ չէ արժանապատուութենէ» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (L[ouis] L[aloy], ‘Résultats des concours’, *Bulletin français de la S. I. M.*, août-septembre 1909, Ve année, nos. 8-9, p. 779):

39. «[Ե]րիտասարդ երգիչը խիստ յաջող դասութաւորեց (phrasé) ‘J’ai vu disparaître l’espoir dont j’osais me nourrir’-ը» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Robert Brussel, ‘Les concours du Conservatoire’, *Le Figaro*, 28 juin 1910, 56e année, no. 179, p. 6):

40. «[Ան] պայքարեցաւ Քերիւպինիի *Abencérages*-ի ապերախտ էջի մը համար» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Adolph Aderer, ‘Les concours du Conservatoire’, *Le Petit parisien*, 28 juin 1910, trente-cinquième année, no. 12.295, p. 4):

41. «[Ա]ն կ’երգէ զգացումով եւ յուզումով եւ ունի նոյնիսկ տաամաթիք խառնուածք. երգիչ մըն է՝ որ մեծ ծառայութիւններ պիտի մատուցանէ զինք յանձնարարող տնօրէնին» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Eugène Héros, ‘Au Conservatoire’, *La Lanterne*, 29 juin 1910, trente-troisième année, no. 12,120, p. 3):

42. «*Abencérages*-ի արիան երգեց պատշաճօրէն» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Edouard Sarradin, ‘Théâtres: concours du Conservatoire’, *Journal des débats politiques et littéraires*, 29 juin 1910, 122e année, no. 179, p. 3):

43. «Պր. Շահ-Մուրատեան՝ որ դանդաղ բայց հաստատուն քայլերով կը յառաջդիմէ, Քերիւպինիի *Abencérages*-ի արիային մէջ հանդէս եկաւ ցուցադրելով իրական յառաջդիմութիւն» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Camille le Senne, ‘Courrier des spectacles’, *Le Siècle*, 29 juin 1910, soixante-quinzième année, no. 27195, p. 3):

44. «[Ա]շակերտը չի թուիր յառաջացած ըլլալ 1908-ի առաջին կարգի յիշատակութեան մրցանակէն ի վեր: Ան նոյնիսկ չկրցաւ ճիշդ սկսիլ Քերիւպինիի *Abencérages*-ի առնական եւ հոյակապ արիայի հոյակապ ռեչիթաթիւը՝ ‘Suspendez à ces murs mes armes, ma bannière’: [...] Ոճը ամբողջապէս անպիտան է» [*Les Abencérages*, ‘Suspendez a ces murs mes armes’] (Arthur Pougin, ‘Les concours du Conservatoire’, *Le Ménestrel*, 2 juillet 1910, 76e année, no. 27, p. 211):

45. «[Ա]նվեհեր, եթէ ոչ ընդմիշտ երջանիկ *L’Attaque du Moulin*-ին մէջ» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (Alfred Bruneau, ‘Concours du Conservatoire’, *Le Matin*, 5 juillet 1910, vingt-septième année, no. 9625, p. 2):

46. «Պր. Շահ-Մուրատեան ունեցաւ անվստահութեան պահեր» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (‘Les concours du Conservatoire’, *Le Radical*, 5 juillet 1910, trentième année, p. 4):

47. «Պր. Շահ-Մուրատեան ունի բարի կամեցողութիւն եւ խիզախութիւն» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (F. Mohisson, ‘Concours du Conservatoire’, *Le Journal*, 5 juillet 1910, no. 6491, p. 2):

48. «[Վ]կան եղաւ շատ ճշգրիտ զգացումի եւ գրաւիչ հմայքի» [Տեսարան *Aida*-էն] (Alfred Bruneau, ‘Concours du Conservatoire’, *Le Matin*, 10 juillet 1910, vingt-septième année, no. 9630, p. 4):

49. «Պր. Շահ-Մուրատեան առաջին մրցանակը կը պարտի իր աշխատանքին, վճռականութեան, ինչպէս նաեւ ընդունակութիւններուն» [Տեսարան *Aida*-էն] (Adolphe Aderer, ‘Au Conservatoire: le concours d’opéra’, *Le Petit parisien*, 10 juillet 1910, trente-cinquième année, no. 12, 307, p. 2):

50. «Պր. Շահ-Մուրատեան՝ որ կ’ամբարձի դէպի բարձր ձայնամասը անհրաժեշտ խոհեմութեամբ, Ռատամէսի դերը կ’երգէ բաւարար արիութեամբ՝ արժանանալու համար ունկնդիրներու ցնծութեան եւ առաջին մրցանակին: Ապականելու նպատակով չէ որ կ’ուզենք մեր համակրելի թենորին յայտնել Վերտիի եռերգներուն մէջ սուլֆէժը մշակելու օգտակարութիւնը» [Տեսարան *Aida*-էն] (Willy, ‘Les concours publics du Conservatoire’, *Com dia*, 10 juillet 1910, 4e année, no. 1014, p. 3):

51. «Եւ Պր. Շահ-Մուրատեան երգեց *Aïda*-ի լիթանիաները այնպիսի ոճով՝ որ անձամբ Քարուզոն կրնայ նախանձիլ, ինչպէս նաեւ գեղեցիկ ու կատարելագործուած ձայնի մը անհաւասար հրապուրանքով: Յաջողութիւն» [Տեսարան *Aida*-էն] (Georges Pioch, ‘Les concours publics du Conservatoire’, *Com dia*, 10 juillet 1910, 4e année, no. 1014, p. 3):

52. «[Կ’]ապշեցնէ իր շարժուձեւի անպատշաճութեամբ» [Տեսարան *Aida*-էն] (Georges Boyer, ‘Les concours du Conservatoire’, *Le Petit journal*, 10 juillet 1910, quarante-huitième année, no. 17, 362, p. 2):

53. «Քանիցս ըսած եմ՝ թէ որքան կը սիրեմ Պր. Շահ-Մուրատեանի ձայնը: Թող թոյլ տրուի ինծի այսօր կատարել քիչ մը նոյն մեղադրանքը՝ ինչ Պր. Ֆոնթանը: Խեղճ մարդկութեան ողջ զգացումները: Պր. Շահ-Մուրատեան զանոնք կ’արտայայտէ միեւնոյն շարժուձեւով՝ կիսով չափ լարուած երկու բազուկներ եւ կորացած սրունք» [Տեսարան *Aida*-էն] (Reynaldo Hahn, ‘Concours du Conservatoire’, *Le Journal*, 10 juillet 1914, no. 6496, p. 2):

54. «[Ի]ր տաամաթիք խառնուածքը հրաշք գործեց. շատ լաւ մրցեցաւ. մեղմ հատուածները շատ յաջող: Ինչո՞ւ աւարտին այս աւելորդ եռերգը, որ զրկեց Պր. Մուրատեանը խանդավառ ընդունելութենէ» [Տեսարան *Aida*-էն] (Eugène Héros, ‘Au Conservatoire’, *La Lanterne*, 11 juillet 1910, trente-troisième année, no. 12,132, p. 2):

55. «*Aïda*-ի առաջին արարի Ռատամէսի երգը կատարեց բարձր խղճմտանքով եւ ոչ առանց ուժի» [Տեսարան *Aida*-էն] (‘Théâtres: concours du Conservatoire’, *Journal des débats politiques et littéraires*, 11 juillet 1910, 112e année, no. 191, p. 3):

56. «[Հմտութեամբ երգեց] *Aïda*-ի առաջին արարի Ռատամէսի դժուար արիան» [Տեսարան *Aida*-էն] (Pierre Lalo, ‘La musique’, *Le Temps*, 12 juillet 1910, cinquantième année, no. 17910, p. 2):

57. «Պր. Շահ-Մուրատեան ունի [...] կորով» [Տեսարան *Aida*-էն] (‘Les concours du Conservatoire’, *Le Journal du dimanche*, 15 juillet 1910, nouvelle série, no. 87, p. 458):

58. «Իրականութիւնը կը պարտադրէ ինծի ըսել՝ որ յայտնի ռոմանսը երգեց բարձր ճաշակով, գրաւչութեամբ եւ արտայայտչականութեամբ, եւ թէ ան շատ աւելի բարձր ներկայացաւ միւս մրցակիցներէն: Գալով դերասանի յատկութիւններուն՝ աւաղ... դեռ ընելիք ունի» [Տեսարան *Aida*-էն] (Arthur Pougin, ‘Les concours du Conservatoire’, *Le Ménestrel*, 16 juillet 1910, 76e année, no. 29, p. 228):

(Շար. 4)



## ՄԱՐՏ 1

Հրապարակը: Համաձայն Իրազեկ Քաղաքացիներու Միաւորումի հաշուարկումին, հանրահաւաքին ներկայ կը գտնուի 21,000 – 25,000 մարդ:

Նախ, Փաշինեան ներողութիւն կը խնդրէ իր սխալներուն համար. «Ես ուզում եմ ձեզնից բոլորից՝ Հայաստանի Հանրապետութեան բոլոր քաղաքացիներից, Սփիւռքի բոլոր հայերից, Արցախի Հանրապետութեան բոլոր քաղաքացիներից ներողութիւն խընդրել իմ թոյլ տուած բոլոր սխալների համար»:

Վարչապետի ելոյթի արտայայտութիւններէն մէկը, բնականաբար, պիտի ըլլար Մարտ 1-ի գործը. «Մարտի 1-ի գործի բացայայտման ճըշմարտութեան առանցքային դրոյթն այն է, որ 2008 թուականի իշխանութիւնները բանակը հանել են սեփական ժողովրդի դէմ, ժողովրդի կամարտայայտումը թոյլ չտալու համար, եւ հէնց այս համատեքստում են տեղի ունեցել սպանութիւնները: Իսկ նախկին իշխանութիւնը 2008-ից յետոյ հոգ է տարել, որ ապացոյցները ոչնչանան»:

Փաշինեան կը յայտարարէ՝ որ պատրաստ է երթալու արտահերթ ընտրութիւններու, եթէ խորհրդանային ուժերը համաձայն ըլլան:

Կը խօսի Սահմանադրութեան փոփոխութեան անհրաժեշտութեան մասին եւ համակարգը կիսանախագահականի փոխելու հեռանկարը. «Եւ մենք այսօր էլ տեսնում ենք, որ այդ Սահմանադրութիւնը, ցաւօք, բազմաթիւ ճգնաժամային ռիսկեր է ստեղծում: Կարծում եմ, ժամանակն է արձանագրել, որ մենք պիտի աշխատենք, որ այս տարուայ հոկտեմբերին համաժողովրդական հանրաքըւէով ընդունենք նոր Սահմանադրութիւն կամ սահմանադրական փոփոխութիւններ, եւ ի վերջոյ կիսանախագահական կառավարման համակարգի անցնելը հնարաւոր տարբերակներից մէկը պէտք է լինի: Եւ այդ գործընթացը մենք պէտք է իրականացնենք Ազգային Ժողովի, կառավարութեան, Հայաստանի Նախագահի, քաղաքական ուժերի եւ քաղաքացիական հանրութեան հետ սերտ համագործակցութեան պայմաններում»:

Նախընտրական չյայտարարուած քարոզարշաւի սկիզբ մը կարելի է նկատել այս ելոյթը: Ամէն բան կրկին սկսաւ զերոյէն:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԳԵՐԻՆԵՐԻ ՀԱՐԱԶԱՏՆԵՐԻՆ ՍՏԻՊԵՑԻՆ ԽՕՍԵԼ

Պատերազմից յետոյ Խծաբերդի ուղղութեամբ գերեվարուած շիրակցի պահեստազօրայինների հարազատները Փետրուարի 28-ին հրատապ ասուլիս էին հրաւիրել Շիրակի մարզպետարանի դահլիճում: Նրանք քաղաքական բոլոր ուժերից պահանջում են զերծ մնալ գերիների հարցի շահարկումից եւ «իրենց երեխաներին քաղաքական դաշտ չդարձնել»:

Ծնողները, որոնք մինչ այս առհասարակ հրաժարւում էին լրագրողների հետ շփումներից, այս անգամ եւս՝ զգուշաւորութիւնից ելնելով, «փակագծերը բացելուց» խուսափում էին: Հարազատները չէին նշում նաեւ իրենց անունները:

Նրանք պնդում էին, որ գիտեն՝ ով ինչով է զբաղուած. «Մենք չենք ուզում փակագծեր բացել, չենք ուզում ներկայացնել, թէ այդ պրոցէսի մէջ ով ներգրաւուածութիւն ունի, ով ինչ-որ քայլ կը կատարի: Մենք չենք պաշտպանում ոչ մի քաղաքական ուժի, չենք կանգնում ոչ մի քաղաքական ուժի կողքին: Մենք իրենց յորդորում ենք՝ թող զերծ մնան իրենց յայտարարութիւններում գերիների, անհետ կորածների թեման շօշափելուց ու չխոչընդոտեն մնացած աշխատանքներին, որոնք կատարւում են, կատարուել են ու պիտի կատարուեն»:

Հարազատների կարծիքով՝ թեմայի քաղաքական շահարկումը խանգարում է գերիների վերադարձին. «Իրենք խանգարեցին սաղ պրոցէսը: Զրոյից բարձրացել էր, դարձել համարեայ 70 պրոցենտ, իրենք դարձրեցին նորից զրօ»:

Հարազատներին յատկապէս բարկացրել էր նախկին ԱԱԾ-ական, այժմ ընդդիմադիր Արթուր Վանեցեանի յայտարարութիւնը, թէ իշխանութեան գալու դէպքում ինքը գերիների հարցը մի քանի օրում կը լուծի:

«Եթէ այսօր նման հնարաւորութեան տէր անձնաւորութիւնը չի համագործակցում այն պատկան մարմինների հետ, որոնք լիազօրուած են տղաների վերադարձի համար բանակցութիւնների կամ միջնորդութիւնների, մենք կը մտածենք, որ դրա նպատակն ուրիշ է: ...Մի՛ շահարկէք, մեզ շահարկում պէտք չէ, մեզ պէտք են յստակ քայլեր»:

Հարազատները վստահ են, որ ներքաղաքական պրոցէսները, քաղաքական գործիչների այս շահարկումները միայն խանգարում են տղաների վերադարձի գործին. «Սթափուէ՛ք, թողէք երեխէքի արիւնը չորանայ, թողէք երեխէքին բերենք, ամօթ է, իրօք ամօթ է... Դրանից յետոյ գնացէք, սաղ աթոռներն էլ թող ձե՛զ լինի, ամէն ինչ թող ձե՛զ լինի»:

Գերեվարուածների ծնողները նշեցին, որ ստիպուած էին 4

1

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՎԵՐՆԱԽԱՒԸ

«Չեմ կրնար կանգնիլ այն ուժերուն կողքին, որոնց գլխաւոր ակտիւիստներն ու Սփիւռքեան մունետիկները Կարօ Փայլանին «Թուրք, Էրտողանի շուն» կը կոչեն եւ հազարումէկ հայհոյանք կը թափեն անոր գլխուն, պարզապէս որովհետեւ իր կարծիքը արտայայտած է բանակի հրամանատարութեան յայտարարութեան մասին:

«Ես չեմ կրնար կանգնիլ քաղաքական այն ուժերուն կողքին, որոնց գլխաւոր աջակիցները աշխարհով մէկ կը հայհոյեն, դաւաճան ու ծախուած կը համարեն բանակի բարձրաստիճան այն ղեկավարներուն, ներառեալ Ջալալին, պարզապէս որովհետեւ անոնք իրենց ստորագրութիւնը չէին դրած Փաշինեանի հրաժարականի պահանջին տակ» (Րաֆֆի Տուտագլեան, «Աստուած ձեզի հեռու պահէ հայ ժողովուրդէն...», *Մեր ուղին*, 27 Փետրուար 2021, https://mer-oughin.am/2021/02/27/):

### 2. ՕԼԻԿԱՐՔԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ

Իրական գետինի վրայ, Թաւշեայ Յեղափոխութենէն ետք ամենակենդանի եւ ամենագործունեայ վերնախաւային ստուերային տարրը կը շարունակէ ըլլալ քրէա-օլիկարքական համակարգը, որուն հիմքերը ուժեղօրէն դրուած էին Քոչարեանի կողմէ: Անոր ձեռքն է ամէն բան՝ տնտեսութիւն, քաղաքական արտաքին յարաբերութիւններ, լրատուական ցանցեր, արդարադատութիւն, գաղտնի գործակալութիւն, բանակային կարեւոր մատակարարումներ, ոստիկանութիւն, մշակութային հիմնարկներ (գրեթէ չի խօսուիր մշակոյթի օլիկարքացումին մասին): Կը տիրապետէ նաեւ փտածութեան, ինչպէս նաեւ հսկայական դրամագլուխի արտահոսքին վրայ դէպի օֆշորային գօտիներ:

Այս համակարգը կրցաւ յետյեղափոխական նոր իշխանութեան տառացիօրէն իւրաքանչիւր քայլը վարկաբեկել եւ ապա խոչընդոտել, Փաշինեանի իւրաքանչիւր բառէն ստեղծել մեծ պատմութիւններ իսկ անոր սխալները վերածել համահայկական աղէտներու:

Նոյնիսկ կրցաւ արդարութեան անունով եւ արդարութեան *համար* կատարուած դատավարութիւնները ներկայացնել իբրեւ քաղաքական կամ անձնական հետապնդումներ, իբրեւ արդարութեան *դէմ* մեղանչումներ, իբրեւ հայը-հայու դէմ գործարքներ, վերջապէս յաջողելով ձախողեցնել անոնցմէ կարեւորները:

Կազմակերպուած ու անզիջող կերպով զարգացուց նոր իշխանութիւնները սեւցնելու եղանակը, հասնելով աներեւակայելի սահմաններու: Եւ յաջողեցաւ սեւցնել (աւելի մանրամասն՝ *Զահակիր*, 1881-1882):

Ռեստարտ հիմնադրամի ծրագիրներու ղեկավար Դաւիթ Պետրոսեան, *Սիվիլ Նէթ*ի Մարտ 4-ի հարցազրոյցին կը կրկնէ՝ թէ ինչպէս այդ համակարգը ձախողեցուց յեղափոխութիւնը. «Այժմ մենք գործ ունենք մի իրավիճակի հետ, երբոր 2018 թուականի յեղափոխութեան առջեւ դրուած նպատակները՝ որոնք ուղղուած էին համակարգը փոխելուն, յաջողութիւնը ամբողջովին չեն հասցրել: Ու նախկին ռեժիմը, որը իրենից ներկայացնում է ոչ թէ ինչ որ մի կուսակցութիւն այլ մարդկանց խմբաւորում՝ որ կորցրել է իշխանութիւնը եւ ամէն ինչ փորձում է անել իշխանութիւնը յետ վերցնելու համար, օգտագործում է բոլոր հնարաւոր լծակները այդ իշխանութիւնը յետ բերելու համար: Այս երեք տարուայ ընթացքում, մենք կարող ենք նշել մի քանի լծակ, օրինակ՝ մեդիա դաշտում ստի, ատելութեան մեծ պրոպականդա աւելցուկ, հասարակութեան մօտ պատկերացում որ գործ ունենք անարխիայի հետ, երկրում քաոտիկ իրավիճակ է: Ու եթէ մենք փորձենք վերլուծել թէ ինչ յայտարարութիւններ են նրանք անում, բացայայտ հակասութիւններ կը տեսնենք, բայց դրա հիմնական նպատակը եղել է որպէսզի հասարակութեան մօտ իջեցնեն այդ նոյն յեղափոխութեան կարեւորութիւնը: Ու հիմա նախկին ռեժիմը ունենալով լծակներ որոնցից ներկայիս իշխանութիւնը զրկեց նրանց, իսկ սրանք ոչ օրինական լծակներ են՝ կապեր, անձնական ազդեցութեան տարածքներ, շահարկումներ, ինչու չէ նաեւ կոմպրոմատներ, փորձում են ամէն ինչ անել, որպէսզի այդ իշխանութիւնը յետ բերեն: Ու ես չեմ բացառում նաեւ որ բանակը ինչ որ կապերով կարող է կապուած լինել այդ նոյն նախկին համակարգի հետ, որովհետեւ նախկին ուժը ստեղծել է մի համակարգ որ ամբողջովին ծառայում էր իրեն, իսկ այդ համակարգը մենք չենք քանդել»:

Ծիչդ նոյն բանը կ՛ըսեն շատ-շատեր: Ահաւասիկ քաղաքական վերլուծաբան Արեգ Քոչինեան *Առաջին լրատուական*ի Մարտ 5-ի հարցազրոյցին. «Խնդիրը նրանում է՝ որ կայ մի ցանցային ուժ, որը որ չունի յստակ մէկ կենտրոն - որին դուք ասում էք ընդդիմութիւն, ես ասում եմ ուժ - որը օգտագործում է ցանկացած պատեհ առիթ՝ դա կը լինի բանակի հետ կապուած, կը լինի կրթութեան հետ կապուած, կը լինի որեւէ տեղ, որեւէ համաժողովի ընդունած որեւէ բանաձեւի հետ կապուած, այսինքն ցանկացած առիթ այս իշխանութեանը հարուածելու համար: Հիմա դա կը լինի Հայաստանի շահերի դէմ, դա կը լինի մեր ինքնիշխանութեան դէմ, դա կը լինի մեր տնտեսական շահերի դէմ, այս ցանցային ուժին որեւէ մէկին էլ չի հետաքրքրում: Իրենց միակ խնդիրը այս կառավարող ուժին, եւ ըստ էութեան ժողովրդի կամարտայայտութեանը հարուածելն է: Իրենց նպատակը արդարադատութիւնից խուսափելն է, իրենց կոռուպցիոն կապերը պահպանելն է, եւ հնարաւորութեան դէպքում, ուրեմն, ժողովրդի կամարտայայտութիւնից անկախ գալն է իշխանութեան կամ իշխանութեան որոշ պատառ պոկելն է»:

1-ին եւ 2-ին կապը շատ սերտ է՝ 1-ը արտածորումն է 2-ին, թէեւ 2-ը շատ աւելի լայն հարթակ մըն է: Կարելի է ըսել, 1-ը կը հանդիսանայ 2-ին սեղմուած քաղաքական դէմքը:

Հետաքրքրական է 1-ի եւ 2-ի ուժային կապը: Երբ 2-ը ամէն բան է Հայաստանի մէջ, անկէ սերած 1-ը՝ իբրեւ ուժային համախմբում, անհամեմատօրէն քիչ համակրութիւն ունի հանրութեան մէջ: Պատճառը, հաւանաբար, 17-ի արհեստական համախմբումն է, ուր իրական գետինի վրայ անոնցմէ իւրաքանչիւրը ունի իր գործնական շահերը օլիկարքական համակարգին մէջ: Երկու օլիկարք, երկու դրամատէր, կը նշանակէ ծայրայեղ ու արմատական մրցակցութիւն բայց ոչ երբեք համախոհութիւն: Հիմա ինչպէ՞ս կրնան 17 օլիկարքական շահերով խումբեր միանալ: Ինչպէ՞ս կարելի է ՀՀԿ-ի առաջնորդ Սերժ Սարգսեանի տնտեսական շահերը միացնել Բարգաւաճ Հայաստանի Պարոն Ծառուկեանի շահերուն: Եւ եթէ 17-էն հանենք «Փաշինեան դաւաճան» կարգախօսը, այնտեղ կը պարզուի քաղաքական դատարկութիւն:

### 3. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ ԵՒ ԻՄ ՔԱՅԼԸ

Վերնախաւի երրորդ ներկայացուցիչներն են Նիկոլ Փաշին-




Մարտ 1-ի հանրահաւաք

եան եւ իր քաղաքական շրջապատը: Թիւ 2-ի ստուերային անզիջող պայքարը մեծապէս տկարացուց անոնց կարողունակութիւնը, յաջողեցաւ մտցնել անհաւասարակշռութիւն անոնց խօսքին եւ գործին մէջ: Այս բոլորէն աւելի կարեւորը՝ գլխաւոր հիմնարկները շահադիտական ենթարկուածութիւն ցուցաբերեցին նախորդ համակարգին նկատմամբ, համակարգ մը՝ որ իր անսահման քրէական դրամով ունակ էր ընելու շատ բաներ:

Ոչ մէկ կերպ Փաշինեան եւ իր շրջապատը հրեշտակներ էին, յատկապէս 2019-ի երկրորդ կէսէն սկսեալ քիչ չէին հռետորաբանական սխալները: Մասնաւորապէս պէտք չէր տեղի տային յատուկ պատրաստուած ծուղակներուն եւ աւելի վեր բարձրանային սարքուած մեքենայութիւններէն:

Եկաւ պատերազմը, որ պատեհ առիթ մը եղաւ 1-ի ստեղծումին եւ 2-ի նորոգուած աշխուժութեան, ալ աւելի տկարացնելով ներկայ իշխանութիւնները, որոնց այլեւս ուրիշ բան չէր մնար քան դիմել իշխանական ինքնապաշտպանութեան: Եւ այս էր հակայեղափոխական շարժումին նպատակներէն մէկը. իշխանութիւնը գործունեայ տարրէ մը վերածել ինքնապաշտպանութեան կարօտ վերնախաւի:

Նորայր Էպլիղաթեան իրաւացի է. «Թաւշեայ յեղափոխութիւնը (էֆեմիզմ՝ մեղմասացութիւն, թոյլերի կամ երկչոտների համար) հայկական օլիգարխիայից ու նրա կառավարման համակարգից ազատուելու փորձ էր: Բայց նոր հաստատութիւնը չէր կարող օգտագործել ադմինիստրատիւ ռեզերվի ողջ տաղանդը (դա այնքան էլ շատ չէր): Աւելին, նոր ադմինիստրացիան բոլոր կողմերից յարձակման ենթարկուեց օլիգարխիայի կողմից, որը փորձում էր իշխանութեան վերադառնալ, կամ խուսափել երկարատեւ բանտարկութիւնից ու ունեցուածքի բռնագրաւումից: Նոր ղեկավարութիւնը շատ մեծ ուժ/էներգիա ծախսեց պաշտպանութեան վրայ, փոխանակ իր օրուայ առաքելութիւնն իրականացնելու» (Նորայր Էպլիղաթեան, «2020թ. պատերազմ՝ կատարեալ փոթորիկ թէ՞ չախ եւ մատ», *Մեր ուղին*, https://mer-oughin.am/2021/01/19/):

Արդ, հիմա տեղի ունեցածը, ինչպէս ռուս պլոկէր Ալեքսէյ Ռոմանով կ՛ըսէ *Առաջին լրատուական*ին (2 Մարտ)՝ «պայքար է ոչ թէ իշխանութեան եւ ընդդիմութեան միջեւ, այլ յեղափոխութեան եւ հակայեղափոխութեան միջեւ»:

Տկարացած իշխանութենէ մը կարելի է ակնկալել ամէն բան, օգտագործելով տակաւին իր տնօրինութեան տակ գտնուող հաստատութիւններուն մնացորդները:

Փաշինեան եւ Իմ Քայլը նախ պաշտօնապէս մերժեցին 4




## ԳԵՐԻՆԵՐԻ ՀԱՐԱԶԱՏՆԵՐԻՆ ՍՏԻՊԵՑԻՆ ԽՕՍԵԼ

3

տուլիս հրաւիրել: Ասում էին՝ հնարաւոր չէ այլեւս լռել: Սովորաբար հանրային խօսելուց իրենք հրաժարւում են. ամէն օր հաւաքւում են Շիրակի մարզպետարանում, փոխանակւում նորութիւններով, պարբերաբար՝ հանդիպում պատկան մարմինների ներկայացուցիչների հետ: Քննարկւող թեմաները նախընտրում են պահել գաղտնի՝ Ադրբեջանում գտնւող իրենց երեխաներին չվնասելու համար:

Պատերազմից յետոյ խծաբերդում գերեւարուած 62 պահեստազօրայիններին մինչ այժմ Հայաստան է վերադարձուել միայն 8-ը: Ադրբեջանական կողմը նրանց վերադարձնել հրաժարւում է, ինչը պաշտօնական Երեւանի կողմից որակւում է որպէս սակարման փորձ: Բանակցութիւնները շարունակւում են:

*Epress.am*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՎԵՐՆԱԽԱՒԸ

3

արտահերթ խորհրդարանական ընտրութիւններ կատարել եւ ապա սկսան խօսիլ արտահերթ ընտրութիւններու կարելիութեան մասին՝ բանակցային հենքի վրայ: Մէկ կողմէ՝ այս ռազմավարական մերժումով եւ ապա մերժումի մեղմացումով կը յետաձգուի միջիշխանական պայքարի ժամանակը, միւս կողմէ՝ կարելի՞ է ժողովրդավարական ընտրութիւններ կատարել վատառողջ քաղաքական միջավայրի մէջ: Կարելի՞ է ժողովրդավարական ընտրութիւններ կատարել «դաւաճան»-ի առաջնային նշանաբանի տակ, երբ հանրութեան մէկ մասը ողողուած է տառացի հայհոյանքներով եւ փոխադարձ վիրաւորանքներով:

Այլեւս կարելի չէ տկարացած իշխանութենէն ակնկալել Թաւշեայ մօտեցում, ընդհակառակը, բռնութիւնը կրնայ դառնայ ինքնապաշտպանութեան մեքանիզմ՝ ի դէմս 17-ի արդէն յայտարարած եւ կիրարկող բռնութեան: Վտանգաւոր է:

Այլեւս կարելի չէ տկարացած իշխանութենէն ակնկալել հասարակական բարեկեցութիւն՝ ի դէմս 17-ին, որոնք 20 տարի չէին հետաքրքրուած հասարակութեան բարեկեցութեամբ եւ հիմա դարձած են «ընդդիմութիւն»:

Քաղաքական դաշտը կ՚ընթանայ դէպի փակուղի:

Փետրուար 25-ին, Զինուած Ուժերու գլխաւոր շտաբի աւելի քան 30 բարձրաստիճան զինուորականներ հանդէս կու գան յայտարարութեամբ, ուր կը պահանջեն Փաշինեանի եւ կառավարութեան հրաժարականը: Ասիկա կ՚ընկալուի իբրեւ ուղղակի յեղաշրջումի փորձ: Այս յայտարարութեան վրայ, Փաշինեան յետպատերազմեան շրջանին համար առաջին անգամ ըլլալով իր համակիրները կը հրաւիրէ հանրահաւաքի Հանրապետութեան Հրապարակ: Քանի մը ժամ ետք տեղի կ՚ունենայ հանրահաւաքը՝ 10,200 մարդու ներկայութեամբ (ըստ Իրազեկ Քաղաքացիներու Միաւորումի հաշուարկումին):

Ֆէյսպուքի Փետրուար 25-ի գրառումով, Թրքահայ Կարօ Փայլան կը գգուշացնէ. «Կը դատապարտեմ Հայաստանի մէջ պատահած յեղաշրջման փորձը: Կոչ կ՚ուղղեմ Հայաստանի ժողովուրդին՝ տէր կանգնելու ժողովրդավարութեան»: Փայլան՝ որ մինչեւ հիմա հայերուն համար հերոս մըն էր, քանի որ ցեղասպանութեան հարցով ուղղակիօրէն կը դիմակայէր Թուրքիոյ կառավարութիւնը, այս խօսքէն ետք հայութեան մէկ հատուածի համար անմիջապէս կը դառնայ Թուրքիոյ կառավարութեան հնազանդ ծառայ, քանի որ Էրտողան եւս դատապարտած էր յեղաշրջումին փորձը: Հիմա ի՞նչ ընենք որ Թուրքիոյ մենապետը այդպէս յայտարարած էր: Սփիւռքահայ տարածուած մամուլ մը եւս նոյն ծուղակը ձգեց ինքզինքը, երբ Էրտողանի յայտարարութեամբ անպայման դաւաճանական կապ գտաւ Էրտողանի եւ Փաշինեանի միջեւ: Չե՞նք ուզեր մտածել՝ որ Էրտողան իր անձնական շահերը ունէր այդպէս յայտարարելու: Իր բանտերը քաղաքական եւ գաղափարական բանտարկեալներով լեցուցած Էրտողան ամէն առիթ պիտի օգտագործէ՝ որպէսզի ցոյց տալով ուրիշին իրական կամ ենթադրեալ յեղաշրջումը, ինքզինքը պատկերէ իբրեւ ժողովրդավար: Նոյն խօսքը արտասանելով բնաւ չեն նոյնանար դրդապատճառները: Ընդհակառակը, կրնան ճիշդ հակառակ դրդապատճառներ մղել արտայայտելու միեւնոյն կարծիքը, մանաւանդ որ նման դէպքերու պարագային ընտրութիւնը ընդամէնը երկուքի միջեւ է՝ չար կամ բարի, յեղաշրջում կամ ոչ-յեղաշրջում: Չկայ երրորդը:

Կու գայ բազմաչարչար Մարտ 1-ը: Մարտ 1-ին, Հանրապետութեան Հրապարակը Փաշինեան կը հրաւիրէ հանրահաւաքի, որուն ներկայ կ՚ըլլայ 21,000 – 25,000 մարդ (ըստ ԻՔՄ-ի), թիւ մը՝ որ անհամեմատօրէն աւելի բարձր է 17-ի հաւաքած աջակիցներէն (տես վերը):

Փաշինեան ըսել կ՚ուզէր՝ որ ինքն ալ կրնայ հաւաքել հանրութիւն եւ այն ալ բաւական դիւրութեամբ:

Բայց Փաշինեանն ու 17-ը կարծէք պէտք ունին իրարու՝ իշխանական պայքարին համար: 17-ի իշխանութեան գալու միակ յոյսը Փաշինեանն է՝ օգտագործելու համար «դաւաճան»-ի տիպարը, իսկ Փաշինեան պէտք ունի 17-ին՝ հիմնուելու համար անոնց 20 տարուայ իրական փտածութեան վրայ: Առ այժմ, երկու կողմերն ալ փոխկապակցուած են իրարու:

### 4. ՈՒԺԱՅԻՆ ԵՐՐՈՐԴ ԿՈՂՄԻ ԲԱՑԱԿԱՅՈՒԹԻՒՆԸ

Ուժային-իշխանական երրորդ կողմ-ընդդիմութիւնը այսօրուայ վերնախաւի կարեւոր բացական է: Նկատի ունիմ լրջախոհ եւ գործունեայ երրորդ կողմ մը, եւ ոչ թէ իր ձայնը տեղ հասցնելու համար աջ-ձախ փորձեր կատարող թափառական ընդդիմութիւն մը:

Բայց պէտք է հարցնել: Կարելի՞ է իրական երրորդ կողմի յառաջացումը օլիկարքական պայմաններու մէջ: Ամբողջ համակարգը իր ձեռքը ունեցած օլիկարքութիւնը պիտի չպայքարի՞ արդեօք երրորդ կողմի մը դէմ, որ մաքուր է, կ՚ուզէ ժողովրդավարութիւն մտցնել երկիրին մէջ՝ քաղաքական, տնտեսական, մշակութային, լրատուային եւ խօսքային առումներով: Պիտի թողո՞ւ, որ ՀՆԱ-ն՝ որուն կարեւոր տոկոսը իր սեփականութիւնն է, արդարօրէն համաբաշխուի ժողովուրդի լայն խաւերուն: Պիտի ընդունի՞ որ տնտեսութիւնը դուրս ելլէ քանի մը խոշոր մենատէրերու ձեռքէն եւ դառնայ ժողովուրդին սեփականութիւնը: Անշուշտ՝ ո՛չ: Ուրեմն, երրորդ կողմի գոյութեան մը բաղձանքը երազային ութոփիա՞ կը դառնայ: Ներկայ պահուն այդպէս կը թուի ըլլալ, բայց երազանք մը՝ որուն փարատումը եւ իրականութեան վերածումը անհրաժեշտութիւն մըն է, եթէ կ՚ուզենք տեսնել հայութիւն մը՝ առողջ քաղաքական եւ լայն հասկացողութեամբ ժողովրդավար մթնոլորտի մէջ: Եւ այսպէս վերադարձանք Թաւշեայ Յեղափոխութեան առաջին նպատակին: Իրապէ՞ս կարելի չէ ունենալ հասարակութիւն մը՝ որուն բոլոր անդամները հաւասար են բարեկեցիկութեան առումով, հաւասար են արդարութեան առջեւ:

### 5. ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՑԱԿԱՅՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի քաղաքական համակարգը ի սկզբանէ ստեղծուած է անհատներու շուրջ: Կը բաւէ վերյիշել անուանումները՝ լեւոնական, քոչարեանական, սարգսեանական, փաշինեանական: Անձերու համար կը ստեղծուին կուսակցութիւններ, կամ արդէն գոյութիւն ունեցող տկար կուսակցութիւններ կու գան առաջնագիծ: Բուն բացական կուսակցութիւնն է՝ որմէ պէտք է բխէր իշխանական անհատը, իր հրապոյրով եւ ներկայացուցչական ազդեցիկութեամբ:

Քաղաքական դաշտին վրայ կը բացակային ձախերը, նոյնիսկ միջինները, որոնք կարեւոր են գործնական հաւասարակշռութիւն մտցնելու իշխանական գործողութիւններուն մէջ: Խորհրդարանի ուժերը միշտ եղած են աջակողմեայ եւ ծայրայեղ աջակողմեայ: Աջակողմեայ է այսօրուայ իշխող Իմ Քայլը դաշինքը, ինչպէս նաեւ Լուսաւոր Հայաստանը: Ծայրայեղ աջակողմեայ է Խորհրդարանի Բարգաւաճ Հայաստանը: 17-ը բոլորն ալ աջակողմեայ եւ ծայրայեղ աջակողմեաներ են իրենց գաղափարախօսութեամբ եւ տնտեսական իրական գործողութիւններով, թէեւ անոնցմէ մէկ կամ երկու հատը կրնան իբրեւ դիմակ գործածել ընկերվարական կեղծ պիտակներ:

### 6. ՈՉ-ՈՒԺԱՅԻՆ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԻ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆԸ

Թէեւ յօդուածս վերնախաւի մասին է, այսինքն վերէն վար յառաջացած իշխանութեան, բայց կարեւոր է ակնկալել ոչ-ուժային՝ վարէն վեր այլընտրանքի կարելիութիւնը: Շատ դժուար է ունենալ վարէն վեր հակաիշխանութիւն, աւելի ճիշդ՝ ապաիշխանութիւն, երբ պատկերը վերոբերեալն է: Բայց փորձը ողջունելի է:

Քաղաքացու Որոշում (ՔՈ) սոցիալ-դեմոկրատական կուսակցութիւնը նման փորձ կատարեց Փետրուար 26-ին, Մաշտոցի պուրակին մէջ ժողովուրդին հրաւիրելով հաւաք-քննարկումի: Բնական է որ զանգուածներ պիտի չհաւաքուէին այնտեղ՝ այլընտրանք է: Բայց պէտք չէ մոռնալ՝ որ որեւէ այլընտրանքի իմաստը իր ենթակայական տարածումին մէջ է, որ, եթէ պայմանները ներեն, շատ աւելի ընդգրկուն ու բովանդակային կրնայ ըլլալ քան ուժային ուղղահայեաց առարկայական գիտելիքը:

Կուսակցութեան գործադիր մարմինի անդամ Սուրէն Սահակեան կը բացատրէ հաւաքին իմաստը.

«Հաւաքի նպատակն էր ազդարարել մի գործընթացի մեկնարկ, որի աւարտին մենք կ՚ունենանք պակաս քաղաքական ապատիա եւ իրենց քաղաքական օրակարգը պարտադրող քաղաքացիների ստուար շարքեր փողոցներում: Գործընթացի աւարտին երկու բեւեռների պարտադրած օրակարգն իրենցը չհամարող քաղաքացիները հարթակ կ՚ունենան՝ արտայայտելու իրե՛նց մտքերն ու պահանջները: Միւս քաղաքացիները սրա-նրա միտինգներին «այո» կամ «ոչ» գոռացող քաղաքականութեան օբիեկտից կը վերածուեն իրենց օրակարգը պարտադրող քաղաքականութեան սուբիեկտի:

«Այս նպատակով կ՚իրականացուեն գործողութիւններ, որոնք իրենց բնոյթով նման կը լինեն նախկինում Հայաստանում տեղի ունեցած քաղաքացիական նախաձեռնութիւնների գործելաոճին: Իհարկէ, նախկինում, հին քաղաքական համակարգի դէմ կիրառուող գործիքակազմը այսօր արդիւնաւէտ կիրառելի չէ եւ նոր գործիքների համար ստեղծագործական մօտեցման անհրաժեշտութիւն է առաջանալու, ինչի փորձը մենք ունենք: Նախաձեռնող խումբը, ներառելով, համագործակցելով այլ քաղաքացիների, քաղաքացիական խմբերի հետ, կը լուծի այդ հարցը: Եթէ գործընթացում մասնակցութեան ցանկութիւն լինի, դիմէք ինձ կամ ՔՈ ցանկացած անդամի» (Սուրէն Սահակեան, «Քաղաքական օրակարգով՝ շուտով ստուար շարքեր փողոցներում», *Մեր ուղին*, 27 Փետրուար 2021, https://meroughin.am/2021/02/27/):

Ա.

دار شركة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1888 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՄԱՐՏ 2021

*ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.*

عدد رقم ١٨٨٨ الخميس ٢٥ مارس ٢٠٢١


## ԵՐԿՈՒ ՓԵՍԱՆԵՐ

Գործող նախագահ Ռեճէփ Թայիփ Էրտողանի աղջըկան ամուսինը կը կոչուի Սելճուք Պայրաքթար: Փեսայ դարձած է 2016-ին, ամուսնանալով Սիւմէյէյի հետ:

Նախկին նախագահ Սերժ Սարգսեանի աղջկան ամուսինը կը կոչուի Միքայէլ Մինասեան: Փեսայ դարձած է շատ աւելի վաղ, ամուսնանալով Անուշի հետ:

Փեսաներ՝ մէկը միւսէն աւելի «հուչակաւոր»:

**Պայրաքթար ԱԹՍ ընդդէմ Զագզվէ սրճարաններուն**

Սելճուք Պայրաքթար կը հանդիսանայ Թրքական Պայքար ռազմական արդիւնաբերական ընկերութեան Գլխաւոր Թեքնիքական Տնօրէնը: Պայրաքթար անունով անօդաչու թռչող սարքերու (ԱԹՍ) ետեւը գտնուող գիտական գլխաւոր միտքն է, այն Պայրաքտարներուն՝ որոնք Ազըրպէյճանին վաճառուելէ ետք, 2020-ին թափեցան Ղարաբաղի գլխուն, աւելի եւս հարստացնելով Սելճուքի եւ ընտանիքի գրպանը: Պայրաքտարներ՝ որոնք արդէն գործածուած եւ փորձարկուած ըլլալով Թուրքիոյ քուրտերուն դէմ, ինչպէս նաեւ Սուրիոյ եւ Լիպիոյ մէջ եւ այլուր, կատարելագործուեցան Ղարաբաղի համար, եւ Ղարաբաղի մէջ գործածուելէ ու նոր փորձառութիւն ձեռք ձգելէ ետք ալ աւելի պիտի կատարելագործուին՝ ապահովելով նոր գործածութիւններ եւ վաճառքներ: Պայրաքտարներուն գինն ալ պիտի աւելնայ: Ժամանակակից պատերազմները տեղի կ՚ունենան որովհետեւ *նախ եւ առաջ* կայ զէնքի արդիւնաբերութիւն: Զէնք՝ զէնքի համար:

գայն հիմնադրած է Պայրաքտար Քարտէշլէր, իսկ այսօր ղեկավար պաշտօններով ներգրաւուած են նաեւ իր երեք զաւակները, որոնցմէ մէկն է Էրտողանի փեսան:

Ասիկա՝ Թրքական կողմի փեսան:

Հիմա տեսնենք հայկական կողմի փեսան, որ այսօր դատական արդարութենէն խուսափելու համար փախուստ տուած է Հայաստանէն:

Իր ամենահուչակաւոր «ներդրում»-ը Հայաստանի տնտեսութեան մէջ կը հանդիսանայ Զագզվէ (անունն ալ՝ Թրքերէն) ՍՊԸ սրճարաններու ցանցի հիմնադրութիւնը, 2003-2011-ին ըլլալով անոր միանձնեայ բաժնետէրը: 2011-ին իր բաժնեմասը կը փոխանցէ Վիրճինեան Կղզիները գրանցուած Զագզվէ Հոլտինկ ՍՊԸ-ին, իսկ 2018 Սեպտեմբերին դարձեալ տեղի կ՚ունենայ սեփականատէրերու փոփոխութիւն:

Սրճարաններու հետ նաեւ լրատուութիւն: Միքայէլ Մինասեան լրատուային կայսր մըն էր, վերահսկելով Հայաստանի ամենամեծ լրատուային հոլտինկին՝ ՊանԱրմենիան Մեդիա Գրուպին վրայ: «Խօսելով անանունութեան պայմանով, ՊանԱրմենիայի աւագ գործադիր մը *Eurasianet*-ին հաստատած է՝ որ խումբը կը գտնուի Մինասեանի վերահսկողութեան տակ», 2018 Յուլիս 12-ին Գրիգոր Աթանէսեան կը գրէր *Eurasianet*-ի պաշտօնական կայքէջին վրայ:

2019 Փետրուարին ՊանԱրմենիա կը յայտարարէ իր գործունէութիւնը դադրեցնելու մասին: Իր բաղկացուցիչները կ՚անցնին տարբեր ընկերութիւններու: Մինասեանի անունը կարելի չէ եղած ամրագրել նոր բաշխումին մէջ, բայց հաւատալ՝ որ ան ձեռք քաշած է լրատուային կայսրութենէն, պարզապէս միամտութիւն պիտի ըլլայ:

Սրճարանի եւ լրատուութեան միջեւ՝ անհամար միաժամանակեայ գործարքներ:

*Սիվիլնէթի* հետախուզական յօդուածի մը մէջ (1 Նոյեմբեր 2019-ին արտատպուած Հայկական Ուսումնասիրութիւնների Անի Կենտրոնի կայքէջին վրայ), Մկրտիչ Կարապետեան կը գրէ՝ որ «Հայաստանում ամենախոշոր ձեռնարկութեան՝ Զանգեզուրի Պղնձամոլիբդէնային Կոմբինատի (ԶՊՄԿ) բաժնետէրերը ընկերութեան մասնաւորեցումից յետոյ փոփոխուել են: ԶՊՄԿ-ում խոշոր մասնակցութիւն ունեցող բաժնետէր Մաքսիմ Յակոբեանի ընտանիքը 2017-ին ամբողջութեամբ վաճառեց իր բաժնեմասերը մի ընկերութեան, որի սեփականատէրերը կապւում են Սուրբ Աթոռում Հայաստանի նախկին դեսպան Միքայէլ Մինասեանի շրջապատի հետ: Յեղափոխութիւնից յետոյ Կոմբինատում դարձեալ բաժնետէր է փոխուել»:

Բացի այդ, դարձեալ Կարապետեանի տուեալներուն համաձայն, 2017-ին եղած է Դիսթրիմէքս ընկերութեան բաժնետէրերէն: Դիսթրիմէքս զբաղած է ծխախոտ ներմուծելով Հայաստան: Նոյնպէս, 2012-ին Երեւանի մէջ հիմնուած Ջի Առ Ի Փի Սի Օ ընկերութիւնը կապուած է Միքայէլ Մինասեանի շրջապատին հետ: Ընկերութիւնը հիմնադրած է Զագզվէ ցանցի փոխտնօրինուհի Սիլվա Ղամբարեան:

Մինչ 2016-ին Սամուէլ Կարապետեանին անցնիլը, Զորագէտ Հիդրոյի բաժնետէրեր եղած են՝ Արմէն Պետրոսեան, որ Մինասեանի Զագզվէ սրճարաններու ցանցին մէջ 5 տոկոս բաժնեմաս ունի, եւ Լէոնիդ Արեւշատեան՝ որ Մինասեանի պիզնէսներու կառավարիչներէն է, կը բացայայտէ Կարապետեան 2021 Փետրուար 13-ին, *Փաստերի Ստուգման Հարթակ* կայքէջին վրայ:

Օֆիս Կլաս ՍՊԸ-ի բաժնետէրերէն եղած է Տիգրան Եղոյեան, որուն անունը կարելի է հանդիպիլ Մինասեանի հետ փոխկապակցուած տարբեր ընկերութիւններու մէջ, կը հաստատէ Կարապետեան *1lurer.am*-ու 2020 Յունիս 2-ի հրապարակումով:

Եւ դեռ վարչապետի խօսնակ Մանէ Գէորգեան, Ֆէյսպուքի 2020 Ապրիլ 28-ի գրառումով, նշելէ ետք Մինասեանի փտացած ծագումով փայաբաժինի տիրացումը UCOM-ի մէջ, կ՚աւելցնէ. «Թեման ամբողջացնելու համար արձանագրեմ. վարչապետի աշխատակազմի տուեալներով Սերժ Սարգսեանի փեսայ Միքայէլ Մինասեանը կեղծ փայատէրերի միջոցով ապօրինի փայաբաժիններ է ունեցել նաեւ Սպայկա ընկերութիւնում, Երեւան Մոլում, Շանթ եւ Արմենիա հեռուստաընկերութիւններում, Զանգեզուրի Պղնձամոլիբդէնային Կոմբինատում, մի շարք այլ ընկերութիւններում»:

Ահաւասիկ երկու փեսաներուն տարբերութիւնը: Պայրաքտար՝ ընդդէմ սրճարաններու, լրատուամիջոցներու եւ ապօրինի փայաբաժինի:

Կարելի է աւելի հեռու երթալ:

ԱԹՍ-էն զատ, Թրքական Պայքարը ունի նաեւ ուրիշ մասնագիտութիւններ, մասնաւորապէս արհեստական բանականութեան ընդգաւառին մէջ:

Հայաստանի մէջ, 1988-ին, հայկական ջանքերով հիմնուած եւ զարգացած ու հիանալիօրէն գործող հիմնարկ մըն էր Լազերային Տեխնիկա գիտարտադրական միաւորումը: Լազերային՝ գիտական հետազօտութիւն-արտադրութիւններու համար, որոնք դիւրութեամբ կրնային օգտագործուիլ նաեւ ռազմական նպատակներով: Սերժ Սարգսեանի օրօք կը դադրի հայկական ըլլալէ եւ կը վաճառուի յունական Pyrkal-ին (Արա Մանուկեանի հաղորդած այս տեղեկութեան մանրամասնութիւնները տես՝ *Ջահակիր*, թիւ 1882):

Առանց մեկնաբանութեան:

**Պատերազմէն առաջ**

Ղարաբաղի պատերազմէն ճիշդ 10 օր առաջ՝ 2020 Սեպտեմբեր 16-ին, Պայքար ընկերութիւնը կը յայտարարէ՝ որ յաջողութեամբ գործադրեց

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԸ ՅԱՅՏՆԵԼ Է ԱՐՏԱՀԵՐԹ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՕՐԸ

Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Նիկոլ Փաշինեանը յայտնել է Յունիսի 20-ին Հայաստանում արտահերթ խորհրդարանական ընտրութիւնների անցկացման մասին: Մարտի 18-ի յայտարարութեամբ գրել է.

«Քիչ առաջ տեղի է ունեցաւ իմ հանդիպումը Բարգաւաճ Հայաստան խմբակցութեան ղեկավար Գագիկ Ծառուկեանի հետ: Հանդիպման ընթացքում արձանագրեցինք, որ ստեղծուած ներքաղաքական իրադրութիւնից լաւագոյն ելքը արտահերթ խորհրդարանական ընտրութիւններն են:

«Հաշուի առնելով նաեւ՝ Հայաստանի Հանրապետութեան նախագահի հետ, Իմ Քայլը խմբակցութեան հետ, Լուսաւոր Հայաստան խմբակցութեան ղեկավար Էդմոն Մարուքեանի հետ իմ ունեցած քննարկումները՝ սոյն թուականի Յունիսի 20-ին Հայաստան Հանրապետութիւնում կ՚անցկացուեն արտահերթ խորհրդարանական ընտրութիւններ»,- գրել է վարչապետը:

## ԱՐՄԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՏԱՐՕՐԻՆԱԿ ՊԱՀՈՒԱԾՔԸ. ՁՏԵՍՆԵԼ ԴԱ ԱՅԼԵՒՍ ՀՆԱՐԱՒՈՐ ՉԷ

Օրերս անդրադարձել էինք պետական այրերի՝ ըստ նպատակայարմարութեան իրենց պարտականութիւններից ու ստորագրութիւնից հրաժարուելու եւ «վերականգնելու» արատաւոր պրակտիկային, պետութեան ինքնատապալման միտումների համատեքստում: Այս միտումները շարունակւում են, ստանալով անդառնալի բնոյթ:

Վերջին օրինակը Գլխաւոր Շտաբի պետի պաշտօնում Արտակ Դաւթեանի նշանակման հրամանագրի ոդիսականն է, որը կրկնում է այդ պաշտօնից Օնիկ Գասպարեանին ազատելու հրամանագրի պատմութիւնը: Հայաստանի նախագահ Արմէն Սարգսեանը յետ է վերադարձրել այն կառավարութիւն, նորից յետ ստացել ու յայտարարել, որ չի ստորագրելու եւ չի դիմելու Սահմանադրական Դատարան:

Արմէն Սարգսեանը գրեթէ երեք տարի բողոքում է իրաւասութիւնների պակասից, այնուհետեւ գրաւոր հրաժարուեց դրանցից կարեւորագոյնից, հիմա էլ զբաղուած է «չեղած» լիազօրութիւնների իւրօրինակ բանեցմամբ: Բոլոր դէպքերում, հրապարակաւ ներքին ճգնաժամը յաղթահարելու մտահոգութիւններ արտայայտող նախագահի իւրաքանչիւր քայլ կամ այդպիսինի բացակայութիւն յանգեցնում է քաղաքական ճգնաժամի խորացմանը եւ երկարաձըգմանը:

Ընդսմին, մահացու հարուած է հասցւում նախագահական բուն ինստիտուտին, ինչը տեղաւորւում է հայկական պետական ինքնիշխանութեան գաղափարի հետեւողական վարկաբեկման ծիրի մէջ: Չտեսնել դա այլեւս հնարաւոր չէ:

Հակահայ այս գործունէութեան պատճառները հանրութեան մէջ տեսնում են պաշտօնին նշանակման իրաւական մութ հանգամանքների, կամ օտար շահերի ուղղակի սպասարկման մէջ: Այս «կամը» խիստ պերճախօս է նոյնիսկ հայկական քաղաքական դասի ընդհանուր «օտարածնութեան» ֆոնին:

*Lragir.am*

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

### Գ. ԱՌՈԳԱՆՈՒԹԻՒՆ

Ի. դարու սկիզբը օփերաները տակաւին կը ներկայացուէին տեղական լեզուներով ամբողջ աշխարհի մէջ: Փարիզի Երաժշտանոցին մէջ բոլոր արիաները եւ օփերայի տեսարանները կը կատարուէին ֆրանսերէն: Մոցարթ, Վեպէր, Վերտի կը հնչէին ֆրանսերէն թարգմանութեամբ:

Ասիկա երգողին համար ունէր կարեւոր առաւելութիւն՝ առոգանութեան բնական արտասանութեան եւ արտահանումի տեսանկիւնէն: Առոգանութիւնն ու ձայնային թեքնիքը կը մշակուէին համատեղաբար:

Միաժամանակ, ունկնդիր ականջը դժկամութեամբ պիտի ընկալէր իր լեզուի դոյգն իսկ շեշտադրական շեղումը:

Այս բոլորը նկատելի դժուարութեան առջեւ պիտի կանգնեցնէին օտար ուսանող երգիչը, ինչ որ եղաւ Շահ-Մուրատեանի պարագային:

Նախքան Փարիզ հասնիլը ոչ մէկ ֆրանսերէն բառ խօսող երգիչը բախուեցաւ արտասանական եւ առոգանական լուրջ խնդիրներու: Ֆրանսայի մամուլը անընդհատ մատնանշեց Շահ-Մուրատեանի ֆրանսերէն լեզուի առոգանական տկարութիւնն ու անճշդութիւնը: Քննախօսականներուն մէջ աչքի զարկին երկու հիմնական կէտեր.

ա. Քննադատները առոգանութեան անճշդութեան նկատմամբ ցուցաբերեցին անզիջողականութիւն, երբեմն հասցնելով ծայրայեղութեան՝ շեշտելով որ շատ վատ է, խիստ թերի է եւ կարելի չէ երգել աւելի վատ արտասանութեամբ, երբեմն գտնուելով ներողամիտ՝ նշելով որ իր լեզուական հնչումը երբեք տհաճութիւն չի պատճառեր մեզի: Այսինքն, կը ցուցադրեն իրենց հանդուրժողականութեան աստիճանը:

բ. Այս եւրոպական կեդրոնական լեզուի հանդէպ կիրարկուող անճշդութիւնները արդիւնքն են տարաշխարհիկ (exotique) Արեւելքի մը բարբարոսական առոգանութեան: Շահ-Մուրատեան ունի բարբարոս լեզուական հնչում, տարաշխարհիկ լեզուական հնչում, արաբական լեզուական հնչում, արեւելեան աղիտալի լեզուական հնչում, արեւելեան շեշտ:

Այստեղ արդէն յստակ է արեւելապաշտութեան (orientalism) կշռական գործօնը, որուն մասին աւելի մանրամասն եւ առանձնացուած միտումով պիտի անդրադառնամ յաջորդ ենթամասին մէջ:

Ստորեւ, առոգանութեան եւ արտասանութեան հետ կապուած արտայայտութիւնները.

1. «Պէտք է խնամք տանի իր արտասանութեան» [Տեսարան *Faust*-էն] (‘Conservatoire’, Com dia, 18 janvier 1908, 2e année, no. 110, p. 4):

2. «Համբերատար ճիգի շնորհիւ, իր առոգանութիւնը կատարելագործուած է սակայն արտասանութիւնը տակաւին կը մնայ բաւական բարբարոս» [*Joseph*, ‘Vainement Pharaon’] (‘Conservatoire’, Com dia, 22 janvier 1908, 2e année, no. 114, p. 3):

3. «Առոգանութեան եւ լեզուական հնչումի նոյն քննադատութիւնները» [Արիա *Les Abençérages*-էն] (‘Conservatoire’, Com dia 26 mai 1908, 2e année, no. 239, p. 3):

4. «Առոգանութիւնը անկատար է եւ շատ յաճախ սխալ կ՚երգէ» [Տեսարան *Armide*-էն] (‘Conservatoire’, Com dia, 8 juin 1908, 2e année, no. 252, p. 4):

5. «[Հմայիչ ձայնին] դժբախտաբար կը վնասէ նախնական առոգանութիւն մը եւ բարբարոս լեզուական հնչում մը» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Faublas, ‘Avant les concours du Conservatoire: mines et talents’, Com dia, 24 juin 1908, 2e année, no. 268, p. 3):

6. «[Ի]ր առոգանութիւնը շատ վատ է» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Faublas, ‘Les Concours du Conservtoire’, Com dia, 2 juillet 1908, 2e année, no. 276, p. 1):

7. «Պր. Շահ-Մուրատեան, Քազանէօվի աշակերտ, կ՚երգէ տարաշխարհիկ (exotique) թեթեւ լեզուական հնչումով» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Robert Mondor, ‘Les Concours du Conservatoire’, *La Presse*, 3 juillet 1908, 75e année, no. 5869, p. 1):

8. «[Դ]ժուար է *Joseph*-ի գեղեցիկ արիան երգել [...] աւելի վատ արտասանութեամբ» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Louis Schneider, ‘Au Conservatoire: concours de chants’, *Le Radical*, 3 juillet 1908, 28e année, no. 185, p. 2):

9. «[Շահ-Մուրատեանի] դէմ կանգնած է իր [...] անհաւանական արտասանութիւնը» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Robert Brussel, ‘Les Concours du Conservatoire’, *Le Figaro*, 3 juillet 1908, 54e année, no. 185, p. 5):

10. «Բայց արտասանութիւնը տակաւին անկատար է» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Nozière, ‘Les Concours du Conservatoire’, *Gil Blas*, 3 juillet 1908, 29e année, no. 10.475, p. 3):

11. «[Ք]իչ մը անհարթ լեզուական հնչումով» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (‘Concours du Conservatoire’, *Le Journal*, 3 juillet 1908, dix-septième année, no. 5755, p. 5):

12. «Ահռելի լեզուական հնչումը տակաւին քիչ մը կ՚ապականէ իր յատկանիշները» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (‘Les Concours du Conservatoire’, *La Gazette de France*, 4 juillet 1908, 277e année, p. 3):

13. «[Բ]աւական շեշտուած օտար լեզուական հնչումով» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Albert du Moulin, ‘Les Concours du Conservatoire’, *Le Grand national*, 9 juillet 1908, septième année, p. 2):

14. «Բայց խօսինք Պր. Շահ-Մուրատեանի մասին, կարծեմ հայ մը կամ պարսիկ մը, որ, հակառակ որոշ տարաշխարհիկ լեզուական հնչումի, այլապէս չչափազանցուած, ինծի համար կը հանդիսանայ մրցոյթի լաւագոյն տարրը: [...] Լաւ արտասանութիւն» [*Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’] (Arthur Pougin, ‘Les Concours du Conservatoire’, *Le Ménestrel*, 11 juillet 1908, 74e année, no. 28, pp. 217-218):

15. «[Ի]ր արտասանութիւնը խիստ թերի է» [Արիա *Freyschütz*-էն] (‘Les concours du Conservatoire’, *Le Soleil*, 3 juillet 1909, trente-sixième année, no. 184 p. 3):

16. «Թեկնածուն կորսնցուցած է անցեալ տարուայ այնքան շեշտուած օտար լեզուական հնչումը» [Արիա *Freyschütz*-էն] (Albert du Moulin, ‘Semaine dramatique et musicale’, *Le Grand national*, 24 juillet 1909, huitième année, p. 2):

17. «Մեծ յառաջդիմութիւն արտասանութեան տեսանկիւնէն» [Արիա *Freyschütz*-էն] (L[ouis] L[alloy], ‘Résultats des concours’, *Bulletin français de la S. I. M.*, août-septembre 1909, Ve année, nos. 8-9, p. 770):

18. «[Ո]ւնի օտար լեզուական հնչում մը՝ որուն ուժգնութիւնը մեղմած է, բայց կը թուի տակաւին դժուար ըլլալ զայն կիրառել բեմին վրայ» [Տեսարան *Werther*-էն] (Nozière, ‘Au Conservatoire’, *Gil Blas*, 7 juillet 1909, 30e année, no. 10838, p. 3):

19. «[Ի]ր լեզուական հնչումը երբեք տհաճութիւն չի պատճառեր մեզի» [Տեսարան *Werther*-էն] (Camille de Sainte-Croix, ‘Concours du Conservatoire’, *La Petite république*, 7 juillet 1909, trente-quatrième année, no. 12136, p. 2):

20. «Եթէ քիչ մը արաբական լեզուական հնչում ունի՝ իր սխալը չէ» [Տեսարան *Werther*-էն] (Jean Drault, ‘Au Conservatoire’, *La Libre parole*, 7 juillet 1909, dix-huitième année, no. 6286, p. 2):

21. «Պր. Շահ-Մուրատեան տակաւին պէտք է աշխատի արտասանութեան եւ առոգանութեան վրայ» [Տեսարան *Werther*-էն] (Ed. S., ‘Théâtres: concours du Conservatoire’, *Journal des débats politiques et littéraires*, 8 juillet 1909, 121e année, no. 188, p. 3):

22. «Պր. Շահ-Մուրատեանի անօգուտ ջանքերը ձերբազատուելու իր արեւելեան աղիտալի լեզուական հնչումէն» [Տեսարան *Werther*-էն] (G. M., ‘Les concours du Conservatoire’, *La Gazette de France*, 8 juillet 1909, 278e année, p. 4):

23. «[Ի]ր լեզուական հնչումը՝ որ անցեալ տարի խանգարած էր իրեն, մեծապէս բարելաւուած է» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’ եւ տեսարան Samson et Dalila-էն] (Robert Brussel, ‘Les concours du Conservatoire’, *Le Figaro*, 11 juillet 1909, 55e année, no. 192, p. 4):

24. «Շատ դժուար է հասկնալ ինչ կ՚ըսէ որովհետեւ ան երգիչ մըն է, ինչպէս նաեւ ֆրանսացի չէ» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Nozière, ‘Au Conservatoire’, *Gil Blas*, 11 juillet 1909, 30e année, no. 10842, p. 3):

25. «Ակնյայտօրէն իր խաղարկութեան եւ արտասանութեան պատճառով է՝ որ Պր. Շահ-Մուրատեան ստացաւ ընդամէնը երկրորդ մրցանակ» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Jean Drault, ‘Au Conservatoire’, *La Libre parole*, 11 juillet 1909, dix-huitième année, no. 6290, p. 2):

26. «Պր. Շահ-Մուրատեանին կը մնայ ընդամէնը մեղմել իր լեզուական հնչումը դառնալու համար ֆրանսացի թենորներուն ամենէն հրապուրիչը» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Camille de Sainte-Croix, ‘Concours du Conservatoire’, *La Petite république*, 11 juillet 1909, trente-quatrième année, no. 12140, p. 4):

27. «Ափսոս որ այսօր շեշտեց իր օտար արտասանութիւնը» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Albert du Mulin, ‘La semaine dramatique et musicale’, *Le Grand national*, 27 juillet 1909, huitième année, p. 2):

28. «[Ա]րտասանութիւնը տակաւին բաւական շատ խուլ է» [*Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (L[ouis] L[aloy], ‘Résultats des concours’, *Bulletin français de* ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՆՊԱՏԻԺ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐ. ՎԵՐՋԻՆ 2 ԱՄՍՈՒՄ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԻ ԹԻՐԱԽԱՒՈՐՄԱՆ 5-6 ԴԷՊՔ Է ԵՂԵԼ

ԻՐԻՆԱ ՄԿՐՏՉԵԱՆ

Լրագրողներին թիրախաւորելը վերջին շրջանում Հայաստանում կրկին յաճախակի է դարձել: Ինֆորմացիայի ազատութեան կենտրոնի ղեկավար Շուշան Դոյդոյեանը վստահեցնում է՝ բոլոր դէպքերն արձանագրուել են: Խօսքի ազատութեան պաշտպանութեան կոմիտէի նախագահ Աշոտ Մելիքեանն էլ ցաւով է նշում՝ այդպիսի դէպքերը Հայաստանում նորութիւն չեն: Նա յաւելում է՝ անկախութեան 30 տարիների ընթացքում, երբ էլ հասարակական-քաղաքական մթնոլորտը սրուել է, առաջինը թիրախում լրատուամիջոցներն ու լրագրողներն են յայտնուել: Օրինակները շատ են: Սակայն, ի տարբերութիւն նախորդ բոլոր դէպքերի, այս անգամ լրագրողներին թիրախաւորում են ոչ թէ ուժային կառոյցները, այլ ակցիաների մասնակիցները՝ շարքային քաղաքացիները: Շուշան Դոյդոյեանը, համեմատելով նախորդ տարիների արձանագրածը, նշում է՝ ոլորտում վերջին 10 տարիների առաջընթացը կրկին յետընթացի է վերածւում: Խնդիրների փողոցում լուծելուն վերադարձն ուղղակիօրէն անդրադառնում է նաեւ Հայաստանի վարկանիշի վրայ: Լրագրողներ Առանց Սահմանների միջազգային կազմակերպութիւնը պարբերաբար կոչերով է դիմում, իսկ Ազատութիւն Ռադիոկայանի նկարահանող խմբի հետ տեղի ունեցած միջադէպից յետոյ նաեւ կոչ է արել թափանցիկ եւ անկախ քննութիւն անցկացնել: Մասնագէտները վստահ են՝ լրագրողներին թիրախաւորելու պատճառներից մէկն անպատժելիութիւնն է: «Շատ յաճախ ուղղակի ամէն ինչ սահմանափակուել է օրէնսգրքի 164 յօդուածի 1-ին կէտով, որը նախատեսում է տուգանք եւ այդ տուգանքով ամէն ինչ աւարտուել է: Բայց եթէ մենք խօսենք օրինակ Էլեկտրիկ Երեւանի մասին, որի գործը դեռ ընթանում է, մենք տեսել էինք, ↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՃԳՆԱԺԱՄԸ ՓՈԽԵԼ Է ՏԵՂԸ. ԱՐՄԱՏԱԿԱՆ ԸՆԴԴԻՄՈՒԹԵԱՆ ԴԻԼԵՄԱՆ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

Փողոցում պայքարը շարունակող արմատական ընդդիմութիւնը կամ 17-ի միաւորումը մերժեց նախագահ Արմէն Սարգսեանի առաջարկը: Ինչպէս յայտնի է, առաջարկը վերաբերում էր ստեղծուած ճգնաժամային իրավիճակից ելքին եւ քաղաքական հանդուցալուծմանը: Ըստ էութեան, ճգնաժամից ելքի շուրջ քննարկումները մերժեց միաւորումը, որը հէնց ճգնաժամի աղբիւրն է, քանի որ արմատական ընդդիմութիւնն է ներքին կեանքում հռետորաբանութիւնն ու տեղեկատուական արշաւը հասցրել անհանդուրժողութեան գերբարձր մակարդակի՝ ստեղծելով փակուղային իրավիճակ եւ դնելով վարչապետ Փաշինեանի հեռացման վերջնագրային պահանջ: Միեւնոյն ժամանակ, սակայն, այդօրինակ վարքագիծը ինքնին խօսում է նաեւ արմատական ընդդիմութեան ներսում եղած ճգնաժամի մասին: Բանն այն է, որ ակնառու է փողոցային պայքարի լեգիտիմութեան բացակայութիւնն ու դրա ինքնամաշ բնոյթը: Միւս կողմից, սակայն, արմատական ընդդիմութիւնը չունի այդ դիրքաւորումից դուրս գալու ելք:

Արմատական, մերժողական տրամաբանութիւնը կառուցուել է այնպիսի «մոնոլիտով», որ դրանից չի կարողանում նահանջել ոչ ոք՝ անգամ Ռոբերտ Քոչարեանը, որը արտայայտւում է արտահերթ ընտրութեանը մասնակցելու կողմ, եթէ անգամ այդ ընտրութիւնը կազմակերպում է Նիկոլ Փաշինեանը: Միւս ուժերը, ինչպէս յայտնի է, կամ չեն կարողանում կողմնորոշուել, կամ մերժում են կտրականապէս, ինչպէս, օրինակ, ՀՀԿ-ն, կամ Վազգէն Մանուկեանը: Այլ կերպ ասած, արմատական ընդդիմութեան ներսում ճանապարհային քարտէզի ճգնաժամ է, ինչը մի կողմից կաթուածահար է անում յետագայ որեւէ ռազմավարութիւն, միւս կողմից պարտադրում է մնալ արմատականութեան դիրքերում եւ էլ աւելի կոշտացնել դրանք, քաջ գիտակցելով, սակայն, որ յետագայ կոշտացումը բոլորովին չի բխում քաղաքական յաջողութեան շահից եւ անգամ սպառնում է հակառակ էֆեկտով: Ահա այդ փակ շրջանը բերել է նրան, որ նաեւ ներքաղաքական հասարակական կեանքն է դարձել արմատական ընդդիմութեան ճգնաժամի պատանդ: Աւելին, այդ իմաստով, ըստ էութեան հնարաւոր է արձանագրել մի բան, որը առերեւոյթ լինի գուցէ բաւականին վիճելի եւ թուայ տարօրինակ: Այդուհանդերձ, մեծ հաշուով, Հայաստանում ներկայումս աւելի սուր է հէնց այդ ընդդիմութեան ներսում եղած կամ խորացած ճգնաժամը, քան ընդհանուր ներքաղաքական ճգնաժամը: Այդ առումով, քաղաքական կեանքի կայունացման եւ առաջ ընթանալու հարցում շահագրգռուած դերակատարները թերեւս պէտք է խորհեն արմատական ընդդիմութեան ներսում փակուղին եւ ճգնաժամը հանգուցալուծելու հնարաւորութեան մասին, եթէ, իհարկէ, միւս դերակատարներից իւրաքանչիւրը ներկայումս չի քաղում այդ արմատական ձեւաչափի ներսում եղած փակուղուց եկող պտուղներ:

*Առաջին լրատուական*

## ԱՆՊԱՏԻԺ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐ. ՎԵՐՋԻՆ 2 ԱՄՍՈՒՄ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԻ ԹԻՐԱԽԱՒՈՐՄԱՆ...

2 ➩

որ հարիւրաւոր ոստիկաններ որս էին իրականացնում լրագրողների նկատմամբ եւ 4 հոգու քաւութեան նոխազ դարձրին եւ դրանով գործն աւարտուեց»,- նշում է Մելիքեանը: Լրագրողներին թիրախաւորելու պատճառներից է նաեւ վստահութեան ճգնաժամը: Դոյդոյեանը նշում է՝ խնդիրն առկայ է ամբողջ աշխարհում: Լրագրողական կազմակերպութիւնները ԶԼՄ ներկայացուցիչների հանդէպ կիրառուած բռնութիւնների վերաբերեալ համատեղ յայտարարութեամբ չնայած հանդէս եկել են, բայց չեն բացառում նոր բռնութիւնները: Ի դէպ՝ մասնագէտները կարծում են, որ Լրագրողներ Առանց Սահմանների կազմակերպութեան՝ Ապրիլին հրապարակուելիք զեկոյցում Հայաստանում խօսքի ազատութեան ինդեքսը յետընթաց կը գրանցի: Յիշեցնենք՝ 2018թ. համեմատ՝ Հայաստանն իր դիրքերը բարելաւել էր 19 կէտով. 2018 թուականի զեկոյցում մեր երկիրը 80-րդ հորիզոնականում էր, 2019 եւ 2020 թուականներին՝ 61-րդ:

*Factor.am*



ԽՈՀԵՐ

# ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

### ԳԱՂԱՓԱՐԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Այսօր կ՚ապրինք գաղափարախօսութիւններու դարաշրջանը:

Գաղափարախօսութիւն՝ ամէն տեղ:

Գաղափարախօսութիւն՝ իբրեւ հականիշ գաղափարին:

Գաղափարախօսութիւններ ստեղծողներն են կուսակցութիւնները, կրօնական եւ աշխարհիկ ազդեցիկ հիմնարկները, եւ մանաւանդ՝ հիմնահոսանքային լրատուութիւնը:

Սփիւռքի մէջ, աւանդական կուսակցութիւնները արտադրողներն են գաղափարախօսութեան:

Գաղափարախօսութիւնը կը ծառայէ իշխանական խաւի շահերուն, միաժամանակ զինուորագրելով հասարակութիւնը եւ այդ միջոցով վերահսկողութեան տակ պահելով զայն:

Մարքսիմ-լենինիզմը համայնավարական շրջանին դարձաւ գաղափարախօսութիւն, Նժդեհական ցեղակրօնութիւնը՝ Քոչարեան-Սարգսեանի շրջանին, երկու պարագաներուն ալ սպանըւեցան Մարքսի եւ Նդժեհի գաղափարները:

Եւ միայն գաղափարախօսային ոլորտին մէջ կարելի է մէկու մը խաղաղութեան, համակեցութեան եւ ժողովրդավարութեան գաղափարները թարգմանել իբրեւ տգիտութիւն եւ բարբարոսութիւն: Միայն գաղափարախօսութեան ծիրին մէջ է որ խաղաղութիւնը կրնայ նոյնանալ բարբարոսութեան՝ եթէ շահ կայ այդպէս ըլլալու: Որովհետեւ գաղափարախօսութեան մէջ մարդիկ չեն մտածեր: Մտածելու համար գաղափար է պէտք: Գաղափարախօսութիւնը կը սպաննէ գաղափարը:

Այս տարուայ Փետրուարին, գաղափարախօսութեան ծիրին մէջ թիրախաւորուեցաւ Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի (ԿԳՄՍ) փոխ նախարարուհի Ժաննա Անդրէասեան՝ Փաշինեանի վարչակարգի յաջորդական վարկաբեկումներու շարքին մէջ: Մէջտեղ նետուեցաւ 9 տարի առաջ տեսագրուած կէս ժամ տեւողութեամբ Անդրէասեանի զրոյցէն կրճատուած հետեւեալ հատուածը (այս նոյն հատուածին ամբողջականը՝ աւելի վար).

«Նժդեհական գաղափարախօսութիւնը, ըստ էութեան, ֆաշիստական գաղափարախօսութիւն է: Ցեղակրօն գաղափարախօսութիւնը մեզ համար՝ որպէս 21-րդ դարի հասարակութիւն, շատ վտանգաւոր է, որովհետեւ այն հիմնուած է աշխարհի հանդէպ ագրեսիւ կոնցեպցիայի, աշխարհից փակուելու եւ այլ հասարակութիւնների նկատմամբ սեփական գերազանցութեան: Այսինքն՝ եթէ գեղեցիկ բառերը հանում ենք, տակը այս կմախքն է մնում»:

Առցանց հասարակութիւնը կատարեց մնացածը.

«Դու բարբարոս ես»:

«Ձեզ նման մտօք սնանկ եւ Հայրենիքը վաճառուած մարդիկ»:

«Աղջիկ ջան, դու տգէտ ես, գնա՛ կրթուի, լաւ չգիտես ՆԺԴԵՀ ու Նժդեհեան գաղափարախօսութիւն»:

«Քո նմանների գալով աշխարհը սկսեց ծիծաղել մեզ վրայ»:

Անհամար նման արտայայտութիւններ, ինչպէս նաեւ հայհոյանքներու ահռելի տարափ մը:

Եւ այսքան: Յառաջ մղողները հասան իրենց նպատակին:

9 տարի առաջ արտասանուած եւ YouTube-ով հրապարակուած խօսք մը *միայն* այսօր է որ կը վերածուի հանրային կարծիքի, բան մը՝ որ կրկին ու կրկին ցոյց կու տայ անյայտ հրահրողներուն բուն նպատակը: Անոնց կը հետաքրքրէ ո՛չ Նժդեհը եւ ո՛չ ալ անոր գաղափարը, այլ ներկայ իշխանութիւններուն ուղղակի վարկաբեկումը: Եթէ իրապէս մտահոգուած ըլլային Նժդեհով, ժամանակին անպայման արձագանգած կ՚ըլլային:

Ասիկա լաւ առիթ մը եղաւ «Խոհեր»-ուն ոչ թէ պարզապէս յաջորդական անգամ ըլլալով ցոյց տալու ներկայ իշխանութեան հանդէպ տարուող վերադիրօրէն կազմակերպուած ու հրահրուած սեւացում-պայքարը, այլ քիչ մը մանրամասնութեամբ առնչուելու Հայաստանի այլընտրանքային միտքի կարեւոր շերտի մը հետ:

Բայց նախքան բուն նիւթին անցնիլը, կ՚ուզէի սկսիլ հեռուէն՝ Անի Աստուրեանի յօդուածէն, որ մեզմէ կը խնդրէ մէկ բան՝ մտածել:

Աստուրեանի յօդուածի առարկան Փաշինեանն է, իսկ բովանդակային նիւթը՝ մտածելու հրաւէրը: Ճիշդ այնպէս, ինչպէս ներկայ յօդուածաշարին առարկան Փաշինեանն է՝ Ժաննա Անդրէասեանի մարմնաւորումով, իսկ բուն նիւթը հրաւէր մըն է մտածելու ազգայինի հասկացողութիւններուն մասին:

### «ՓՈՐՁԵՆՔ ՄՏԱԾԵԼ». ԱՆԻ ԱՍՏՈՒՐԵԱՆ

Փետրուար 14-ին, *Ասպարէզի* կայքէջին վրայ Անի Աստուրեանին կը թոյլատրուի հրատարակել երկար յօդուած մը՝ «Փորձենք մտածել»:

Աստուրեան կը փորձէ մեկնաբանել Շուշիի առիթով Փաշինեանի խօսքէն առանձնացուած նախադասութիւն մը, որուն շուրջ ստեղծուեցաւ շատ մեծ աղմուկ, մինչեւ անգամ վարչապետը մեղադրուեցաւ հայոց պատմութենէն անտեղեակ ըլլալու մէջ: Ճիշդ այն՝ ինչ կատարուեցաւ Անդրէասեանի պարագային:

Աստուրեանի յօդուածը բնականաբար թարգմանուեցաւ իբրեւ Փաշինեանի պաշտպանութիւն, բայց իրականութեան մէջ ան կոչ մըն էր խօսքերը կարդալու իրենց ամբողջութեան եւ իրենց բնաբաններուն (context) մէջ: Կը կատարեմ յօդուածէն ընդարձակ քաղուածք մը.

«Օրը՝ նոր, խեղաթիւրուած լուրը՝ նոր: Ահա երկու նմոյշ:

«Վարչապետը ըսաւ՝ «Շուշին տժգոյն քաղաք է»: Ինչպէ՛ս կրնայ այսպիսի բան ըսել: Կը նշանակէ Շուշին չի սիրեր. կը նշանակէ Շուշին չի յարգեր: Անշուշտ որ առաջին անգամ այս նախադասութիւնը լսողը կրնայ բնական հակազդեցութիւն մը ունենալ, ինչպէս կ՚ունենան մարդիկ, որոնց ընտանիքի մէկ անդամի հասցէին վիրաւորական խօսք մը կ՚արձակուի: Բայց այդ բոլո՛ր վիրաւորուածները վայրկեան մը մտածեցի՞ն թէ ի՛նչ համաբնագրի (context) մէջ կը գետեղուէր այդ խօսքը: Ճիշդ ի՛նչ ըսել ուզած էր այդ խօսքին տէրը: Պարկեշտ եւ մտածող մարդը շատ լաւ հասկցած է, թէ ի՛նչ ըսել կ՚ուզէր: Ըսել չէր ուզեր, թէ Շուշին գեղեցիկ չէր, սիրելի չէր, սրտի մօտիկ չէր: Պարզապէս կը ներկայացնէր փաստարկում մը, որուն միտք բանին վերիվարոյ հետեւեալն էր. «Եթէ Շուշին այդքա՛ն կը սիրէիք, ինչո՞ւ քսանվեց տարուան ընթացքին չշինեցիք ենթակառոյցը, չբնակեցուցիք շրջանը, չամրացուցիք տնտեսութիւնը»: Ա՛յդ էր ըսուածը եւ ինքզինքին հետ հաշտ մէկը համաձայն կ՚ըլլայ անոր. խնդիրը այն է սակայն, որ վարչապետին շատո՛նց չհամակրող ուժերը այնպէս մը պատրաստուած են, որ առիթ չեն փախցներ իւրաքանչիւր խօսքը խեղաթիւրելու եւ իրենց պատրաստած ատելութեան թունաւոր կարկանդակը ամէն կողմ ղրկելու, իսկապէ՛ս հայրենասէր եւ միամիտ մարդոց հոգիին եւ մտքին հետ խաղալու համար:

«Վարչապետը ըսաւ. «Դուք գիտէ՞ք թէ Շուշիին 96 տոկոսը ազէրի բնակչութիւն ունեցած է»: Այս նախադասութիւնը ի՞նչ առիթով, ե՞րբ եւ ի՞նչ տրամաբանական հոսքի մէջ արտաբերուած էր: Ան, որ Ազգային Ժողովին հետեւեցաւ սկիզբէն մինչեւ վերջ՝ հասկցաւ, որ վարչապետը տիկին Զօհրապեանի մէկ հարցումին կը պատասխանէր եւ յստա՛կ, իրապաշտ վերլուծում մը ընելու վրայ էր: Բայց ի՞նչ

➩ 4






## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

2

*la S. I. M.*, août-septembre 1909, Ve année, nos. 8-9, p. 779):

29. «Իր արտասանութիւնը շատ աւելի լաւ է եւ երբեք չի ցնցեր արագ անցքերուն մէջ» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Reynaldo Hahn, 'Concours du Consevatoire', *Le Journal*, 28 juin 1910, no. 6484, p. 5):

30. «Պր. Շահ-Մուրատեան [...], որ խուրաքանչիւր մրցոյթին կը յառաջդիմէ, Քերուպինիի *Abencérages*-ին մէջ ցոյց տուաւ առոգանութեան եւ արտայայտութեան գեղեցիկ յատկանիշներ» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] ('Les concours du Conservatoire', *La Petite république*, 28 juin 1910, trente-cinquième année, no. 12492, p. 4):

31. «Իր արեւելեան շեշտը միշտ դրոշմուած է» [*Les Abencérages*, 'Suspendez a ces murs mes armes'] (Edouard Sarradin, 'Théâtres: concours du Conservatoire', *Journal des débats politiques et littéraires*, 29 juin 1910, 122e année, no. 179, p. 3):

32. «[Խ]նամքով կը պահէ լեգուական թերի հնչում մը» [Տեսարան *L'Attaque du Moulin*-էն] (Georges Boyer, 'Les concours du Conservatoire', *Le Petit journal*, 5 juillet 1910, quarante-huitième année, no. 17, 357, p. 2):

33. «Պր. Շահ-Մուրատեան ունի [...] ֆրանսերէնի անկատար արտասանութիւն, բայց ասիկա ոչ մէկ կարեւորութիւն ունի եթէ իր ասպարէզը շարունակէ Իտալիա» [Տեսարան *Aida*-էն] ('Les concours du Conservatoire', *Le Journal du dimanche*, 15 juillet 1910, nouvelle série, no. 87, p. 458):

(Շար. 5)

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ...

3

ըրին ապատեղեկատուութեան «մասնագէտները»: Անմիջապէս կտրեցին առաջին բաժինը. կտրեցին ետեւի բաժինը եւ՝ հո՛փ՝ «տեսէ՞ք. չ'ամչնար նոյնիսկ. կ'ըսէ, թէ Շուշին ազէրի քաղաք է»: Եւ եղան նողկալի արտայայտութիւններ, փաստարկումներ. իրենք զիրենք լուրջ մտաւորականի տեղ դրած մարդիկ պէտք զգացին հի՜ն դարերու երթալու եւ ցոյց տալու համար, որ Շուշին հայկակա՛ն էր իր եկեղեցիներով, իր մշակոյթով եւ իր ծոցին մէջ ծնած նշանաւո՛ր հայերով: Արդեօք մէկու մը մտքէն անցա՞ւ, որ պրն. Փաշինեանին ըսածը Շուշիի դարերէ ի վեր հայկական ըլլալուն հետ կապ չունէր. անշո՛ւշտ որ Շուշին հայկական է, քանի որ «Արցախը Հայաստան է եւ վե՛րջ»: Տարօրինակ ազգ ենք. մէկ կողմէն կ'ըսենք. «Պէտք չէր ըսէր Արցախը Հայաստան է եւ վե՛րջ», միւս կողմէ, առանց նոյնիսկ հասկնալ փորձելու ըսուածը՝ Քաջն Նազարի դրօշը պարզած՝ թերթերու «փողոցները» իջնելով կը պոռանք՝ «տեսա՞ք, տեսա՞ք թրքամոլը, որ Շուշին ազէրի կը համարէ»: Բարեբախտաբար մնացած են տակաւին հատ ու կենտ հայատառ թերթեր, որոնք ընդդիմանալով պատմութեան նենգափոխման՝ հրատարակեցին ամբողջ համաբնագիրը եւ մտածել ուզող ընթերցողը կրցաւ հասկնալ, թէ ի՛նչ ըսել ուզած էր պրն. Փաշինեան: Պատմական իրողութիւն է, որ 1920 թուականին ազէրիները կոտորած էին Շուշիի հայերը. 1992-ին բնակչութեան 92 տոկոսը ազէրի էր: Կարելի՞ է ժխտել պատմական ճշմարտութիւնը: Հարցը, որ իրապաշտօրէն կը դրուէր հետեւեալն էր. վերջին պատերազմը կեցնելու փորձերու ընթացքին Ազրպէյճանը պայման դրած է վերադառնալ 1992-ի ժողովրդագրական կարգավիճակին. այսինքն՝ բոլոր ազէրի փախստականները վերադարձնել Շուշի: Պրն. Փաշինեան բնականաբար մերժած է այդ պայմանը, որովհետեւ տարածուած լուրերուն հակառակը փաստող «Շուշին առանց ազէրիներու» տարազին կառչած է. եւ պատերազմը շարունակուած է. եւ հիմա ազգի դաւաճան է. եւ Շուշին ծախած է... նուազագոյն տրամաբանութիւն ունեցողը հոս պէտք է կենայ, լա՛յն շունչ մը առնէ եւ աւելի լուրջ մտածէ... արդեօք ի՞նչ եղած պիտի ըլլար զինք դաւաճան կոչողներուն կեցուածքը, եթէ ընդունած ըլլար Շուշին ազէրի փախստականներով լեցնելու պայմանը... անշուշտ՝ մի՛շտ դիւրին է յետադարձ ակնարկ նետելով դատումներ կատարելը եւ թէական պատկերացումներով ամբաստանութիւններ ընելը»(1):

Անի Աստուրեանի գրութիւնը կ'ըսէ այն՝ ինչ ներկայ յօդուածաշարով պիտի փափաքիմ ներկայացնել, տարբեր նիւթի մը առնչութեամբ: Այսինքն՝ մտածել:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Անի Աստուրեան, «Փորձենք մտածել», *Ասպարէզ*, 14 Փետրուար 2012, https://asbarez.com/arm/384647/փորձենք-մտածել/:

## ԵՐԿՈՒ ՓԵՍԱՆԵՐ

1

երկիրի առաջին թռչող ինքնաշարժը, որ կը կոչուի Cezeri: 230 քիլօ կշռող ինքնաշարժը բարձրացաւ 10 մեթր: Էրտողանի փեսան անձամբ կը բացատրէ՝ որ այս նախատիպը պիտի մշակուի եւ օդ պիտի բարձրանայ նաեւ մարդոցմով: Խաղաղ գործածութեա՞ն համար: Միայն միամիտ մը կրնայ հաւատալ:

Պատերազմէն քանի մը ամիս առաջ, Սերժ Սարգսեանի փեսային *միակ* զբաղումն էր վրէժխնդրութիւնը մէկ անձի մը՝ Փաշինեանի դէմ, դառնալով հակայեղափոխական գրոհի առաջամարտիկներէն մէկը (*Ջահակիր*, թիւ 1867), չմոռնալով նաեւ ձախողեցնել դատական արդարութիւնը (*Ջահակիր*, թիւ 1869): Իսկ պատերազմէն չորս ամիս առաջ հրապարակած live-երը՝ իրենց ուղղակի սուտերով, *MediaLab.am*-ի թղթակից Մհեր Արշակեանին 2020 Յունիս 30-ին պիտի մղէին գրելու. «Միքայէլ Մինասեանի վերջին live-ի առիթով գրաբար հայերէնում ասւում է՝ հօ չբորշչեց: Ովքե՞ր են այդ մարդու խմբագրերը, ովքե՞ր են նրա տեխնոլոգները, որոնք նրան առասպելական ու խորհրդաւոր մարդուց սարքեցին ծաղրածու»:

**Ուիքիփետիա**

*Ուքիփետիայի* գովաբանող մը չեմ ընաւ: Գովաբանող չեմ, որովհետեւ ազդեցութիւնները եւ կողմնակալութիւնները շատ մեծ են: Զինային արդիւնաբերութեան արքայ Սելճուք Պայրաքտար եւ հայկական լրատուամիջոցներու կայսր Միքայէլ Մինասեան *Ուքիփետիայի* մէջ իրենց կենսագրութիւնները պիտի ներկայացնել տան ճիշդ այնպէս՝ ինչպէս իրենք կ'ուզեն: Ներկայ նիւթիս համար ճիշդ այս է կարեւորը: Այսինքն, ինչպէ՞ս կ'ուզեն ներկայանալ երկու «հսկաներ»-ը: Ի՞նչ պատկեր կ'ուզեն ստեղծել իրենց շուրջ:

Թրքերէն *Ուիքիփետիայի* (Vikipedi) «Selçuk Bayraktar» բառայօդուածը կարելի է համառօտագրել այսպէս.

Սելճուք Պայրաքտար ուսանած է Իսթանպուլի Թեքնիքական Համալսարանի Մեքենաշինութեան բաժինը, ուրկէ ետք մագիստրոսականը ստացած է ԱՄՆ-ի Փենսիլվանիա Համալսարանին մէջ, նիւթ ունենալով անօդաչու օդանաւը: Երկրորդ մագիստրոսականը ստացած է Մասաչուսեցի Թեքնոլոճիի Ինստիտուտին մէջ, նիւթ ունենալով անօդաչու թռչող սարքերու (ԱԹՍ) վերահսկողական ռազմափորձը: Մասնակցած է աշխարհի առաջին գիտական ուսումնասիրութիւններուն ԱԹՍ-ներուն մասին ԱՄՆ-ի մէջ:

Ուսումը աւարտելէ ետք, 2007-ին վերադարձած է Թուրքիա եւ դարձած ընտանեկան Պայքար ռազմական արդիւնաբերական ընկերութեան գիտնական գլուխը, ստեղծելով, ի միջի այլոց, ԱԹՍ Պայրաքտարներու շարքերը:

Իր նախաձեռնութեամբ, 2020-ի սկիզբը Պայքար սկսած է արտադրել նաեւ Քորոնաժահրի շնչառական սարքեր թրքական հիւանդանոցներուն համար:

Հայերէն *Ուիքիփետիայի* (Վիքիպեդիա) «Միքայել Մինասյան» բառայօդուածը կարելի է համառօտագրել այսպէս.

Միքայէլ Մինասեանի Վաթիքանի դեսպանութեան ժամանակ, Սուրբ Պետրոսի տաճարին մէջ Ֆրանցիսկոս Պապը պատարագ մատուցանեց Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակին առիթով եւ սրբադասեց Ցեղասպանութեան անմեղ զոհերը: Նոյն օրը Պապը Գրիգոր Նարեկացին հռչակեց «Տիեզերական եկեղեցիի վարդապետ» ամենապատուաւոր կոչումով: Պատարագէն ետք Թուրքիա ետ կանչեց Վաթիքանի դեսպանը: 2015-ին, Նափոլի քաղաքի San Gregorio Armeno եկեղեցիին մէջ կայացաւ Ցեղասպանութեան 100-ամեակի խաչքարի բացումի արարողութիւն: 2016-ին, իր շնորհիւ Ֆրանցիսկոս Պապը այցելեց Հայաստան եւ յատկապէս Ծիծեռնակաբերդ: 2018-ին, Վաթիքանի այգիներուն մէջ բացումը կատարեց Նարեկացիի արձանին:

Եւ այսքան:

Երկուքին տարբերութիւնը կարեւոր է: Մինչ Պայրաքտար ինքզինքը կը ներկայացնէ իբրեւ գործնական մարդ՝ յստակ գործադրական ուղղութեամբ, Մինասեան կը ներկայանայ իբրեւ բարոյական յաղթանակներու տէր անձնաւորութիւն, որ մտահոգուած է ցեղասպանութեան զոհերու սրբադասումով, սուրբերու վերասրբացումով, սուրբ արձանի եւ խաչքարի կանգնեցումով, եւ մանաւանդ՝ թշնամի թուրքին գայրացնող արարքով:

Մէկը՝ գործնական, միւսը՝ բարոյական: Մէկը՝ գործնապաշտ, միւսը՝ բարոյապաշտ: Անշուշտ, ոչ մէկը՝ գաղափարական:

Պր. Պայրաքտար իր Պայրաքտարներուն միջոցով 2020-ին գործնականօրէն յարձակեցաւ Հայաստանի վրայ՝ *Ուիքիփետիայի* միջոցով ոչ մէկ հակահայկական հայրենասիրութիւն հռչակելով: Պր. Մինասեան իր պիզնէսներուն միջոցով գործնականօրէն չհետաքրքրուեցաւ (երբեք չէր հետաքրքրուած) Հայաստանը պաշտպանել՝ *Ուիքիփետիայի* միջոցով ծորելով հակաթրքական հայրենասիրութիւն:

Հիմա կը մնայ ըսել՝ որ 2020 Նոյեմբերին բարոյական յաղթանակ տարինք Թուրքազէրիներուն դէմ: Ճիշդ այնպէս՝ ինչպէս Վարդանանցին բարոյական յաղթանակ տարինք պարսիկներուն դէմ, հոգ չէ թէ անկէ ետք քանի մը դար կորսնցուցինք պետականութիւնը:

**Համեմատութիւն**

Երկու փեսաներն ալ կը գործեն նէօլիպերալիզմի ընդմէջէն: Երկուքն ալ գերյարձակողական են իրենց ձեռնարկատիրութիւններու պահպանումին եւ զարգացումին մէջ: Երկուքին համար ալ գերանձնական շահն է վերադասը: Երկուքն ալ մակաբուծական դրամատիրութեան գործադրողներն են (ե՞րբ դրամատիրութիւնը մակաբուծական չէ եղած): Երկուքն ալ ընկերութենական (corporational) հսկաներ են՝ որոնք պետութիւնները կը ծառայեցնեն իրենց շահերուն, տկարացնելով պետութեան հիմքերը եւ իրենց ձեռքը վերցնելով բանալի նախաձեռնութիւններ: Երկուքն ալ բռնատէր նախկին ու ներկայ նախագահներու փեսաներ են: Յստակ պիտի ըլլայ նաեւ, որ ոչ մէկ կերպ կ'արդարացնեմ ռազմական արդիւնաբերութիւնը՝ որուն թրքական առաջամարտիկն է Էրտողանի փեսան, այն ահռելի պիզնէսը՝ որ իր գերշահոյթին համար պատրաստ է ոչնչացնելու մարդը՝ միքրօ եւ մաքրօ մակարդակներով:

Երկուքին միջեւ տարբերութիւնը, արդարեւ, կը գտնուի այլուր:

Պայրաքտար կը գործէ մեծապէս կեդրոնացած եւ նպատակաուղղուած ծրագիրով, այդ ծրագիրը դարձնելով կեանքի նպատակակէտը եւ փորձելով երթալ մինչեւ վերջ:

Մինասեան կը գործէ մեծապէս անկարգապահ եւ պատահական ծրագիրներով, ծրագիրները դարձնելով անցողիկ բայց արագ ու ազդեցիկ շահութային աղբիւր, որեւէ պահու թողելով մէկ ծրագիրը եւ անցնելով ուրիշին:

Անկախ երկու փեսաներէն, գործնական մտածողութենէ դէպի պատահական գործունէութիւն, եւ կ'ունենանք պատերազմական նախապէս իմանալի արդիւնքներ:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1889 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ԱՊՐԻԼ 2021 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.*

عدد رقم ١٨٨٩ الخميس ٨ أبريل ٢٠٢١


## ՆԱԽԱԳԱՀԱԿԱՆ ԺԱՄԱՆՑՆԵՐ

**Ամէն բան Անգլիոյ մէջ**

Ո՞վ է Հայաստանի նախագահը:

Օլիկարք մըն է Արմէն Սարգսեան, որուն պէգնէս հարստութիւնը կը գտնուի Մեծն Բրիտանիա եւ օֆշորային դրախտներ: Հոգեւոր հայրը Ամուլսարի հանքին:

Անկախութենէն ետք մեծ մասամբ ապրած է Անգլիա իբրեւ դիւանագէտ եւ ոչ-դիւանագէտ, այնտեղ կուտակելով իր գերհարստութիւնը եւ տիրանալով սեփական չքեղագոյն բնակարանի: Անգլիա փոխադրած է զաւակներն ու թոռնիկները մշտական բնակութեան համար (*Ջահակիր*, թիւ 1811, 1812, 1820 եւ 1821):

Համոզուած եմ, որ Հայաստանի ղեկավար պաշտօնատարութիւններէն ետք պիտի վերադառնայ հայրենիք՝ Անգլիա: Կը բաւէ որ նախագահութեան ժամանակ իր զաւակները մնացին այնտեղ: Կը բաւէ որ իր հարստութիւնը չփոխադրեց Հայաստան. եթէ նոյնիսկ հարստութենէն մաս մը փոխադրած ըլլար, իբրեւ հայրենասիրական ու հայրենանուէր արարք անպայման յայտարարած պիտի ըլլար հրապարակային կերպով, քանի որ մեր մեծերը պէտք ունին օգտագործելու հայրենասիրական պատկերումի ամէն կարելիութիւն:

**Պատերազմական հարցազրոյցներ**

Պատերազմի ժամանակ Սարգսեան սկսաւ իր դէմքը յառաջ տանիլ: Ունեցաւ երկար ու կարճ հարցազրոյցներ հեռատեսիլներու եւ լրագիրներու հետ՝ Քաթարի *Ալ-Ճազիրա* հեռատեսիլ (1 Հոկտեմբեր 2020), հնդկական *WION* հեռատեսիլ (3 Հոկտեմբեր), սերպիական *Politika* օրաթերթ (4 Հոկտեմբեր), ռուսական *RT* հեռատեսիլ (13 Հոկտեմբեր), Քուէյթի *Ալ-Ճարիտա* լրագիր (15 Հոկտեմբեր), ամերիկեան *CBN New* հեռատեսիլ (15 Հոկտեմբեր), *Politico* առցանց հանդէս (19 Հոկտեմբեր), ռուսական *Կոմերսանտ* հանդէս (19 Հոկտեմբեր), ֆրանսական *France 24* հեռատեսիլ (20 Հոկտեմբեր), յունական *Kathimerini* օրաթերթ (9 Նոյեմբեր):

Ըսուածներուն գրեթէ անգոյ ազդեցութեան մասին՝ ուրիշ առիթով: Պէտք է իմանալ՝ որ «միջազգային» լրատուական ազդեցութիւնը կը գտնուի բոլորովին այլուր՝ քանի մը անդրազգային լրատուական եւ ոչ-լրատուական ընկերութիւններու հսկողութեան տակ, որոնք կը սահմանեն ամբողջ լրատուական դաշտին ուղղութիւնը: Նախագահի արտաքին ցուցադրութիւնը աւելի կը միտէր իր պատկերը պայծառացնել ներքին հայկական սահմաններուն մէջ. իր իւրաքանչիւր հարցազրոյցը ունեցաւ դրական արձագանգ հայկական հողի վրայ:

**Ես՝ անմեղ**

Զ՚ուշանար նախագահի յետպատերազմեան առաջին պաշտօնական յայտարարութիւնը Նոյեմբեր 10-ին, ուր կը պնդէ՝ որ համաձայնագիրին մասին տեղեկացած է լրատուամիջոցներէն, այսինքն՝ ինք ոչ մէկ պատասխանատուութիւն կը կրէ: Ան նեղուած է՝ թէ «որպէս Հանրապետութեան նախագահ այս փաստաթղթի վերաբերեալ ինձ հետ որեւէ խորհրդակցութիւն կամ քննարկում, ցաւօք, չի եղել, որեւէ բանակցութեան չեմ մասնակցել»:

Արդեօք պարտուող Հայաստանը իր ձեռքի տակ ի՞նչ թուղթեր ունէր տուեալ պահուն համաձայնագիրին մէջ բան մը փոխելու համար, կամ նախագահի հետ քննարկումը ի՞նչ տարբերութիւն կրնար մտցնել, կամ որքա՞ն ապահով էր ճգնաժամային պահուն քննարկումներու համար երկարաձգել յայտարարութեան ստորագրութիւնը՝ մինչ թուրք-ազերիական յառաջխաղացումը աւելի քան բացայայտ էր: Նախագահը բացատրութիւն չի տար: Անոր համար յարմարաւէտ դրութիւն մըն էր բանակցութեան չմասնակցիլը:

Մտահոգութենէն աւելի, նախագահին համար կարեւոր էր պատասխանատուութեան վերջնական ու կատարեալ թօթափումը իր ուսերէն, որմէ ետք, իբրեւ մաքրամաքուր կողմ, պիտի փորձէր բարձրացնել իր դիմագիծը:

**Համազգային միասնութիւն**

Եւ այսպէս, «համազգային միասնութեան» համար «քաղաքական խորհրդակցութիւններ» ձեռնարկելու մեծաշուինդ վերտառութեան տակ, երեք օր շարունակ հանդիպումներ կ՚ունենայ հետեւեալ անհատներուն եւ կուսակցութիւններուն հետ. Հայաստանի Մարդու Իրաւունքներու առաջին պաշտպան, Ընդդէմ Իրաւական Կամայականութեան ՀԿ տնօրէն Լարիսա Ալաւերդեան. նախկին փոխարտգործնախարար, դեսպան Արման Նաւասարդեան. Հայաստանի Դեմոկրատական Կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեան. Ժառանգութիւն Կուսակցութեան ղեկավարներ. Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան գործադիր մարմինի անդամներ Վահրամ Բաղդասարեան եւ Էդուարդ Շարմազանով. ՀՀԿ երիտասարդական կազմակերպութեան ղեկավար Հայկ Մամիջանեան (10 Նոյեմբեր 2020). Հանրապետութիւն Կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեան (11 Նոյեմբեր). Ազգային Ժողովի Իմ Քայլը պատգամաւորական խմբակցութեան ներկայացուցիչներ՝ ԱԺ փոխնախագահ Լենա Նազարեան, Իմ Քայլը խմբակցութեան ղեկավար Լիլիթ Մակունց եւ ԱԺ պաշտպանութեան եւ անվտանգութեան հարցերու մշտական յանձնաժողովի նախագահ Անդրանիկ Քոչարեան (12 Նոյեմբեր):

Արդիւնք՝ փրոֆեսիոնէլ լուսանկարներ, նախագահական կայքի տեղեկատուութիւններ, եւ վերջ:

**Սփիւռք**

Յետոյ, փորձ մը ինքնադիմագիծ ստեղծելու Սփիւռքի միջոցով, ուժային կեդրոններու յատուկ ընտրութեան միջոցով:

Արդէն 2020 Հոկտեմբեր 4-ին սկսած էր սիրաշահիլ Սփիւռքը, անոր ուղղուած պաշտօնական ուղերձին մէջ ըսելով՝ որ Սփիւռքը ամուր ու հզօր է եւ ինք հպարտ է Սփիւռքով:

Նոյեմբեր 16-ին կը յայտարարէ՝ որ «հեռախօսազրոյցներ եմ ունեցել Սփիւռքի տարբեր կառոյցների եւ մեր հայրենակիցների հետ», առանց երբեք նշելու այդ կառոյցներուն եւ հայրենակիցներուն անունները: Յետոյ նոյն ինքը Սփիւռքի յայտարարութենէն կը պարզուի, որ խօսքը *միայն* մէկ միութեան եւ անոր աշխարհասփիւռ մասնաճիւղերուն մասին է (*Ջահակիր*, թիւ 1881): Քիչ մը ետք, 17-ի կազմաւորումին առընթեր, այդ նոյն Սփիւռքն էր որ անտեսեց նախագահը:

Փորձ մը եւս Սփիւռքի ռուսական հատուածին հետ: Նոյեմբեր 28-ին՝ անձնական այցելութիւն Մոսկուա: Նախագահական մարմինի պաշտօնական փոխանցումով, Սարգսեան *կը շարունակէ* քննարկումները Սփիւռքի հայկական համայնքներուն հետ, հանդիպում ունենալով Ռուսաստանի հայ համայնքի եւ համայնքային կառոյցներու ներկայացուցիչներու հետ: Ինչպէս կը բացայայտուի, հանդիպումին կը բացակային Ռուսաստանի կարեւոր հայ կազմակերպութիւններու ներկայացուցիչներ, որոնք դիտաւորեալ չէին հրաւիրուած ներկայ գտնուելու (*Ջահակիր*, թիւ 1881):

Այս ալ կ՚անցնի, առանց կարողանալու ռուսական Սփիւռքը իր օգտին շարժելու, ռուսական հանդիպումը դառնալով պատմական դրուագ:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՊՐԻԼԻՆ ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ԵՄ ՏԱԼՈՒ, ՈՐ ԱՐՏԱՀԵՐԹ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ ԼԻՆԵՆ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Յունիսի 20-ին տեղի կ՚ունենան խորհրդարանական արտահերթ ընտրութիւնները: Այդ ընտրութիւնները նրա մասին են, որ ժողովուրդը պէտք է որոշում կայացնի անցեալի ու ապագայի վերաբերեալ: Այս մասին Արագած համայնքում Մարտի 30-ին յայտարարել է վարչապետ Նիկոլ Փաշինեանը, տեղեկացնում է *Փաստինֆօ*:

«Դուք պէտք է գնահատական տաք անցեալին ու որոշում կայացնէք ապագայի վերաբերեալ», - ասել է նա:

Փաշինեանն յայտարարեց, որ Ապրիլին հրաժարական է տալու.

«Ինչո՞ւ, ոչ թէ հրաժարական եմ տալու գնալու, այլ, որպէսզի տեղի ունենան արտահերթ խորհրդարանական ընտրութիւններ, այդ ընթացքում շարունակելու եմ լինել վարչապետի պարտականութիւնները կատարող: Եթէ դուք կը վերահաստատէք ձեր մանդատը, ես, մեր թիմը կը շարունակենք ծառայել ձեզ շատ աւելի լաւ, քան նախկինում, եթէ չէ, մենք խոնարհաբար իշխանութիւնը կը փոխանցենք նրան, ում դուք կ՚ընտրէք, եթէ դուք կ՚ընտրէք գելերին, ձեր ընտրութիւնն ա, մենք ի՞նչ կարանք անենք: Մենք սխալուել ենք, բայց չենք խաբել», - ասաց Նիկոլ Փաշինեանը:

## ԴԻՒԱՆԱԳԷՏՆԵՐԸ «ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԽԱՂԱՂ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ» ՄԱՍԻՆ ԽՕՍԵԼԻՍ ՍՏԵԼ ԵՆ. ՀՈԳԼԱՆԴ

ԵԱՀԿ Մինսկի Խմբի ԱՄՆ նախկին համանախագահ Ռիչարդ Հոգլանդը The International Conflict Resolution կայքում մի յօդուած է հրապարակել, որտեղ նկարագրւում են Մինսկի Խմբի գործունէութեան մանրամասները:

«Երեւան եւ Բաքու կատարած իմ բազմաթիւ այցերի ժամանակ ես հասկացել եմ, որ երկու կողմերն էլ պաշտպանում են իրենց դիրքերը, հաւանականութիւնը քիչ է, որ որեւէ մէկը կը գնայ ինչ որ փոխզիջման: Ես եկայ այն եզրակացութեան, որ միայն պատերազմը կարող է վերջնականապէս լուծել ղարաբաղեան հակամարտութեան խնդիրը, սակայն այս տեսակէտը չէր հրապարկւում», ասել է Հոգլանդը:

«Բոլորը քաջատեղեակ էին, որ այսպիսի հակամարտութիւնները չեն կարող լուծուել բանակցութիւնների սեղանի շուրջ, եւ լայնամասշտաբ պատերազմը անխուսափելի է: Սակայն դիւանագէտները իրենց պաշտօնավարման ընթացքում «հակամարտութեան խաղաղ կարգաւորման» մասին խօսելիս ստել են», նշել է ԵԱՀԿ ՄԽ նախկին համանախագահը:

## ՍԴ-Ն ՕԳՆՈՒՄ Է ՔՈՉԱՐԵԱՆԻՆ ԽՈՒՍԱՓԵԼ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆԻՑ

Սահմանադրական Դատարանը Հայաստանի Քրէական Օրէնսգրքի 300.1 յօդուածը (սահմանադրական կարգը տապալելը), որով մեղադրանք է առաջադրուած Ռոբերտ Քոչարեանին, ճանաչել է Սահմանադրութեան 78 եւ 79-րդ յօդուածներին հակասող եւ անվաւեր, յայտնել է ՍԴ նախագահ Արման Դիլանեանը:

Ըստ Դատարանի, այն հակասում է Սահմա-

↳ 2

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### Դ. ԱՐԵՒԵԼԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ

Շահ-Մուրատեանի ուսանողական տարիներուն Ֆրանսան կ'ապրէր գաղութատիրական նկրտումին գագաթնակէտային շրջանը Ալճերիոյ մէջ, իսկ ստորադաս ալճերիացիի տիպարները ամէն տեղ էին Ֆրանսայի մամուլին մէջ: Արեւելապաշտութիւնը (orientalism) անբաժան ու անհրաժեշտ մասն էր գաղութատիրութեան:

Արեւելապաշտութեան մեկնաբանութեան համար օգտըւած եմ Էտուարտ Սաիտի յայտնի դրոյթներէն.

ա. Արեւելապաշտութիւնը կը ճանչնայ ընդհանրացուած Արեւելք մը, առանց ներքին տարբերութիւններու, առանց շերտաւորումներու: Գիտէ ազգերու անուններ, բայց այնքան ալ կարեւոր չէ անոնց ճշգրիտ գործածութիւնը: Ըստ ֆրանսացի քննադատներուն, Շահ-Մուրատեան պարսիկ, սուրիացի, Թուրք, հայ, արաբ է, կամ մէկ խօսքով՝ ասիացի:

Իսկ այդ «ազգ»-երը մասնաւոր յատկանիշներ ունին: Շահ-Մուրատեանի նման՝ ասիացին քնչուական գեղեցկութիւն ունի, հայը տարաշխարհիկ տիպար կը կրէ, արաբը յամառ է, Թուրքը հրապուրիչ: Իսկ պարսիկը պոռչտուկներ կ'արձակէ, բայց Շահ-Մուրատեան կը յաջողի խուսափիլ այդ պոռչտուքներէն:

Այդ ազգերը ունին նաեւ տիպարային արտաքիններ՝ քարամէլի նման Թուխ, Թխամազ, նուաղուն աչքեր, քաղցրաւուն տեսք, ինչպէս Շահ-Մուրատեան:

Անոնք աշխարհագրական ճշգրիտ վայրէ մը չեն սերիր: Շահ-Մուրատեան եկած է Կովկասի կորուսեալ գիւղէ մը: Կորուսեալ, հետեւաբար հէքիաթային հեռաւորութիւն ունեցող երեւակայական վայրէ:

Շահ-Մուրատեան եկած է նաեւ Դարեհի եւ Քսերքսէսի երկիրէն, անուններ՝ որոնք արեւելապաշտներուն համար փոխանորդներն են Պարսկաստանին եւ կրնան ներկայացընել Արեւմուտքի երեւակայած արեւելեան բռնատիրութիւնը եւ վայրագութիւնը:

բ. Տարաշխարհիկ Թովչութիւնը արեւելապաշտութեան կարեւոր կարծրատիպերէն է: Միջոց մըն է Արեւելքը պահելու հեռու: Ան այլացումն ու խորթացումն է Արեւելքի, անոր տալով խորհրդաւոր գրաւչութիւն:

Տարաշխարհիկ կերպարանքով Թենոր մըն է Շահ-Մուրատեան, որուն երգը կը յիշեցնէ Պոսֆորի հեռաւոր գիշերներու Թիավարուող նաւակները, ինչպէս նաեւ հնդիկ ֆաքիրներու որոշ վարժութիւնները:

գ. Փափուկ, կանացի ու սեռական է Արեւելքը: Մէկ տեղ մը արեւելեան փափկութիւն ունի Շահ-Մուրատեանի երգը, ուրիշ տեղ մը իր անձը շրջապատուած է արեւելեան գեղեցիկ ընկերուհիներով: Հարէմի արեւմտեան պատկերն է որ կը յառաջանայ, արեւմտեան սեռային ճնշուածութեան հակապատկերը՝ որուն միջոցով Արեւմուտքը կը տեսնէ իր alter ego-ն:

դ. Արեւելքը անսահման զգացումներու աղբիւր է: Հետեւաբար, Շահ-Մուրատեան պէտք է վերահսկէ իր յոյզերը:

ե. Արեւելքը բարբարոս է: Նախորդ ենթամասին մէջ տեսանք Թէ ինչպէս Շահ-Մուրատեան ունի Արեւելքի մը յատուկ բարբարոսական առոգանութիւնը, դառնալով բարբարոս տարաշխարհիկ մը: Առոգանութիւնը՝ որ լսելի երեւոյթ մըն է, դարձաւ պատկեր: Առոգանութիւնը՝ իբրեւ աշխարհագրական երեւոյթ, միացաւ իմացաբանութեան հետ:

Իսկ հիմա արդէն արեւելքցիները կը գալթեն մեզի, քանի որ Շահ-Մուրատեան հայ մըն է, կ'ըսէ քննադատ մը: Ինչպէս գիտենք, բարբարոսներն են որոնք կը գալթեն: Բարբարոս արեւելքցիները «կը գալթեն» Ֆրանսան, ճիշդ այն ժամանակ երբ Ֆրանսան «կ'ազատագրէր» Ափրիկէն՝ ամենադաժան գաղութատիրական-ցեղասպանային գործողութիւններով:

զ. Երգելու համար խորհուրդ կը տրուի կեդրոնանալ ֆրանսական արեւելապաշտ նուագացանկին վրայ՝ *Lalla Roukh, Les Pêcheurs de perles, Le Désert,* համոզուած ըլլալով, որ իրենց՝ ֆրանսացիներուն այս արտադրանքը կը ներկայացնէ արեւելեան ճաշակը:

Շահ-Մուրատեանին ձայնը ընդունակ է արտասուելու յուսահատ *Aroubi*-ներ, *Le Désert*-ի յատկապէս մինարէի բարձրութենէն արձակուած մուէզզինի կանչը:

Իսկ ընդհանուր առումով, լաւ կ'ըլլայ եթէ իր նուագացանկը սահմանափակուի միայն օփերայի եւ օփերաքոմիքի այն հերոսներով՝ որոնք իրենց սիրային ուժը կ'ընդունին ասիական կամ ափրիկեան արկածախնդրութիւններէ:

Ստորեւ, արեւելապաշտ արտայայտութիւնները.

1. «Պէտք է վերահսկէ իր յոյզերը» [Տեսարան *Faust*-էն] ('Conservatoire', Com dia, 18 janvier 1908, 2e année, no. 110, p. 4):

2. «Պր. Շահ-Մուրատեան պարսիկ մըն է, որ անոնց նման պոռչտուքներ չ'արձակեր, [... իր ձայնը] կը գործածէ յուռի ոճով» [*Joseph,* 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Louis Schneider, 'Au Conservatoire: concours de chants', *Le Radical*, 3 juillet 1908, 28e année, no. 185, p. 2):

3. «Ափսոս որ Շահ-Մուրատեանը չի կոչուիր Տիւրան եւ ֆրանսացի չէ» [*Joseph,* 'Vainement Pharaon'] ('Conservatoire', Com dia, 22 janvier 1908, 2e année, no. 114, p. 3):

4. «Քիչ ժամանակ է որ ան եկած է Կովկասի կորուսեալ գիւղէ մը: Երբ որ ամբողջապէս վերափոխուի, հաւանաբար կը դառնայ ընտրեալ երգիչ մը» [*Joseph,* 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Robert Brussel, 'Les Concours du Conservatoire', *Le Figaro*, 3 juillet 1908, 54e année, no. 185, p. 5):

5. «Շահ-Մուրատեան կը Թուի ըլլալ ծագումով հայ, եւ իրականութեան մէջ ունի տարաշխարհիկ (exotique) տիպար» [*Joseph,* 'Champs paternels, Hébron, douce vallée'] (Nicolet, 'Conservatoire', *Le Gaulois,* 3 juillet 1908, 43e année, no. 11220, p. 3):

6. «Ասիական ծագումը իրեն քիչ մը կը շնորհէ քնչուական այն գեղեցկութիւնը, որ կը ներկայացնէ ամերիկացի խողաճարպի վաճառականներու աղջիկներուն ծակատագիրը՝ երբ կը կերպարանափոխուին պելճիքացի իշխանուհիներու» (Georges Pioch, 'Les élèves admis au concours publics du Conservatoire', Com dia, 19 juin 1909, 3e année, no. 628, p. 3):

7. «Ինչո՞ւ Պր. Շահ-Մուրատեան՝ իր ջերմ եւ հրապուրիչ ձայնով, չերգեց արիա մը՝ որ բացայայտէր իր արեւելեան ճաշակը՝ *Lalla Roukh, Les Pêcheurs de perles* կամ *Le Désert*» [Արիա *Freyschütz*-էն] (Reynaldo Hahn, 'Les concours du Conservatoire: les "pourquoi?", *Le Journal,* 3 juillet 1909, dix-huitième année, no. 6124, p. 2):

8. «Առաջին կարգի յիշատակութեան մրցանակակիրներն են՝ [...] Շահ-Մուրատեան (Իսնարտոնի դասարան), որուն կը փրկէ *Werther*-ը՝ իր արեւելեան փափկութեամբ» [Տեսարան *Werther*-էն] (Georges Cochet, 'Les concours du Conservartoire', *Le Matin,* 7 juillet 1909, vingt-sixième année, no. 9262, p. 4):

9. «Պր. Շահ-Մուրատեան Վերթէրին կու տայ անսպասելի ասիական գոյն մը: Ներկայիս ան աւելի «բնական» եւ աւելի յաջող պիտի ըլլայ *Joseph*-ի մէջ» [Տեսարաններ *Werther*-էն եւ *Joseph*-էն] (Georges Pioch, 'Dans la salle et sur la scène', Com dia, 7 juillet 1909, 3e année, no. 646, p. 2):

10. «Քիչ մը տարաշխարհիկ անշնորհութիւն խաղին մէջ» [Տեսարան *Werther*-էն] ('Au Conservatoire: Lakmés, Carmens et Manons', *La Presse,* 7 juillet 1909, 76e année, no. 6233, p. 1):

11. «[Ե]րիտասարդ սուրիացի՝ Պր. Շահ-Մուրատեան» [Տեսարան *Werther*-էն] (Nicolet, 'Conservatoire', *Le Gaulois,* 7 juillet 1909, 44e année, no. 1158, p. 3):

12. «Պր. Շահ-Մուրատեան՝ տարօրինակ կերպարանքով տարաշխարհիկ Թենոր մը» [Տեսարան *Werther*-էն] (Auguste Germain, 'Concours du Conservatoire', *L'Écho de Paris,* 7 juillet 1909, 26e année, no. 9104, p. 4):

13. «Հայկական շեշտը կը վնասէ իր գեղեցիկ ձայնին եւ ջերմ խաղարկութեան» [Տեսարան *Werther*-էն] (G. M., 'Les Concours du Conservatoire', *La Gazette de France,* 7 juillet 1909, 278e année, p. 3):

14. «Պր. Շահ-Մուրատեան ամէն յարմարութիւն ունի երգելու *Pêcheurs de perles* եւ *Lalla Roukh,* մինչդեռ յամառօրէն կը մղեն երգելու *Freyschütz* եւ *Werther*: Արդեօք ե՞րբ պիտի լսենք գրաւիչ Թեքումներով այս ձայնը մեղեդիականօրէն արտասուէ քանի մը յուսահատ *Aroubi*-ներ» [Տեսարան *Werther*-էն] (Reynaldo Hahn, 'Les concours du Conservatoire', *Le Journal,* 8 juillet 1909, dix-huitième année, no. 6129, p. 6):

(Շար. 6)

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ՔՈՉԱՐԵԱՆԸ ՄԻԱԿԸ ՉԷ. 2018-ԻՑ Ի ՎԵՐ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՕՐՕՔ ԵՒՍ 3 ՏԱՐԻ ՄԻԳՐԱՑԻԱՅԻ ՍԱԼՏՈՆ ԴՐԱԿԱՆ Է

ՍԵՒԱԴԱ ՂԱԶԱՐԵԱՆ

Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը ռուսաստանցի լրագրող Վլադիմիր Պոզնէրին տուած հարցազրոյցում, անդրադառնալով Հայաստանից չարունակական արտագաղթին, յայտարարել է, որ միայն իր նախագահութեան տարիներին է Հայաստանում եղել միգրացիայի դրական ցուցանիշ: «Միգրացիոն սալտոն միշտ եղել է բացասական, եւ, իմիջիայլոց, միակ երեք տարիները՝ դրական միգրացիոն սալտոյով, իմ նախագահութեան վերջին երեք տարիներն էին», - ասել է Քոչարեանը:

*Փաստերի Ստուգման Հարթակն* ուսումնասիրեց անկախութեան տարիներին (1991 Թուականից մինչ օրս) Հայաստանից մեկնածների ու ժամանածների վիճակագրութիւնը:

Միգրացիայի դրական սալտօ նշանակում է, որ երկիր ժամանողների Թիւն աւելի մեծ է, քան երկրից մեկնողներինը: Պարզւում է, սակայն, որ միգրացիայի դրական սալտօ Հայաստանում արձանագրուել է նաեւ 2018, 2019 եւ 2020 Թուականներին:

Ինչպիսին է եղել միգրացիայի պատկերը Հայաստանի ղեկավարների օրօք:

**Լեւոն Տէր-Պետրոսեան**

Վիճակագրական Կոմիտէի տուեալների արխիւում բացակայում են 1991 Թուականի միգրացիայի ցուցանիշները, իսկ 1992-94 Թուականների տուեալներում սխալանքը բաւական մեծ է, քանի որ միգրանտների մի մասը եղել են Ադրբէջանից տեղահանուածները, եւ վերջիններիս շարժը ոչ միշտ է հնարաւոր եղել արձանագրել:

Այնուամենայնիւ, ըստ պաշտօնական վիճակագրական ցուցանիշների, առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախագահութեան տարիներին (1991- 3

## 1 ՍԴ-Ն ՕԳՆՈՒՄ Է ՔՈՉԱՐԵԱՆԻՆ...

նադրութեան 78 եւ 79 յօդուածներին.

**- Յօդուած 78. Համաչափութեան սկզբունքին**

Հիմնական իրաւունքների եւ ազատութիւնների սահմանափակման համար ընտրուած միջոցները պէտք է պիտանի եւ անհրաժեշտ լինեն Սահմանադրութեամբ սահմանուած նպատակին հասնելու համար: Սահմանափակման համար ընտրուած միջոցները պէտք է համարժէք լինեն սահմանափակուող հիմնական իրաւունքի եւ ազատութեան նշանակութեանը:

**- Յօդուած 79. Որոշակիութեան սկզբունքին**

Հիմնական իրաւունքները եւ ազատութիւնները սահմանափակելիս օրէնքները պէտք է սահմանեն այդ սահմանափակումների հիմքերը եւ ծաւալը, լինեն բաւարար չափով որոշակի, որպէսզի այդ իրաւունքների եւ ազատութիւնների կրողները եւ հասցէատէրերն ի վիճակի լինեն դրսեւորելու համապատասխան վարքագիծ:

Մարտի 1- գործով առանցքային մեղադրեալ, Հայաստանի նախկին նախագահ Ռոբերտ Քոչարեանը, յիշեցնենք, մեղադրւում է հէնց ՔՕ 300.1 յօդուածով:

*Epress.am*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՍՏԱԲԱՆՆԵՐԸ ՅԻՇԵԼ ԵՆ, ՈՐ ԱՐՄԷՆ ՍԱՐԳՍԵԱՆՆ ԱՊՕՐԻՆԻ ՆԱԽԱԳԱՀ Է

Նախագահ Արմէն Սարգսեանի երկքաղաքացիութեան փաստը թաքցնելու հետ կապուած փաստաբանների ներկայացրած հաղորդումը գլխաւոր դատախազութիւնն ուղարկել է Յատուկ Քննչական Ծառայութիւն՝ նիւթեր նախապատրաստելու եւ ընթացքը որոշելու նպատակով: Այդ մասին յայտնել է գլխաւոր դատախազի խորհրդական Գոռ Աբրահամեանը:

Աւելի վաղ Փաստաբանների Պալատի նախագահ Արա Զոհրաբեանը յայտնել էր, որ 53 փաստաբան յանցագործութեան մասին հաղորդում են ներկայացրել գլխաւոր դատախազին, ըստ որի՝ Արմէն Սարգսեանը 2003-2012 թուականներին առնուազն 10 տարուայ Միացեալ Թագաւորութեան քաղաքացիութիւն է ունեցել եւ Հայաստանի նախագահ է ընտրուել 2018 թուականի Մարտի 2-ին այն դէպքում, երբ չի բաւարարել վերջին վեց տարում միայն Հայաստանի քաղաքացի հանդիսանալու պահանջը: Արմէն Սարգսեանը, ըստ փաստաբանների, կարող էր նախագահ ընտրուել միայն, եթէ նրա բրիտանական քաղաքացիութիւնը դադարեցուած լինէր մինչեւ 2012 թուականի Մարտի 1-ը:

Յիշեցնենք, որ 2018 թուականի Ապրիլի 27-ին՝ Թաւշեայ Յեղափոխութեան օրերին, Նիկոլ Փաշինեանը Արմէն Սարգսեանի հետ հանդիպումից յետոյ իր ֆէյսբուքեան էջում յետոյ յայտնել էր, որ տեսել է նախագահի քաղաքացիութեանը վերաբերող տեղեկանքը.

«...Պարոն Սարգսեանը իր հետ բերել էր նաեւ փաստաթղթեր այն մասին, որ ինքը Մեծ Բրիտանիայի քաղաքացիութիւնը կորցրել է 2011 թուականի Դեկտեմբերին», - գրել էր Փաշինեանը:

### ՔՈՉԱՐԵԱՆԸ ՄԻԱԿԸ ՉԷ. 2018-ԻՑ Ի ՎԵՐ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՕՐՕՔ ԵՒՍ 3 ՏԱՐԻ ՄԻԳՐԱՑԻԱՅԻ ՍԱԼՏՈՆ ԴՐԱԿԱՆ Է

2➩

1998) Հայաստանից արտագաղթել է 586,800 մարդ: Տէր-Պետրոսեանի կառավարման բոլոր տարիներին միգրացիոն սալտոն եղել է բացասական:

**Ռոբերտ Քոչարեան**

Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանի նախագահութեան 10 տարիներին (1998-2008 թթ.) Հայաստանից արտագաղթել է ընդհանուր 33,200 մարդ: Եւ չնայած սրան՝ անկախութիւնից ի վեր առաջին անգամ 2004-2006 թուականներին է արձանագրուել մեկնողների ու ժամանողների դրական տարբերութիւն: Այսինքն՝ այդ տարիներին Հայաստան աւելի շատ մարդ եկել է, քան մեկնել:

**Սերժ Սարգսեան**

Հայաստանի երրորդ նախագահ Սերժ Սարգսեանի նախագահութեան ժամանակահատուածում (2008-2018) Հայաստանը լքել է 372,600 մարդ: Նրա կառավարման տարիներից եւ ոչ մէկում միգրացիոն սալտոն չի եղել դրական:

**Նիկոլ Փաշինեան**

2018 թուականի յեղափոխութիւնից յետոյ այս պատկերը կտրուկ փոխուել է: Սկսած 2018 թուականից Հայաստան ժամանողների թիւը գերակշռել է մեկնողների թուին: Սկսել է փաստացի ներգաղթ: Ըստ վիճակագրական կոմիտէի տուեալների՝ վերջին երեք տարում Հայաստան է ժամանել մօտ 38,000-ով աւել մարդ: Երեք տարիներին էլ սալտոն դրական է եղել:

Ամփոփելով՝ փաստենք, որ երկրորդ նախագահի կողմից հնչեցուած միտքը, թէ միայն իրեն է յաջողուել միգրացիայի դրական սալտօ ապահովել, սխալ է: Թէեւ իսկապէս իր նախագահութեան տարիներին՝ 2004-2006 թուականներին, սալտոն եղել է դրական, սակայն Նիկոլ Փաշինեանի վարչապետութեան երեք տարիներին ժամանողները մշտապէս գերազանցել են մեկնողներին, եւ արձանագրուել է միգրացիայի դրական ցուցանիշ:

*Փաստերի Ստուգման Հարթակ*



ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

**ՈՎ Է ԺԱՆՆԱ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ**

Նախ, ո՞վ է Ժաննա Անդրէասեան, որուն Նժդեհի վերոբերեալ ձեւով ներկայացուած խօսքը փոթորիկ յառաջացուց:

Անդրէասեան 2020 Մարտ 5-էն սկսեալ Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի (ԿԳՄՍ) փոխ նախարարուհին է: Այսինքն, այսօրուայ խօսքով՝ փաշինեանական: Անձ մը՝ որ իր ուսերուն վերցուցած է հսկայական աշխատանք, յաճախ առանձին բախուելով արմատացած հիմնարկներուն եւ փոխելիլ չուզող կրթական հաստատութիւններուն, իսկ եկեղեցական պատմութեան առարկայի յայտնի խնդիրով՝ նաեւ եկեղեցական հիմնարկին:

Կենսագրութեան առումով, ըստ քաղուածքը տարածողներուն, Անդրէասեան Պետրոս Ղազարեանի կինն է: Պէտք է հասկնալ՝ Ղազարեան վատ մարդ մըն է: Եւ ինչպէ՞ս այդպէս չըլլայ: Ան 2018-էն ի վեր Հայաստանի Հանրային Հեռուստաընկերութեան կարեւոր պաշտօնատար մըն է, ուրեմն՝ դարձեալ փաշինեանական:

Ուրիշ հարց, թէ ես ինքս Ղազարեանի սիրահար մը չեմ: Եւ ինչպէ՞ս կրնայի սիրահար մը ըլլալ, քանի որ երբ 2017-ին կը գրէի Պարոն Ծառուկեանի մասին հաւանաբար Սփիւռքի ամենաերկար եւ միակ քննադատական յօդուածաշարը (*Ջահակիր*, թիւ 1785-1791), օլիկարքին պատկանող Կենտրոն հեռատեսիլին մէջ, պաշտօնակատարի բերումով Ղազարեան հանդէս կու գար յօդուածիս ճիշդ հակառակ դրոյթներով:

Իրականութեան մէջ, Կենտրոն շատ բան կորսնցուց Ղազարեանի տեղափոխութեամբ Հանրային Հեռուստաընկերութիւն: Հրաշալիօրէն գիտէր գրոյցներ վարել եւ տարբեր մարդոց խօսեցնել իրարու հետ: Այս առումով՝ փրոֆեսիոնէլ է:

Հեռուները գացի: Ասիկա ի՞նչ կապ ունի Անդրէասեանի կենսագրութեան հետ: Ոչ մէկ:

Ուրեմն, ո՞վ է Անդրէասեան: Մասնագիտութեամբ՝ հասարակագէտ (sociologist): Հայազգի հասարակագէտներուն լաւագոյններէն մէկը: 2002-2004-ին մագիստրոսի ուսանողուհի Երեւանի Պետական Համալսարանի հասարակագիտութեան բաժանմունքին: 2004-2008-ին ասպիրանտուրա՝ Երեւանի Պետական Համալսարանի հասարակագիտական բաժանմունքին:

Ունի բազմաթիւ յօդուածներ՝ առցանց եւ տպագիր, ինչպէս նաեւ վիտէօ ելոյթներ:

Սոցիոսկոպ Հասարակական կազմակերպութեան աշխոյժ մասնացող է, որուն կայքէջին վրայ 2015-էն ի վեր կարելի է գտնել իր յօդուածներէն եւ տեսագրութիւններէն մաս մը(2):

Առ ի տեղեկութիւն, Սոցիոսկոպը Հիւման Ռայթս Հաուս Երեւան իրաւապաշտպան ցանցի հիմնադիր անդամներէն է:

Համախմբագիրն է Սոցիոսկոպի հրատարակութիւններու՝ *Պայքարի փորձ[եր]* (2016), *Փոփոխութեան որոնումներ* (2016), *Սեռականութիւնը հայկական [համա]տեքստերում* (2019), որոնց վերջին երկուքին մէջ ստորագրած է նաեւ կարեւոր յօդուածներ:

Մասնակցած է բազմաթիւ դաշտային հետազօտութիւններու:

Աստիճանաբար մօտենալու համար աղմուկ բարձրացուցած պարբերութեան, ստորեւ պիտի փորձեմ ընտրողաբար ներկայացնել իր գաղափարներէն քանի մը հատ:

**Հասարակագիտութեան հարցեր**

2014-2015-ին, ԲունTV-ի համար տեսագրած է 20 զեկոյցներու շարք մը՝ նուիրուած հասարակագիտական հարցերու(3), ուր կը ներկայացնէ զանազան նիւթեր միջազգային յայտնի հասարակագէտներու եւ փիլիսոփաներու տեսութիւններու եւ կարծիքներու ընդմէջէն, ինչպէս՝ Փիթըր Պերկէր, Օկիւսթ Քոնթ, Հըրպըրթ Սփենսըր, Էմիլ Տիւրքհէյմ, Կապրիէլ Թարտ, Կէորկ Զիմէլ, Մաքս Վեպէր, Թալքոթ Փարսընս, Փիթիրիմ Սորոքին, Վիլֆրետօ Փարեթօ, Լիւտվիկ Վիթկենշթայն, Ֆերտինան տը Սօսիւր, Ժաք Տերիտա, Ժան-Ֆրանսուա Լիոթար, Ժիլ Տըլէօզ, Անթոնի Կիտենս, Նորպերթ Էլիաս, Փիեռ Պուրտիէօ, Զիկմունթ Պաումըն, Կեննատի Պաթիկին, չմոռնալով այս բոլորը կապել հայկական իրականութիւններու հետ:

Իրազեկութեան եւ վերլուծութեան խոր մակարդակ մը կը յայտնուի զեկոյցներուն մէջ, որ հիմքն է ստորեւ ներկայացուած գաղափարներուն:

**Պատերազմի տարածքի համայնքի ձայնը**

Անդրէասեանի դաշտային հետազօտութիւններէն ընտրեմ միայն մէկը:

2018-ին, Սոցիոսկոպի այլ անդամներու հետ՝ Աննա Ժամկոչեան, Մարիամ Խալաթեան եւ Արփի Մանուսեան, հարցազրոյցներ կը տեսագրէ Նախիջեւանի սահմանամերձ համայնքներու բնակիչներուն հետ(4):

Պատերազմի ազգային պատումին մէջ միշտ կը մոռցուի պատերազմին բուն ենթական հանդիսացող մարդուն ձայնն ու կարծիքը: Պատերազմին եւ անոր անմիջականօրէն մերձակայ տարածքները ապրող բնակիչին կարծիքը կ՚անտեսուի՝ յանուն մեծ պատումին: Իրական փորձառութիւն ապրած ձայնը կը լռեցուի՝ յանուն իշխանական ձայնին: Իրականութեան մէջ, այս մեկուսացուած համայնքներէն կարելի է լսել այն՝ ինչ մերժուած է հիմնահոսանքին կողմէ:

Տարիքաւոր կին մը կ՚ըսէ (միշտ յիշենք՝ որ զրոյցները կատարուած են 2018-ին). «Հիմնաւորուած չի լրիւ խաղաղութիւնը, ուրեմն վերջ չկայ: [...] Սենց, ստից: Ո՛չ խաղաղութիւն ա, ո՛չ էլ պատերազմ ա: [...] Ենթադրենք պատերազմը ըլի ու վերջանայ, բայց էս ոչ սկսում ա, ոչ էլ վերջանում ա»:

Այն ինչ որ մենք՝ «մասնագէտներս», գիտական ինքնավստահութեամբ կը կոչենք՝ status quo: Մինչդեռ կինը՝ իր անձնական փորձառութեամբ, գիտէր երեւոյթին կիսատ-պռատութիւնը: Իրականութեան մէջ, մեր օրինագրած «status quo»-ն կը հանդիսանայ կնոջ «ստից»-ը: Աւելի իրապաշտական չէ՞ արդեօք գիւղացի կինը: Այդ «ստից»-ին արդիւնքը չէ՞ր 2020 Սեպտեմբերի պատերազմը: Աւելի «ստից»-ի արդիւնքն էր քան «status quo»-ի: «Ստից»-ը այն բառն է՝ որ կը նկարագրէ, կը մեկնաբանէ, կը կողմնորոշէ՝ բանալով գաղափարը, մինչ «status quo»-ն կը սահմանէ, կը վաւերացնէ՝ փակելով գաղափարը:

Հողամշակ մարդը սրտնեղած է լրագրողներէն, որոնք կը չահագործեն պատերազմը եւ սուտ լուրեր տարածելով վնաս կը հասցնեն գիւղին.

«Էս սահմանի մօտիկութիւնը, ձեր ժուռնալիստները եկան, չուխուր գցեցին. ես դրանց կը բռնէի դատի կը տայի, որովհետեւ ահագին տուրիստ պիտի գային մեր տուն, գակագները [պատուէրները] հանեցին: Մի հատ քանդուած պատ էին գտել գիւղի մէջ, նկարել էին, գրել էին ռմբակոծութիւն, կան աւերուածութիւններ. ինտերնէտում գցած է: Երեւանից հազար մարդ ինձ զանգել ա, ասել ա էս ինչ ա կատարւում աղբերս, ո՞վ ա կրակում, ո՞ւմ ա կրակում, ասում եմ տենց բան չկայ, էդ սուտ ա: [...] Քանդուած պատ ա, ամէն տեղ էլ կը լինի: Էդ քանդուած պատը նկարել են գցել, աւերուածութիւն է: Այսինքն ժուռնալիստների շնորհիւ համ վախի բան մտաւ մէջը, համ էլ ժողովուրդը տուժեց:

«Ի՞նչ կրակոց: Կրակոց սահմանի վրայ ամէն տեղ էլ կրակում են: Չեն կրակո՞ւմ: Եթէ սահմանամերձ ա, կրակում են: [...] Նրա համար որ լայք հաւաքեն, ասեն էս ինչ թերթ ա, կամ ոնց ա կոչւում էդ YouTube անունով, իրա համար աչոկ հաւաքի, լայք հաւաքի, ընդամէնը:

«Իմ խաղողիս այգիները էն Թուրքի դիրքի տակին ա, Թուրքը քայլում ա, նայում եմ, երեւում ա էնտեղ: Գնում եմ հանգիստ աշխատում գալի: Գարանտիա չկայ, չես կարա ասես վատ ա, շատ վատ ա, բայց դէ որ ուրիշ կողմից էլ ասում է իրենց սահմանն ա, այսինքն եթէ իրենց սահմանն ա, արդէն քաղաքական հարց ա: Ի՞նչ կարաս անես»:

➩4




## 3 ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ...

Հայ-ազերիական մարդկային յարաբերութիւնները հիմնահոսանքի թապուներէն մէկն է: Բայց 11-րդ դասարանցի պատանին կը պատմէ.

«Օրինակ [պատմել են], որ այստեղ առք ու վաճառք է եղել ադրբէջանական գիւղերի հետ: Մեր տանն էլ նոյնիսկ Թուրքեր, ադրբէջանցիներ եկել են, գիշերը մնացել են: Մի անգամ էլ տատիկիս Թուրքը փրկել է մահուանից. սարերում բանջար հաւաքելուց ընկել է եւ Թուրքը բռնել է իրեն: Դա է տպաւորուել: [...]

«Երեւի այդ պատերազմը, որ արդէն եղել է, ամէն մարդ իր վատ կողմն է ցոյց տուել: Պատերազմում մարդ սպանելով՝ դու վատ բան ես անում, ու այդպէս Թշնամացել են միմեանց հետ: Եթէ վատը արդէն կայ, դժուար է լաւը յիշել, դու վատն ես յիշում: [...]

«[Եթէ հանդիպէի Ադրբէջանից իմ հասակակցին] կ'ասէի բարեւ, ո՞նց ես: Ոչ այդքան արտասովոր բան, սովորական»:

Նոյն բանը կ'ըսէ նաեւ ծերունին, ելլելով անձնական նախկին փորձառութենէն, հրաշալիօրէն զանազանելով մարդը՝ որ կը սիրէ, եւ իշխանը՝ որ կը հրահրէ.

«Հասարակ իմ նման ադրբէջանցին, երբեք չեմ հաւատում յանկարծ ցանկանայ պատերազմ: Հիմա եթէ հին ադրբէջանցին իմ նկարը տենայ, իմ ընկերները ես իմ կարող ա նամակ գրեն ինձ:

«Ընկերնե՞ր էք ունեցել:

«Շատ, չափից դուրս: Եթէ ինձ միս էր պէտք լինում, անմիջապէս եթում էի այնտեղ, առնում գալիս էի: [...]

«Դրանք լաւ ժողովուրդ են: [...] Ես ընկերութիւն եմ արել: Հարսանիք եմ գնացել: Ինչ ձեւի ընկերութիւն ասես չեմ արել: [...]

«Մենք լաւ ենք ելէ, այսօր Թշնամի ենք ելէ: Էդ Թշնամին Ալիեւն ա անում: Կեանքիդ մեռնեմ, էդ Ալիեւն ա հրահրում ժողովուրդին: [...]

«Թող ինքդ մեռնի՝ Թող Ալիեւը մեռնի, ինչի՞ իրա տղէն փախցրել ա Արաբական Էմիրութիւններ: Կամ Սերժը ինչի՞ իրա աղբէրները բերել դրել ա...»:

Միջին տարիքի կին մը.

«Մենք տարիներ շարունակ ապրել ենք իրանց հետ: Կոնկրէտ այս տունը Թուրքի տուն է: Իրենց հետ ապրել ենք, վատ չենք եղել: Մի քիչ սիրուն կարող է չհնչի, բայց նշանակում է, որ դաւաճանում ես, որ նրանց գովում ես, բայց գովեստի տեղ ունեն: Իմ ծնողները Գորիսից եկել էին, իմ կողքիս հարեւան Թուրքը չի սպասել, որ ես դպրոցից գամ, տուն է տարել, յարգելպատուել որպէս ուսուցիչ, հիւրասիրել են մի ահագին մթերքով. սա մարդկային դրսեւորում է Թուրքի կողմից»:

Միջին տարիքի ուրիշ կին մը.

«Այն ժամանակ հայը եւ Թուրքը եղբայրների նման էին: Իրենց առեւտուրն ամէնից շատ մեր գիւղում էին անում: Այն ժամանակ միսն էլ էին առնում-տանում այստեղից: Իրենք էլ իրենց բանջարեղէնն էին բերում այստեղ, վաճառում: Ջերմուկ էլ էին տանում-ծախում, Երեւան էլ: Մեր գծով էին գնումգալիս: Ճանապարհը շատ կարճ էր այսպէս: Մենք միշտ այսպէս ենք գնացել Երեւան: Գնում էինք, Երասխի մօտից դուրս էինք գալիս»:

Սոցիոսկոպի անդամները, բնականաբար, այս եւ բոլոր խօսքերը հասարակագիտականօրէն բաժնած, դասակարգած եւ դրած են բնաբաններու մէջ:

Ինչ որ կը հետաքրքրէ ներկայ գրութեանս այն է՝ որ պատերազմական համայնքի ձայնը (եւ ընդհանրապէս համայնքներու ձայները), մանաւանդ վերոբերեալ քաղուածքներուն ընդմէջէն, արտօնուած չէ շրջանցել այլընտրանքին սահմանները, ներկայ պարագային՝ Սոցիոսկոպի եւ գործընկերներուն: Հիմնահոսանքի պարագային, վերնախաւն է (Փաշինեան, Ալիեւ, լրատուութիւն) որ կը խօսի անոնց փոխարէն:

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

2. http://socioscope.am/index.php?s=Անդրեասյան:

3. http://boon.am/category/sociology-andreasyan/:

4. «Եթէ փամփուշտը զէնքի մէջ է. գրոյցներ սահմանին մերձ», *Սոցիոսկոպ*, 29 Դեկտեմբեր 2018, http://socioscope. am/ archives/1442: «Նրանք. սահմանից այն կողմ ապրողները», *Սոցիոսկոպ*, 29 Դեկտեմբեր 2018, http://socioscope.am/ archives/ 1451:

## 1 ՆԱԽԱԳԱՀԱԿԱՆ ԺԱՄԱՆՑՆԵՐ

**17-ը**

Պատերազմին պարտութիւնը շատ հաճելի առիթ մը եղաւ 30 տարի հայրենիքը չփրկողներուն համար վերակենդանանալ իբրեւ հայրենիքը փրկողներ:

Հայրենիքի Փրկութեան Շարժումի յայտնի 17-ին չմիացաւ Նախագահը: Ոչ ալ Շարժումը համակրեցաւ անոր: Նախագահը չէր կրնար իր իշխանութիւնը բաժնել Շարժումի վարչապետի թեկնածու Վազգէն Մանուկեանի հետ: Ոչ ալ վերջինս պիտի ուզէր մրցակից ունենալ Շարժումին մէջ:

**Լուռ հասարակութիւն**

Դեկտեմբեր 11-ին նախագահը կը թուի քիչ մը յուսախաբ եղած ըլլալ ժողովուրդէն, երբ *Սիվիլնէթ*ին կը յայտարարէ. «Այսօր մենք ունենք հասարակութիւն, որի մի մեծ մասը լուռ է, ձայնը չի բարձրացնում, չունենք 2-3 հարիւր հազարանոց ցոյցեր»: Ցոյցեր որո՞ւն դէմ: Նախագահը կը յստակեցնէ՝ ցոյցեր ճգնաժամէն դուրս գալու համար, աւելցնելով՝ որ 2-3 հարիւր հազարանոց ցոյցերուն բացակայութիւնը չի նշանակեր ճգնաժամի չգոյութիւն:

Ճգնաժամ՝ անկախ ժողովուրդէն:

**Առաջին հանդիպում վարչապետի հետ**

Դեկտեմբեր 24-ին վերջապէս հանդիպում կ'ունենայ Փաշինեանի հետ, որուն կը յաջորդեն երկու կողմերու սովորական-պաշտօնական-դիւանագիտական յայտարարութիւնները:

**Հաւատացեալ նախագահ**

Ծնունդին՝ Յունուար 6-ին, կարեւոր կը նկատէ բացայայտել իր հաւատացեալ քրիստոնեայի զգացումները, յատուկ *աղօթելով* հիւանդներուն համար:

**Դէպի Չորրորդ Հանրապետութիւն**

Գործնականօրէն անտեսուած 17-ին, ոչ-17-ին եւ *իր* Սփիւռքին կողմէ, Յունուար 11-ին հանդէս կու գայ անսպասելի պաշտօնական յօդուածով՝ «Դէպի Չորրորդ Հանրապետութիւն», ուր կը շեշտէ Չորրորդ Հանրապետութեան անհրաժեշտութիւնը. «1994թ. մենք ազատագրեցինք Արցախը, եւ ընդհուպ մինչեւ 2020թ. Սեպտեմբերի 27-ը մեզ մօտ չկար Արցախի քաղաքական ապագայի վերաբերեալ յստակ տեսլական: Գոյութիւն ունէր սոսկ դիւանագիտական ճանապարհով նոր պատերազմ Թոյլ չտալու տակտիկա, որն ի սկզբանէ դատապարտուած էր: Մեր հակառակորդը քսան տարի շարունակ պնդում էր, որ Թոյլ չի տալու Կովկասում երկրորդ հայկական պետութեան ստեղծում, ձեռք էր բերում ժամանակակից զէնքեր, զբաղւում ակտիւ միջազգային լոբբինգով, իր ազդեցութեան ցանցերն էր ստեղծում ամբողջ աշխարհով յանուն մէկ նպատակի: Յանուն ինչի՞: Հարցը հռետորական է, որովհետեւ պատասխանը պարզից էլ պարզ է»:

Այսինքն, պատերազմը անխուսափելի էր, իսկ պատասխանատուները բոլոր ղեկավարներն են՝ 1994-էն սկսեալ մինչեւ այսօր: Բոլորը պատասխանատու են՝ բացի իրմէ:

Կ'աւելցնէ. «Պատերազմի պատճառած համազգային ցնցումից ու պարտադիր անցումային փուլից յետոյ մենք պէտք է ձեռնարկենք նոր պետութեան կառուցումը, որը պայմանականօրէն այս յօդուածում անուանում ենք «Չորրորդ Հանրապետութիւն»»:

Կը շեշտէ. «Առայսօր բացթողումների պատճառները վերջին երեք տասնամեակների ընթացքում կուտակուած եւ չլուծուած խոր արմատական խնդիրների հետեւանքն են»:

Իր խօսքէն կը հասկնանք, որ Երրորդ Հանրապետութեան հիմքերը խախուտ էին եւ կը շարունակեն մնալ այդպէս: Բայց չէ՞ որ նախագահը իր սեփական կամեցողութեամբ ուզեց մաս կազմել այս խախուտ երկիրին: Քանիցս դարձաւ խախուտ երկիրին դիւանագիտական ներկայացուցիչը Անգլիոյ մէջ՝ առանց փափաք ունենալու դիմադրել խախուտութիւնը, 2018-ին դարձաւ խախուտ պետութեան նախագահը՝ Սերժ Սարգսեանի օրհնութեամբ, իսկ յետյեղափոխական շրջանին, իբրեւ նախայեղափոխական դէմք չտուաւ իր հրաժարականը, այլ շարունակեց մնալ խախուտ երկիրին նախագահը: Ուրեմն, 30 տարի եղած է խախուտ երկիրի կազմական (օրկանիք) հնազանդ բաղկացուցիչը, որմէ օգտուած է արտասահմանի մէջ կուտակելու իր հարստութիւնը: Հիմա կ'ուզէ ինքնաներկայանալ իբրեւ այդ խախուտութենէն դուրս մնացած պետական գործիչ: Ինք պատասխանատու չէ այդ խախուտութեան: Ուրիշներն են:

**Անգլիական բուժում**

Այս տարուայ Յունուարի սկիզբ կը յայտարարուի՝ որ Սարգսեան վարակուած է քորոնաժահրի նոր, վտանգաւոր տեսակով: Հազիւ կը նշուի՝ որ բուժումի համար մեկնած է Անգլիա, քանի որ շատ անյարմար կացութիւն է՝ երբ նախագահ մը մեկնի արտասահման բուժուելու համար, արհամարհելով իր իսկ ղեկավարած երկիրին բժշկական կարողութիւնը, արհամարհելով ամբողջ ժողովուրդ մը՝ որ կարողութիւն չունի բուժումի համար ճամբորդել արտասահման:

**Օնիկ Գասպարեան**

Ջյաջողելով ծաւալային համախմբում կազմակերպել իր շուրջ, վերջին միջանձնական հնարագիտութիւն մը բաւական զբաղցուց հանրութիւնը:

Փետրուար 25-ի առաւօտեան Զինուած Ուժերու գլխաւոր շտաբը կը հրապարակէ յայտարարութիւն՝ ուր կը պահանջէ վարչապետի եւ կառավարութեան հրաժարականը: Ասիկա համարելով յեղաշրջումի փորձ, Փաշինեան նոյն օրը, ըստ օրինական ընթացակարգին, նախագահին կը ներկայացնէ գլխաւոր շտաբի պետ Օնիկ Գասպարեանի պաշտօնէն ազատելու առաջարկութիւն: Փետրուար 27-ին, նախագահը առարկութիւններով ետ կը ղրկէ պաշտօնանկ ընելու հրամանագիրը, ըսելով՝ որ «այս որոշումը ամենեւին չի նպաստում ստեղծուած իրավիճակի հանգուցալուծմանը»: Նոյն օրը, վարչապետը միջնորդութիւնը կրկին կ'ուղարկէ նախագահին:

Մարտ 1-ին Փաշինեան կ'երթայ Սարգսեանի մօտ, առողջութիւնը հարցնելու պատրուակով: Ի՞նչ կ'անցնի կը դառնայ այս հանդիպումին, կը մնայ չբացայայտուած:

Մարտ 2-ին նախագահը կը յայտարարէ՝ որ որոշած է հրամանագիրը ուղարկել Սահմանադրական Դատարան: Ասիկա Մարտ 1-ի հանդիպումի ձախողութեա՞ն թէ փոխադարձ համաձայնութեան արդիւնք էր: Կ'ենթադրեմ՝ վերջինը:

Մարտ 10-ին, հաստատելով հրամանագիրը, զայն կը ղրկէ ՍԴ եւ վերջինս կ'արձանագրէ անոր ընդունումը: Նոյն օրը Օնիկ Գասպարեան կը դիմէ վարչական դատարան, վիճարկելու իր պաշտօնանկութիւնը:

Մարտ 13-ին կրկին հանդիպում Փաշինեանի հետ, դարձեալ մեզի չբացայայտուած օրակարգով:

Մարտ 18-ին դատարանը միջանկեալ որոշում կը կայացնէ՝ թէ Գասպարեան Գլխաւոր Շտաբի պետ է:

Ապրիլ 2-ին Փաշինեանի փաստաբանը կը միջնորդէ վերացնելու Գասպարեանը՝ իբրեւ Գլխաւոր Շտաբի պետ մնալու դատարանի որոշումը: Դատարանը կը մերժէ միջնորդութիւնը:

Մինչ այդ կառավարութիւնը կը յայտարարէ՝ որ օրէնքի իրաւական ուժով Գասպարեան արդէն պաշտօնանկ եղած է, քանի որ կը բաւէ նախագահի հաստատումը: Նոր պետ կը նշանակուի Արտակ Դաւթեան, որ արդէն ստանձնած է աշխատանքը: Պաշտպանութեան Նախարարութեան կայքէջը արդէն տեղադրած է Դաւթեանի անունը իբրեւ շտաբի պետ:

Դատավարութիւնը կը շարունակուի:

Կարծէք ժողովուրդը ապրուստի մտահոգութիւններ չունի, չկան աղքատներ եւ կարօտեալներ, իսկ Ղարաբաղի աղէտէն տուժողներ գոյութիւն չունին բնաւ:

Ամէն բան լաւ է: Միայն Օնիկ Գասպարեանը լաւ չէ:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1890 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ԱՊՐԻԼ 2021 — *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դճկ.* — عدد رقم ١٨٩٠ الخميس ٢٢ أبريل ٢٠٢١


## ՍՓԻՒՌՔԻ ՄԵԾ ԲԱԺԱՆՈՒՄԸ

### ԷՐԻԿ ՅԱԿՈԲԵԱՆ

Անգլերէնէ թարգմանեց՝ Ա.

Ինչպէս աշխարհի հասարակութիւններուն մեծամասնութիւնը, հայկական սփիւռքը կը ձեւափոխուի այնպիսի եղանակներով՝ որոնց նմանը չէր տեսած մէկ դար շարունակ, եւ որոշ ձեւերով աներեւակայելի ընդամէնը քանի մը տարի առաջ:

Այս ձեւափոխութիւնները դեռ վերջերս հրահրում ստացան Արցախի 2020-ի պատերազմի Հայաստանի պարտութենէն ետք: Ինչքան որ բաժանումները անհաճոյ ըլլան, պէտք է զանոնք ընդունիլ իբրեւ առողջ հասարակութեան նշան՝ որոնք մարտահրաւէր կը կարդան սփիւռքի հիմնական հասկացողութիւններուն եւ կը նշանաւորեն 21-րդ դարուն հայ ըլլալու նշանակութեան նոր մտայղացումի եւ հասկացողութեան երկունքը:

Մինչ շատեր կրնան առարկել՝ որ ուրուագծուած բաժանումները բնոյթով պարզապէս քաղաքական են, իրականութեան մէջ անոնք ցուցիչներն են շատ աւելի ընդարձակ մշակութային բաժանումի՝ կապուած սփիւռքի մէջ հայ ըլլալու նշանակութեան ընդունումի կամ մերժումի նոր մտայղացումի հետ: Այս մշակութային բաժանումները կը հանդիսանան նաեւ այն դիտակները՝ որոնց ընդմէջէն սփիւռքը կը դիտէ ներկայ հայկական քաղաքական պայքարը:

Այսօր, ամբողջ աշխարհի ամենէն հետեւողական միտումն է իշխանութեան բոլոր ձեւերու վիճարկութիւնը: Ասիկա կ՚ընդգրկէ կրօնական հիմնարկները, քաղաքական կուսակցութիւնները, մշակութային կազմակերպութիւնները, ռազմականութիւնը, մեծ պիզնէսը եւ «աւանդական» ընտանիքի կառուցուածքները: Բազմաթիւ պատճառներ կան ասոր համար, բայց հիմնական մղումը այն է՝ որ մեծ թիւով մարդիկ, մասնաւորապէս ողջ աշխարհի երիտասարդ սերունդները, եկած են այն համոզումին՝ որ այս աւանդական հիմնարկները չունին մեր ժամանակակից աշխարհի ճգնաժամը դիմագրաւելու պատասխանները: Շատեր իրապէս կը տեսնեն՝ որ իշխանութեան այս աւանդական աղբիւրները դաւաճանած են ներկայ երիտասարդ սերունդը:

Արեւմտեան սփիւռքի պարագային, երիտասարդ սերունդէն շատեր՝ իրենց ոչ-հայ համախմբումներուն նման, հասկցան որ իրենք նուազ տնտեսական ապահովութիւն ու հեռանկարներ պիտի ունենան քան ծնողական սերունդը: Իրենց շուրջը կը նկատեն իշխանական համակարգներուն անձեռնհասութիւնն ու անպիտանութիւնը, վերջին ապացոյցներէն մէկը ըլլալով արեւմտեան գրեթէ բոլոր երկիրներու աղիտալի հակազդեցութիւնը Քովիտի ճգնաժամին: Աւանդական առաջնորդութիւնը կ՚ընկալուի իբրեւ անկարող կամ անկամեցող առընչուելու կործանիչ մարտահրաւէրներուն հետ, ինչպէս՝ կլիմայի փոփոխութիւնը, զանգուածային գաղթը, կրթական համակարգներու ձախողութիւնը եւ միջին դասակարգի աշխատանքներու պակասը:

Այս մեծ ձեւափոխութիւնը հասաւ ողջ աշխարհի հայկական համայնքներուն առաջնադուռը, յատկապէս Արեւմուտքի մէջ, ուր մարդիկ կը վայելեն աւելի լայն քաղաքական ազատութիւններ: Քաղաքականապէս աշխոյժ սփիւռքահայ երիտասարդ սերունդը կը տեսնէ՝ որ մեր աւանդական հիմնարկներէն ոչ մէկը կը խօսի իր համար կամ կարեկից է իր կարիքներուն եւ գաղափարներուն:

Այս անջատումը, արդարեւ, չի նշանակեր մտահոգուած չըլլալ իր համայնքով կամ Հայաստանի դէպքերով: Ան հայ ըլլալը կը տեսնէ իբրեւ իրաւունքներու աւելի ընդարձակ պայքարի մաս եւ համակեցական է ողջ աշխարհի այլ տուժող խումբերու հետ: Կը տեսնէ հայերը իբրեւ պատմութեան խաչ բարձրացած ժողովուրդներէն մէկը եւ ոչ իբրեւ պատահմամբ աշխարհի սխալ մասը ապրող եւրոպացիներ: Գաղափարախօսական առումով, ինքզինքը շատ աւելի կը նոյնացնէ Մոնթէ Մելքոնեանի հայկականութեամբ համեմուած միջազգայնականութեան հետ քան Գարեգին Նժդեհի արիւնի եւ հողի ազգայնականութեան:

Զարմանալի չէ, որ յառաջդիմական երիտասարդ սփիւռքահայութիւնը 2018-ի յեղափոխութեան ամենաուժեղ յենակէտն էր արտասահմանի մէջ, այն ժամանակ՝ երբ աւանդական սփիւռքի կազմակերպութիւնները զբաղած էին փրկելու հին համակարգը, մինչեւ անխուսափելի դարձաւ անոր աւարտը:

Աննկատ մնաց այն փաստը՝ որ Միացեալ Նահանգներու մէջ անցեալ տարուայ ամառը տեղի ունեցած հակա-ոստիկանական ապստամբութեան, երիտասարդ հայեր աշխուժօրէն կը գտնուէին թէ՛ Սեւամորթներուն Կեանքը Նշանակութիւն Ունի (Black Lives Matter) ցոյցերուն եւ թէ՛ Քովիտի շրջանի Ջնջէ Վարձքը (Cancel the Rent) շարժումներուն առաջնագիծերը, այն ժամանակ՝ երբ հին սերունդները ինքզինքնին կը նոյնացնէին պայքարներու միւս կողմերուն հետ:

Այն ինչ որ անցեալ սերունդներուն համար կը դիտուէր իբրեւ սփիւռքի հակասութիւն, այժմ կը հանդիսանայ դիտակը որուն միջոցով երիտասարդ սերունդները կ՚ընկալեն իրենց սեփական ինքնութիւնը իբրեւ հայեր:

Այս սերունդային բաժանումին դէմ Սփիւռքի առաւել աւանդապէս տրամադրուած հատուածին կատարած դիմադրութիւնը եղաւ շատ բիրտ: Աւանդապաշտները ուղիղ կերպով նոր սերունդը եւ անոր յառաջադէմ գաղափարները կը տեսնեն իբրեւ գոյաբանական սպառնալիք հայ ըլլալու իմաստի աւանդական յղացումներուն:

Նախքան պատերազմը, այս հակազդեցութիւնը մարմնաւորուեցաւ Փաշինեանի կառավարութեան ընկալեալ արեւմտեան ոճով լիպերալիզմին դէմ կատարուած յարձակումներու կամ գանգատներու միջոցով, երբ ան աջակից դարձաւ կիներու իրաւունքներուն եւ հանդուրժողականութիւն ցուցաբերեց ԼԳԲԴ (LGBT) հայերուն նկատմամբ: Իրականութեան մէջ, այս դիրքորոշումները մեծապէս չափազանցուած էին: Անկախ ասկէ, աւանդապէս տրամադրուած հայերը այս գաղափարները դիտեցին իբրեւ հակահայկական, որոնք առաջ մղուած են օտար հովանաւորութեամբ գործող հասարակական կազմակերպութիւններուն

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ԵՐԿՈՒ ՀԱՅԵՐ ՓԱՐԱՒՈՆՆԵՐՈՒ ԹԱՓՕՐԻՆ

Ապրիլ 3-ին Գահիրէի մէջ տեղի ունեցաւ *Փարաւոններու ոսկեայ թափօրը* հրապարակային իրադարձութիւնը, որուն ընթացքին Թահրիրի Եգիպտական Թանգարանի 22 մումիաներ հանդիսաւոր արարողութեամբ փոխադրուեցան Ֆուսթաթի նորակառոյց Եգիպտական Քաղաքակրթութեան Ազգային Թանգարանը, լրատուային եւ հասարակական ցանցերու առաւելագոյն ցուցադրութեան տակ:



Միրալ Մահինեան կ՚առաջնորդէ փարաւոնուհիներու թափօրը



Քարիմ Մխտիկեան

Փարաւոնուհիներու թափօրը կ՚առաջնորդէր Միրալ Մահինեան: Մահինեան՝ Միրալ Միշէլ անունով, իբրեւ դերասանուհի մասնակցած է եգիպտական երկու ֆիլմերու՝ *Ալ-Քերտ պըլիթքալլէմ* (Կը խօսի կապիկը) (2017) եւ *Քեսսաթ հուպպ* (Սիրոյ պատմութիւն) (2019), ինչպէս նաեւ երկու սերիալներու՝ *Քալապշ* (2017) եւ *Լըլ-հուպպ ֆորսա ախիրա* (Սիրոյ վերջին հնարաւորութիւնը) (2018):

Երեք մեծ ընկերութիւններ մասնակցեցան յարդարանքի (decor) կոթողային աշխատանքներուն, որոնցմէ մէկն էր Alchemy Design Studio, որուն հիմնադիրն ու Գլխաւոր Գործադիր Տնօրէնն (CEO) է ճարտարապետ Քարիմ Մխտիկեան: Alchemy կը հանդիսանայ Եգիպտոսի առաջնակարգ ճարտարապետական նախագծող սթուտիոներէն մէկը: Մխտիկեան *արուեստագէտ* ճարտարապետ է՝ խոր գեղարուեստական մտածելակերպով:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԸ ՉԻ ՆԵՆԳԱՓՈԽԵԼ ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

### ԱՆԻ ԱՒԵՏԻՍԵԱՆ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Փետրուարի 25-ին Հանրապետութեան Հրապարակում յայտարարեց, որ Հայրենիքի Փրկութեան Շարժման վարչապետի թեկնածու Վազգէն Մանուկեանն ասել է, թէ Արցախում պատերազմի ընթացքում զանգել եւ կոչ է արել բանակին իշխանութիւնը վերցնել իր ձեռքը:

Մասնաւորապէս, խօսելով դաւաճան լինելու վերաբերեալ իրեն ուղղուած մեղադրանքների մասին, Փաշինեանը նշել է. «17 կուսակցութիւն կոչուած ֆորմատի այսպէս կոչուած վարչապետի թեկնածուն ասում է՝ ես դեռ Հոկտեմբերին զանգում էի բանակին, ասում էի՝ իշխանութիւնը վերցրէք, իշխանութիւնը վերցրէք: Նրանք անընդհատ բանակին կոչ են արել կռուել ոչ թէ Թուրքի դէմ, այլ կոչ են արել կռուել սեփական ժողովրդի դէմ: Սա է տեղի ունեցել»:

Վարչապետի ելոյթից ժամեր անց Հայրենիքի Փրկութեան Շարժումը յայտարարութիւն տարածեց՝ պնդելով, որ Փաշինեանը «բացայայտ ձեւով նենգափոխել է Վազգէն Մանուկեանի՝ 2020 թ. Հոկտեմբերի 27-ին արուած յայտարարութեան նպատակն ու բովանդակութիւնը»:

Տարածուած յայտարարութիւնում վերահրապարակուել էր Վազգէն Մանուկեանի՝ Հոկտեմբերի 27-ին արուած յայտարարութիւնը, որում նախկին վարչապետը գրել էր, որ կառավարութիւնը պէտք է հրաժարական տայ՝ բանակին յանձնելով ողջ իշխանութիւնը:

↳ 3

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ (1906-1910)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

15. «Այս հայը […] ունի թենորի ձայն մը՝ որուն արեւելեան թէմպրը բնաւ զուրկ չէ գրաւչութենէ: Կը փափաքէինք որ երգէր *Désert*-ը, կամ պարզապէս մինաըէի մը բարձրութենէն արձակէր մուէզզինին կանչը» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Pierre Lalo, ‘La musique’, *Le Temps*, 14 juillet 1909, quarante-neuvième année, no. 17549, p. 3):

16. «Հրապուրիչ թուրք մը հաճելի ձայնով, բայց բաւական տարաշխարհիկ արտասանութեամբ: Երբեմն, բացարձակապէս ոչ մէկ բան կը հասկնանք, իսկ Վերթէրի տեսարանը վատ կարգադրուած է՝ կը խաղայ բոլոր կարելիութիւններով եւ ասիկա կը յիշեցնէ հնդիկ փաքիրներու որոշ վարժութիւնները» [Տեսարան *Werther*-էն] (Marguerite Casalonga, ‘Au Conservatoire: concours d’opéra-comique’, *Com dia illustré*, 1er août 1909, 1re année, no. 15, p. 426):

17. «Քարամէլի նման թուխ եւ քաղցրաւուն […]: Այս երիտասարդ թուրքը […]» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Edouard Helsey, ‘Au Conservatoire: avant les concours’, *Gil Blas,* 1er juillet 1909, 30e année, no. 10832, p. 3):

18. «Աւելի ու աւելի կը սիրեմ Պր. Շահ-Մուրատեանի ոսկեզօծ ձայնը, ան կը յիշեցնէ քայիքի վրայ անցուցած հեռաւոր գիշերները Պոսֆորի վրայ» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Reynaldo Hahn, ‘Les concours du Conservatoire’, *Le Journal,* 11 juillet 1909, dix-huitième année, no. 6132, p. 2):

19. «Ծագումով արաբ, այս երիտասարդ արուեստագէտը երբեմն կը սայթաքի մեր ձայնաւորներուն մէջ եւ զանոնք կ’աղաւաղէ՝ մեզի յիշեցնելով Ռովիկոյի պտուտականները (Les tournants Rovigo) եւ Պլիտայի Զէնքի Հրապարակը (Place d’armes)» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Jean Drault, ‘Au Conservatoire’, *La Libre parole,* 11 juillet 1909, dix-huitième année, no. 6290, p. 2):

20. «Սուրիացի թենոր՝ Շահ-Մուրատեան» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Nicolet, ‘Conservatoire: concours d’opéra’, *Le Gaulois,* 11 juillet 1909, 44e année, no. 11593, p. 3):

21. «Իր լեզուական հնչումն ու տարաշխարհիկ կերպարանքը կրնան գրաւիչ հանդիսանալ շատ մը մարդոց» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Intérim, ‘Concours du Conservatoire’, *La Lanterne,* 12 juillet 1909, trente-deuxième année, no. 11,767, p. 3):

22. «[Պ]էտք է փոխէ իր անունը, որ աւելի նշմարելի կը դարձնէ իր լեզուական հնչումը: Կը գնահատենք որոշ նրբութիւններ, բայց այս երիտասարդ թուրքը ոչինչ կը հասկնայ իր արտասանածէն» [*Lucie de lammermoor,* ‘Bientôt l’herbe des champs croîtra’] (Marguerite Casalonga, ‘Au Conservatoire: concours d’opéra’, *Com dia illustré,* 1er août 1909, 1re année, no. 15, pp. 423-424):

23. «Պր. Շահ-Մուրատեան արեւելեան երգիչ մըն է: Անկասկած, այս է պատճառը՝ որ մենք առիթ ունինք զինք գնահատելու Լոհենկրինի եւ Վերթէրի անպայմանօրէն ճերմակ եւ չէկ տարածութիւններուն մէջէն:

«Աւելի նպաստաւոր պիտի ըլլայ Պր. Շահ-Մուրատեանին սահմանափակուիլ միայն օփերայի եւ օփերա-քոմիքի այն հերոսներով՝ որոնք իրենց սիրային ուժը կ’ընդունին ասիական կամ ափրիկեան արկածախնդրութիւններէ: Կրնաք առարկել՝ որ օփերայի լիպրեթթօն քիչ մը կը նմանի Բաբելոնի աշտարակին, ուր բոլոր էթնիքական խկութիւնները կը խառնուին, կ’անհետանան, այն աստիճան՝ որ դերասաններուն մէջ ճշդիւ թենորէ, պարիթոնէ, ռամաթիք կամ թեթեւ սոփրանոյէ, մեծծօ-սոփրանոյէ կամ քոնթրալթոյէ անդին կարելի է ոչ մէկ բան տեսնել: Բայց եթէ լիպրեթթիսթներուն ստեղծած *հոգեբանութիւնը* յաճախ կը ներկայացնէ (ինչ որ ալ ըլլայ այն վայրը՝ ուր կը հաճի լիպրեթթիսթներուն երեւակայութիւնները) փարիզեան ամենէն ընտրեալ անձը, եթէ, օրինակ, Սելիքայի [*L’Africaine* օփերայի հերոսուհին] խօսած լեզուն կը բխի նոյն անձկութենէն որ կը կազմէ Վասքօ տը Կամայի [*L’Africaine* օփերայի հերոսը] պերճախօսութիւնը, որոնք, ըստ Պր. Սքրիպի [*L’Africaine* օփերայի լիպրեթթիսթը], հնդկաստանը յայտնագործելու համար պէտք ունին ընդամէնը սիրախաղել գունաւոր ստրուկ մը, եթէ յաճախ ոչ մէկ գրական կարեւորութիւն ունին երգիչներուն պատմածները, միեւնոյնն է, կը գտնուի երաժշտութիւնը, որ յաճախ իր մէջ կ’ընդունի հեռաւոր ֆոլքլորները, կը գտնուին բեմայարդարութիւնը, զգեստները՝ որոնք երաժշտութիւնը կը դարձնեն ինքնօրինակ:

«Արդ, վստահաբար Պր. Շահ-Մուրատեան կերպաւորումի եւ ձայնական առումներով առաւել հանդիստ պիտի ըլլայ՝ եթէ թատրոնը իրեն համար տեղադրէ արմաւենիներ կամ հսկայ փշածառեր, կամ իր առջեւ կանգնեցնէ սպիտակ մինարէ մը, կամ, աւելին, իր փաթթոցաւոր գլխապատի գրաւչութեան շուրջ շարժէ սիրահար մարոքուհիներու խումբեր: *La Flûte enchantée, Lalla Roukh, La Statue, Aïda, Les Pêcheurs de perles,* եւ նոյնիսկ *Samson,* ինչպէս նաեւ ուրիշ գործեր, պիտի ըլլան այն հաւաստիքը՝ որ երբեք պիտի չտեղափոխէ Պր. Շահ-Մուրատեանին ինքնատպութիւնը: Եթէ ես պատիւն ունենայի ըլլալու իր ուսուցիչը, կը յանձնարարէի Շահ-Մուրատեանին օփերայի համար մրցիլ Պր. Պուրկօ-Տիւքուտրէի *Thamara*-ի սքանչելի երկրորդ արարին մէջ: Վերջինս ինքզինքը պիտի հարկադրէր՝ իր բովանդակած բոլոր յատկանիշներով:

«Արդէն գուշակեցիք, որ Պր. Շահ-Մուրատեան թխամազ է, աչքերը նուաղուն են: […] Իր ձայնը՝ ընդարձակ եւ գեղեցիկ, կը բովանդակէ այն արեւը՝ որ այնքան մեծահոգաբար կը չօշափէ իր մորթը» [*Les Abencérages,* ‘Suspendez a ces murs mes armes’] (Georges Pioch, ‘Les élèves admis aux concours publics du Conservatoire’, *Com dia,* 15 juin 1910, 4e année, no. 989, p. 2):

24. «Երկչոտ, քաղցր եւ կրքոտ՝ ան հրապուրիչ ձայնով կը շշնջայ երգերը. աչքերուն մէջ կը կրէ Արեւելքը, թէեւ գեղեցիկ ընկերուհիները չեն տարուած իր նուաղեալ նայուածքներով: Ինչքա՜ն մասնայատուկ եւ անկատար գաղափար տրուած է իրենց Կոստանդնուպոլսոյ կեանքին մասին» [*Les Abencérages,* ‘Suspendez a ces murs mes armes’] (Auguste Gard, ‘Nos espoirs’, *Gil Blas,* 26 juin 1910, 31e année, no. 12187, p. 2):

25. «Պր. Շահ-Մուրատեան մեծ յառաջդիմութիւն կատարած է եւ պահպանած արեւելեան ցոլքով սքանչելի ձայնը» [*Les Abencérages,* ‘Suspendez a ces murs mes armes’] (Reynaldo Hahn, ‘Concours du Consevatoire’, *Le Journal,* 28 juin 1910, no. 6484, p. 5):

26. «Այս երիտասարդ պարսիկը ունի հաստատակամութիւն եւ կամք» [*Les Abencérages,* ‘Suspendez a ces murs mes armes’] (Nicolet, ‘Conservatoire’, *Le Gaulois,* 28 juin 1910, 45e année, no. 11945, p. 4):

27. «Իբրեւ հայ, Պր. Շահ-Մուրատեան ինծի կը թուի լաւ ապագայ ունենալ իր հայրենիքին մէջ, ոչ որովհետեւ իր ձայնը չի հնչեր, այլ այնտեղ, ի տարբերութիւն Փարիզէն, զինք կը հասկնան» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (Auguste Germain, ‘Les concours du Conservatoire’, *L’Écho de Paris,* 5 juillet 1910, 27e année, no. 9467, p. 4):

28. «[Ա]սիացի թենոր» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (Camille de Sainte-Croix, ‘Le théâtre’, *La Petite république,* 5 juillet 1910, trente-cinquième année, no. 12499, p. 2):

29. «Աստուած հեռու պահէ իր թեքնիքական արժանիքները ժխտելէ, բայց ի՞նչ եղան այս արեւելեան ձայնի ջերմ երանգն ու նուրբ թէմպրը, որ բոլորխ հմայեց՝ հակառակ իր անփորձութեան: Հիմա անփորձութիւնը անյայտացաւ, գիտութիւնը հասաւ եւ ջերմութիւնը անէացաւ» [*Les Abencérages,* ‘Suspendez a ces murs mes armes’] (H. Gauthier-Villars, ‘Les concours du Conservatoire’, *Com dia illustré,* 15 juillet 1910, 2e année, no. 20, p. 588):

30. «Պր. Շահ-Մուրատեան երիտասարդ յամառ արաբ մըն է, որ անզուսպ քաջութեամբ կը պայքարի ահաւոր արտասանութեան դէմ» [Տեսարան *L’Attaque du Moulin*-էն] (Jean Drault, ‘Au Conservatoire’, *La Libre parole,* 5 juillet 1910, dix-neuvième année, no. 6649, p. 2):

31. «Պր. Շահ-Մուրատեան հայ մըն է. արեւելք- ☞ 4

## ՌՈՒՍ ԽԱՂԱՂԱՊԱՀՆԵՐԸ ԽՈՉԸՆԴՈՏՈՒՄ ԵՆ ՕՏԱՐԵՐԿՐԵԱՑ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻ ՄՈՒՏՔԸ ԼՂ. ԼՐԱԳՐՈՂՆԵՐ ԱՌԱՆՑ ՍԱՀՄԱՆՆԵՐԻԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

ԷՄՄԱ ՋՕԲԱՆԵԱՆ

Լրագրողներ Առանց Սահմանների կազմակերպութիւնը կոչ է անում Ռուսաստանին, որի խաղաղապահները վերահսկում են Լեռնային Ղարաբաղ մուտքը անցեալ աշնանը տեղի ունեցած պատերազմից յետոյ, դադարեցնել օտարերկրեայ լրագրողների մուտքի մերժումը: Կազմակերպութիւնը նաեւ կոչ է անում ՄԱԿ-ին ու Եւրոպայի խորհրդին ապահովել տեղեկատուութեան իրաւունքի յարգումը: Լրագրողներ Առանց Սահմաններիի յայտարարութեան մէջ ասւում է, որ պատերազմից յետոյ լրագրողական գործունէութեան նկատմամբ վերահսկողութիւնն ուժեղացուել է: Մասնաւորապէս, Փետրուարին ամենաքիչը 10 օտարերկրեայ լրագրողի մուտքի թոյլտուութիւն են մերժել ռուս խաղաղապահները, որոնք վերահսկում են, այսպէս կոչուած, Լաչինի միջանցքը: Նրանց թւում է ֆրանսիացի լուսանկարիչ Քրիստոֆեր Պետիտ-Թեսսոնը, որը կազմակերպութեանն ասել է. «Յունուարին ես հասցրի մի քանի օր անցկացնել, որից յետոյ կանոնները փոխուեցին»: *Enquête exclusive*-ի լրագրող Վենսան Պրադոն էլ մի քանի անգամ ռուսական կողմից մուտքի թոյլտուութեան մերժում է ստացել: Նմանատիպ մերժումներ՝ առանց որեւէ պատճառի, ստացել են նաեւ կանադացի լրագրող Նիլ Հաուերը, որն աշխատում է *CNN*-ի ու *The Guardian*-ի համար, բրիտանացի լրագրող Մարկ Սթրաթոնը, որն իր անյաջող փորձի մասին պատմել է *BBC*-ի եթերում: Լուսանկարիչ Քիրան Ռիդլին էլ այցելելու թոյլտուութիւն ստացել է, սակայն Ապրիլի 4-ին ռուսական անցակէտում նրան յետ են դարձրել: *France 24* հեռուստաընկերութեան լրագրողներ Ջոնաթան Ուոլշն ու Մոհամեդ Ֆարհաթը այն եզակիների թւում են եղել, որոնց յաջողուել է մուտք գործել Մարտի սկզբին, սակայն ոչ առանց դժուարութիւնների, տեղում առկայ կապերի շնորհիւ: «Աւելի շատ օտարերկրեայ լրագրողներ ռուս զինուորների կողմից համակարգուած մերժում են ստանում այդ տարածք մուտք գործելու», - ասել է Լրագրողներ Առանց Սահմանների կազմակերպութեան Արեւելեան Եւրոպայի ու Կենտրոնական Ասիայի հարցերով բաժնի տնօրէն Ժաննա Կաւելիէն: Նա նշել է, որ խոչընդոտման համար օբիեկտիւ հիմքեր չկան, եւ որ լրագրողները սպառնալիք չեն ներկայացնում տարածքի անվտանգութեան համար: «Առանց միջազգային լրատուամիջոցների Լեռնային Ղարաբաղը կարող է վերածուել լուրերի ու տեղեկատուութեան «սեւ խոռոչի»: Մենք կոչ ենք անում ռուսական իշխանութիւններին թոյլատրել լրագրողներին՝ անկախ նրանց ազգութիւնից, մուտք գործել: Մենք կոչ ենք անում ՄԱԿ-ին, Եւրոպայի խորհրդին ապահովել տեղեկատուութեան ազատութեան իրաւունքը, որն առաւել կարեւոր է կոնֆլիկտային ու յետկոնֆլիկտային իրավիճակներում», - ասել է Կաւելիէն: Կազմակերպութեան յայտարարութեան մէջ նաեւ նշւում է, որ 2020 թ.-ի Նոյեմբերի 9-ի հրադադարի հաստատման յայտարարութիւնը լրագրողների մուտքի մասին յատուկ դրոյթ չունի: Հաւատարմագրումը տրամադրւում է ԼՂ-ի՝ չճանաչուած Արցախի Հանրապետութեան հիւպատոսութեան կամ Հայաստանի ԱԳՆ-ի կողմից, բայց ռուս խաղաղապահներն են, որ թոյլատրում կամ արգելում են օտարազգի քաղաքացիների մուտքը, որոնց ծանուցում են իրենց այցի նախօրէին: Հայերն ու ռուսները կարող են այցելել իրենց անձնագրերով: Կազմակերպութիւնը նաեւ յայտնում է, որ Լեռնային Ղարաբաղի տարածք մուտքը արգելուած է նաեւ ադրբէջանական կողմից, որը ղեկավարում է աւտորիտար նախագահ Իլհամ Ալիեւը: Մասնաւորապէս, *France 24* ու *Arte* հեռուստաընկերութիւնները այնտեղ ուղարկել են իրենց նկարահանող խմբերին, որոնք, սակայն, չեն կարողացել ազատօրէն հաղորդումներ անել, քանի որ գտնուել են վերահսկողութեան տակ:

*Ֆակտոր տեղեկատուական կենտրոն*

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԸ ՉԻ ՆԵՆԳԱՓՈԽԵԼ ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

1

«Բանակը, իր ձեռքը վերցնելով ողջ իշխանութիւնը, պէտք է կազմի միասնական Պաշտպանութեան Կոմիտէ Արցախի հետ միասին՝ կազմակերպելով պատերազմական ներկայ իրավիճակին անհրաժեշտ միջոցառումները, ապահովելով վստահութիւն եւ գնալով բանակցութիւնների շահագրգիռ պետութիւնների, միջազգային կառոյցների հետ», - նշել էր Մանուկեանը:

Սակայն սա Մանուկեանի միակ յայտարարութիւնը չէր իշխանութիւնը բանակին յանձնելու վերաբերեալ:

2021 թուականի Յունուարի 26-ին Վազգէն Մանուկեանը՝ որպէս Հայրենիքի Փրկութեան Շարժման վարչապետի թեկնածու, հանդիպել էր Արարատի մարզի բնակիչներին, որտեղ բնակիչների հետ հարցուպատասխանի ժամանակ անդրադարձել էր նաեւ իր՝ Հոկտեմբերի 27-ին արուած յայտարարութեանը: Նա նշել էր, որ իր յայտարարութիւնից յետոյ հասարակութիւնը «յարձակուեց» իր վրայ, սակայն ինքը չի մեղադրում այդ մարդկանց, քանի որ հասարակութիւնը չէր իմանում, թէ ինչ է կատարւում բանակում:

«Իմ առաջարկութիւնն էր, որ զինուորականներն իրենց ձեռքը վերցնեն իշխանութիւնը, որովհետեւ նոյնանման դէպքերում միւս երկրներում, երբ որ զինուորականները տեսնում են, որ իրենց տանում են պարտութեան, զինուորականութեան վերնախաւը իշխանութիւնը վերցնում է իր ձեռքը: Ժամանակաւոր՝ 1 տարով, 2 տարով, 3 տարով, աւարտում է ամէն ինչ եւ նորից յանձնում է քաղա... Օրինակ, Թուրքիայում մի քանի անգամ է այդպէս եղել: Հայաստանում դա տեղի չունեցաւ», - ասել էր Մանուկեանը:

Սակայն ըստ Մանուկեանի՝ մարդիկ, որոնք կարող էին այդ քայլը անել, արդէն բանակից դուրս էին բերուած, իսկ մնացածի համարձակութիւնը եւ ազգային զգացմունքները «երեւի այդքան հզօր չէին»:

«Ես նոյնը պատերազմի ժամանակ հեռախօսի միջոցով միշտ կապւում էի Արցախի հետ, գեներալների հետ, ասում էի՝ վերցրէ՛ք իշխանութիւնը ձեր ձեռքը, մի՛ թողէք, որ Արայիկ Յարութիւնեանը էս սրա հրամանները կատարի եւ Արցախը կորցնի իր ինքնուրոյնութիւնը: Ցաւօք սրտի, դա չեղաւ», - յայտարարել էր Մանուկեանը:

Այսպիսով, Հայրենիքի Փրկութեան Շարժման հերքումն այն մասին, որ Փաշինեանը նենգափոխել է Մանուկեանի յայտարարութիւնը, սխալ է, քանի որ ընդդիմութեան վարչապետի թեկնածուն իսկապէս Յունուարին ասել էր, որ պատերազմի ընթացքում զանգել է գեներալների եւ կոչ արել իշխանութիւնը վերցնել:

*Փաստերի ստուգման հարթակ*




ԽՈՀԵՐ

# ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

**ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ**

**Պատերազմ եւ աղքատութիւն**

Շատ քիչ մարդիկ կան որոնք ազգայինը կ՚ուզեն կապել հասարակական դասակարգի հետ: Ընդհակառակը, շատերը ազգայինը կը շահագործեն եւ կը բանեցնեն՝ աղքատութիւնը քօղարկելու եւ անկարեւոր երեւոյթ դարձնելու համար:

Պատերազմը հայրենասիրութիւն է: Երբ կայ հայրենասիրութիւն՝ կը լռէ աղքատութիւնը:

Պատերազմի եւ աղքատութեան կապի մասին է որ կը խօսի Անդրէասեան՝ *Պատերազմ եւ աղքատութիւն* դասախօսութեան մէջ, որմէ լոկ երկու տեսագրուած հատուած տեղադրած է Սոցիոսկոպի կայքէջին վրայ(5):

Կ՚ըսէ՝ որ աղքատութիւնը ոչ միայն նիւթական միջոցներու սակաւութիւնն ու ծառայութիւններու անհասանելիութիւնն է, այլեւ սեփական ձայնի անկարեւորութեան դիտարկումը, մարդու խոցելիութիւնը հնարաւոր վտանգներու հանդէպ եւ անպաշտպանուածութիւնը այդ վտանգներէն: «Պատերազմը որպէս ռիսկ մեզ բոլորս է դարձնում աղքատ»:

Խօսելով պատերազմի եւ արդէն նիւթական աղքատութեան մասին, Անդրէասեան կարեւոր օրինակ մը կը բերէ 2016-ի ապրիլեան քառօրեային սպանուած հայ զինծառայողներուն տնտեսական (զուտ եկամտային) մակարդակէն: Ըստ վիճակագրութեան, սպանուածներու ընտանիքներուն 51.3%-ը աղքատ է, որոնցմէ 32.4%-ը՝ ծայրայեղ աղքատ: Ասիկա այն պարագային, երբ երկիրի աղքատութեան մակարդակը 25.7%է, իսկ ծայրայեղ աղքատներուն թիւը չի հասնիր 4%-ի: Ուրեմն, որքան շեղուած է ցուցանիշը՝ երբ կը տեսնենք թէ ովքեր են առաջնագիծը յայտնուած: Ըստ բնակիչներու թիւի յարաբերակցութեան, ամենամեծ թիւը կազմած են Կոտայքի, Արագածոտնի եւ Շիրակի մարզերէն ծառայութեան մեկնածները, իսկ Կոտայքն ու Շիրակը Հայաստանի ամենէն աղքատ մարզերն են:

Բացի այդ, զոհուածներու 30%-ին կրթութիւնը եղած է թերի միջնակարգ, այսինքն՝ չեն աւարտած դպրոցը: Այս ցուցանիշը անբնականօրէն մեծ է, քանի որ ամբողջ Հանրապետութեան մակարդակով բոլորը դպրոց կ՚երթան եւ կ՚աւարտեն: «Սա ցոյց է տալիս թէ ինչքան խոցելի ենք մենք եւ մինչեւ ուր է տանում աղքատութիւնը»:

**Պատերազմի ճշմարտութիւնը**

Պատերազմը կը ներկայացուի իբրեւ ճշմարտութիւն՝ որուն անունին տակ կ՚արդարացուի մարդու սպանութիւնը, քանի որ հակառակ կողմի մարդը դարձած է չմարդ: Պատերազմի ճշմարտութիւնը հարցականի դրուիլը կը ներկայացուի իբրեւ պարտուողականութիւն.

«Այն պրակտիկները, որ գործում են մեր եւ ադրբէջանական հասարակութիւններում՝ պատերազմի ճշմարտութեան պրակտիկներ են: Պատերազմը հանդէս է գալիս իբրեւ ճշմարտութեան մի մեծ քաղաքականութիւն, որում իւրաքանչիւր առանձին բաղադրիչ մի պտուտակ է այս ընդհանուր տրամաբանութեան մէջ: Մենք արտադրում ենք պատերազմն իբրեւ ճշմարտութիւն կրթական մակարդակում՝ թշնամու եւ վտանգներով լի աշխարհի պատկերը մեր երեխաների տեսադաշտը դարձնելով, մեդիադաշտում՝ նոյն տեսադաշտը լրատուութեան ու վերլուծութիւնների միջոցով փոխանցելով, տնտեսութեան եւ քաղաքական խոշոր խաղացողների միջոցով, որոնք դադարում են լինել միայն լոկալ ակտորներ՝ ներառելով նաեւ տրանսազգային սուբիեկտների եւ շահերի, ինչպէս նաեւ հանրային ցանկացած քննարկում աւարտելով բարձրագոյն ճշմարտութեամբ՝ հայրենասիրութեամբ ու այն դիմացինին, այսինքն ինչ դիմացին, տականք թշնամուն կզզացնելու միջոցով իրացնելը դիտելով դրա դրսեւորման իրական ձեւ: Այս պարագայում ցանկացած խօսք, որ դուրս է պատերազմն իբրեւ ճշմարտութիւն ներկայացնելու պրակտիկներից, դիտւում է ոչ ճշմարիտ՝ մշտապէս պարտուելով պրակտիկների արտադրութեան ուղղակի հետեւանք ու հետեւաբար եւ իսկապէս ճշմարիտ հանդիսացող պատերազմին: Այստեղ միշտ կան հերոսներ եւ հրէշներ, մարդիկ եւ չմարդիկ: Մարդիկ միշտ մենք ենք: Չմարդիկ միշտ նրանք են, ովքեր մեզ պարտադրել են պատերազմը: Մարդիկ միշտ խաղաղասէր են: Չմարդիկ՝ ռազմատենչ ու կռվարար: Չմարդ սպանելով մարդասպան չենք դառնում»(6):

Այս գործադրութիւնը՝ մենք մարդիկ, անոնք չմարդիկ, կ՚արմատաւորուի երեխայ տարիքէն սկսեալ, երեխաներուն մղելով յարձակողականութեան եւ բռնութեան, այլեւ յարձակողականութիւնն ու բռնութիւնը դարձնելով մտածելու եւ գործելու որակ: Վերջին պատերազմէն ետք, աշխարհին ցոյց տալու համար իր հայրենասիրութիւնը, սփիւռքահայ մամուլ մը համակիր անդամներու երեխաներուն գծել ու նկարել տուաւ պատերազմի նկարներ՝ ուր երեխաները, անգիտակից որեւէ բանէ, բայց հնազանդ իրենց տրուած հրահանգներուն, նկարած էին մարդ զինուորը՝ որ հերոսաբար կը կոտորէր չմարդ զինուորին եւ անպայման կը յաղթէր պատերազմը:

Ասոր աւելցնեմ անձնական փորձառութենէս դրուագ մը: 2-3 տարի առաջ էր, մինչ *Զահակիրի* միջոցով կը քննադատէի (եւ կը շարունակեմ քննադատել) թէ՛ Սփիւռքը եւ թէ՛ Հայաստանը, հայրենասէրներ զգուշացուցին՝ որ ես իրաւունք չունիմ քննադատելու, քանի որ հայրենասէր չեմ: Զգուշացնողներէն մէկը առարկեց՝ որ հայրենասէրը միայն այն է, որ իր նման ծառայած է Հայաստանի բանակին (ուրեմն, պատրաստ եղած է ամէն պահու սպաննել չմարդիկը): Միւսը առարկեց՝ որ իր ազգակիցը ապրիլեան քառօրեային եղած է սահմանին վրայ (ուրեմն, սպաննած չմարդիկը): Չմարդ սպաննած չըլլալս միջոց մըն էր երկուքին լռեցնելու քննադատութիւններս, ներքին հայկական կարգով ստեղծելով երկու խումբեր, իրենք՝ հայրենասէրներ, մնացածը՝ ոչ-հայրենասէրներ, խումբեր՝ որոնք մտացածին կերպով ստեղծուած են բացառապէս պատերազմի յետնախորքի վրայ:

**Սեռականութիւն**

Անդրէասեանի համախմբագրած *Սեռականութիւնը հայկական [համա]տեքստերում* (Սոցիոսկոպ, 2019) գիրքը փորձ մըն է վերացնելու հայկական իրականութեան մէջ սեռականութեան հանդէպ կիրարկուող լռութիւնը եւ անոր պատումը դուրս հանելու իշխանական ինքնահաճոյ սեփականութենէն եւ պարտադիր մեկուսացումէն, որ իր կարգին դուռ պիտի բանայ անոր տրուած յաւերժական մենիմաստութենէն անցնելու բազմիմաստութեան՝ կապուած կեանքի կենդանի փորձառութիւններուն հետ: «Ներածութիւն»-ին մէջ համախմբագիրները կու տան պատկերը.

«Մեր իրականութիւնում սեռականութեանն առնչուող դիսկուրսները լռեցուած են կամ շղարշուած, դրանք շօշափելն իսկ կա՛մ իշխանական արտօնութեան մաս է, կա՛մ լուսանցքային զանցառական մարմաջ: Սէրն ու սեռը, դրանց ըմբռնումների եւ դրսեւորումների ժամանակային փոփոխականութիւնը Հայաստանում դեռեւս մնում են նեղ շրջանակների հետաքրքրութեան եւ իմացութեան առարկայ այնինչ այս գիտելիքի կարիքը հասունացել է վաղուց:

«Գիտելիքի արտադրման եւ վերարտադրման հաստատուած ատեանները կենտրոնացուած եւ աստիճանակարգուած (հայր)իշխանութեան տրամաբանութեան ներքոյ շարունակում են արտաքսել սեռականութեան բազմազան աւանդոյթները: Շարունակում են խրախուսել հնապաշտական՝ իբր-յաւերժ եւ մենիշխան նահապետական եւ հետերոնորմատիւ աւանդոյթը, գործիքայնացնում այն կուսակցական շահերի համար՝ շրջանցելով դրա թէ՛ ներքին գաղափարաբանական հակասութիւնները, թէ՛ իրական կեանքին դրա անհամապատասխանութիւնը»(7):

Հակառակ որ սեռականութեան հարցերը ենթարկուած են յատուկ շրջանակներու չափանիշներուն, զանազան բնագաւառներու եւ բնագիրներու մէջ երբեմն յաջողած են ճեղքել սահմանները, նիւթ մատակարարելով ուսումնասիրողներուն.

«Ինչպէս բոլոր այլ մշակոյթներում, այնպէս էլ հայկական համատեքստում սեռականութեանն առնչուող հարցերը ենթարկուել ե՛ւ աւերեւոյթ, ե՛ւ աներեւոյթ շրջանակումների եւ նորմերի, աստուածաբանական մեկնաբանութիւնների եւ իրաւաքաղաքական կարգաւորումների: Սակայն առանձին դէպքերում դրանք յաջողել են գործնականում կամ տեքստերում ճեղքել սահմանափակումները եւ կարգաւորումները: Սեռականութիւնը, թէեւ ժամանակակից յղացք է, մարդկային կեանքի բոլոր շրջաններում վերապրուել է եւ վերաներկայացուել մշակութային տարբեր կերպերով եւ լեզուներով, յատկապէս՝ առասպելական, գրական, հրապարակախօսական, կրօնական եւ իրաւականնորմատիւային:

«Սրանով է պայմանաւորուած սեռականութեան սոցիալ-պատմական ուսումնասիրութիւններում մեր մեթոդաբանական մօտեցումը՝ դիտարկել այն իր յարափոփոխ ընթացքի մէջ, վեր հանել դրա սոցիալ-պատմական

4




## 3 ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ...

սահմանումները՝ իրաւաքաղաքական կարգերի, տեղի եւ ժամանակի տեքստերի եւ համատեքստի, ըմբռնումների եւ ձեւակերպման փորձերի հետազօտման միջոցով»(8):

Հեղինակները գործածած են փուքոյական եւ ֆեմինիսթական մօտեցումներ, «ընթերցողին ուղեկցելով դէպի հետերոնորմատիւ առնակենտրոն հասարակարգի խնդրականացում եւ դրա վերանայման ու փոփոխութեան հեռանկարներ»(9):

Անդրէասեանի յօդուածները ընթերցումներ են յատկապէս հայկական միջնադարեան բնագիրներու՝ Խորենացիի *Հայոց պատմութեան* «Տենչայր Սաթենիկ»-ը, միջնադարեան հայրէնները, Գրիգորիս Աղթամարցիի տաղերը, ինչպէս նաեւ Սայեաթ-Նովա, իւրաքանչիւրը դիտելով ժամանակի հասարակական, քաղաքական եւ տնտեսական յարաբերութիւններուն մէջ:

Այս բնագիրներուն ընդմէջէն կը դիտէ՝ թէ ինչպէս սեռականութեան քաղաքականութիւնը կը թիրախաւորէր իշխանութեան վտանգ ներկայացնող խումբերը, նշելով՝ որ երկար ժամանակ սեռականութեան խօսքը սեփականութիւնն էր Հայոց Առաքելական Եկեղեցիին:

Գալով հին բնագիրներու պատմական ու յետագայ մեկնաբանութիւններուն, անոնք ինքն ըստ ինքեան ինքնուրոյն բնագիրներ կարելի է համարել՝ մեկնաբանողներու սեռականութեան մօտեցումները բացայայտող:

Իսկ կնոջ մարմինն ու մարմնականութիւնը գործածուած են իբրեւ միջնադարեան աշխարհիկ ընդդիմութիւն եկեղեցիին հանդէպ, յատկապէս գուսանական հայրէններուն միջոցով:

**Այլ գաղափարներ**

Անդրէասեանի մեկնաբանած գաղափարները այլազան են:

- Ինքդ քեզ տեսնել՝ յատկապէս հեռաւոր թուացող երկիրներու կենսափորձի դիտարկութեան ընդմէջէն. «Համեմատութիւնը մեզ գիտելիք է տալիս: Մենք մեզ համեմատում ենք այլ երկրների հետ՝ հասկանալով տարբերութիւններն ու նմանութիւնները եւ դրանով իսկ ճանաչում ենք ոչ միայն ու ոչ այնքան նրանց, որքան ինքներս մեզ: Կան երկրներ, որոնք մենք սովոր ենք համարել մեզ նման: Օրինակ՝ յետխորհրդային երկրները, որ խորհրդային գիտափորձի նմանատիպ ժառանգութիւն ունեն: Այս տեսանկիւնից աւելի հետաքրքիր է ուսումնասիրել ակնկալիքների իմաստով հեռու երկրները: Այն երկրները, որոնք մենք երբեւէ հակուած չենք մեզ նման համարել»(10):

- Անկախութեան օրուայ առիթով ներկայացուցած է երեք նախագահներու յաջորդական խօսքերու տրամաբանութիւնը եւ փոփոխութիւնը, եզրակացնելով.

«Եթէ առաջին երկու նախագահների պարագայում խօսքը կոնկրէտ է իր բովանդակութեամբ, բարձրացուած հարցերի եւ հնչեցուած մտահոգութիւնների առումով (թէեւ էականօրէն տարբեր՝ հնչեցուած հարցերի կազմի տեսանկիւնից), ապա երրորդ նախագահի տեքստերն այս առումով միանգամայն այլ են. դրանք առասպելաբանութեանը յղող, հետեւաբար եւ յաւերժութեան ու չարադրութեան ոգով գրուած խօսք են»(11):

- Սասնայ Ծռերու 2016-ի ապստամբութիւնը մեկնաբանած է Ժագ Տերիտայի ապակառուցումի եղանակով(12):

- Խնդրականացուցած է արդարութեան գաղափարը՝ հանրային եւ իշխանական ընթերցումներով(13):

Եւ այլն:

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

5. «Ժաննա Անդրէասեան. Հատուած 1. Պատերազմ եւ աղքատութիւն», *Սոցիոսկոպ*, 29 Յունիս 2019, http://socioscope.am/archives/1720: «Ժաննա Անդրէասեան. Հատուած 2. Պատերազմի սկիզբը. մոռացուած տնտեսական կողմը», *Սոցիոսկոպ*, 29 Յունիս 2019, http://socioscope.am/archives/1728:

6. Ժաննա Անդրէասեան, «Պատերազմի ճշմարտութիւնը», *Սոցիոսկոպ*, 7 Ապրիլ 2016, http://socioscope.am/archives/704:

7. Ժաննա Անդրէասեան, Աննա Ժամկոչեան, Արփի Մանուսեան, *Սեռականութիւնը հայկական [համա]տեքստերում*, Երեւան, Սոցիոսկոպ, 2019, էջ 3:

8. Անդ, էջ 4:

9. Անդ, էջ 8:

10. Ժաննա Անդրէասեան, «Ե՞րբ է պէտք փոխել սահմանադրութիւնը եւ ինչո՞ւ. ի՞նչ կարող ենք սովորել Իսլանդիայից», *Սոցիոսկոպ*, 23 Նոյեմբեր 2015, http://socioscope.am/archives/641:

11. Ժաննա Անդրէասեան, «Անկախութեան խօսքի յիսուն երանգները», *Սոցիոսկոպ*, 20 Սեպտեմբեր 2016, http://socioscope.am/archives/725:

12. Ժաննա Անդրէասեան, «Յուլիսեան ապստամբութեան շուրջ», *Սոցիոսկոպ*, 6 Օգոստոս 2016, http://socioscope.am/archives/721:

13. Ժաննա Անդրէասեան, «Խօսե՞լ, թէ լռել արդարութեան մասին», *Փոփոխութեան որոնումներ*, Երեւան, Սոցիոսկոպ, 2016, էջ 41-57:

## 2 ՖՐԱՆՍԱԿԱՆ ԼՐԱԳՐԱ-ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ

ցինները կը գալթեն մեզի: Բարեկրթութեամբ ընդունինք զանոնք, որպէսզի մեզի սիրելի դարձնեն իրենց մօտ՝ այս ողջ Արեւելքին մէջ, որ կը հանդիսանայ քաղաքական մեծ խնդիրին նորայայտ անծանօթներէն մէկը» [Տեսարան *Aida*-էն] (‘Les concours du Conservatoire’, *Le Journal du dimanche*, 15 juillet 1910, nouvelle série, no. 87, p. 458):

32. «Դարեհի եւ Քսերքսէսի երկիրէն եկած այս թենորը հանդէս եկաւ *Aïda*-ի առաջին արարի Ռատամէսի մեծ տեսարանին մէջ» [Տեսարան *Aida*-էն] (Arthur Pougin, ‘Les concours du Conservatoire’, *Le Ménestrel*, 16 juillet 1910, 76e année, no. 29, p. 228):

**ԱՄՓՈՓՈՒՄ**

Այսպէս կարելի կ'ըլլայ գծել ընդհանուր ուղեծիր մը:

Շահ-Մուրատեան ունեցած է ի ծնէ ձայն մը՝ որ բացառիկօրէն գեղեցիկ է: Բայց երբ կը մտնէ մարդկային կամքը՝ թեքնիքը, մեկնաբանութիւնը եւ առոգանութիւնը, Շահ-Մուրատեանի թերութիւնները կը սկսին վեր հանուիլ:

Մինչեւ այստեղ՝ ձայն, մեկնաբանութիւն եւ առոգանութիւն, լսելի երեւոյթներ են, զգայարաններով ընկալելի: Եւ ահաւասիկ իր ամբողջ ուժով կը մտնէ պատկերային ներկայացուցչականութիւնը՝ արեւելապաշտութեան միջոցով, ուր Շահ-Մուրատեան կ'ունենայ Արեւմուտքի փափաքած ընդհանրացած ու հեռաւոր Արեւելքի մը ողջ կարծրատիպային հմայչութիւնն ու բնիկ բարբարոսութիւնը:

(Վերջ 7)

## 1 ՍՓԻՒՌՔԻ ՄԵԾ ԲԱԺԱՆՈՒՄԸ

(ՀԿ) կողմէ՝ քանդելու համար աւանդական հայկական հիմնարկները եւ աւանդական բարոյախօսութիւնները:

2020-ի Արցախի Պատերազմի պարտութիւնը այս բաժանումները վերջապէս վերածեց անդունդի, պատերազմ՝ որ մինչեւ հրադադարի գործարքին ստորագրութիւնը, 44 օրեր իսկապէս միաւորած էր հայերը՝ շրջանցելով այս բոլոր գաղափարախօսական բաժանումները:

Այդ պահէն սկսեալ պատերազմը դարձաւ այն խորհրդանշական գործիքը՝ որ գործածուեցաւ մեր համայնքներու ներկայ մշակութային պատերազմին մէջ, իւրաքանչիւրը զայն օգտագործելով առաջ տանելու իր առարկութիւնները եւ հաստատելու իր հետեւած ճանապարհին ճշդութիւնը:

Աւանդապէս տրամադրուած սփիւռքահայութիւնը պարտութեան համար կը մեղադրէ ներկայ կառավարութեան անձեռնհասութիւնը կամ դաւաճանական գործողութիւնները: Կը պնդէ՝ որ Փաշինեանի կառավարութիւնը չափէն աւելի արեւմտեան ու լիպերալ է եւ երկիրը վտանգաւոր կերպով դուրս հանեց ռուսական ուղեծիրէն, մինչ աջակցելով աւանդական հայկական արժէքները ականահարող շարժումներու: Որոշ ծայրայեղ պարագաներու, ան կը մեղադրէ նոյն ինքը երկիրի ժողովրդավարացումի ընթացքը իբրեւ մեր պարտութեան պատճառ: Ամենակարեւորը, պարտութեան պատճառները գաղափարախօսապէս կը դիտէ իբրեւ հետեւանք հայրենասիրութեան եւ հայկականութեան հին յղացումներու հանդէպ հաւատարմութեան պակասի:

Աւանդապաշտ սփիւռքի ղեկավարութեան եւ յառաջդէմներուն միջեւ եղած խզումի գլխաւոր օրինակ մըն է աւանդապաշտներուն համագործակցութիւնը սփիւռքի զանազան կրօնական, քաղաքական եւ քաղաքացիական ղեկավարութեան ընդմէջէն՝ պահանջելու Փաշինեանի կառավարութեան հրաժարականը: Այս կոչերը անտարբերութեան հանդիպեցան նոյն ինքը Հայաստանի մէջ, իսկ յառաջդէմ սփիւռքը զայն դիտեց իբրեւ յետաշրջական ուժերուն կողմէ պատերազմը շահագործելու փորձ՝ ջնջելու համար Հայաստանի պետութեան եւ հասարակութեան յետյեղափոխական ժողովրդավարացումը:

Երիտասարդ եւ աւելի յառաջամիտ սփիւռքահայերը պարտութեան համար կը մեղադրեն 25 տարիներու անձեռնհասութիւնը եւ փտածութիւնը: Ըստ իրենց, քաղաքական փտացած դասակարգը թոյլ չտուաւ Հայաստանին կառուցելու առողջ ու ճշգրիտ տնտեսութիւն, իրական աշխատող պետութիւն կամ գործող ռազմականութիւն: Բազմաթիւ պարագաներու, անոնք կը մեղադրեն մեր աւանդական սփիւռքի հիմնարկներուն ղեկավարութիւնը մեղսակից ըլլալու Հայաստանի փտացած համակարգներուն:

Քիչ կասկած կայ թէ որ կողմը հաւանականութիւն ունի շահելու այս մշակութային պատերազմը: Երկարաժամկէտ տարածութեան վրայ, արեւմտեան աշխարհի գրեթէ բոլոր երկիրներուն մէջ, հասարակական լիպերալիզմի ուժերը միշտ ջախջախած են իրենց աւանդապաշտ հակառակորդները:

Կարեւոր է ըմբռնենք՝ որ այս տեսակ մշակութային պատերազմները պերճանքներ են, զորս միայն ընդարձակ պետութիւնները ի վիճակի են դիմագրաւել: Անհրաժեշտ է որ մեր սփիւռքեան հիմնարկները սկսին դիմել դժուար հարցումներուն. ինչպէ՞ս կրնան ներգրաւել երիտասարդ սերունդը, այնպիսի եղանակներու օգտագործումով՝ որ արձագանգած ըլլան անոնց կարիքներն ու գաղափարները: Միաժամանակ պէտք է իրական գործակիցները ըլլան Հայաստանի մէջ ժողովրդավարական պետութիւն կառուցելու գործընթացքին եւ մերժեն շահագործուիլ իբրեւ հայաստանաբնակ քաքիսթոքրասիի աղախիններ:

Բարեփոխիչները պէտք է հասկնան, որ ինչ որ ալ ըլլայ մեր ազգի բարեփոխութեան ձեւը, ան պէտք է կատարուի մեր եղանակով: Պէտք չունինք դառնալ ընդօրինակութեան մը ընդօրինակութիւնը: Կրնանք դառնալ աւելի հանդուրժող, լայնախոհ եւ համակեցաբար գործել ուրիշներու հետ, մինչ պահպանելով մեր մշակութային աւանդութիւններուն իւրայատկութիւնները:

Մեր հաւաքական յառաջադրանքն է ստեղծել այս համադրութիւնը, ուր նոր սերունդին թարմ գաղափարները միաձուլուած ըլլան մեր ամենալաւ մշակութային աւանդութիւններուն հետ: Ասիկա միակ ուղին է ապահովելու հայկական սփիւռքի երկարատեւ գոյատեւումը, միաժամանակ հաստատելու իրական ընկերակցութիւններ՝ կառուցելու համար գործառնական, ժողովրդավարական եւ բարգաւաճ Հայաստան, որմով կրնանք բոլորս հպարտանալ:

*Սիվիլ Նէթ*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1891 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՄԱՅԻՍ 2021 *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՃկ.* عدد رقم ١٨٩١ الخميس ٦ مايو ٢٠٢١


## ԹԱՒՇԵԱՑ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԵՐԵՔ ՏԱՐԻՆ

Լրացաւ Թաւշեայ Յեղափոխութեան երրորդ տարին: Շատ բան կարելի է ըսել կատարուած-չկատարուածներուն մասին: Ստորեւ՝ քանի մը գաղափարներ:

### ԱՆԿԱՐԵԼԻՆ ՈՒ ԿԱՐԵԼԻՆ

Երեք տարուայ ընթացքին պայքարը յեղափոխութեան դէմ եղաւ աւելի ազդեցիկ ու արդիւնաւէտ քան անոր գործադրութեան կարելիութիւններուն սահմանները:

Ցաւօք, բարեկաւումներու դէմ դիմադրութիւնը եղաւ այնքան հզօր՝ որ ժամանակի եւ կարողութիւններու կարեւոր մասը ուղղուեցաւ այդ դիմադրութիւնը դիմադրելու: Իսկ դիմադրութիւնը դիմադրելու ընթացքին, բնականաբար, պիտի կատարուէին արհեստականօրէն սարքուած սայթաքումներ, անտեղի յայտարարութիւններ, անիմաստ ինքնապաշտպանական գործողութիւններ:

Եթէ յետյեղափոխական երեք տարիները եղան դժուար, պատճառը ոչ թէ յեղափոխութիւնն էր, այլ հակայեղափոխութիւնը, որ գործեց իր ողջ տրամադրութեամբ ու յագեցուածութեամբ:

Յեղափոխութիւնը, բայց եւ այնպէս, ունեցաւ կարեւոր ներդրումներ:

Յաջողեցաւ կասեցնել օլիկարքական յաւելեալ ներթափանցումը յատկապէս գիւղական շրջաններ, կանխելով գիւղացիութեան ամբողջական խաւարումը:

Դադրեցաւ համակարգային բռնակամութիւնը, որ վերսկսելու միտումներ ցոյց տուաւ արդէն պատմութիւն դարձած 17-ի հանրահաւաքներուն ընդմէջէն:

Դադրեցաւ դատական կազմի համակարգային կաշառքի կառուցուածքը, մեծ ու կարեւոր որոշումներու պարագաներուն, սակայն, մնալով հին օլիկարքութեան ուղղակի ազդեցութեան տակ:

Փտածութեան դէմ պայքարը բախուեցաւ գրեթէ անլուծելի դժուարութիւններու, բայց գոնէ կարելի է նշել՝ որ օլիկարքները ստիպուեցան *քիչ մը* աւելի վճարել օրինական տուրքերը, զորս վարժուած էին գրպանել առաւելագոյն չափով:

Դադրեցան խօսքի ազատութեան դէմ կիրարկուող հետապնդումները եւ ազատ խօսքի պատճառով աշխատանքէն հեռացումները՝ որոնք սովորական դարձած էին Քոչարեան-Սարգսեան ժամանակաշրջանին:

Դադրեցաւ Սփիւռքի Նախարարութեան միջոցով շքանշաններ բաժնելու մարմաջը՝ ուր յստակօրէն կը մատնանշուէին իշխանամէտ-հնազանդ եւ ոչ-իշխանամէտ-ըմբոստ սփիւռքահայ մտաւորականի եւ մշակութային գործիչի ստորաբաժանումները, վերջիններս ամբողջովին դուրս նետուելով շքանշանային համակարգէն, մինչեւ որ Վարուժան Գազանճեան իր կատակերգական թատերգութեան մէջ պիտի աղաղակէր՝ «Պատուանշան մըն ալ քեզի եւ կամ Մի շքանշան էլ քեզ» (*Հայերէն պլոկի* առցանց հրատարակութիւն, 2018):

Միւս կողմէ, յառաջդիմութիւն չի նկատուիր պետականաշինութեան եւ բանակաշինութեան բնագաւառներուն մէջ, որոնք մինչ յեղափոխութիւնը հասած էին անկումի վտանգաւոր եզրին:

### ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ՝ ԻԲՐԵՒ ԲԱՌ

Կարեւոր է «յեղափոխութիւն»-ը՝ իբրեւ բառ:

Դրամատիրական արդի համակարգը այնպէս պատումնաւորուած է՝ որ «յեղափոխութիւն» բառը ունենայ ոչ-դրական ըմռնողականութիւն:

Յեղափոխութիւններ կ'ըլլան, եւ ապա կեթթոյացած իւրաքանչիւր լրագրող, փրոֆեսիոնէլ, ակադեմական վերնախաւի ներկայացուցիչ՝ որուն ձայնը ամենալսելին է, կը սկսի խօսիլ իր անձնական կարծիքին մասին՝ թէ եղածը «ես յեղափոխութիւն չեմ նկատեր», ինքզինքին նիշ մը աւելցուցած ըլլալով՝ իբրեւ մասնագէտ մը, որ «փողոց» իջած յեղափոխական հասարակութենէն աւելի իրազեկ է յեղափոխութեան իմաստին: Եւ եթէ ամբողջ «մասնագիտական» դաշտը լեցուի այս անհատական-անհատապաշտ միանման կարծիքով, կատարուած կ'ըլլայ յեղափոխութեան տապալումի առաջին կարեւոր քայլը:

Կեթթոյացած փրոֆեսիոնէլին համար յեղափոխութիւնը իր սեփական անձի անդորրութեան խանգարումն է: Կեթթոյացածը չի կրնար համակեցային ըլլալ, եւ այդ համակեցութեան մէջ տեսնել ինքզինքը: Ան չի կրնար ըլլալ հասարակապէս խռովայոյզ:

Ֆրանսայի Դեղին Բաճկոնաւորներու հրաշալի շարժումը՝ որ յեղափոխական էր իր մտածողութեամբ, ֆրանսական կառավարութենէն պահանջելով միջին ու ստորին դասակարգերու իրական շահերու պաշտպանութիւն, ֆրանսական եւ արեւմտեան լրատուամիջոցները զայն ներկայացուցին իբրեւ անյաջող դէպքային կացութիւն՝ Ֆրանսայի տնտեսական շահերը խանգարող:

Լիբանանի վերջին բազմամարդ բացառիկ ցոյցերը դիւրութեամբ ներկայացուեցան իբրեւ երկիրը կործանող շարժում, մինչդեռ անոնք կը միտէին չինել երկիրը՝ ջնջելով լիբանանեան ահռելի փտածութիւնը: Հայերը բաւարարուեցան հպարտանալով՝ որ գերփտացած կառավարութեան մէջ ունին նախարար, իսկ զանազան միութիւններ ինքզիքնին յաջողապէս ներկայացուցին իբրեւ շարժումին զոհը, փոխանակ պայքարելու վերացնել երկիրի փտածութիւնը:

Յետյեղափոխական Հայաստանի համար՝ ըլլայ Հայաստանի մէջ թէ Սփիւռքի, գրեթէ նոյն վիճակը ստեղծուեցաւ: Բացի պաշտօնական մարմիններէն՝ որոնք յեղափոխութեան կրողներն էին, եւ այլընտրանքային կարեւոր միտքերէն ու հասարակական կազմակերպութիւններէն, յեղափոխութիւն բառը ծաղրուեցաւ կամ խպառ վերացաւ:

Սփիւռքահայ հիմնահոսանքը գրեթէ չգործածեց «յեղափոխութիւն» բառը: Բառը տարահնչիւն էր իր ականջին:

### ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄ

Աղաղակ բարձրացաւ՝ որ յեղափոխութիւնն էր պատերազմին պատճառը, առանց բացատրելու Թաւշեայ Յեղափոխութեան եւ վերջին պատերազմին, ուրեմն՝ ներքին եւ արտաքին ազդակներու, տիալեքթիքական կապը: Պարզապէս երկուքը ներկայացուեցան իբրեւ դէպքերու ժամանակագրական յաջորդականութիւն, եւ քանի որ այդպէս է՝ ուրեմն իբրեւ պատճառ ու հետեւանք:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՈՒՂԵՐՁԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՕՐՈՒԱՅ ԱՌԹԻՒ

Վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը շնորհաւորական ուղերձ է յղել Աշխատանքի եւ Աշխատաւորների Համերաշխութեան Միջազգային Օրուայ առթիւ, որում մասնաւորապէս ասուած է.

«Սիրելի՛ հայրենակիցներ,

Բոլորիս շնորհաւորում եմ Աշխատանքի եւ Աշխատաւորների Համերաշխութեան Միջազգային Օրուայ առթիւ:

Կորոնավիրուսի համավարակի ճգնաժամը, այնուհետեւ պատերազմը մեր առջեւ բացել են բազմաթիւ մարտահրաւէրներ ու խնդիրներ, որոնց լուծումը հնարաւոր է միայն բոլորիս համատեղ ամէնօրեայ աշխատանքով, իւրաքանչիւրիս անհատական ջանքով, ստեղծագործական ներուժի լիարժէք իրացմամբ: 2020 թուականի ճգնաժամը ցոյց տուեց բոլոր այն խնդիրները, որոնց լուծման ուղղութեամբ մեր անկախութիւնից ի վեր թերացել ենք, դրանց ամենայն լրջութեամբ չենք վերաբերուել՝ լինի օբիեկտիւ, թէ սուբիեկտիւ պատճառներով:

Վերջին երեք տարիների ընթացքում մեր կառավարութեան հիմնական խնդիրն է եղել քաղաքացիներին խրախուսելը՝ աշխատելու, գործելու, տնտեսական գործունէութիւն ծաւալելու, հաւատալու սեփական ուժերին եւ յաջողութեանը: Կարծես դա սկսել էր արդիւնք տալ, սակայն նախորդ տարուայ ճգնաժամերը, ցաւօք սրտի, խաթարեցին մեր առաջընթացն ու զարգացմանը միտուած գործողութիւնները:

Սիրելի՛ հայրենակիցներ,

Մեր յետագայ քայլերն ուղղուած են լինելու իւրաքանչիւր քաղաքացու համար հնարաւորութիւններ ստեղծելուն, քաղաքացիների կարողութիւնների զարգացմանը, կրթութեան համար անհրաժեշտ պայմանների ապահովմանը, հմտութիւնների, գիտելիքների անընդհատ զարգացմանը: Հայաստանի կառավարութեան ուշադրութեան կենտրոնում է նաեւ աշխատողների իրաւունքների պաշտպանութիւնը, եւ մենք այդ ուղղութեամբ եւս իրականացնում ենք հետեւողական քայլեր:

Հայ ժողովուրդն աշխատող է, ստեղծարար, տաղանդաւոր եւ իր անմնացորդ աշխատանքով կառուցելու է իր երազած հայրենիքը: Մենք պէտք է բոլորով շարժուենք այդ նպատակի իրականացման ուղղութեամբ, ուղղենք մեր մէջքը, հաւատանք մեր ուժերին եւ մեր աշխատանքով կառուցենք ամուր, զարգացած, նորարարական եւ ապագային նայող պետութիւն:

Այդ գործընթացը սկսուել է եւ հասնելու է իր նպատակակէտին՝ ի հեճուկս ճգնաժամի, պատուհասած պատերազմի հետեւանքով առաջացած խնդիրների ու դժուարութիւնների:

Հայաստանում ապագայ կայ, եւ այդ պայծառ ապագան կերտելու ենք եռանդուն ու ստեղծագործ աշխատանքով:

Շնորհաւոր Մայիսի 1 եւ կեցցէ՛ ստեղծարար աշխատանքը»:

## Ի՞ՆՉ Է ԿԱՏԱՐՈՒԵԼ ԵԽԽՎ-ՈՒՄ. ԳԵՐԻՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՀԱՐՑԻ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՆ ԱՄԲՈՂՋՈՒԹԵԱՄԲ

**ԱՆԻ ԱՒԵՏԻՍԵԱՆ**

Եւրախորհրդի խորհրդարանական վեհաժողովում Ապրիլի 19-ին հայ գերիներին վերաբերող հարցի քուէարկութիւնը լայնօրէն քննարկւում է հայ հանրութեան շրջանում: Ի վերջոյ, Ռուսաստանի պատուիրակութեան որոշ անդամներ արդեօ՞ք դէմ էին քուէարկել հէնց այս հարցի օրակարգ ընդգրկուելուն, թէ՞ քուէարկութիւնը եղել է փաթեթով: Այս հարցի պատասխանը շատերի համար դեռ միանշանակ չէ: Այդ պատճառով *Փաստերի ստուգման հարթակը* որոշեց անդրադառնալ այս թեմային՝ ներկայացնելով հարցի քուէարկութեան ողջ ընթացքը:

**Հարցի քննարկման ընթացակարգը**

ԵԽԽՎ լիագումար նստաշրջանի հարցերը ներկայացուած են երկու փաթեթներում՝ հրատապ հարցերի եւ ընթացիկ հարցերի: Հայ ռազմագերիներին վերաբերող հարցի քննարկումը ներառուած էր ընթացիկ հարցերի քննարկման փաթեթում եւ պէտք է ընդունուէր մէկ քուէարկութեամբ՝ փաթեթում

↳ 4

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

## (մահուան առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Ապրիլ 20-ին, Թորոնթոյի մէջ, 90 տարեկան հասակին կը վախճանի նախկին եգիպտահայ հռչակաւոր ջութակահար Ժիրայր Գանթարճեան: Եգիպտահայութեան աւագ անդամները տակաւին կը յիշեն հրաշք-մանուկի ելոյթները Գահիրէ եւ Աղեքսանդրիա: Այս առիթով, պիտի փափաքէի ներկայացնել ջութակահարի կեանքի եւ գործունէութեան համառօտ բնութագիրը:

**ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ**

Ծնած է Գահիրէ, 1931 Հոկտեմբեր 1-ին:

Երեք ու կէս տարեկանին կը սկսի ջութակի դասերը հօր՝ Գրիգոր Գանթարճեանի հետ: Չորս տարեկանին կը սորվի Անաթոլ Քանթորովիցի (Աուէրի աշակերտ) հետ: Երկու ու կէս տարի հետը անցընելէ ետք կը շարունակէ Նաում Փոլիաքինի եւ Ատոլֆ Մենաշէի (Քարլ Ֆլէշի աշակերտ) հետ:



Ժիրայր Գանթարճեան, Մայիս 1959, Queen Elizabeth միջազգային մրցոյթի ժամանակ:

Վեց ու կէս տարեկանին՝ 1938 Մայիսին, Գահիրէի Շուլց Երաժշտանոցի նուագախումբին հետ կը նուագէ Կիւսթաւ Էլլերթոնի Կաւոթը իսկ ինն ու կէս տարեկանին՝ 1941 Ապրիլին, կու տայ առաջին անհատական մենանուագը Գահիրէի Լիսէ Ֆրանսէի սրահը: Կը մասնակցի զանազան ձեռնարկներու եւ ռատիոյի ելոյթներու:

13 տարեկանին՝ 1945 Յունուարին, Գահիրէ այցելութեան եկած Պաղեստին Սէմֆոնիք Նուագախումբին հետ կը կատարէ Մենտելսոնի Քոնչերթոն:

Չեխ ջութակահար Վազա Փրիհոտա (Váša Příhoda) Եգիպտոս կու գայ նուագահանդէսներու համար: Յատուկ ունկնդրելով Գանթարճեանը, զինք կ՚ընդունի իբրեւ իր աշակերտը Իտալիոյ մէջ: 1947-ին Գանթարճեան ընտանիքը կը փոխադրուի Իտալիա, ուր Ժիրայր կը դառնայ Փրիհոտայի աշակերտը:

Ուսումնական շրջանի ընթացքին եւ մանաւանդ վերջաւորութեան, նուագահանդէսներ կու տայ Քրեմոնա, Միլան, Վենետիկ եւ Ռափալլօ (Ճենովա): Շրջագայութեան աւարտին, իտալական կառավարութիւնը ընտանիքին այլեւս չի թոյլատրեր մնալ երկիրին մէջ: 19 ու կէս տարեկանին՝ 1951 Փետրուարին, Ժիրայր կը վերադառնայ Եգիպտոս, ուր կը մնայ մինչեւ 22 տարեկան, նուագահանդէսներ տալով Գահիրէ եւ Աղեքսանդրիա:

1953-ին կարեւոր ելոյթներ կ՚ունենայ Իսթանպուլի մէջ, նուագելով Իսթանպուլի Սէմֆոնիք Նուագախումբին հետ:

GERARD KANTARJIAN

VIOLINIST

David Garvey at the Steinway

Friday Evening, December 20, 1957, at 8:30

*Program*

SONATA IN G MINOR (The Devil's Trill) ....... TARTINI
Larghetto affetuoso
Allegro
Grave
Allegro assai — adagio

SONATA IN C MINOR, OP. 30, No. 2 ....... BEETHOVEN
Allegro con brio
Adagio cantabile
Scherzo
Finale — allegro

Chaconne from the Partita No. 2, in D-minor ....... BACH

— INTERMISSION —

SONATA IN G MINOR, OP. 1 ....... KAREN KHATCHATURIAN (first New York performance)
Allegro — Recitativo
Andante
Presto

VARIATIONS ON A THEME ....... PAGANINI
Nel Cuor piu non mi sento

Piece en forme de Habanera ....... RAVEL

Zapateado ....... SARASATE

Recital Management: COLUMBIA ARTISTS MANAGEMENT INC.
113 West 57th Street New York 19, N. Y.
J. EVANS, Manager

Born in Egypt of Armenian parents, Gerard Kantarjian gave his first public recital at the age of six, and has concertized extensively in the Middle East and Europe. His musical education which was started in Egypt, was continued in Europe, and, for the last four years, at the Curtis Institute of Music in Philadelphia, where he has been a scholarship student under Ivan Galamian.

His American debut recital in San Francisco last season was received with accolades from both the press and public of that musically discerning city. His performance of the Paganini Concerto No. 1, with the San Francisco "Pops" Orchestra under Arthur Fiedler, was an unprecedented triumph.

Ժիրայր Գանթարճեանի Նիւ Եորքի առաջին մենահամերգին յայտագիրը, Town Hall, 20 Դեկտեմբեր 1957:

Ֆիլատելֆիոյ Curtis Institute of Music-ի ականաւոր ուսուցիչ եւ ջութակահար Իվան Կալամեանը ունէր բարձր յանձնարարական Ժիրայրի մասին: Թուրքիա գտնուած ժամանակ, Կալամեանէն կը ստանայ նամակ, ուր զինքը կ՚ընդունի իբրեւ իր աշակերտը՝ առանց ունկնդրութեան, բան մը՝ որ քիչ մը անսովոր էր Կալամեանին համար: 1953-ի վերջերը կը մեկնի Ֆիլատելֆիա, ուր Քուրթիսի մէջ Կալամեան կ՚ունկնդրէ զինքը Չայքովսքիի Քոնչերթոյին մէջ: Մինչեւ 1958 կ՚ուսանի Կալամեանի մօտ Քուրթիսի մէջ:

1955 Ապրիլին, հռչակաւոր նուագավար Եուժէն Օրմանտի կը կատարէ Youth Award տարեկան մրցոյթը, ընտրելով չորս ուսանող մենակատարներ: Գանթարճեան կը դառնայ դափնեկիր եւ այս ծիրին մէջ Դեկտեմբեր 12-ին, 24-ամեայ ջութակահարը Ֆիլատելֆիա Նուագախումբին հետ կը մենակատարէ Վիենիաւսքիի թիւ 1 Քոնչերթոն՝ Օրմանտիի ղեկավարութեամբ:

Երկու եղանակ կը յաճախէ Meadowmount Summer Camp, իւրաքանչիւր եղանակ չորս շաբաթ շարունակ նուագելով շաբաթական մէկ քոնչերթօ:

1956 Սեպտեմբերի առաջնեկ ելոյթ-մենահամերգը Սան Ֆրանսիսքոյի մէջ կ՚ունենայ բացառիկ արձագանգ:

1957-ին յաջող շրջագայութիւն կ՚ունենայ Արեւմտեան Ափը: Օգոստոսին, Արթիւր Ֆիտլըրի Pops յայտնի նուագահանդէսներու ծրագիրին համար Սան Ֆրանսիսքօ Սէմֆոնիին (San Francisco Symphony) հետ կը կատարէ Փականինիի թիւ 1 Քոնչերթոն:

1957 Դեկտեմբերին՝ իր առաջնեկ մենահամերգը Նիւ Եորքի մէջ, Town Hall, որմէ ետք կը ստանայ առաջարկներ միանալու քառանուագներու եւ դառնալու զանազան սենեկային նուագախումբերու առաջնորդ ջութակահարը (concertmaster):

1958-ին ֆինալիսթ է Նիւ Եորքի Leventritt մրցոյթին, որուն շնորհիւ կը շրջագայի տասնեակ մը նուագահանդէսներով:

1958-1959 եղանակին կը նուագէ Տենվէրի Քոլորատօ Նուագախումբին հետ Սաուլ Քասթոնի ղեկավարութեամբ:

1959 Մայիսին ֆինալիսթ եւ մրցանակակիր կ՚ըլլայ Պրուքսէլի Queen Elizabeth միջազգային ջութակի մրցոյթին:

KANTARJIAN GIVES RECITAL ON VIOLIN

Changes From Academician to Musician After Losing His Debut Fears at Town Hall

Gerard Kantarjian, violinist, displayed a dual personality at his Town Hall recital last night.

For the first half he was the academician, the good student, playing with clean technique but obviously suffering from the inhibitions of a Town Hall debut; then, fortified by applause and inspired by the music, he came back after the interval to give a vastly improved display in a sonata by Karen Khatchaturian and other works. David Garvey accompanied at the piano.

Tartini's Sonata in G minor ("The Devil's Trill"), Beethoven's Sonata in C minor, Op. 30 No. 2, and Bach's Chaconne from the Partita No. 2 in D minor are works that are played often—and some would say too often—in our concert halls. For this reason, an artist has to bring to them something special, if he is at all to communicate with his audience.

Unfortunately Mr. Kantarjian approached these works with a small tone and a meticulousness verging on timidity. Dynamic contrasts were lacking; chords lacked "bite"; there was also a tendency not to let the violin sing out. To the artist's credit, his intonation was flawless almost throughout, his bowing fluid, and in the Chaconne he kept the strands of music distinct by deft use of fingers and bow.

Karen Khatchaturian's Sonata in G minor found Mr. Kantarjian a changed man. Himself an Armenian, he obviously found a strong appeal in the music of this Armenian composer, who is a nephew of the famous Aram Khatchaturian. The concluding presto was played with strong rhythmic vitality; in the middle slow movement Mr. Kantarjian's violin sang as never before.

Paganini's Variations on a Theme (Nel Cuor più non mi sento) provided an occasion for real violinistic fireworks, with the dazzling bow and left-hand pizzicato effects being crisply executed; yet not all Mr. Kantarjian's brilliance could hide the fact that this is really vulgar music.

Ravel's quiet "Pièce en forme de Habanera" was subtly played, its peacefulness accentuated by the fact that it came immediately after the Paganini variations.

V. R-R.

Town Hall-ի մենահամերգին քննախօսականը, *The New York Times*, 21 Դեկտեմբեր 1957:

Նոյն տարին կը նուագէ բազմաթիւ խումբերու հետ՝ սկսելով պարոքէն մինչեւ ժամանակակից երաժշտութիւն: Փականինիի առաջին Քոնչերթոն կը մենանուագէ Տիթրոյթի Նուագախումբին հետ:

1960-1961 եղանակին առաջնորդ ջութակահարն է Ամերիկայի Սէմֆոնիք Նուագախումբին (American Symphony Orchestra)՝ Լէոփոլտ Սթոքովսքիի ղեկավարութեամբ:

10 տարի կ՚աշխատի Ալեքսանդր Շնայտէրի եւ իր համոյթներուն հետ Նիւ Եորքի մէջ:

1960-1967-ին կը մասնակցի Փուերթօ Ռիքոյի Քազալզի Փառատօնին (Casals Festival):

1964-ին կը ստանայ ԱՄՆ հպատակութիւն:

1967-ին զինք կ՚ունկնդրէ նուագավար Սէյժի Օզաուա (Seiji Ozawa) եւ կը հրաւիրէ Թորոնթոյի Սէմֆոնիք Նուագախումբին (Toronto Symphony Orchestra) իբրեւ առաջնորդ ջութակահար: Այս պաշտօնը կը վարէ երկու տարի՝ Օզաուայի ղեկավարութեան տակ, եւ մէկ տարի՝ Քարէլ Անչերլի (Karel Ančerl):

1970-ին կը թողու նուագախումբը՝ նուիրուելու սենեկային եւ մենանուագային յանձնառութիւններու, յատկապէս Գանատայի մէջ:

1973-1976-ին կը կազմէ Արարատ Եռանուագը (Ararat Trio), նոյնպէս նախկին եգիպտահայ՝ դաշնակահար (եւ նուագավար) Ռաֆֆի Արմէնեանի եւ թաւջութակահար Ժիզէլա Տեփքաթի (Gisela Depkat) հետ:

1977-ին զինք կը գտնենք Թորոնթոյի Ամառնային Երաժշտութեան Դպրոցի (Toronto Summer School of Music) եւ Օնթարիոյի Պլու Մաունթըն երաժշտական Դպրոցի (Blue Mountain School of Music) ուսուցչական անձնակազմներուն մէջ:

1977-ին կը հիմնուի Գանատական Օփերայի Ընկերութեան (Canadian Opera Company) նուագախումբը: Մինչ այդ, Գանատական Օփերայի ներկայացումներուն կը նուագակցէր Թորոնթոյի Սէմֆոնիքը: Գանթարճեան կը հրաւիրուի

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

### ՊԱՏԵՐԱԶՄԻ ԽՕՍՆԱԿԸ ՆՈՐ ԳԻՐՔ Է ԳՐԵԼ, ԳԻՆԸ՝ 50 000 ԴՐԱՄ

Լոյս է տեսել ղարաբաղեան երկրորդ պատերազմի խօսնակ Արծրուն Յովհաննիսեանի՝ *Ռազմարուեստ* կոչուող գրքի 2-րդ հատորը:

«Ցաւօք այս գիրքս ուշացած ծնուեց: Սակայն հիմա էլ կարող է շատ օգտակար լինել, եթէ… Այն շուրջ տասը տարուայ աշխատանքի արդիւնք է» , – Ֆէյսբուքի իր էջում գրել է պաշտպանութեան նախարարութեան պաշտօնաթող խօսնակը:

Գիրքն, ինչպէս յայտնել է հեղինակը, հասանելի է «Երեւանի եւ Գլենդէլի գրախանութներում»:

Արժէքը՝ 50 (յիսուն) հազար դրամ: Մէկ օրինակի համար:

*Ռազմարուեստի* նախորդ հատորը հրատարակուել էր դեռ 2016-ին: Առաջին եւ երկրորդ հատորների միջեւ ընկած կարճ ժամանակահատուածում Յովհաննիսեանը հասցրել է եւս երկու գիրք հրատարակել՝ *Ռազմարուեստի զարգացումը 20-րդ դարում* եւ *Յարձակման սիմֆոնիան կամ ջախջախման պատերազմի հասունացումը ռազմարուեստում* վերնագրերով:

Գրքեր գրելուց բացի՝ Յովհաննիսեանը տարիներ շարունակ զբաղուած է եղել նաեւ բանակային ղեկավարութեան մեդիա-պաշտպանութեամբ եւ զինուած ուժերում չդադարող բռնութիւնների ու կոռուպցիայի քօղարկմամբ:

2012-ից մինչեւ 2020-ի Մարտ ամիսը զբաղեցրել է ՊՆ մամուլի խօսնակի պաշտօնը: Թէեւ 2020-ի գարնանը հեռացուել է այդ պաշտօնից, յուլիսեան էսկալացիայի եւ Սեպտեմբերին մեկնարկած 44-օրեայ պատերազմի ընթացքում ռազմական գերատեսչութեան խօսնակի գործառոյթները փաստացիօրէն վերապահուած էին հէնց նրան: Պատերազմի ժամանակ, երբ հազարաւոր մարդիկ զոհւում էին, վիրաւորւում եւ տեղահանւում, Յովհաննիսեանը հանրութեանը շարունակաբար համոզում էր, որ դրութիւնը կայուն է եւ խիստ յուսադրող:

Նոյեմբերի 9-ին՝ եռակողմ յայտարարութեան ստորագրումից եւ պատերազմի աւարտից անմիջապէս յետոյ Յովհաննիսեանը լքել է պաշտօնը, աւելի ուշ զօրացրուել է ՊՆ-ում ծառայութիւնից եւ խոստացել «կեանքը ներդնել նոր սերնդի կրթութեան ու դաստիարակութեան մէջ»:

*Epress.am*

## ԿԸ ՄԱՀԱՆԱՅ ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐՉՈՒՀԻ ՆՈՐԱ ԱԶԱՏԵԱՆ

Ապրիլ 29-ին, Տիթրոյթի մէջ, 98 տարեկան հասակին մահացաւ նախկին եգիպտահայ նկարչուհի Նորա Ազատեան, ծանօթ նաեւ Նորա Իփէքեան եւ Նորա Բաբագեան անուններով:

Ան կողակիցն էր կուսակցական պարագլուխ, լրատուական *Ապագայ-Պայքար-Զարթօնք-Ազգ-Նոր աշխարհ-Սարտարապատ-Արեւ* թեւի հոգեւոր հայր Երուանդ Ազատեանի (բուն անունով՝ Էտմոն Կոտալագեան, ծն. 1935):

Ծնած է 1923-ին, Աղեքսանդրիա: Նկարչութիւն ուսանած է անուանի Աշոտ Զօրեանի մօտ եւ ապա ֆրանսական ABC արուեստի դպրոցին մէջ:

Մասնակցած է բազմաթիւ անհատական ու հաւաքական ցուցահանդէսներու Եգիպտոս, ԱՄՆ, Լիբանան եւ Հայաստան, միշտ արձանագրելով յաջողութիւն:

Հիմնականը նկարելով իւղաներկ եւ ջրաներկ, ան օժտուած է թեթեւ խոհականութեամբ եւ սահուն գունաբաշխումի զգացողութեամբ:

Արդարեւ, Նորայի աւելի ուժեղ մուտքը կուսակցականացուած «մշակոյթ»-ի դաշտ՝ իր ակումբներով, աւանդական անվերջանալի ելոյթներով, կրկնուող ճառերով, պաշտօնական հիւրասիրութիւններով, կազմակերպչական աշխատանքներով եւ ճամբորդութիւններով, խլեց իր կորովը՝ առիթ չտալով յարատեւօրէն զարգացնելու եւ խորացնելու նկարչական բնատուր ձիրքերը, երբ բոլոր ունակութիւնները ունէր ամուր ու մնայուն դիրք գրաւելու սփիւռքահայ անուանի նկարիչներու շարքը:

**ԹՈՒՐՔԻԱ**

## ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆԸ ՊԷՏՔ Է ԳՏՆԵՆՔ ԹՈՒՐՔԻՈՅ ՄԷՋ

Հայերուն վէրքը կրնայ բուժել ոչ թէ Պայտէնի, այլ Թուրքիոյ խորհրդարանի եւ նախագահի կողմէ Ցեղասպանութեան ճանաչումը, յայտարարեց թրքական խորհրդարանի հայ պատգամաւոր, Ժողովուրդներու Տեմոքրաթական կուսակցութեան անդամ Կարօ Փայլան՝ *Սիվիլ Նէթի* հետ զրոյցի ընթացքին:

Գործիչը կարեւորեց այլ պետութիւններու կողմէ Ցեղասպանութեան ճանաչումը, սակայն յիշեցուց՝ որ Թուրքիան ռազմավարական նշանակութիւն ունի, զոր կ՚օգտագործէ արտաքին յարաբերութիւններուն մէջ: Ճիշդ այդ պատճառով անհրաժեշտ է ձգտիլ Թուրքիոյ ճանաչումին:

Ըստ պատգամաւորին՝ ասոր հասնելու համար առանցքային է ունենալ ժողովրդավար Թուրքիա, որուն համար կը պայքարի ինք եւ իր համակիրները: Գործիչը, սակայն, կը կարծէ՝ որ «այդ երազը դեռ շատ հեռու է», քանի որ երկիրի ղեկավարութիւնը ազգայնականներուն ձեռքն է:

Փայլան կը յայտնէ, որ այսօր Թուրքիոյ խորհրդարանին առաջադրուած է Ցեղասպանութեան ճանաչումի նախագիծ, ուր ճանաչումէն զատ կ՚առաջարկուի Ցեղասպանութեան համար պատասխանատու ճանչնալ Թալէաթ եւ Էնվէր փաշաներն ու անոնց համակիրները, վերջիններուն անունները ջնջելով Թուրքիոյ դպրոցներէն եւ փողոցներէն: Նախագիծով նաեւ կ՚առաջարկուի քաղաքացիութիւն տրամադրել Ցեղասպանութեան զոհ դարձած եւ զայն վերապրած մարդոց ժառանգներուն:

«Կրնամ ըսել, որ օրէնքի առաջարկը այսօր պիտի չընդունուի, բայց ան օր մը տեղի պիտի ունենայ», - նշեց պատգամաւորը:

Փայլանը նաեւ նշեց, որ թրքական խորհրդարանի մեծամասնութիւնը, մասնաւորապէս՝ ժողովրդավար կուսակցութիւնները, կողմ են Հայաստանի հետ յարաբերութիւններու կարգաւորումին եւ սահմանի բացումին:

Ըստ Փայլանին, տարածաշրջանին մէջ արդէն իր ներկայութիւնը հաստատած Ռուսաստանին հաւանաբար անհաճոյ ըլլայ Թուրքիոյ ներկայութիւնը Հայաստանի մէջ, բայց պատգամաւորը կը կարծէ՝ որ Թուրքիան պէտք է ոչ թէ մէկ կողմ բռնէ, այլ ձգտի յարաբերութիւններ ունենալ երկու ժողովուրդներուն հետ:

Անոր կարծիքով՝ այժմ անհրաժեշտ է մտածել մնայուն խաղաղութեան հասնելու մասին, որ ըլլայ արդար՝ թէ՛ հայերուն, թէ՛ թուրքերուն, թէ՛ ազըրպէյճանցիներուն համար, հակառակ պարագային «կրնանք նորէն կռուիլ»:

Այս նպատակին հասնելու համար գործիչը կը կարեւորէ սահմաններուն բացումն ու մշակութային, տնտեսական յարաբերութիւններուն հաստատումը երկու ժողովուրդներուն միջեւ: Հայաստանը, ըստ Փայլանի, ընտրութիւններէն ետք եւս պէտք է այս ուղղութեամբ ջանք գործադրէ:

*Ճ. – Թուրքիոյ ժողովրդավարացումը եւ անոր ընդմէջէն Թուրքիոյ ճանաչումը Ցեղասպանութեան կը հանդիսանար Հրանդ Տինքի փայփայած համոզումներէն եւ դիրքերէն մէկը: Տինքի եւ Փայլանի համար կարեւոր են Թուրքիոյ ներսէն բխած գործողութիւնները, փոխանակ դուրսէն պարտադրուած ձեւաչափումներուն: Ուրիշ հարց Տինքի եւ Փայլանի գործածած մեթոտներուն տարբերութիւնը. մինչ առաջինը կը գործէր վարէն դէպի վեր՝ հասարակութենէն դէպի իշխանութիւն, երկրորդը կը գործէ վերէն վար:*

**ԽՈՀԷՐ**

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐԴԻ ԳՈՐԾԸՆԹԱՑՆԵՐԻ ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Այս ընդհանուր խորագիրին տակ է որ հանդէս կու գայ Նժդեհի աղմկայարոյց խօսքը:

2012-ին, ACTV առցանց վիտէօ նախագիծը կ՚իրականացնէ *Հայաստանեան հասարակական արդի գործընթացների մեկնաբանութիւն* խորագիրով 10 վիտէօհարցազրոյցներու շարքը Հայաստանի գիտնականներու, արուեստաբաններու եւ քաղաքացիական աքթիւիսթներու հետ:

ACTV նախագիծը կը կիրարկուի 2012-էն ի վեր: Մինչեւ 2016-ի աշունը ան կը գործէր Ուտոպիանա.ամ մշակութային-ստեղծագործական հասարակական կազմակերպութեան շրջանակին մէջ, 2016-էն մինչեւ այսօր մաս կը կազմէ Ֆոկուս արուեստի հասարակական կազմակերպութեան:

Ուտոպիանա հիմնուած է 2001-ին եւ կը գործէ Եւրամիութեան Արեւելեան Գործընկերութեան Մշակոյթի Ծրագիրի (Eastern Partnership Culture Programme) հովանաւորութեամբ, նպատակ ունենալով պայքարիլ հայ արուեստագէտներու եւ մտաւորականներու մեկուսացումին դէմ տեղայնապէս եւ համաշխարհայնապէս(14):

ACTV-ն կը ներկայացնէ իր ծրագիրը.

«Այսօր ականատեսն ու մասնակիցն ենք հայաստանեան հասարակական կեանքի զարգացման նոր փուլի, որի կենտրոնական հարցերից մէկը հանրային ոլորտ հասկացութեան, հանրայինի եւ մասնաւորի յարաբերութեան վերանայումն է: Մտաւորական այս աշխատանքը կարող է ունենալ վճռորոշ ազդեցութիւն հասարակական գործընթացների ծաւալման վրայ:

«Այս գործում կարեւորագոյն դեր ունի մեդիան: Այն մի կողմից հանդիսանում է մէյնսթրիմ պրոպագանդայի եւ ձեռնածութիւնների գլխաւոր գործիք, միւս կողմից, որոշ ըմբռնըմամբ, դրան դիմադարձելու հնարաւորութիւն: Մեդիան ինքնին հարցի տակ առնելը կարեւոր յանձնառութիւն է, բայց պրակտիկ հարթութեան մէջ ալտերնատիւ հարթակները յաճախ միակ հասանելի միջոցն են որոշ խնդիրներ հանրային օրակարգ ներմուծելու կամ հրապարակ տեղեկատուութիւն տարածելու համար: [...]

«Մեր ռազմավարութիւնը արուեստի հնարներով վերը նշուած գործընթացներն ուսումնասիրել, հետազօտել եւ լուսաբանելն է: Ինչպէս նաեւ քննական մտածելակերպ խթանող գիտութեանը աջակցել եւ առաջ մղելը»(15):

ACTV-ն յստակօրէն եւ իրաւացիօրէն ինքզինքը կը ներկայացնէ իբրեւ այլընտրանքային հարթակ, որ յարմարագոյն միջոցն է որոշ խնդիրներ հանրային հրապարակութիւն դարձընելու: Յարմարագոյն, քանի որ հիմնահոսանքը, մէկ կողմէ՝ կը մերժէ նման նիւթեր բովանդակել, միւս կողմէ՝ նման նիւթեր պարզապէս անհասանելի են իր մտաւոր հասողութեան:

*Հայաստանեան հասարակական արդի գործընթացների մեկնաբանութիւն* շարքը կը բովանդակէ հետեւեալ 10 վիտէօհարցազրոյցները՝ միջին հաշուով իւրաքանչիւրը կէս ժամ տեւողութեամբ(16).

1. Ժաննա Անդրէասեան (հասարակագէտ), «Հայ լինելու մշակոյթը»:

2. Արմէն Օհանեան (գրող), «Հայրենիք եւ սպորտ»:

3. Վարդան Ազատեան (արուեստաբան), «Ազգայինը եւ հակասութիւնները»:

4. Արմինէ Առաքելեան (քաղաքագէտ), «Ազգ եւ անհատ»:

5. Ռուբէն Արեւշատեան (արուեստաբան), «Ազգայինը եւ ճարտարապետութիւնը»:

6. Հրաչ Բայադեան (մշակութաբան), «Ազգայնականութիւն, իշխանութիւն եւ մեդիա»:

7. Ալինա Պօղոսեան (հասարակագիտական մարդաբան), «Սոցիալական փոփոխութիւններ եւ միգրացիա»:

8. Նազարէթ Կարոյեան (արուեստի քննադատ), «Ազգայինը եւ նոր մարտահրաւէրները»:

9. Սուսաննա Գիւլամիրեան (արուեստի քննադատ, համադրող), «Կարծրատիպեր եւ քննադատութիւն»:

10. Աղասի Թադեւոսեան (ազգագրագէտ), «Կոնֆլիկտը վաղուայ օրուայ յոյսն է»:

Նախագիծի հեղինակներն են Արեւիկ Մարտիրոսեան եւ Դաւիթ Ստեփանեան, որոնք YouTube-ի էջին վրայ ներկայացուցած են նախագիծին իմաստը իբրեւ ««ազգայինի» վերաիմաստաւորման փորձ», աւելցնելով. «Առանցքային միտքը՝ «ազգայինի» յարացոյցը մեկնաբանողների կողմից ներկայացուել է ամենատարբեր թեմաների միջոցով (անհատի ազատութիւններից մինչեւ գլոբալ քաղաքական եւ տնտեսական գործընթացներ) եւ դիտանկիւններից (զուտ գիտականից մինչեւ անձնական դիտարկումներ)»:

Ուրեմն, կը ներկայացուի ազգայինը՝ այլընտրանքային հարթակի վրայ:

Ազգայինը այլընտրանքի մէջ մօտեցումը հասկնալու համար պարզապէս պէտք է դիտել ազգայինը հիմնահոսանքի մէջ: Վերջինիս պարագային, ազգայինը բացարձակ գոյութիւն մըն է: Զայն արտասանող խումբերը կը յաւակնին գիտնալ ինչ բան է ազգայինը, ամէն մէկը ներկայացնելով իր անզիջող համոզումը՝ առանց մեկնաբանութեան, կամ մեկնաբանութեան ոչ ենթակայ, ուղեկցուած ազգային-հայրենասիրական մրցավազքով՝ թէ ով է աւելի ազգայինը, ազգային փաթեթիզմով եւ պարտադրապէս մեծադղորդ բառապաշարով: Ազգայինի խնդրականացումը, անոր կարելիութիւններուն եւ կարողականութիւններուն այլազանումը, հարցադրումներուն բազմազանումը՝ առանց վճռական պատասխաններու, հայերուն պարագային, դարձած է այլընտրանքի աշխատանքը:

Ընդհանրապէս, այլընտրանքի գոյութիւնը եւ անոր աստիճանները պայմանաւորուած են հիմնահոսանքէն: Այլընտրանքի գոյութիւնը ինքնին արդիւնքն է հիմնահոսանքի ոչ-ժողովրդավար էութեան: Միտքն ու գաղափարը կրնան տարածուիլ միեւնոյն հարթակին վրայ՝ իրենց այլազանութեամբ ու զանազանութեամբ: Բայց երբ հիմնահոսանքը իր հիւսուածքէն կը վանէ այլաշխարհութիւնը, քննադատութիւնը եւ քննականութիւնը՝ գիտելիքը կ՚անցնի այլընտրանք:

Կատարեալ բռնատիրութիւնն ու մենատիրութիւնը կը յառաջանան այն ժամանակ, երբ հիմնահոսանքը իշխանութիւն կ՚ունենայ արգիլելու նաեւ այլընտրանքը:

Երբեմն իշխանութիւնը փորձ կը կատարէ ստեղծել այլընտրանքի պատրանքը՝ յառաջացնելով տարածքներ, զորս ինք կ՚անուանէ այլընտրանքային: 1990-ականներու Եգիպտոսը ականատես եղաւ նմանօրինակ գործադրութիւններու: Հոսնի Մուպարաքի գերիշխանութեան երկրորդ շրջանն էր, եւ մշակոյթի մեծահարուստ նախարար Ֆարուք Հոսնիի կէս դարուայ մշակութային մենիշխանութեան առաջին տարիները: Եգիպտոսի մէջ նոր մտաւորական հոսանքներու տարիներն էին 1990-ականները: Եւ այդ հոսանքները շրջանակելու նպատակով, Ֆարուք Հոսնիի թոյլատրութեամբ ստեղծուեցան, օրինակ, Ալ-Ուարշա թատերական արուեստանոցը, կամ ՚Ապտէլ Մոն՚էմ Ալ-Սաուի երաժշտասրահը, որոնք ձեւականօրէն կը

4




## 3 ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ...

ներկայացուէին իբրեւ այլընտրանքային արուեստի կեդրոններ, մինչդեռ իրականութեան մէջ կը շարունակէին հիմնահոսանքի նոյն գիծը՝ թեթեւ այլախոհութեան հաշուարկուած ներմուծութեամբ:

Հայաստանի մէջ երկրորդ ձայնն ու այլընտրանքը միշտ կարելի եղած են: Սփիւռքի մէջ՝ կարելի չէ. կուսակցութիւնները սեփականացուցած են ամէն բան: Չկայ տարածութիւն: Ուրիշ տարածութիւնը պարզապէս Սփիւռքի կառոյցէն դուրս է:

Թաւշեայ Յեղափոխութենէն ետք, Հայաստանի մէջ կար միտում ընդարձակելու հիմնահոսանքի սահմանները, կամ այլընտրաքները դարձնելու հիմնահոսանք՝ իբրեւ միտքի ժողովրդավարական գործընթացք: Կը բաւէ յիշեցնել, որ 2018-ի խորհրդարանական արտահերթ ընտրութիւններուն մասնակցող 11 կուսակցութիւններուն եւ դաշինքներուն մէջ, Հայաստանի պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով ինքնակամօրէն ներգրաւուեցան նշանակալի քանակութեամբ աքթիւիսթներ (*Ջահակիր*, թիւ 1831):

Եղան փորձեր ղեկավար պաշտօններու մէջ: Խնդրոյ առարկայ վիտէօհարցազրոյցներուն մասնակցողներէն Ռուբէն Արեւշատեանի նմոյշը բաւական վառ էր, որուն մասին ժամանակին անդրադարձաւ *Ջահակիր* (թիւ 1849): Արեւշատեանի գաղափարի այլընտրանքէն հիմնահոսանք անցումը բաւական լուրջ դիմադրութեան արժանացաւ: Իր լեզուն պարզապէս անհասկընալի էր:

Ժաննա Անդրէասեանը այլընտրանքէն հիմնահոսանքի անցումի ուրիշ օրինակ մըն է, կարելի է ըսել՝ Ուտոպիանայէն եւ Սոցիոսկոպէն դէպի փոխնախարարուհի: Առ այժմ կը շարունակէ մնալ այնտեղ:

Բայց հիմնահոսանքին վրայ հսկողները արթուն են: Կրնան որեւէ պահու՝ *իրենց* սահմանած պահուն, այլընտրանքի արտադրած գիտելիքը փոխադրել իրենց մօտ, այլընտրանքը դարձնել հիմնահոսանք, վերջինի լսարանի ականջին հնչեցնելով այն՝ ինչին վարժուած չէ, ինչին դիտաւորեալ չէ վարժեցուցած հիմնահոսանքը: Գիտելիքը կը փոխադրուի մէկ տարածքէն միւսը եւ անմիջապէս կը դառնայ այլիմաստ ու անիմաստ, ինչպէս դիտաւորեալ տեղի ունեցաւ Անդրէասեանի պարագային: Եւ այս պարագային գիտելիքը ոչ միայն տեղափոխուեցաւ, այլեւ դուրս հանուեցաւ իր բնաբանէն (context):

Ուտոպիանայի վիտէոյին մէջ՝ «Հայ լինելու մշակոյթը» խորագիրով, Անդրէասեան կը զարգացնէ տարբեր՝ իրարմէ բխած հարցեր, զորս պիտի փորձեմ համառօտագրել այստեղ իրենց յաջորդականութեամբ, իմ կողմէս աւելցնելով ներքին խորագիրներ: Ստորեւ տեղադրուած միտքերը իրն են:

**ա. Ազգայինը իբրեւ փոխուող եւ քննադատութեան ենթակայ երեւոյթ**

Մեր հասարակութիւնը պատրաստ չէ քննարկելու, թէ ինչպէս ազգայինը կը փոխուի ժամանակի ընթացքին՝ ստանալով նոր երանգներ եւ շեշտադրումներ, եւ թէ ինչպէս ան կ՚աջակցի կամ կը խանգարէ հասարակութեան կամ անձի իրացումին համար:

Միակ ձեւը երգիծական եղանակն է, օրինակ՝ դերասան Սերգէյ Դանիէլեան, որ երգիծանքի ընդմէջէն կ՚արծարծէ բազում հասարակական ցաւոտ խնդիրներ, ինչպէս ցեղասպանութիւնը կամ կրօնքը, որոնք հասարակական լայն արձագանգ կը գտնեն: Արձագանգը ցոյց կու տայ, որ նման հարցերու մասին խօսքի կարօտ կայ, հասարակութիւնը փափաք ունի քննարկելու զանոնք:

**բ. Ազգային սրբացում**

Բնական վիճակ չէ երբ կը սրբացնենք ամէն բան, այսպիսով աղճատած ըլլալով ազգային պատմութիւնը: Հասարակութիւնը չի կրնար զարգանալ առանց բանավէճի:

(Շար. 4)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

14. ‘About us,’ *Utopiana.am*, http://utopiana.am/about-us/:

15. «Նախագծի մասին», *ACTV*, http://actv.am/մեր-մասին/:

16. Զանոնք դիտել՝ https://www.youtube.com/c/Focusam/videos:

## 2 ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

մասնակցելու նորակազմ նուագախումբին իբրեւ առաջնորդ ջութակահար, զոր կը վարէ մինչեւ 1979:

1982-1989-ին առաջնորդ ջութակահարն է Թորոնթոյի Սենեկային Նուագողներուն (Chamber Players of Toronto):

1984-ին կը սկսի դասաւանդել Թորոնթոյի Համալսարանը:

1986-ին կը կազմէ Ռեմպրանտ Եռանուագը (Rembrandt Trio)՝ դաշնակահար Վալէրի Թրիոնի (Valerie Tryon) եւ թաւջութակահար Քէօնրաատ Պլէօմենտալի (Coenraad Bloemendal) հետ: Խումբը կը կատարէ բազմաթիւ խտասալիկի (CD) ձայնագրութիւններ:

1988-ին կը դասաւանդէ Օրֆորտ Արուեստի Կեդրոնին (Orford Arts Centre) մէջ:

1988-ին եւ 1990-ին կը դասաւանդէ երկամեայ Պանֆի Երիտասարդ Նուագախումբերու Գանատական Փառատօնին (Canadian Festival of Youth Orchestras):

Այս բոլորին համատեղ՝ անթիւ մենահամերգներ:

Իբրեւ մենակատար, Գանթարճեան նուագած է ԱՄՆ-ի շուրջ 20 նուագախումբերու հետ, որոնց հետ, բացի վերոյիշեալներէն, կատարած է Արամ Խաչատրեանի եւ Սիպելիուսի Քոնչերթօները, Վիվալտիի եւ Պախի զանազան Քոնչերթօներ, Պրամսի Կրկնակի Քոչերթօ ջութակի եւ թաւջութակի համար, Պեթհովէնի Եռակի Քոնչերթօն դաշնակի, ջութակի եւ թաւջութակի համար, Մոցարթի Սինֆոնիա Քոնչերթանթէն:

Ունի բազմաթիւ կենդանի եւ սթուտիօ ձայնագրութիւններ:

(Շար. 1)

## 1 ԹԱՒՇԵԱՅ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԵՐԵՔ ՏԱՐԻՆ

Յստակ պէտք է ըլլայ՝ որ պատերազմը տեղի ունեցաւ *անկախ* յեղափոխութենէն:

Մայիս 3-ի Ազգային Ժողովի նիստին, վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեան աւելի քան իրատեսօրէն համառօտագրեց անցեալ երկու տասնամեակներու բանակցային ընթացքին կորիզը, նշելով՝ որ երբ հայկական կողմը առաջարկած է յանձնել 7 շրջանները, Ազըրպէճանը ըսած է՝ ոչ, երբ հայկական կողմը ընդունած է Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի ճշգրտումի հարցին մէջ ԼՂ-ի ամբողջ բնակչութեան մասնակցութիւնը՝ ներառեալ ազըրպէյճանցիները, Ազըրպէյճան ըսած է՝ ոչ: «Ադրբէջանն ամէն ինչին ասել է՝ ոչ: Ես պատերազմի ընթացքում մի քանի անգամ հարցազրոյց եմ տուել, ասել եմ՝ ցանկացած բան, որին համաձայն է Հայաստանը, յաջորդ պահին Ադրբէջանը դրան այլեւս համաձայն չէ, ինքն ուզում է աւելին», - կ՚եզրակացնէ Փաշինեան:

Այս կէտը, անկախ Փաշինեանի յայտարարութենէն, պէտք է շատոնց յստակ ըլլար մեզի: Ինչո՞ւ Ազըրպէյճան համաձայնի Հայաստանի հետ, եթէ կրնայ պատերազմով տիրանալ աւելիին: Ինչո՞ւ համաձայնի, եթէ կրնայ պատերազմի շնորհիւ տակաւին Ղարաբաղի կարգավիճակը թողուլ չլուծուած, այսինքն՝ պահպանել հակամարտութիւններու շատ կողմերով իրեն նպաստաւոր հողը:

Բայց կայ նաեւ միւս կողմը: Որքան որ հայերս հիմա ուզենք ներկայացնել՝ որ պատրաստ էինք յիշեալ տարածութիւնները յանձնել, ներքին հայկական առումով անկարելիութիւն մըն էր անիկա: Հայաստանի եւ Սփիւռքի մէջ տարածուած գերազգայնական ու վերազգայնական պատումնաբանութեան ծիրին մէջ, հողեր «յանձնող»-ը այլեւս պիտի դադրէր հայ ապրելու կարելիութենէն եւ կրնայ ըլլալ ենթարկուէր ահաբեկչութեան: Եւ այստեղ ալ շատ զարմանալի է, երբ Սերժ Սարգսեան՝ իր սովորական դարձած խօսքային մեքենայութիւններով, վերջին հարցազրոյցին մէջ փորձեց, եւ որոշ շրջանակներու համար յաջողեցաւ, ինքզինքը ներկայացնել իբրեւ այն անձը՝ որ արդէն Ալիեւի հետ հասած էր հողեր յանձնել-փոխանակելու համաձայնութեան եւ Հայաստանը պիտի փրկէր վերջին պատերազմէն: Սարգսեան պիտի չկրնար յարատեւել իբրեւ հայ՝ եթէ դիմէր նման քայլի: Եւ այն մարդը չէր՝ որ իր անձն ու օլիկարքական շքեղութիւնը զոհէր յանուն հայրենիքի եւ նման յորջորջումներու:

Ուշագրաւ է, որ հիմա Սարգսեան կ՚ուզէ ներկայանալ իբրեւ մեծ հայրենասէր՝ *ենթադրաբար* պատերազմը կանխած ըլլալու համար, մինչ այդ պատերազմը կանխելու համար ժամանակին դարձած պիտի ըլլար ամենամեծ դաւաճանը՝ *ենթադրաբար* հողերը «յանձնած» ըլլալու համար:

Արդ, Փաշինեան խորհրդարանի առջեւ կը ներկայացնէ հարցին միայն մէկ կողմը՝ որքան ալ ճիշդ ու իրական ըլլայ ան, իսկ Սարգսեան կը ներկայացնէ միւս կողմը՝ խեղաթիւրուած իրականութեամբ:

Յեղափոխութիւնը պատճառ չէր պատերազմին, բայց պատերազմը հաստատապէս ալ աւելի տկարացուց յեղափոխութեան ներունակութիւնները՝ յուրախութիւն թէ՛ Հայաստանի եւ թէ՛ Սփիւռքի օլիկարքական վերամրացումներուն:

Ա.

## 1 Ի՞ՆՉ Է ԿԱՏԱՐՈՒԵԼ ԵԽԽՎ-ՈՒՄ. ԳԵՐԻՆԵՐԻ ...

ներառուած միւս երեք հարցերի հետ:

Քուէարկութեան ընթացքը եւ արդիւնքները շահարկումների ենթարկուեցին մամուլում եւ քաղաքական շրջանակներում:

Հրատապ հարցերի փաթեթում ընդգրկուել են Ալեքսէյ Նաւալնու ձերբակալման եւ Թուրքիայում ժողովրդավարական ինստիտուտների գործունէութեանը վերաբերող հարցերը:Ընթացիկ հարցերի մէջ էին՝ Կորոնավիրուսի անձնագրերի եւ կորոնավիրուսի պատուաստանիւթի վկայագրերի վերաբերեալ հարցերը, Եւրոպայում խաղաղութեան ձգտման ռուսական սպառնալիքի եւ հայ գերիների եւ տեղահանուած անձանց մասին հարցերը: Ի վերջոյ, ԵԽԽՎ լիագումար նստաշրջանի օրակարգ անցան երկու ընթացիկ եւ երկու հրատապ հարց՝ ներառեալ հայ ռազմագերիներին վերաբերող հարցը: Ըստ ընթացակարգի՝ երկու փաթեթներն ընդունւում են երկու քուէարկութեամբ, սակայն, եթէ որեւէ անդամի կողմից լինում է բողոք կամ առարկութիւն, ապա որեւէ առանձին հարց կարող է դրուել առանձին քուէարկութեան:

Ապրիլի 19-ն կայացած նիստում Ադրբէջանի ներկայացուցիչ Սամադ Սեյիդովը միջնորդել է հայ ռազմագերիների հարցի համար անցկացնել առանձին քուէարկութիւն, ինչը բաւարարուել է: Սեյիդովի ելոյթից յետոյ, որն առկայ է տեսանիւթում, հայ ռազմագերիներին վերաբերող հարցը դրուել է առանձին քուէարկութեան: Կայացած քուէարկութեամբ հայ ռազմագերիների մասին հարցը ընդգրկուել է ԵԽԽՎ լիագումար նստաշրջանի օրակարգ՝ 93 կողմ, 21 դէմ եւ 18 ձեռնպահ ձայներով: Ռուսաստանի ներկայացուցիչներից 5-ը դէմ են քուէարկել հարցի օրակարգ ընդգրկուելուն, 7-ը՝ ձեռնպահ:

Ի դէպ, Ռուսաստանի ներկայացուցիչներից Սերգէյ Պախոմովը ռուսական պատուիրակութեան քուէարկութեան արդիւնքները մեկնաբանել էր որպէս «տեխնիկական խափանում»:

*Փաստերի ստուգման հարթակ*

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR

Armenian Weekly

P.O.Box 2111 (Cairo),

Tel.:(202)24530327,Fax:(202)24522282

E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1892 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՄԱՅԻՍ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դճկ. عدد رقم ١٨٩٢ الخميس ٢٠ مايو ٢٠٢١


## ՊԱՏԵՐԱԶՄ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Ղարաբաղի վերջին պատերազմին համար Համահայկական Հիմնադրամը Սփիւռքէն եւ Հայաստանէն հաւաքեց 170 միլիոն տոլլար: Լաւ է որ հայութիւնը կրցաւ կարճ ժամանակի մէջ այսքան գումար տրամադրել: Աւելի լաւ պիտի ըլլար եթէ ո՛չ պատերազմ ըլլար, ո՛չ ալ դրամահաւաք:

Ամենայն հայոց բարերարներ Սամուէլ Կարապետեան, Էտուարտօ Էռնէկեան, Գագիկ Ծառուկեան եւ ուրիշներ կրնային առանձին տալ այս գումարը եւ վերջացնել հարցը:

Նոյն բարերարները կրնային նաեւ առանձին հանդէս գալ մեծ նուիրատուութեամբ՝ Հիմնադրամէն անկախ: Պգտիկ բաներ մը ըրին, որպէսզի յետագային չմեղադրուին տուած չըլլալնուն համար:

Ինչո՞ւ 170 միլոն տոլլարը եկաւ փոքր նուիրատուներէ, ոմանք՝ իրենց օրապահիկը հազիւ ապահովող, բայց ոչ մեծահարուստ բարեգործներէ, որոնք քանի մը ժամուայ ընթացքին կրնային այս գումարին տասնապատիկը հայթայթել:

Պատճառը շատ պարզ է եւ կը գտնուի դրամատիրական բարեգործութեան համակարգին մէջ (*Ջահակիր* յօդուածաշար յատկացուցած է դրամատէր բարեգործին մասին, թիւ 1738-1741):

Բարեգործելու համար դրամատէրը պէտք է վստահ ըլլայ՝ որ իր դէմքը դառնայ կեդրոնական: Կը բարեգործէ՝ աղմուկով եւ աղաղակով: Ղարաբաղի պատերազմի պարագային, դրամատէր բարեգործը պիտի չկրնար յառաջ տանիլ իր դէմքը: Առաջնայինը պատերազմն էր: Պատերազմն էր առաջին դէմքը, դէպքը եւ իրադարձութիւնը, որուն ընդմէջէն բարեգործը պիտի չկրնար ըլլալ թիւ 1-ը: Մարդիկ հետաքրքրուած էին պատերազմով այլ ոչ *իր* բարեգործութեամբ:

Բաց ատի, այս բարեգործութիւնը պիտի չունենար մատնանշուած ստացող մը՝ բարեգործուող մը, որ որեւէ ձեւով հանրային երախտագիտութիւն արտայայտէր բարեգործին: Գումարը պիտի երթար անորոշ գինուորի մը օգնութեան, որ նոյնիսկ պիտի չիմանար դրամին աղբիւրը, կամ պիտի երթար որեւէ ուրիշ չմատնանշուած տեղ:

Կար նաեւ Համահայկական Հիմնադրամը, որ պատերազմի ժամանակ գրաւած էր բարեգործութեան առաջնագիծը: Բարեգործութիւնը Հիմնադրամն էր, որմէ դրամատէր բարեգործը պիտի չկրնար առաջնութիւնը խլել: Դրամատէր բարեգործներուն համար պատերազմ մըն է բարեգործութիւնը: Պէտք է յաղթեն ու դառնան առաջին դէմք:

Դրամատիրական բարեգործութիւնը *անհատական* (անհատապաշտական) պատասխանն է *հասարակական* ցաւի, պայմանով որ այդ անհատականութիւնը գերադասուի հասարականէն: Ղարաբաղի պատերազմին հաւաքական վիշտը եւ հասարակական ներգրաւուածութիւնը այնքան ուժեղ էին, որ բարեգործական անհատականութիւնը պիտի չկրնար բարձրանալ անոնցմէ:

Գերհարուստ բարեգործը պէտք է ներկայանայ իբրեւ հերոս, մինչդեռ պատերազմը պիտի ունենար իր սեփական հերոսները՝ աւելի ազդեցիկ քան բարեգործ հերոսը:

Դրամատիրական բարեգործութիւնը միջոց մըն է ազդելու կառավարութիւններուն վրայ, ջնջելու ժողովրդավարութիւնը եւ երկիրի բանալի որոշումները փոխանցելու բարեգործներուն տիրապետութեան տակ եղող անդրազգային ընկերութիւններուն: Հայ բարեգործները ոչ մէկ ձեւով պիտի կրնային աւելցնել իրենց ազդեցութիւնը նահանջող պատերազմի ընաբանին տակ:

Նաեւ անոնք ոչ մէկ ձեւով կրնային բարեգործութեան միջոցով դիմել սովորական դարձած դրամի լուացումի քայլին՝ որպէսզի այդ դրամը վերայայտնուէր իրենց ձեռնարկութիւններուն մէջ կամ անոնց անհրաժեշտ ենթակառուցուածքի կարգադրութեան համար: Ասիկա պատահած է Համահայկական Հիմնադրամի հին վարչութեան ժամանակ: Բարեգործը տուած է հսկայ գումար, պայմանով որ կառավարութիւնը այդ նոյն դրամը գործածէ իր ձեռնարկութեան ի նպաստ: Թէ՛ հիմնադրամը ուրախացած է դրամահաւաքի գումարը բարձր ներկայացուցած ըլլալու համար, թէ՛ բարեգործը դարձած է բարեգործ: Հիմնադրամի ներկայ ղեկավարութեան ժամանակ նման բան չլսեցինք, առաւել եւս, այդ դրամը նպատակաուղղուած էր պատերազմի հետքերը բուժելու: Տեղ չկար դրամի լուացումի:

Դրամատիրութիւնը նաեւ տարածքային ընդլայնում է՝ քաղցկեղային ընդլայնում: Դրամատիրութիւնը աճելու համար նոր տարածութիւններ գալթելու կարիք ունի՝ ըլլայ տուեալ պետութեան սահմաններուն մէջ կամ անկէ դուրս: Ներկայ պատերազմին, ներքին կամ արտաքին տարածքներ գալթելը կը դառնար անհնար, քանի որ անխուսափելի պարտութեան հետեւանքով տարածքներ կորսուեցան ու պակսեցան՝ հայկական կողմին համար: Ուրեմն, ինչո՞ւ դրամ տալ կորսուող դրամատիրութեան համար:

Դրամատէրերը կու տան՝ երբ որ *իրենք* ուզեն, *իրենք* որոշեն եւ մանաւանդ *իրենք* սահմանեն կարիքաւորը: Այս պատերազմի պարագային, *պատերազմն* էր որոշողն ու սահմանողը, պատերազմն էր որ պիտի ուղղորդէր անոնց, այլ ոչ թէ անոնք՝ պատերազմին:

Եւ ճիշդ այդ չտուող մեծահարուստն է որ ընդհանրապէս կը փառաբանուի սփիւռքահայ մամուլին մէջ՝ իբրեւ տուող: Այլապէս չտուող, բայց տուող՝ «մտաւորական»-ին, որպէսզի պայծառեցնէ իր դէմքը, հարցազրոյցներ վարէ հետը:

Յաճախ կը մշակութականացուի այս բարեգործ դրամատէրը, կը դրամագերծուի իր տիպարը եւ կը ներկայացուի իբրեւ արուեստն ու մշակոյթը քաջալերող անձնաւորութիւն: Այս մշակութականացնողները «մտաւորականներ» են, որոնց թիւը բնաւ քիչ չէ Սփիւռքի մէջ: *Այս* մտաւորականներն են որոնք կը տիրեն հիմնահոսանքի ուղղութեան եւ մտածելակերպին վրայ, կը խանգարեն անկախ մտաւորականի գործունէութիւնը: Անոնք կը ծածկեն դրամատէրերուն շահագործումները, այդ *հսկայ* շահագործութիւններէն վաստակած դրամի *աննշան* մասին բարեգործումը համարելով ազգային զոհողութիւն:

Ա.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ ԿԸ ՀՐԱԺԱՐԻ ՎԱՐՉԱՊԵՏԻ ՊԱՇՏՕՆԷՆ

Յունիս 20-ի խորհրդարանական արտահերթ ընտրութիւնները կեանքի կոչելու համար, ըստ սահմանադրութեան, վարչապետը նախ պէտք է հրաժարական տայ եւ ապա խորհրդարանը երկու անգամ չընտրէ վարչապետ:

Այս ծիրին մէջ, Ապրիլ 25-ին Փաշինեան տուաւ իր հրաժարականը, իսկ Մայիս 3-ին եւ 10-ին խորհրդարանը յաջորդաբար երկու անգամ չընտրեց վարչապետ:

Մինչեւ արտահերթ ընտրութիւնները, Փաշինեան պիտի շարունակէ գործել իբրեւ վարչապետի պաշտօնակատար:

## ԱԺ-Ն ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԸՆԴՈՒՆԵՑ ՍՏԵՂԾՈՒԱԾ ԻՐԱՎԻՃԱԿԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

Մայիսի 14-ին Ազգային Ժողովը միաձայն 86 կողմ քուէարկութեամբ ընդունեց յայտարարութիւն վերջին օրերին Ադրբէջանի գործողութիւնների հետեւանքով ստեղծուած իրավիճակի վերաբերեալ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՍԱՀՄԱՆԱՄԵՐՁ ԳՕՏԻՆԵՐՈՒՄ, ՄԱՍՆԱՒՈՐԱՊԷՍ՝ ՍԻՒՆԻՔՈՒՄ, ԳԵՂԱՐՔՈՒՆԻՔՈՒՄ ԵՒ ՎԱՅՈՑ ՁՈՐՈՒՄ ՍՏԵՂԾՈՒԱԾ ՃԳՆԱԺԱՄԱՅԻՆ ԻՐԱՎԻՃԱԿԻ, ԱՌԿԱՅ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԵՒ ԴՐԱՆՑ ԼՈՒԾՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԻ, ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ ԱՊԱՀՈՎՄԱՆՆ ՈՒՂՂՈՒԱԾ ՀԱՐՑԵՐԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովն արձանագրում է, որ 2021 թուականի Մայիսի 12-ին Սիւնիքի մարզում Սեւ Լճի տարածքից ադրբէջանական զինուժը հատել է Հայաստանի Հանրապետութեան պետական սահմանը, խորացել մի քանի կիլոմետր դէպի Վերիշէն բնակավայր: Հայաստանի Հանրապետութեան պաշտպանութեան նախարարութիւնը հաստատել է, որ ադրբէջանական զինուժի կողմից «սահմանների ճշգրտման» պատրուակով իբր կատարուել են որոշակի աշխատանքներ Սիւնիքի սահմանային հատուածներից մէկում:

Ակնյայտ է, որ ադրբէջանական զինուժի այս գործողութիւններն անընդունելի են Հայաստանի Հանրապետութեան համար, դա ակնյայտ ոտնձգութիւն է Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխան տարածքի նկատմամբ եւ Հայաստանի Հանրապետութիւնը չի հանդուրժի ստեղծուած իրավիճակը:

Սոյն թուականի Մայիսի 13-ին տեղի է ունեցել Հայաստանի Հանրապետութեան անվտանգութեան խորհրդի եւս մէկ արտահերթ նիստ, որում արձանագրուել է, որ արդէն երկրորդ օրն է Սիւնիքի մարզի Սեւ Լճի շուրջ եւ մերձակայ տարածքներում պայթիւնավտանգ իրավիճակ է: Ադրբէջանական զինուժի շուրջ 250 ներկայացուցիչներ այս պահին շարունակում են գտնուել Հայաստանի Հանրապետութեան տարածքում՝ Սիւնիքի եւ Գեղարքունիքի մարզերի որոշ հատուածներում:

Հաշուի առնելով Ադրբէջանի վարած հակահայկական ռազմատենչ քաղաքականութիւնը, Ադրբէջանի ղեկավարութեան կողմից վերջին շրջանում Հայաստանի Հանրապետութեան տարածքային ամբողջականութեան նկատմամբ բացայայտ սպառնալիքներ, այդ թւում՝ ուժի կիրառման սպառնալիքներ պարունակող յայտարարութիւններ եւ պետական քաղաքականութեան մակարդակ բարձրացուած հայատեացութիւնը՝ Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովը խստագոյնս դատապարտում է Ադրբէջանի կողմից Հայաստանի Հանրապետութեան տարածքային ամբողջականութեան նկատմամբ ոտնձգութիւնները եւ փաստում, որ Ադրբէջանի կողմից վարուող ագրեսիւ քաղաքականութիւնը խախտում է միջազգային իրաւունքի հիմնարար նորմերը, այդ թւում՝ ՄԱԿ-ի Կանոնադրութեան 2-րդ յօդուածում ամրագրուած սկզբունքները, ինչը Հայաստանի Հանրապետութեանն իրաւունք է տալիս հակադարձել

↳ 4

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

(մահուան առիթով

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**ՍԿԱՒԱՌԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ (DISCOGRAPHY)**

**Սկաւառակներ ($33\frac{1}{3}$ rpm)**

1. Arnold Schoenberg: Chamber Symphony, Op. 9 (for fifteen solo instruments)

Chamber Ensemble: Robert DiDomenica, *flute, piccolo*; Ronald Roseman, *oboe*; Philip West, *English horn*; Ernest Bright, *E-flat clarinet*; Charles Russo, *clarinet*; Jack Kreiselman, *bass clarinet*; Arthur Weisberg, *bassoon*; Mark Popkin, *contra-bassoon*; Paul Ingraham, *horn*; Howard Hillyer, *horn*; Matthew Raimondi, *first violin*; Gerald Kantarjian, *second violin*; Samuel Rhodes, *viola*; Michael Rudiakov, *violoncello*; Stuart Sankey, *double bass*; Gunther Schuller, *conductor*

Atlantic Recording Studios, New York

Finnadar SR 9008; 1975

2. Leoš Janáček: Concertino for solo Piano, 2 Violins, Viola, Clarinet, Horn and Bassoon

Antonin Kubalek, *piano*; Gerhard Kantarjian and Clara Odynski, *violin*; Carol Rowe, *viola*; Blago Simeonov, *clarinet*; Brad Warnaar, *horn*; Christopher Weait, *bassoon*

Canadian Broadcasting Corporation SM 319; recorded 1976, released 1977

3. Raymond Leylekian and his Quintet

With virtuoso violinist Gerard Kantardjian

Raymond Leylekian: Andante and Capriccio for violin and piano dedicated to the great composer Aram Khachaturian and appreciated by him in 1961 Cairo

Raymond Leylekian Production RLP 012980; 1979

4. Gerard Kantarjian Violin Recital




Թորոնթոյի մենահամերգի սկաւառակին կողքը, Masters of the Bow MBS 2016, արտադրութիւն՝ 1983:

Marguerita Oundjian, *piano*

Recorded live

Toronto recital, 7 March 1982

Johannes Brahms: Sonata No. 3 in D minor, Op. 108

Pablo de Sarasate: Danzas Españolas No. 3: Romanza Andaluza, Op. 22, No. 1

Pablo de Sarasate: Danzas Españolas No. 2: Habañera, Op. 21, No. 2

Aram Khachaturian: *Gayaneh*: Scene of Ayesha and Gayaneh, No. 23

Frédéric Chopin: Nocturne Op. 9, No. 2 in E flat major (arr. Sarasate)

Niccolò Paganini: *Nel cor più non mi sento*, Sonata appassionata con variazioni

Maurice Ravel: Piece en forme de habanera (arr. G. Catherine)

Grigoras Dinicu: *Hora staccato* (arr. Heifetz)

Masters of the Bow MBS 2016; 1983

**Խտասալիկներ (CD)**

5. The Rembrandt Trio: Valerie Tryon *piano*, Gérard Kantarjian *violin*, Coenraad Bloemendal *cello*

Felix Mendelssohn: Piano Trio No. 1 in D minor, Op. 49

Franz Schubert: Piano Trio No. 1 in B-Flat major, Op. 99, D. 898

Dorian Recordings DOR-90130; Date: 1990

6. The Rembrandt Trio

Pyotr Il'yich Tchaikovsky: Piano Trio in A minor, Op. 50

Anton Stepanovich Arensky: Piano Trio No. 1 in D minor, Op. 32

Dorian Recordings DOR-90146; 1991

7. The Rembrandt Trio

Johannes Brahms: Piano Trio No. 1 in B major, Op. 8

Antonín Dvořák: Piano Trio No. 4 in E minor, Op. 90, B. 166, *Dumky*

Dorian Recordings DOR-90160; 1992

8. The Rembrandt Trio

Cécile Chaminade: Piano Trio No. 1 in G minor, Op. 11

Camille Saint-Saëns: Piano Trio No. 1 in F major, Op. 18

Maurice Ravel: Piano Trio in A minor

Dorian Recordings DOR-90187; 1993

9. The Rembrandt Trio

Salon Classics

Johannes Brahms: Hungarian Dance No. 1 (arr. Borch)

Johannes Brahms: Hungarian Dance No. 2

Johannes Brahms: Hungarian Dance No. 3

Robert Schumann: *Kinderszenen*, 'Träumerei' (arr. Klugescheidt)

Antonín Dvořák: Humoresque Op. 101, No. 7 (arr. Gustav Saenger)

The Rembrandt Trio-ի *Salon Classics* խտասալիկին կողքը, Dorian Recordings DOR-90222, արտադրութիւն՝ 1995:

Antonín Dvořák: Slavonic Dance Op. 72, No. 1 (arr. Alexander Rapoport)

Josef Suk: Élégie Op. 23

Fritz Kreisler: *Marche miniature viennoise*

Edvard Grieg: *Peer Gynt Suite No. 1*, 'Solveig's Song' (arr. Alexander Rapoport)

Edvard Grieg: *Peer Gynt Suite No. 1*, 'Anitra's Dance' (arr. Alexander Rapoport)

Franz Liszt: *Liebestraume*, (arr. Klugescheidt)

Victor Herbert: *Babes in Toyland* (arr. Alexander Rapoport)

Camille Saint-Saëns: *Samson et Dalila*, 'Mon coeur s'ouvre à ta voix' (arr. Klugescheidt)

Claude Debussy: *Children's Corner*, 'Golliwogg's Cake-Walk' (arr. Alexander Rapoport)

Claude Debussy: *Suite bergamasque*, 'Claire de lune' (arr. Alexander Rapoport)

Benjamin Godard: *Jocelyn*, 'Berceuse' (arr. for piano trio)

Emmanuel Chabrier: *España* (arr. Ernest Alder)

Dorian Recordings DOR-90222; 1995

**Ներբեռնելի MP3 (Downloadable MP3)**

10. Niccolò Paganini: 24 Caprices

Gerard Kantarjian, *violin*

Live recording

Gerard Kantarjian; 2012

(Ներբեռնելի հետեւեալ ցանցերէն՝ Amazon; Apple Music; Napster)

Փականինիի 24 Քափրիսներու ներբեռնելի MP3-ի թուային կողքը, արտադրութիւն՝ 2012: Կողքի գեղանկար-ծաղրանկարը Գանթարճեանն է՝ Ալեքսանդր Սարուխանի վրձինով, 1944:

Այս բոլորէն զատ, նկատի ունենալով Գանթարճեանի անընդհատ մասնակցութիւնը զանազան խումբերու եւ համոյթներու, իր անունը կարելի է հանդիպիլ փոլք եւ ճազ ձայնագրութիւններու մէջ իբրեւ գործիքային կազմերու անդամ, ինչպէս.

Moe Koffman: *Rock Bach to me* (LP; CBS 73246; 1973)

Bob Lucier: *Nerves of Steel* (LP; Canadian Talent Library CTL 5204; 1977)

The Duncan Sisters (LP; Earmarc Records EMLP 4001; 1979)

Glen Rutledge: *I Found a New World* (LP; Mainroads Productions Inc GRM 1080; 1980)

Hagood Hardy: *Chasing a Dream* (LP; Duke Street Records DSR 31000; 1983)

Keath Barrie: *Twilight Zone* (LP; United Artists Records UALA 727G; 1983)

John McDermott: *Battlefields of Green* (CD; Angel CDC 0777 7 54825 2 2; 1992)

John McDermott: *Danny Boy* (CD; Emi Angel CDM 54772; 1992)

Molly Johnson (CD; Oasis Entertainment Inc. 99057 00162; 2000)

(Շար. 2)

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆԸ ՄԵԿՆԵԼ Է ՍԻՒՆԻՔ

Հայաստանի Մարդու Իրաւունքների պաշտպան Արման Թաթոյեանի գլխաւորած պատուիրակութիւնը մեկնել է Հայաստանի Սիւնիքի մարզ՝ սահմանների հետ կապուած իրավիճակին տեղում ծանօթանալու, փաստահաւաք աշխատանքների եւ սահմանային բնակիչների իրաւունքների պաշտպանութեան նպատակով: Հայաստանի Մարդու Իրաւունքների պաշտպանն ի գիտութիւն միջազգային կառոյցների յատուկ արձանագրում է, որ ադրբէջանական զինուած ուժերի անօրինական առաջխաղացումը դէպի Հայաստանի սահմաններից ներս, մասնաւորապէս՝ Սեւ Լճի տարածք ու այդ տարածքից դէպի քաղաքացիական բնակավայրեր ընկած հատուած կոպտօրէն խախտում է Հայաստանի սահմանային բնակիչների իրաւունքները, ունի մարդկանց ահաբեկելու նպատակ:

Ադրբէջանական զինուորականների ներկայութիւնը կոպտօրէն խախտում է Մարդու Իրաւունքների միջազգային պահանջները եւ զրկում է Հայաստանի քաղաքացիներին իրենց ընտանիքների եկամտի միակ աղբիւր անասնապահութեամբ զբաղուելու, արօտավայրերն օգտագործելու հնարաւորութիւնից, իրական վտանգ է ստեղծում համայնքների բնակիչների համար ոռոգման ու խմելու ջրի հասանելիութեան, նրանց կեանքի ու անվտանգութեան համար:

Ադրբէջանական զինուած ուժերի նշուած անօրինական արարքը եւս մէկ անգամ ապացուցում է անվտանգութեան գօտի ստեղծելու Մարդու Իրաւունքների պաշտպանի առաջարկի բացարձակ անհրաժեշտութիւնը, ինչը հնարաւորութիւն կը տայ երաշխաւորել Հայաստանի սահմանային բնակիչների իրաւունքներն ու խաղաղ կեանքը, ֆիզիկական ու հոգեկան անձեռնմխելիութիւնը: Սիւնիքի մարզ Պաշտպանի այցի ընթացքում տեղում յատուկ սկզբունքով կ'իրականացուեն փաստահաւաք աշխատանքներ, կը ձեռնարկուեն Հայաստանի սահմանային բնակիչների իրաւունքների պաշտպանութեանն ուղղուած քայլեր:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՕԼԻԳԱՐԽԻԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ Է ՊԱՅՔԱՐԵԼ ՅԱՆՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՇՐՋԱՓԱԿՄԱՆ

ԳԱՅԵԱՆԷ ԱՅՎԱԶԵԱՆ

Ղարաբաղեան կոնֆլիկտը՝ կենդանի թէ մեռած, ունի մէկ իմաստ եւ նշանակութիւն՝ ծառայել փողի իշխանութեանը: 30 տարի շարունակ այս կոնֆլիկտը սնել եւ հարստացրել է Հայաստանի, Ղարաբաղի եւ Սփիւռքի քրէա-օլիգարխիային՝ ի հաշիւ Հայաստանում եւ Ղարաբաղում ապրող քաղաքացիների կեանքի: Եւ քրէա-օլիգարխիան չի ուզում նահանջել. դժուար է ասել, թէ որոնք են վերջինիս գաղափարաբանների հաշուարկները մշտաբորբոք պահել Ղարաբաղեան խնդիրը եւ գլխաւորապէս երկարաձգել Հայաստանի անկլաւային վիճակը տեղի ունեցող աշխարհա-քաղաքական փոփոխութիւնների պայմաններում, բայց հաշուի առնելով քրէա-օլիգարխիկ կապիտալիզմի թալանչիական եւ անկլաւային բնոյթը՝ պէտք չէ ակնկալել, որ այս կապիտալի ներկայացուցիչները պատրաստւում են վերաճշգրտել իրենց դիրքը նոր պայմաններում: Այն, ինչին մենք ականատես ենք լինում՝ Թուրքական ապրանքների նկատմամբ էմբարգոյից եւ գների թանկացումից մինչեւ սահմանային միջադէպերը, ունեն մեն-մի նպատակ՝ հնարաւորինս սադրել ապաշրջափակումը եւ երկարաձգել փակ անկլաւի գոյութիւնը: Այս անկլաւային կապիտալին են սպասարկում մանկապարտէզներից մինչեւ համալսարաններ ու քաղաքական վերլուծագանդեր, որոնք արտադրել են մեյնսթիմ գաղափարախօսութիւններ՝ մարդկանց ներարկելով վախ եւ հաշմելով նրանց յանուն ↪ 4

## ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆԵԱՆԸ ՑՈՅՑ ՏՈՒԵՑ ԹՈՒՂԹ՝ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻ ԸՆՏԱՆԻՔԻ ՈՒՆԵՑՈՒԱԾՔԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

«Շատ ծանր օր էր նախօրէն. Մարտի մէկը, Հոկտեմբերի 27-ը ձեռք ձեռքի խուժեցին Ազատութեան Հրապարակ», - ԱԺ յատուկ նիստում Մայիսի 10-ին ասաց պատգամաւոր Արման Բաբաջանեանը:

«Տարիներ շարունակ ազատութեան գաղափարները այլասերածները, ժողովրդավարական արժէքները ոտնահարածները, ընտրական համակարգը ոչնչացրածները, ընտրութիւնների ժամանակ բռնութիւնը՝ որպէս գործիք օգտագործածները խօսում են այդ նոյն Ազատութեան Հրապարակից օրինականութեան հաստատման մասին: Սեփական ժողովրդին ունեզրկած ու գնդակահարած ռազմաքաղաքական խունտան խոստանում է լեգիտիմ իշխանութիւն ձեւաւորել: Համակարգային կոռուպցիայի հայրերը երդւում են պայքարել պետական թալանի դէմ: Մեղրին Ադրբէջանին յանձնողը խօսում է Սիւնիքի անվտանգութեան ապահովման մասին: Արցախը բանակցային սեղանից դուրս թողածը խոստանում է վերադարձնել ոչ միայն օկուպացուած Հադրութը, Շուշին ու գերիներին, այլեւ վերականգնել Արցախի տարածքային ամբողջականութիւնը: Պաշտօնավարման ողջ ընթացքում Արցախն ու Հայաստանը սպանութիւնների թատերաբեմ դարձրած յանցագործը խօսում է երկրում օրինականութիւն հաստատելու իր վճռականութեան մասին: Պաշտօնավարման 10 տարիներին միայն Հայաստանում էջերով սեփականութիւն դիզածը, չհաշուած որդիների ու հարսների, փեսաների անուններով ձեւակերպածները, այժմ խոստանում է ուժեղ Հայաստան կառուցել, միայն թէ իշխանութիւնն իրենը դառնայ», - ասաց նա:

Արման Բաբաջանեանը յաւելեց, որ իր ձեռքի տակ է մի քանի էջից կազմուած թուղթ՝ Ռոբերտ Քոչարեանի ընտանիքի ունեցուածքի վերաբերեալ: Նա այդ փաստաթուղթը ցուցադրեց ԱԺ ամբոնից: «Եւ հարց եմ տալիս իշխանութեանը՝ էս ամբողջ ունեցուածքից, հազարաւոր ունեցուածքից ի՞նչ էք կարողացել այս երեք տարիների ընթացքում յետ բերել պետութիւնից եւ ժողովրդի գողացածներից: Այս ամէնը հնարաւոր դարձաւ ձեր իշխանութեան անկարողութեան պատճառով: Նա, ով ժողովրդի ջարդն սկսել էր Ազատութեան Հրապարակից, ապա Երեւանի կենտրոնում շարունակել գնդակահարութեամբ, այդ հրապարակից ազդարարում է իր վերադարձը: Անձը, ով հիմա պէտք է չոքեչոք ազատութիւն աղերսէր, յայտնուել է Ազատութեան Հրապարակում: Մեր երկիրը գաւթեցին դրսից, հիմա փորձում են գաւթել նաեւ ներսից: Մեր ժողովուրդը ձեզ այսպիսի մանդատ չէր տուել, յարգելի իշխանութիւն, իրաւունք չէր տուել մեր վզին փաթաթել այսպիսի յանցագործների: Ձեր իշխանութիւնն է պատասխանատու Ազատութեան Հրապարակը պղծելու համար: Գալ իշխանութեան կոռուպցիայի դէմ պայքարի, արդարութիւն հաստատելու յանձնառութեամբ ու տապալել այդ գործընթացն այնպէս, որ բոլոր կոռուպցիոներներն ու մարդասպանները դարձել են ընդդիմադիր քաղաքական գործիչներ ու ցանկանում են ռեւանշի միջոցով հասնել իշխանութեան», - յաւելեց նա:

ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

**գ. Մշակութային ազգայնականութիւն՝ ներքին եւ արտաքին հանդուրժողականութեան սկզբունքով**

Հազարամեակներ շարունակ կը պտըտինք 3-4 խնդիրներու շուրջ եւ անոնցմէ դուրս չենք ուզեր ելլել: Այս խնդիրներէն մէկը աշխարհի նկատմամբ մեր դիրքորոշումն է, քանի որ աշխարհը կ՚ընկալենք բախումնային (կոնֆլիկտային) եղանակով, ուր ազգայինը կը դառնայ պաշտպանողական օղակ: Այսինքն, եթէ չընդգծենք մեր հայեցիութիւնը, բոլորը կը ոչնչացընեն մեզի: Ասիկա կը սահմանափակէ մեր գործելու տարբերակները որովհետեւ մեր սահմանած քառակուսիէն անկարող կ՚ըլլանք դուրս գալ: Ներկայ դարաշրջանին կը շահին այն հասարակութիւնները, որոնք ազգայինը այդ շրջանակէն կը վերածեն աւելի խոր եւ հետաքրքրական մշակութային շրջանակի: Եթէ հայ ըլլալուն կը նայինք իբրեւ մշակոյթ, այլ ոչ իբրեւ մարդու ապրիլը սահմանափակող եւ ի սկզբանէ կանխորոշող հիմք, մշակոյթը շատ աւելի գրաւիչ կը դառնայ եւ ցանկութիւն կը յառաջանայ զայն ճանաչելու եւ ուսումնասիրելու: Հայ ըլլալը պէտք է դարձնել այնպիսի յղացում՝ որ ըլլայ ինքնիրացուելու հնարաւորութիւններէն մէկը, դառնայ մրցունակ գաղափար այսօրուայ հազարաւոր գաղափարներուն մէջ:

Հայ ըլլալը նախ եւ առաջ մշակոյթ է՝ էթնիքականութիւն ըլլալէ առաջ: Կարեւոր է իմաստաւորել այս մտայղացումը եւ մատուցանել հասարակութեան: Պէտք էր ունենայինք ձեւաւորուած մտայղացում՝ որ ըլլար հետաքրքրական եւ իր մէջ ներառնէր հիմնական մարդու իրաւունքներու հանդէպ միանշանակ յարգանք, որովհետեւ ան պէտք է ըլլար հասարակութեան գործառնութեան հիմքը: Հասարակութիւնը պէտք է հիմնուած ըլլայ մէկը միւսին յարգելու վրայ՝ անկախ թէ դիմացինը ինչպիսին է, յառաջադունէ ընդունելով այդ գաղափարը: Ցարձակողականութիւնը երբեք լաւ բանի չի յանգեցներ: Հանդուրժողականութիւն եւ ներել իրարու: Մենք նոյնիսկ չենք ներած մենք մեզի՝ կորսնցուցած հայրենիքի համար, ունեցած թէ չունեցած արժէքներու այլասերումին համար, մեր թերութիւններուն համար, փորձելով միշտ դառնալ իտէալական:

Դժբախտաբար այնպէս կը ստացուի, որ այն մարդիկ որոնք շատ աւելի հանդուրժող են մեր հասարակութեան մէջ, այսինքն կրնան այլընտրանքային դրսեւորումներուն հանդէպ հանգիստ վերաբերմունք ունենալ՝ անկախ թէ այդ այլընտրանքը կրօնական է, էթնիք, մշակութային կամ սեռական, անոնք իրենց հանդուրժողականութեամբ կը նպաստեն մեծամասնութեան անհանդուրժողականութեան եւ յարձակողականութեան աճին:

**դ. Վերացական եւ իրապաշտ հայրենասիրութիւններ**

Հայրենասիրութիւնը ընդունելի է արհաւիրքներու եւ պատերազմներու ժամանակ: Ասիկա հասկնալի է: Բայց հայրենասիրութիւնը՝ իբրեւ այդպիսին, վտանգաւոր գաղափար է, որովհետեւ ան թոյլ կու տայ վերացականը սիրելով չսիրել ճշգրիտը (կոնկրէտ): Զգիտնալով թէ ինչ է հայրենիքը եւ ուր կը սկսի ու կը վերջանայ ան՝ ծովէ ծով թէ Սեւանէն Գառնի, կախուած թէ ով ինչ զարգացումի ծրագիրներ ունի, հանգիստ թոյլ կու տայ որ մենք չսիրենք մեր քովի մարդուն, մեր փողոցը, մեր բակը, մեր դրացիները, խանութի վաճառողը:

Ազգայնական հակումները սնապարծութենէն անդին չեն անցած: Ազգային սնապարծութիւնը թոյլ կու տայ ազգային արժէքները ընդունելով վիրթիւալ մակարդակի վրայ, իրական կեանքին մէջ հանգիստ կերպով ապրիլ բոլորովին այլ արժէքներով, ինչ որ Վարդգէս Պետրոսեան կոչած էր «բանաւոր հայրենասիրութիւն»: Ասիկա հայերուն մօտ շատ տարածուած է եւ ներկայ քաղաքական վերնախաւը կը տառապի անկէ, որովհետեւ, ըստ Էութեան, հիմա այդ վերնախաւը կը կիրարկէ Նժդեհական գաղափարախօսութիւնը.

«Ինքը ըստ էութեան ֆաշիստական գաղափարախօսութիւն է Նժդեհական գաղափարախօսութիւնը, եւ ժամանակակից Հայաստանում նման գաղափարախօսութեան արդէն քանի տարի իշխող քաղաքական ուժի կողմից որդեգրելը հնարաւոր է միայն այն պարագայում՝ երբ ինքը այդ սնապարծութեան մակարդակով է ընկալւում, այսինքն, հաւատացած եմ, մեզանից ոչ մէկը չի հաւատում՝ որ օրինակ Սիւնիքի մարզպետը՝ Սուրիկ Խաչատրեանը, Նժդեհական գաղափարախօսութեան կրող է, կամ Սամուէլ Ալեքսանեանը, այսինքն, ես վստահ եմ, բոլոր այդ մարդիկ ռեւէ կերպ չէին կարող առոցացուել ինչ որ գաղափարախօսութեան հետ, կապ չունի ինչ, եթէ այդ գաղափարախօսութիւնը ռէալ լինէր:

«Իսկ Նժդեհեան գաղափարախօսութիւնը ինքը իրականում շատ վտանգաւոր է մեզ համար որպէս հասարակութիւն 21-րդ դարում, որովհետեւ հիմնուած է աշխարհի հանդէպ ագրեսիւ կոնցեպցիայի, աշխարհից փակուելու եւ սեփական գերազանցութիւնը մնացեալ հասարակութիւնների նկատմամբ սահմանելու մոլուցքով: [...] Եթէ հանենք բոլոր սիրուն բառերը [սա կը լինի իր կմախքը]: [...] Չի կարող հասարակութիւնը մնացած աշխարհին այդպէս վերաբերուի եւ շարունակի մտածել՝ որ միւսները իրեն լաւ պիտի վերաբերուեն: Այդպէս չի լինում: Այսինքն, չենք կարող բոլորին ձեռ առնել մտածելով՝ որ միւսները յիմար են, ոչինչ չեն հասկանում, կամ դրանք ով են, կարող ենք բոլորին խաբել, մոլորեցնել, եւ այլն, որ հայերը առաջինն են, իրենք քրիստոնէութիւն են ընդունել, իրենք այս են արել, այն են արել: Փորձը ցոյց է տալիս, որ մեր հարեւան վրացիները՝ ում մենք սիրում ենք ծաղրել, շատ աւելի յառաջ են գնում հէնց հասարակութեան հիմնարար ազատութիւնների սահմանման, մարդու իրաւունքների յարգման, քաղաքացիների որպէս ինքնորոշուած կեցութեան հաստատման հարցերում քան մենք՝ որ ծաղրում ենք նրանց:

«Նժդեհականութիւնը հիմա ինքը պէտք է ունենայ այլընտրանքային կոնցեպցիա մեր հասարակութեան մէջ որը կարող է նոյնչափ բարձրաձայն խօսել: Մենք այս պահին չունենք: Մենք ունենք մենախօսութիւն, մենախօսութիւնը հասարակութեան մէջ ամենավտանգաւոր բանն է: Ժամանակակից աշխարհը հիմնուած է բազմակերպութեան, բազմազանութեան, այդ արագութեան վրայ: Եթէ մենք չենք պատասխանում այդ աշխարհի հիմնական տենդենցներին ու մենք չենք համապատասխանում այդ սոցիալական իրականութեան հիմնական միտումներին, մենք պիտի հասկանանք որ մենք դրանից դուրս ենք յայտնուելու, մենք դադարելու ենք ռէալ լինել որպէս ազգ, մեզ գալու են [իրենց համար հետաքրքիր կերպով] նայեն որպէս ինչ որ աբորիգէնների՝ որոնք կարող էին ապրել Ամազոնի անտառներում: Մեր ժամանակակից այդ գերիշխող հերոսները կամ գաղափարախօսութիւնները հէնց աբորիգէնային են [...]»:

**ե. Եզրափակում**

«Ես չգիտեմ թէ ով պէտք է սկսի դրանով զբաղուել, երեւի բոլորս: Միշտ ամենասխալը այն է՝ երբ մենք ինչ որ կառոյցի վրայ գցում ենք պատասխանատուութիւնը: Մեզանից իւրաքանչիւրը պէտք է գիտակցի այն ամէն ինչը ինչ ինքը տեսնում է որովհետեւ մենք

↪ 4




## 3 ՕԼԻԳԱՐԽԻԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ Է ՊԱՅՔԱՐԵԼ ՅԱՆՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՇՐՋԱՓԱԿՄԱՆ

անկլաւային կապիտալի:

Դպրոցներից մինչեւ ակադեմիա վերարտադրւում են նացիստական գաղափարներ, որոնք անընդհատ գեներացնում են մարդկանց արտաքին թշնամիներից պաշտպանելու իմիտացիա, իրականում իզոլացնում են նրանց եւ ստրկացնում: Այս պայմաններում ապրող հասարակութեանը կարելի է հասկանալ, կարելի է ըմբռնել, բայց չի կարելի ընդունել անվերջ այս վիճակում մնալու եւ դրանից դուրս գալու ճանապարհներ չփնտրելու պարագան: Չի կարելի անվերջ ու անդադար ներս ընդունել այն ամբողջ աղբը, որ վերեւից պարտադրւում է իբրեւ գիտելիք, իբրեւ կեանքի ձեւ, իբրեւ վարք:

30 տարի շարունակ այս պետութիւնը բռնազաւթել էր եւ մտել մէկ ուրիշ պետութեան սահմաններ: Մենք, իհարկէ, համարում ենք, որ Ղարաբաղի ինքնապաշտպանական ուժերն էին իրենց տիրապետութեան տակ առել եւ պահում Ադրբէջանի եօթ շրջանները: 30 տարի շարունակ հայկական ինտերվենցիայի արդիւնքում հարիւր հազարաւոր մարդիկ են դարձել փախըստական, լքել իրենց տները, քաղաքներ ու գիւղեր են քանդուել, մշակութային եւ մարդկային կորուստներ եղել: Այս ամէնը եղել է: Մենք հանգիստ ու հանդարտ ապրում էինք այս իրողութեան հետ: Հասկանալի է՝ մենք չէինք անձամբ քշել այս մարդկանց իրենց տներից, մենք մարդ չենք սպանել անձամբ: Հասկանալի է՝ մենք վատ կրթութիւն ենք ստացել, մեզ ճիշտը չեն ասել, խաբել են: Հասկանալի է՝ մենք աղքատ ենք եւ զրկուած ենք եղել հաղորդակցութեան միջոցներից, ճանապարհներից, շատ տեղ չենք գնացել, շատ բան չենք լսել: Բայց այս ամէնը անվերջ չի կարող արդարացնել եւ սնել քաղաքական անմեղսունակութիւնն ու ազգայնական էգօիզմը: Այդպէս չի լինում: Ինչ-որ պահի պէտք է կանգ առնել եւ չգոչել, չճչալ այդքան ցաւագին, երբ ադրբէջանցիները մի կիլոմետր առաջ են եկել: Քանի՞ մարդ էր Հայաստանում ունեցել դիսկոմֆորտի զգացողութիւն Հայաստանի ռեւանշիստական իշխանութիւնների զաւթողական քաղաքականութիւններից:

Ինչո՞ւ ենք մենք համակերպուել եւ սատարել այս քաղաքականութիւնները լռելեայն: Որովհետեւ Ֆրանսիայում մի միապետ ասել է, որ պետութիւնը ի՞նքն է: Մենք էլ հաւատացել ենք, որ այս պետութիւնը մե՞նք ենք: Մենք անկեղծ հաւատացել ենք, որ այս պետութիւնը ոչ թէ Ռոբերտ Քոչարեանն է, Սերժ Սարգսեանն է, Մանուէլ Գրիգորեանն է, այլ մե՞նք ենք պետութիւնը: Ուրեմն պիտի հլու-հնազանդ, լռելեայն սատարենք ու հետեւենք սրանց ամէ՞ն ինչում, յատկապէս՝ արտաքին թշնամու հանդէպ ատելութեա՞ն մէջ: Ի՞նչ կապ ունեն սահմանի, անվտանգութեան, սիրոյ, մահուան մասին այս մարդկանց եւ նրանց փողի սպասարկուների էկրաններից ու գրքերից հրամցուող մտքերը մեզ հետ, մեր ցանկութիւնների, մեր առօրեայ կեանքի, մեր երազանքների հետ: Ինչի՞ համար է այս կամաւոր ստրկութիւնը, ինչի՞ համար է այս յամառ դիմադրութիւնը չպոկուելու այս թակարդից:

Առջեւում ընտրութիւններ են. դեռ շատ սանտիմետրեր կը չափչփեն, որ ունեն աշխարհա-քաղաքական նշանակութիւն, շատ մարդիկ ջրից կը թունաւորուեն, շատերը վերելակներում կը մնան, ոմանք մեքենայի տակ կ՚ընկնեն, մինչեւ Հայաստանում տեղի կ՚ունենան հերթական ընտրութիւնները: Ամենայն հաւանականութեամբ, Քոչարեանը կը վերադառնայ պառլամենտ, գուցէ չի գայ, դա էական չէ: Բայց ե՞րբ կ՚աւարտուի Հայկական ժամանակը, որ միայն ցաւ ու տառապանք բերեց, եւ կը սկուի մարդկանց ժամանակը այս տարածքում, անորոշ է:

## 1 ԱԺ-Ն ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԸՆԴՈՒՆԵՑ ՍՏԵՂԾՈՒԱԾ...

Ադրբէջանի ագրեսիային միջազգային իրաւունքի եւ Հայաստանի Հանրապետութեան օրէնսդրութեան համաձայն:

Ազգային Ժողովը Հայաստանի Հանրապետութեան ժողովրդի անունից յայտարարում է՝

մեր կողմից ձեռնարկուելու են բոլոր համարժէք միջոցներն Ադրբէջանի ռազմական ագրեսիան կասեցնելու եւ մեր պետական սահմանն ու ժողովրդին պաշտպանելու նպատակով,

կոչ ենք անում միջազգային հանրութեանը դատապարտել՝ Ադրբէջանի կողմից Հայաստանի Հանրապետութեան տարածքային ամբողջականութեան դէմ ուղղուած սադրիչ գործողութիւնները, ուժի գործադրման սպառնալիքներն ու փաստացի գործադրումը:

## 3 ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ...

բոլորս նայում ենք, բայց մենք պիտի սովորենք տեսնել: Մենք պիտի տեսնենք ու մենք պէտք է համարձակութիւն ունենանք ինչ որ բան անելու, ամէն մէկը այն ինչ որ կարող է: Մեզնից ամէն մէկը ցանկացած կենցաղային իրավիճակում կարող է սկսել իրեն ճիշդ պահել, կամ ալ կարող ենք շարունակել ձեւեր թափել: Բայց այդ մեզ ոչ մի լաւ բանի չի բերի»:

**Հետեւելով Անդրէասեանին**

Այսպէս կ՚աւարտէ Անդրէասեան իր խօսքը: 9 տարի ետք, այս խօսքէն պիտի անջատուէր ու կրճատուէր Նժդեհի մասին կարծիքը, ամբողջապէս դուրս հանուէր բնաբանէն, բացարձակացուէր, կմախքայնացուէր եւ Ֆէյսպուքի միջոցով տարածուէր յօդուածիս սկիզբը տեղադրուած ձեւաչափով:

Արդարեւ, կէս ժամ տեւած խօսքին առանցքային հարցերէն մէկն է ազգային հանդուրժողականութիւնը՝ թէ՛ ներազգային եւ թէ՛ միջազգային կամ արտազգային առումներով: Ազգայինը՝ մարդու իրաւունքներու հիման վրայ, մարդու՝ ներառեալ «թշնամի»-ի:

Անդրէասեան արմատապէս դէմ է յարձակողական որեւէ դրսեւորումի՝ ըլլայ ան մարմնական, գաղափարական կամ խօսքային: Նժդեհի մասին արտասանած խօսքը դուրս չի գար այս միտքէն: Ասիկա հասկնալու համար կարեւոր են քանի մը շեշտադրութիւններ.

1. Անդրէասեան իրաւացի է՝ երբ կը զանազանէ հայրենասիրութեան վերացականն ու իրականը: Գործնականօրէն ներկայացնեմ այս գաղափարը՝ Սփիւռքի անհատական եւ հաւաքական իրական օրինակներով, բնականաբար, խնայելով անձերուն անունները:

Վերջին պատերազմին, Ա. անձը Համահայկական Հիմնադրամին տուաւ 100 տոլլար: Ա.-ը շէնքերու սեփականատէր է եւ յարկաբաժիններէն մէկուն մէջ վարձքով կ՚ապրին հայեր: Հիմա դատ բացած է անոնց դէմ՝ զանոնք բնակարանէն վտարելու համար, որպէսզի նորեր տեղաւորէ՝ հսկայական ամսականով, հոգ չէ թէ դուրս նետուող հայերը պիտի մնան անապաստան՝ նիւթապէս անկարող ըլլալնուն համար: Ուրեմն, հայ կարօտեալին 100 տոլլար նուիրողը անձնապէս պատճառ կը հանդիսանայ ուրիշ հայ կարօտեալի մը յառաջացումին, միաժամանակ, տուած 100 տոլլարը կը փոխհատուցէ իր իսկ ստեղծած կարօտեալի հաշուին:

Բ. անձը մեծահարուստ բարերար է, բարերարութիւններուն համար ունի բարի հայրենասէրի հռչակ: Գործարանատէր է: Գործարանին մէջ գործող հայ վարչական պաշտօնատարար մը ինծի զանգատած է՝ որ Բ.-ը վատ կը վերաբերի պաշտօնատար քանի մը հայերուն հետ եւ ցած կը վճարէ թէ՛ հայ եւ թէ՛ ոչ-հայ պաշտօնատարները (դրամատէր բարերարի դասական օրինակ):

Գ.-ը շատ բարձր ամսականով արուեստագէտ է՝ սփիւռքեան յաւէտ կրկնուող ձեռնարկներու տրամաբանութեամբ, որ իր իւրաքանչիւր ելոյթին կը քարոզէ յաղթարշաւ հայրենասիրութիւն, իսկ մամուլը իր ելոյթները կ՚անուանէ հայապահպան անձնազոհ գործունէութիւն: Գ.-ը կը մերժէ համագործակցիլ բոլոր հայերուն հետ՝ որոնք կրնան մրցակից ըլլալ իրեն, մնալու համար իր ասպարէզի միակ հայրենասէրը:

Դ.-ն բժիշկ է, որ քլինիքի ժամերէն ետք կը զբաղի գաղութային ղեկավար գործունէութեամբ (քլինիքի ժամերէն չի զոհեր ղեկավարութեան համար) եւ ամէն օր կը խօսի հայրենասիրութեան եւ հայապահպանումի մասին: Կը մերժէ կարօտեալ հայուն անվճար բուժել, քանի որ այս արարքը պիտի չկրնայ մտցնել հայրենասիրութեան հասարակական պատումին մէջ:

Ե.-ը գրող եւ ուսումնասիրող է եւ իր գրութիւններուն մէջ Արեւմտեան Հայաստանը պիտի ազատագրէ, այսինքն կը պատմէ համահայկական մեծ ծրագիրի մասին: Գործնականօրէն, «ուսումնասիրութիւն»-ներուն մէջ, համահայկականութեան անունով կը մերժէ յիշել բոլոր այն լուրջ հայ մտաւորականներուն անունները, որոնք ընդամէնը կը հարցնեն՝ ինչպէ՞ս ազատագրել:

Զ.-ն ճարտարապետ է եւ միլիոններ կը վաստակի հայկական գործարքներէ: Եւ քանի որ Սփիւռքի հիմնահոսանքը դրամատիրական մշակութային մտածողութենէն անդին շատ քիչ բան կը հասկնայ, ճարտարապետին անունը կը տարածէ հայկական լրագիրներուն մէջ իբրեւ հայրենասէր: Արդարեւ, կը բաւէ հետը նստիս քանի մը վայրկեան, հասկնալու համար որ կ՚արհամարհէ ներկայ հայ իրական մտաւորականութիւնն ամբողջութեամբ եւ կը մերժէ յարաբերիլ անոնց հետ, առնչուելով միայն անոնց հետ՝ որոնք իր լուսանկարը կը դնեն պարբերականին կողքը, կը պատուեն իր անձը եւ զինք կը դարձնեն հայրենասէր, բայց կը մոռնան նշելու հայկական միութիւններէն վաստակած միլիոնները:

Ապրիլ 24-ին սփիւռքահայերը կ՚երթան եկեղեցի, լաւ մը կ՚աղօթեն, կը լսեն ոգեշնչող քարոզ: Կատարած կ՚ըլլան իրենց հայրենասիրական պարտքը: Պարտքը՝ բայց ոչ մղումը: Անձնական ինքնաշարժ չունեցողները եկեղեցիի օթոպիւսով կը վերադառնան տուն: Ինչ որ կը կատարուի օթոպիւսին մէջ ոչ մէկ կապ ունի եկեղեցի երթալու նպատակին հետ: Օթոպիւսը կը վերածուի պարոնեանական տնային ընդունելութեան, ուր մարդիկ կը ժամանցեն արտածորելով անձնական քաղքենիութիւնը եւ յատկապէս բամբասելով հայ անհատներու մասին՝ որոնք չեն գտնուիր օթոպիւսին մէջ:

Սփիւռքի մէջ շատ բարձր են համահայկական հռչակումները: Իրականութեան մէջ, համահայկական հայրենասիրութեան սեփականատէրերը անոնք են՝ որոնք աւանդապէս անդառնալիօրէն բաժնեցին Սփիւռքը, սփիւռքեան տեղայնական բնական բաժանումներէն անդին: Համահայկականութիւնը պիտի դնել վերացական հայրենասիրութեան ծիրին մէջ, մինչդեռ իրական հայրենասիրութիւն մը պիտի նախ մերժէր աւանդական եւ վերէն կատարուած բաժանումները, եւ ապա Սփիւռքը դիտէր ու ընդունէր ինչպէս որ կայ՝ տեղայնական բաժանումներու այլազանութեամբ, այդ այլազանութիւնը դարձնելով հաղորդակցային կարելիութիւն:

(Շար. 5)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1893 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՅՈՒՆԻՍ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٩٣ الخميس ٣ يونيه ٢٠٢١


## ՂԱՐԱԲԱՂ ԵՒ ԿԱԶԱ ՆՄԱՆՈՒԹԻՒՆՆԵ՞Ր

Կազան՝ Համասի գոյութեամբ, բացառիկ առիթ մըն է Իսրայէլի համար պաղեստինեան հարցը չլուծելու, պարբերաբար բորբոքելու խնդիրը, բորբոքելով՝ քաղաքական վերնախաւը ինքզինքին տալու կեցութեան նոր իրաւունք, այլեւ Համասի ենթադրեալ սպառնալիքին տակ մտովին զինուորագրուած պահելու խըրայէլցին, եւ մանաւանդ՝ փորձարկելու արտադրած նոր զէնքերը:

Ղարաբաղը՝ դիտաւորեալ յաւերժ մնալով իբրեւ չլուծուած տարածութիւն, բացառիկ առիթ մըն է Ռուսաստանին, Թուրքիային եւ Իսրայէլին այդ տարածութիւնը պահելու գերռազմականացուած վիճակի մէջ՝ *իրենց* ռազմական ուղղակի եւ անուղղակի ներկայութեամբ, իսկ Ալիեւ գերդաստանին՝ վերահսկելու մենատիրական երկիրին ողջ ծալքերը: Սեւ Լիճի վերջին դէպքը ուրիշ բան չէր՝ եթէ ոչ վառ պահել հարցին չլուծուածութիւնը, արդէն կարեւոր չէ Հայաստանի թէ Ղարաբաղի տարածքին վրայ:

Ուրեմն, կարելի է պաղեստինցին ու հայը ունենան համակեցային յարաբերութիւն իբրեւ տուժողներ: Անշուշտ, նմանութեան հարցը շատ աւելի բարդ է քան ինչ որ ներկայացուցի, բայց խօսքը ընդհանուր տուժողի ուղեծիրի մասին է:

Ցեղախտրական (apartheid) կողմն ալ կայ, որ թէ՛ պաղեստինցիները եւ թէ՛ հայերը չեն ուզած օգտագործել միջազգային իրաւական ատեաններուն մէջ: Հարաւային Ափրիկէն յաջողութեամբ կիրարկեց:

Իսրայէլ ցեղախտրական պետութիւն է պաղեստինցիներուն նկատմամբ:

Խորհրդային շրջանի Ղարաբաղը ցեղախտրական մարզ էր հայերուն նկատմամբ:

Որոշ ձախ հայեր փորձեցին այս հարցը յառաջ տանիլ, բայց չես գիտեր ինչու նման հարցեր կը պիտակաւորուին իբրեւ ձախակողմեայ: Ղարաբաղի առաջին պատերազմը կարելի էր արդարացնել նաեւ այս տեսանկիւնէն եւ պատերազմէն ետք ասոր հիման վրայ պահանջել լուծում: Արդարացնել եւ պահանջել իբրեւ լուծումներէն մէկը, լուծումներու փաթեթի շերտերէն մէկը:

Այս տարուայ Մայիս 6-21-ին Իսրայէլ կատարեց իր յաջորդական յարձակումը Կազայի վրայ: Ամէն անգամ պատճառ մը ունի յայտարարելիք: Պատճառ մը՝ որ բաւարար է այնքան կործանելու Կազան՝ որ վերջին յարձակումին աւելի քան 72 հազար պաղեստինցիներ տեղափոխուեին իրենց բնակավայրերէն:

Ինչպէս միշտ, աշխարհը այս պատերազմը ներկայացուց իբրեւ երկու երկիրներու հակամարտութիւն: Հակամարտութիւն կը նշանակէ հաւասարութիւն: Հաւասարութիւն՝ երբ Իսրայէլ կը ներկայացնէ ցեղախտրական (apartheid) կողմը, Պաղեստինը՝ տուժող:

Յատկապէս Կազայի այս պատերազմին, Հայաստանի եւ Սփիւռքի հիմնահոսանքային լրատուութիւնը քիչ մը հետաքրքրութիւն ցուցաբերեց՝ շատ աւելի քան նախորդ անգամները:

Մենք այդպէս չըրինք պաղեստինցիներուն կարեկցած ըլլալու համար՝ քանի որ չենք կարեկցիր, այդպէս չըրինք թիկունք կանգնած ըլլալու համար պաղեստինեան հարցին՝ քանի որ մեզի բնաւ չէ հետաքըրքրած այդ հարցը: Այդպէս ըրինք, որպէսզի մենք մեզի արդարացնենք Ղարաբաղի պատերազմի կորուստին համար, քանի որ այդ պատերազմին մէջ հսկայ քանակութեամբ իսրայէլական զէնք կը գտնուէր ազէրիներուն ձեռքը:

Հիմա՞ արթնցանք:

2015-ին *Ջահակիր* կը գրէր՝ թէ ինչպէս իսրայէլական զէնքը կը փորձարկուէր Կազայի ժողովուրդին վրայ եւ թէ ինչպէս այս փորձարկութիւնը կ՚աւելցնէր իսրայէլական զէնքի շուկայական արժէքը, եւ ապա այդ փորձարկուած զէնքը կ՚առաքուէր Ազըրպէյճան: Հետեւաբար, դիմադրութիւն մը արմատէն՝ Իսրայէլէն, անհրաժեշտ էր իբրեւ Ղարաբաղի հարցի լուծումներէն մէկը: Ոչ թէ իբրեւ *միակ* լուծում, այլ լուծումներու շարքի գործողութիւններէն *մէկը* (*Ջահակիր*, 2015, թիւ 1753-1754): Իսկ այդ դիմադրութեան շերտերէն մէկն ալ համակեցութիւնը պիտի ըլլար պաղեստինցիին հետ՝ իբրեւ տուժող ժողովուրդ: Իրական համակեցութիւն, այլ ոչ թէ ինչպէս տեղի ունեցաւ այսօր, քիչ մը պոռչտուք ժամանաւոր հենքի վրայ:

Ա.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ 26 ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԵՐ

Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովը Մայիս 31-ին քննարկեց Յունիս 20-ին կայանալիք արտահերթ խորհրդարանական ընտրութիւններուն համար դաշինքներուն եւ կուսակցութիւններուն ընտրական ցուցակներուն գրանցումին հարցը: Որեւէ կուսակցութեան կամ կուսակցութիւններու դաշինքի գրանցումը մերժելու որոշում չկայացաւ:

«Բոլոր կուսակցութիւնները եւ դաշինքները՝ 26 սուբիեկտներ, որոնք դիմել են գրանցուելու որպէս թեկնածուներ, բոլորի պարագայում գրանցման որոշումներ կայացուեցին», - ասաց ԿԸՅ նախագահ Տիգրան Մուկուչեան:

Արտահերթ ընտրութիւններուն կը մասնակցին հետեւեալ կուսակցութիւններու դաշինքները եւ կուսակցութիւնները:

**Կուսակցութիւններու դաշինքներ.**

-Հայաստան Դաշինք

-Ազատ Հայրենիք Դաշինք

-Պատիւ Ունեմ Դաշինք

-Շիրինեան-Բաբաջանեան Ժողովրդավարների Դաշինք

**Կուսակցութիւններ.**

-Քաղացիական Պայմանագիր կուսակցութիւն

-Արդար Հայաստան կուսակցութիւն

-Հանրապետութիւն Կուսակցութիւն

-Համահայկական Ազգային Պետականութիւն (ՀԱՊ) կուսակցութիւն

-Բարգաւաճ Հայաստան Կուսակցութիւն

-Հայոց Հայրենիք Կուսակցութիւն

-Ազգային Օրակարգ Կուսակցութիւն

-Հայաստանի Եւրոպական Կուսակցութիւն

-Քաղաքացու Որոշում Սոցիալ Դեմոկրատական Կուսակցութիւն

-Մեր Տունը Հայաստանն է կուսակցութիւն

-Ազգային-Ժողովրդավարական Բեւեռ կուսակցութիւն

-Միասնական Հայրենիք Կուսակցութիւն

-5165 Ազգային Պահպանողական Շարժում կուսակցութիւն

-Լուսաւոր Հայաստան կուսակցութիւն

-Վերելք Կուսակցութիւն

-Ազատութիւն Կուսակցութիւն

-Ազատական Կուսակցութիւն

-Հայ Ազգային Կոնգրէս կուսակցութիւն

-Ինքնիշխան Հայաստան կուսակցութիւն

-Զարթօնք Ազգային Քրիստոնէական Կուսակցութիւն

-Հայաստանի Դեմոկրատական Կուսակցութիւն

-Հայոց Արծիւներ Միասնական Հայաստան կուսակցութիւն

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ Է ՍԱՀՄԱՆԻՆ ԻՐԱԴՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԳԵՐԻՆԵՐԻ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութեան վարչութեան անդամ, Հայաստանի վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը Մայիսի 30-ին հանդիպում է ունեցել կուսակցութեան Ապարանի գրասենեակում, որտեղ ի թիւս այլ հարցերի անդրադարձել է հայ-ադրբէջանական սահմանին իրադրութեան եւ գերիների վերադարձի հարցերին:

Փաշինեանը նշել է. «Մենք ունենք պատշաճ միջազգային արձագանք մեր սահմանային իրադրութեան եւ գերիների հետ հարցի հետ կապուած: Այսօր միջազգային հանրութիւնը, ըստ էութեան, յստակ արձանագրել է գերիների վերադարձի անհրաժեշտութիւնը, եւ դա միջազգային ամենալայն արձագանք է ստացել», - ընդգծել է նա:

Փաշինեանը համարում է, որ գերիների վերադարձի հարցը ժամանակի հարց է: «Գերիների հարցն էլ են օգտագործում Հայաստանի ներքաղաքական սրացումներ ապահովելու համար: Դա օգտագործում են մեր ներսում բախումներ հրահրելու համար: Եւ փառք Աստծոյ, որ մենք դա հասկանում ենք, ինչքան էլ դժուար է, պիտի թոյլ չտանք, որ Ադրբէջանն այդ գործօնը մեր ներքաղաքական իրադրութեան հարցերում օգտագործի», - յաւելել է Հայաստանի վարչապետի պաշտօնակատարը:

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԱՒ ԼՂ ԲԱՆԱԿՑԱՅԻՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՂՄԻ ԶԻՋՈՒՄՆԵՐԻՆ

Հայաստանի վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը Մայիսի 30-ին Վանաձորի բնակիչների հետ հանդիպմանն անդրադարձաւ ԼՂ հակամարտութեան բանակցային գործընթացում հայկական կողմի զիջումներին:

*Արմենպրէսի* հաղորդմամբ՝ նա նշեց, որ 1999-ին օրակարգ է բերուել Մեղրին փոխանակելու տարբերակը: Այդ տարբերակը, իհարկէ, Վազգէն Սարգսեանի եւ Կարէն Դէմիրճեանի ջանքերով նախ վիժեցուել է, եւ, ըստ որոշ գնահատականների, յետագայում մերժուել է նաեւ Ադրբէջանի կողմից. բայց, այս հատուածը, օրինակ, չեմ կարող ասել, որ կարող եմ հիմնաւորել եւ ապացուցել», - նկատեց Փաշինեանը:

Նա տեղեկացրեց, որ Մեղրիի տարբերակը չի իրագործուել, շատ կարեւոր համարելով արձանագրելը, որ այն թղթերը, որոնք դառնում են բանակցային օրակարգ, դառնում են բանակցային բովանդակութիւն:

«Ադրբէջանական կողմն ստացել է շատ կարեւոր բան. բանակցային բովանդակութեամբ արձանագրուել է, որ Շուշիի շրջանն առանձին երեւոյթ է Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզի տարածքում: Արձանագրուել է որ Շուշիի շրջանն առանձին է Լեռնային Ղարաբաղից եւ դրուել է Լաչինի շրջանի հետ նոյն շարքում, իսկ Լաչինի շրջանն այն շարքից էր, որը 1999 թուականի եւ յետագայ տարիների արտաքին

3

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

**(մահուան առիթով)**

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**ԿԱՏԱՐՈՂԱԿԱՆ ԱՐՈՒԵՍՏԸ**

Թեքնիք՝ առանց ցուցադրութեան, յուզականութիւն՝ առանց զգայնական զեղումի, երաժշտական թափանցողութիւն բայց ոչ կոթողայնութիւն, ընդհակառակը՝ հակակոթողայնութիւն, մեղմամեղմի (pp) չերտաւորում, կարելի է համարել տաղանդաւոր ջութակահարին ընդհանուր յատկանիշները, յատկանիշներ՝ որոնք դժուար կը մերուին ժամանակակից դրամատիրական աշխարհի փքուն պահանջներուն:

**Եղիսաբեթ Թագուհիի Մրցոյթ**

1959 Մայիս 25-ին, Պրիւքսէլի Գեղարուեստի Պալատի (Palais des Beaux-Arts) Հանրի Լը Պէօֆ Սրահին (Salle Henry Le Boeuf) մէջ տեղի կ՚ունենայ Գանթարճեանի ունկնդրութիւնը Եղիսաբեթ Թագուհիի Մրցոյթի (Queen Elisabeth Competition - Concours Reine Elisabeth) ֆինալիսթներու ծիրին մէջ:

Այս մրցոյթին ֆինալիսթը ըլլալն ինքնին բացառիկ կարեւոր քայլ մըն է եւ կրնայ կարեւոր ասպարէզներ բանալ: Յանձնախումբի որոշումով, 12 ֆինալիսթներէն պիտի գրաւէր 11-րդ տեղը:

Մրցոյթի պաշտօնական կայքէջը, մտիկ ընելու (streaming) համար տեղադրած է հին շրջանի ֆինալիսթներուն բոլոր նուագները: Ասիկա պատեհ առիթ մըն է հաղորդակից դառնալու 28-ամեայ ջութակահարին:

Առկայ են՝ Պրամսի Ջութակի Քոնչերթոն երեք շարժումներով, Տարիուս Միյոյի Concert Royal-ի (Երրորդ Քոնչերթօ) առաջին շարժումը՝ Vif, երկուքն ալ Պելճիքայի Ազգային Նուագախումբով (Orchestre National de Belgique), նուագավար՝ Ֆրանզ Անտրէ, ինչպէս նաեւ Վիենիաւսքիի Scherzo-Tarentelle-ը (սոլ մինոր, երկ 16), դաշնակի նուագակցութեամբ(1):

Պրամսի Քոնչերթոն կը նուագէ ամենայն սահունութեամբ, առանց յատուկ շեշտելու տիպարային հզօրութիւնը, փոխարէնը յառաջ մղելով հնչիւնային բիւրեղութիւնը:

Ոչ մէկ վիրթիւոզային անցք կը գտնուի Քոնչերթոյին մէջ, ամէն բան Պրամս ենթարկած է գործի ներարժէքային յատկանիշներուն, ստեղծելով անվերջանալիօրէն յորդուն երաժշտութիւն:

Ազնուական մօտեցում մը ցուցաբերած է Գանթարճեան առաջին շարժումին համար՝ որ կը տանի դէպի ռոմանթիզմ, երբեմն զսպուած կրքային կամքով: Զափազանց խոր արտայայտչականութեամբ, զգացական նրբակերտութեամբ եւ լայնարձակ հնչիւնավարութեամբ կառուցած է ջութակահարը երկրորդ շարժումը: Երրորդը ներկայացուցած է կենսուրախութեամբ, խիտ զգացումներով, քանի մը յաղթական պահերով՝ առանց ըլլալու մեծաշուք, մինչ ռոնտոյի գնչուանման մեղեդիին իւրաքանչիւր վերայայտնութիւնը հրճուանքի պահեր կը շնորհէ մեզի:

Էփիքական չափերով ու տրամադրութիւններով լեցուն այս Քոնչերթոն Գանթարճեան կը վարէ անզիջող թափով եւ երաժըշտական յագեցուածութեամբ:

Միյոյի Երրորդ Քոնչերթոն յատուկ գրուած է Եղիսաբեթ Թագուհիի Մրցոյթին համար՝ իբրեւ պարտադիր նուագացանկ: Եւ, անշուշտ, երբ կը գրես առաջնակարգ մրցոյթի համար պարտադիր գործ մը, մենակատարին առջեւ կը դնես թեքնիքական շատ մեծ պահանջներ: Քնարական մեղեդիի եւ կշռութաւորութեան խառնուրդը լաւ պահպանուած է Գանթարճեանի մօտ, շրջանցելով նոյն ինքը թեքնիքը:

Գալով Scherzo-Tarentelle-ին, այնտեղ կը գծագրուի շողշողուն, վառվռուն, պայծառ, դիւրաշարժ եւ մանր ասեղնագործային հպումներով նուագածութիւն մը: Զայն Գահիրէի մէջ նուագած էր ընդամէնը 14 տարեկանին՝ 1945 Դեկտեմբերին, Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիալ սրահը:

**Մենահամերգ սկաւառակի վրայ**

1982 Մարտ 7-ի Թորոնթոյի մենահամերգին (recital) կարեւոր մասը փոխանցուած է $33\frac{1}{3}$ սկաւառակի՝ Masters of the Bow MBS 2016, հրապարակուած 1983-ին:

Բացումը կը կատարուի Պրամսի երրորդ Սոնաթով:

Այս Սոնաթի Գանթարճեանի կատարումը եգիպտահայ յիշողութեան մէջ արձանագրուած է Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիալ սրահը տուած մենահամերգին՝ 1951 Դեկտեմբերին: Հաւանաբար Իտալիոյ մէջ Վազա Փրիհոտայի դասարանի սերտումներէն ըլլայ:

Սկաւառակին վրայ կը լսուի յորդ ու ջերմ մեկնաբանութիւն մը: Առաջին շարժումին մէջ ունկնդիր կ՚ըլլանք հակադրային գոյներու՝ երգային քնարական սկիզբ, կտրուկ անցում ռոմանթիքի, տխրամած տրամադրութեան պարբերական ներդրումներով: Երկրորդ շարժումը ծորերգութիւն մըն է՝ կարօտաբաղձ հպումներով: Երրորդը ցնծալից ու թովիչ է, վեհ ու նրբագեղ: Չորրորդը՝ կորովի ու եռանդուն, խիտ ու խիստ հնչական ամբարձումներով, սրարշաւ մղումներով, նուագարանի հրաշալի ճախրումներով:

Կատարեալ ներդաշնակութիւն ջութակահարի եւ դաշնակահարուհի Մարգարիտ Ունճեանի միջեւ:

Սարազաթէի *Սպանիական պարեր*էն երկու հատ, ‘Romanza andaluza” մեղմապէս կշռութաւորուած, եւ ‘Habañera” շեշտակիօրէն կշռութաւորուած, բացի իր շողշողուն փայլքէն եւ վազքերուն մանրագոյն ճշգրտութենէն:

Խաչատրեանի *Գայեանէ*ի Աւիշայի եւ Գայեանէի տեսարանը՝ Հարի Զարացեանի ջութակի փոխադրութեամբ, կը փաստէ հայկական ներկայութիւն մը:

Շոփէնի երկ 9 թիւ 2 Նոքթիւրնը՝ Սարազաթէի փոխադրութեամբ, կը հնչէ ամենախոր վիպրաթոյով, քառենցաներուն նրբագոյն մաքրութեամբ:

Իտալիոյ մէջ Վազա Փրիհոտայի հետ ուսումը աւարտելէ ետք, Գահիրէի առաջին մենահամերգին՝ 1951 Ապրիլ, Էուըրթ Մեմորիալ սրահ, 20-ամեայ Գանթարճեան կը նուագէր Փականինիի *Nel cor più non mi sento*-ն մենանուագ ջութակի համար՝ Փրիհոտայի վերամշակումով, զոր հաստատապէս սորված էր մշակողին հետ Իտալիա: Երբ զայն կը կրկնէր 1951 Մայիսին Աղեքսանդրիոյ մէջ, *Արեւ*ի թղթակիցը մնացած էր ապշած. «Փականինիի *Nel cor più non mi sento* կտորը մանաւանդ, որ երաժշտական բազմաբարդ յղացում մըն է, մեր արուեստագէտը նուագեց ճարտարութեամբ մը որ իրապէս ապշեցուցիչ էր»(2):

Այս սկաւառակին վրայ կը հնչէ այդ նոյն մշակումը: Ջութակի նուագացանկին մէջ կա՞յ արդեօք *Nel cor più non mi sento*-էն թեքնիքապէս աւելի դժուար գործ մը: Ամէն հնարք կայ այստեղ՝ միակի եւ երկակի արհեստական հարմոնիքներ, գերարագ վազքեր եւ արփեճիոներ, ձախ ձեռքի փիծիքաթոներ՝ որոնք մէյ մը կը նուագակցին աղեղի մեղեդիին, ուրիշ տեղ մը հանդէս կու գան առանձին՝ ցնցող ոստիւններով: Եւ այս բոլորը ձայնագրուած կենդանի կատարումով: Այս բոլորը նաեւ եգիպտահայութիւնը լսած էր 20 տարեկան ջութակահարէն:

Իսկ ինչո՞ւ Փրիհոտա միջամտած է Փականինիին՝ վերամշակելով զայն: Իրականութեան մէջ, այս գործը Փականինի երբեք չէ նոթագրած: Զայն նոթագրած ու հրատարակած է Քարլ Կուհր, զայն մէկ անգամ լսելէ ետք Փականինիի կատարումով: Փրիհոտա՝ Կուհրի նոթատետրին վրայ դրած է յաւելեալ պրաւուրաներ եւ աւելի ընդլայնուած հարմոնիքներ: Դժուարութիւնը չէ բաւարարած իրեն: Պայքար մը դէպի աւելի բարդութիւն:

Ռաւէլի *Pièce en forme de Habanera*-ն կ՚ունենայ հաճոյալի մատուցում մը:

Վերջապէս, Կրիկորաս Տինիչուի *Hora sataccato*-ն՝ Հայֆէցի փայլուն փոխադրութեամբ: Նուագ մը գնչուական ջութակի ցայտուն յատկանիշներով՝ կիրքով, զարդանախշերով, թրիլլերով, թեթեւ արագութեամբ: Գործ մը՝ զոր Գահիրէի մէջ Գանթարճեան նուագած էր տակաւին 15 տարեկանին՝ 1946-ին, Ամերիկեան Համալսարանի մենահամերգին:

**Փականինիի 24 Քափրիսները**

2012-ին հրապարակ կ՚իջնէ Փականինիի 24 Քափրիսներուն Գանթարճեանի կենդանի կատարումը իբրեւ ներբեռնելի MP3 (Downloadable MP3): Ինչպէս արդէն յատուկ դարձած է այս թուային ներբեռնումներուն եւ iTune-երուն, կատարումներու կամ ձայնագրութիւններու թուականները չեն յիշատակուած: Հետեւաբար չենք գիտեր Գանթարճեան երբ նուագած է զանոնք: Եթէ ձայնագրութեան թուականն է 2012-ը՝ ուրեմն կը խօսինք 81 տարեկան ջութակահարի մասին: Ամէն պարագայի, անոնց ամբողջութեան ձայնագրութիւնը կենդանի կատարումէ եւս ապացոյց մըն է ջութակահարի գերազանց տիրապետութեան իր գործիքին: Քիչ կը պատահի 24-ին յաջորդական կատարումը մենահամերգի ընթացքին:

Չենք կրնար ըսել կատարումը կը գտնուի անդրդուելի թեքնիքական կատարելութեան գերատիճանին (տակաւին չենք գիտեր քանի տարեկանին ձայնագրած է զանոնք), բայց հրավառային զսպուած թեքնիքի անդադար գրաւիչ պահեր՝ քնարականացուած ռոմանթիզմի երգայնութեամբ, կը մղեն մէկ շունչով ունկնդրել 24-ը:

Յիշեցումի համար, 24-րդ Քափրիսը Գանթարճեան նուագած է 13 տարեկանին՝ 1944 Դեկտեմբերին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի սրահը: Ապա, 14 տարեկանին՝ 1945 Դեկտեմբերին, նոյն վայրը, մեկնաբանած է թիւ 13 եւ 15 Քափրիսները, զորս կատարած է «յամենայն տիրակալութեամբ»(3), «ուր իր թեքնիքը սքանչացուց ամենէն գորովալիր ունկնդիրը»(4):

**Նախկին եգիպտահայերը կը հանդիպին**

Գանթարճեանէն երեք շաբաթ առաջ՝ Մարտ 26-ին, նոյնպէս Գանատայի մէջ՝ Օնթարիօ, կը մահանար նոյնպէս նախկին եգիպտահայ մը՝ դաշնակահար եւ երաժշտահան Ռէյմոն

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԵՐՆԱԽԱՒՈՒՄ ԿԱՆ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ ՕԳՆՈՂ ՏԵՂԵԿԱՏՈՒԱԿԱՆ ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐ. ՓԱՇԻՆԵԱՆ

Վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը կարծում է, որ Հայաստանի քաղաքական վերնախաւում կան Ադրբէջանին օգնող տեղեկատուական գործակալներ: Այդ մասին Մայիսի 20-ի կառավարութեան հերթական նիստում յայտարարեց նա:

«Ադրբէջանը Հայաստանում ունի դաշնակիցներ: Ես Անվտանգութեան Խորհրդի նիստերից մէկում արձանագրեցի, որ տեղեկատուական պայքարը աշխարհում թերեւս աւելի կարեւոր է լինում եւ կրկին ուզում եմ ասել՝ Ադրբէջանը Հայաստանի քաղաքական վերնախաւում ունի տեղեկատուական պայքարի գործակալներ, ու նրանց գործունէութիւնը նոր չէ», - յայտարարեց Փաշինեանը՝ ասելով, որ դա քաղաքական գնահատական է:

Նա հանրութեանը կոչ արեց չտրուել «ադրբէջանական պրոպագանդայի հայաստանեան ցանցի սադրանքներին»: «Չի կարելի բացառել, որ ադրբէջանական զինուժի նպատակներից մէկն էլ Հայաստանի ներքաղաքական գործընթացների վրայ ազդեցութիւն ունենալն է, ընտրութիւնների արդիւնքների վրայ ազդեցութիւն ունենալն է», - յայտարարեց Փաշինեանը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Ադրբէջանի պաշտպանութեան նախարարութիւնը հերթական ապատեղեկատուութիւնն է տարածել, ըստ որի՝ Յունիսի 1-ի երեկոյեան 40 հայ զինծառայող հատել է Ադրբէջանի սահմանը, ինչից յետոյ Ադրբէջանի զինուած ուժերի ստորաբաժանումները «ստիպել են նրանց վերադառնալ ելման դիրքեր»:

Ակնյայտ է, որ նմանատիպ ապատեղեկատուութիւնն ադրբէջանական ռազմաքաղաքական ղեկավարութիւնը շրջանառութեան մէջ է դնում Հայաստանի Զինուած Ուժերի կողմից հայ-ադրբէջանական սահմանային իրադրութիւնը սրելու փորձերի վերաբերեալ միջազգային հանրութեան շրջանում տպաւորութիւն ստեղծելու, եւ Ադրբէջանի ԶՈՒ կողմից Մայիսի 12-ին եւ 13-ին Հայաստանի Հանրապետութեան տարածք ներթափանցելու սադրանքը հակակշռելու նպատակով:

Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը յայտարարում է, որ Հայաստանի Զինուած Ուժերը, ո՛չ Յունիսի 1-ին եւ ո՛չ էլ դրան նախորդող օրերին, Ադրբէջանի Հանրապետութեան սահմանը

↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԵՐ ՊԵՏՈՒԹԻՒՆԸ ԻՐԵՆ ՉԻ ԿԱՐՈՂ ՃՈԽՈՒԹԻՒՆ ԹՈՅԼ ՏԱԼ՝ ՄԱՍՆԱՏՈՒԵԼ ԱՌԱՆՁԻՆ ԽՄԲԵՐԻ. ԵՐՈՒԱՆԴ ԹԱՐՎԵՐԴԵԱՆ

Միացեալ Հայաստան կուսակցութեան նախագահ Երուանդ Թարվերդեանը Մայիսի 28-ին իր թիմակիցների հետ այցելեց Գիւմրու մի շարք մշակութային կենտրոններ եւ զինուորական պանթէոն:

Անդրադառնալով հայ-ադրբեջանական սահմանի ստեղծըւած իրավիճակին՝ Թարվերդեանը նշել է, որ միայն համախմբումն է, որ մեզ կ՚օգնի յաղթահարել այսօր մեր առաջ ծառացած դժուարութիւնները: «Մեր պետութիւնը իրեն չի կարող ճոխութիւն թոյլ տալ՝ մասնատուել առանձին խմբերի», - նշել է նա:

## 1 ՓԱՇԻՆԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԱՒ ԼՂ ԲԱՆԱԿՑԱՅԻՆ

գործերի նախարար Վարդան Օսկանեանն անուանում էր օկուպացուած տարածք», - շեշտեց Փաշինեանը:

Ըստ նրա՝ յաջորդ գիջումը, որ տեղի է ունեցել, 1999թ. Նոյեմբերի 30-ին ԵԱՀԿ գագաթնաժողովում ընդունուած Եւրոպայի անվտանգութեան խարտիան է, որտեղ յստակ արձանագրուել է, որ Լեռնային Ղարաբաղի հարցը կարող է լուծուել, ըստ էութեան, միայն Ադրբեջանի տարածքային ամբողջականութեան շրջանակներում: «Ընդ որում, այսպիսի ձեւակերպում ներմուծելու փորձ առաջին անգամ չի եղել. ԵԱՀԿ 1996-ի Լիսաբոնի գագաթնաժողովում այդպիսի բովանդակութիւն ներմուծելու փորձ է արուել, բայց Հայաստանն այն ժամանակ վետօ է դրել. ԵԱՀԿ-ում որոշումները կայացւում են կոնսենսուսով», - հաւաստեց վարչապետի պաշտօնակատարը՝ յաւելելով. «Իսկ 1999թ. Նոյեմբերի 30-ին՝ Հոկտեմբերի 27-ից յետոյ, Հայաստանը կողմ է քուէարկել այդ ձեւակերպմանը»:

Նրա բնորոշմամբ՝ ըստ էութեան, Ադրբեջանը շատ կարճ ժամանակահատուածում՝ 1998-99թթ., ստացել է այն բանակցային բովանդակութիւնը, որն իրեն անհրաժեշտ էր յետագայում իր բանակցային տրամաբանութիւնը զարգացնելու համար:

Յաջորդ կարեւոր հանգրուանն, Փաշինեանի խօսքով, այսպէս կոչուած Մադրիդեան սկզբունքների ընդգրկումն է. Հայկական կողմը չէր ժխտում, որ մասնակցել է այդ սկզբունքների ձեւակերպմանը: «Բայց ամենակարեւոր արձանագրումը որը տեղի է ունեցել 2007-ից յետոյ Մադրիդեան սկզբունքներն են որպէս բանակցային հենք, որտեղ արձանագրուել է հետեւեալը, որ ԼՂ հարցի բանակցային գործընթացի համար թիւ 1 նպատակը եօթ շրջանների վերադարձն է: Մադրիդեան սկզբունքներում եղել է «Արցախի միջանկեալ կարգավիճակ» տերմինը, եւ մինչեւ 2016 թուականը բանակցային գործընթացում ներկայ է եղել այդ տերմինաբանութիւնը: Եւ 2016-ի Յունուարին միջնորդների կողմից Հայաստանին ներկայացուել է ըստ էութեան դիրքորոշում, որ Հայաստանն պէտք է հրաժարուի Արցախի միջանկեալ կարգավիճակի տրամաբանութիւնից: Հայկական կողմը հրաժարուել է, եւ տեղի է ունեցել 2016-ի ապրիլեան պատերազմը, որից յետոյ արդէն առաջին անգամ 2016-ի ամռանը համանախագահները ներկայացրել են բանակցային փաստաթուղթ, որտեղ Արցախի միջանկեալ կարգավիճակն արդէն դուրս է մնացած», - ընդգծեց Փաշինեանը:

Նրա խօսքով՝ Քելբաջարի եւ Լաչինի վերադարձը որոշակի փոխկապակցուածութեան մէջ է եղել ԼՂ կարգավիճակի ճշգրտման հետ: 2018-ի Յունուարի դրութեամբ արձանագրուել է, որ մինչեւ ԼՂ կարգավիճակի ճշգրտումը, այսինքն՝ հէնց 2018-ին Քելբաջարը եւ Լաչինը հայկական կողմը պէտք է յանձնի: Որից յետոյ Ադրբեջանը կրկին վերադարձել է 2016-ի իր դիրքորոշմանը եւ արձանագրել, որ հրաժարւում է բանակցութիւններ վարել ԼՂ միջանկեալ կարգավիճակի տրամաբանութեան մէջ:

Փաշինեանի հաւաստմամբ՝ ըստ էութեան, պատերազմից խուսափելու մեթոդաբանութիւնը՝ սկսած 1997-98-ից եղել է հետեւեալը. ինչ-որ բան բանակցութիւնների սեղանի շուրջ զիջել, որպէսզի պատերազմը տեղի չունենայ: «Ամբողջ խնդիրն այն է, որ 2018թ. Մայիսի դրութեամբ՝ այն ամէնը, ինչը հնարաւոր էր զիջել, արդէն իսկ զիջուած էր:

«Ըստ էութեան, մենք բանակցային գործընթացը ժառանգել ենք մի փուլում, որտեղ այն ամէնը, ինչը հնարաւոր էր զիջել, արդէն իսկ զիջուած էր: Ես պատասխանատու ասում եմ, որ եթէ այն փաթեթը, որը գոյութիւն ունէր 2018-ին, ստորագրուէր, դա նշանակում էր, որ Հայաստանը համաձայնըւում էր Ղարաբաղը խաղաղ ճանապարհով թողնել Ադրբեջանի կազմում», - շեշտեց նա:

## 2 ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ...

չեն հատել, եւ դրա վերաբերեալ բոլոր պնդումներն այդ երկրի պաշտպանական գերատեսչութեան կողմից տարածուող ապատեղեկատուութիւն են, որի ծաւալը, վերջին շրջանում, էապէս աւելացել է:

ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անդրէասեան այս վերացական հայրենասիրութեան մէջ կը դասէ Սերժ Սարգսեանի հայրենասիրութիւնը, որ նժդեհականութիւնը դարձուցած է պետութեան պաշտօնական գաղափարախօսութիւն:

Գիտենք, որ Սարգսեան՝ շարունակելով Քոչարեանի նէօլիպերալ քրէաօլիկարքական գիծը, անտեսեց մարդկային բարեկեցութեան եւ ոչ-ունեւոր դասակարգի կենսամակարդակի հարցերը, միաժամանակ արմատագրելով նժդեհականութիւնը՝ իբրեւ պաշտօնական մտածմունքի *միակ* եղանակ: Եւ այստեղ է Անդրէասեանի մուտքը դէպի նժդեհականութիւնը, այն իմաստով՝ որ ի՞նչ իմաստ ունի հայրենասիրութիւնը, եթէ ան առիթ պիտի հանդիսանայ լռեցնելու բարեկեցութիւն պահանջողներուն ձայնը, եթէ վերացական հայրենասիրութիւնը պիտի պատըրւակ հանդիսանայ իրական հայրենասիրութեան՝ հայ ժողովուրդի բարեկեցութեան, անտեսումին:

Անուանումները կրնան տարբեր ըլլալ: Ես ինքս յաճախ գործածած եմ կեղծ ազգայնականութիւն եւ ազգայնամոլութիւն բառերը՝ փոխանակ վերացական ազգայնականութեան:

Վիտէօհարցազրոյցի շարքին մէջ, Վարդան Ազատեան ճիշդ նոյն բանը կ՚ըսէ՝ տարբեր բառերով: Կ՚անդրադառնայ ազգայինի միջոցով մարդկային գոյութեան բնական հակասութիւնները համահարթելու գործընթացքին: Կը նշէ՝ որ երբ 18-19-րդ դարերուն հայ ազգայինը եղած էր յառաջդիմութեան եւ ազատութեան դրսեւորում, այսօր ազգի գաղափարը դարձած է սահմանափակող, քանի որ ամէն բան կ՚ուզենք մտցնել այնտեղ եւ չէզոքացնել հակասութիւնները, իսկ որքան այդպէս ընենք, այնքան հակառակ արդիւնք կ՚ունենանք:

Անդրէասեանի վերացական բառին փոխարէն Ազատեան կը գործածէ նշանայինի հասկացողութիւնը.

«Բարձրացնում ես սոցիալական հարց, սոցիալական հարցը ճնշւում է սիմվոլիկ հարցի գերադասութեամբ: Օրինակ ասում ես աղքատութեան հարցը Հայաստանում, գործազրկութեան աստիճանը Հայաստանում. ոչինչ՝ Ղարաբաղի հարց կայ, ոչինչ՝ Եղեռնի հարց կայ, ոչինչ՝ ազգային միասնութեան հարց կայ: Դրանք սիմվոլիկ հարցեր են, սիմվոլիկին պատկանող հարցեր են: Սիմվոլիկ՝ ոչ թէ այն իմաստով որ ռէալ չեն, այլ այն իմաստով որ իրենք նշանային, խորհրդանշանային հարցեր են, իսկ առաջինը սոցիալական հարցեր են: Օրինակ Հայաստանում նուազագոյն աշխատավարձը 32 հազար 500 դրամ է: Ամսական 32 հազար 500 դրամով Հայաստանում եթէ մէկը փորձի ապրել, կը դառնայ անտունի կարգավիճակով մարդ: [...] Օրէնքը դրուեց կառավարութեան կողմից, հաստատուեց պառլամենտում: Օրէնսդիրներին հարցնում են. «Դուք կարո՞ղ էք ապրել այդ դրամով»: Ասում են՝ «ոչ»: Ուրեմն ինչո՞ւ ես քուէարկել՝ եթէ գիտես որ դա սխալ է: Որովհետեւ ցինիկ է, արժէք չունի իր մէջ: Արժէքը մենակ իր շահն է:

«Այդ նոյն կառավարութիւնը իր գլխին գմբէթ է դնում: Գմբէթի նախագիծ էին անում: Նայէք 32 հազար 500 դրամը եւ այդ գմբէթը՝ որ պէտք է դնեն իրենց գլխին: Գմբէթը սիմվոլիկ մակարդակն է: 32 հազար 500 դրամը սոցիալական իրականութիւնն է: Եւս մի հանդիսանքի առարկայ ստեղծելով, դու փորձում ես կոծկել եւ ուշադրութիւնը շեղել այն հանգամանքից, ինչը դու անում ես ռէալ սոցիալական իրադրութեան մէջ:

«Ես հաւատացեալ մարդկանց հետ որեւէ պրոբլէմ չունեմ: Ես պրոբլէմ ունեմ կրօնի որպէս ինստիտուցիայի հետ: Նայէք եկեղեցիների սնկերի նման աճը 32 հազար 500 դրամի մինիմալ պայմաններում: Վատ ես ապրում, ոչինչ՝ Աստուած կայ երկնքում, գնա՛ աղօթիր: Զուտ մարդկային մակարդակով, դա յանցագործութիւն է»:

Այսինքն, նշանային-վերացականի (եթէ միացընենք երկու բառերը) միջոցով կը քօղարկուին հասարակական խնդիրները եւ հասարակութեան ներյատուկ հակասութիւնները:

Ճիշդ ասիկա նկատի ունի Անդրէասեան, երբ կը քննադատէ նժդեհական ազգայնականութիւնը իբրեւ պետութեան տիրող գաղափարախօսութիւն: Նժդեհականութեան միջոցով Սերժ Սարգսեան կ՚ուզէր ժողովուրդին ուշադրութիւնը հեռու պահել ապրող կենցաղային դժուարութիւններէն:

Տեսէ՛ք Սփիւռքի աւանդականութիւնը: Սփիւռքի ղեկավարութիւնը չունի գործնապաշտ մտահոգութիւններ իր ենթականերուն նկատմամբ: Չունի գաղութին համար տուեալ երկիրին մէջ հող գրաւել-կորսնցնելու մտահոգութիւնը: Չունի գաղութին ապահովութիւնը (արեւելահայերէն՝ անվտանգութիւնը) ապահովելու պարտականութիւնը: Չունի բարեկեցութեան պատասխանատուութիւնը՝ քանի որ պատասխանատուն հիւրընկալ երկիրն է, իսկ գաղութը առաւելագոյնը կրնայ տրամադրել յատկացումներ բարեգործութեան անունին տակ: Պատասխանատու չէ գաղութի անդամներուն առողջութեան, առաւելագոյնը կրնայ դարձեալ դրամապէս օգտակար ըլլալ: Մէկ խօսքով, ոչ մէկ գործնապաշտ պատասխանատուութիւն ունենալով, Սփիւռքը նշանային-վերացական ազգայնականութիւնը դիւրութեամբ կը հասցնէ բարձրակէտային աստիճանի:

Առաւել եւս, Սփիւռքը՝ իր կառոյցներէն ներս, չունի Հայաստանի նման քաղաքացիական հասարակութիւն՝ որ լսելի դարձնէ իր խօսքն ու բողոքը, բան մը՝ որ նշանային-վերացականը կը դարձընէ շատ աւելի դիւրին:

2. Անմիջապէս 1-ին հետ կապուած է գերիշխանութեան (hegemony) հարցը՝ զոր կ՚արծարծէ արուեստի քննադատ եւ համադրող Սուսաննա Գիւլամիրեան իր վիտէօհարցազրոյցին մէջ: Ան դիտել կու տայ, որ պետութեան որդեգրած ցեղակրօնութեան սկզբունքը հիմքն էր անոր գերիշխանութեան.

«Եկանք փաստօրէն մեր օրերին, որ յստակ որոշակի պրոպագանդայի եւ գործողութիւնների մի երեւոյթ երեւակուեց: Որոշակի դէպքերից յետոյ դա աւելի ցայտուն դարձաւ, բայց փաստօրէն արդէն 2002 թուականի իշխող կառավարութեան կուսակցութեան կողմից պրոշիւր էր տպագրուել. ցեղակրօնային ինքնութեան պոստուլատներն [կանխադրոյթներն] էին: Բայց այդ պոստուլատները ուղղակի ցնցող էին հասարակութեան աւելի մտածող մի մասի համար որովհետեւ փաստօրէն պատրաստի բանաձեւեր էին առաջարկւում: Եւ տարօրինակ է որ կայ մի «մտաւորական» մաս՝ որ փաստօրէն ջատագովում է ինքնութեան այդ տեսակի մօտեցումը եւ ձեւակերպումները, եւ դա համարում է ազգի զարգացման համար դրական, էմանսիպացնող եւ պրոգրեսիւ»:

Գիւլամիրեան կը շարունակէ՝ որ յաճախ իշխանութիւնը այս գործիքները կ՚օգտագործէ հասարակութիւնը զօրաշարժելու (մոբիլիզացնելու) համար որպէսզի մարդիկ համակերպուին: Համակերպուին այն իմաստով՝ որ պայքարի սլաքը ուղղուի ուրիշ տեղ:

Այստեղ դրուած է Անթոնիօ Կրամշիի գերիշխանութեան (հեգեմոնիայի) ամբողջ գաղափարը, կ՚ըսէ Գիւլամիրեան, որովհետեւ գերիշխանութիւնը միայն պարտադրել չէ այն նաեւ համոզել է:

Միշտ չէ որ մարդոց բռնի ուժով կ՚ենթարկեն, այլ կարելի է համոզել: Կարելի է այնպէս ձեւակերպել՝ որ իշխող համակարգը մնայ ուժի մէջ, մինչ ենթակաները ըլլան համակերպ եւ

4

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1894 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 17 ՅՈՒՆԻՍ 2021 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٨٩٤ الخميس ١٧ يونيه ٢٠٢١


## ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ

Յունիս 20-ի արտահերթ խորհրդարանական ընտրութիւններուն կը մասնակցին 25 քաղաքական ուժեր՝ 4 դաշինքներ եւ 21 կուսակցութիւններ (մէկ անյոյս կուսակցութեան մը հայրենաշունչ հրաժարումէն ետք)։ Քարոզարշաւի առաջին պաշտօնական օրը Յունիս 7-ն էր, թէեւ բոլոր մասնակցողները՝ ոչ պաշտօնական հարթակներով եւ օրէնքի թոյլատրած սահմաններուն մէջ, շատոնց սկսած էին իրենց քարոզարշաւը։

**17-ը**

Քազորարշաւը նոյնիսկ սկսած էր կուսակցութիւն-դաշինքներու կազմութենէն շատ առաջ։

Նախընտրական մեծապէս ձախող գործընթացք մըն էր 17-ը՝ որ ամբողջապէս անտեսուեցաւ հասարակութեան կողմէ։ Ի՞նչ էր 17-ի նշանաբաններէն մէկը։ Ո՛չ մէկ արտահերթ ընտրութիւններ այլ Փաշինեանի վերջնական ու անվերադարձ հրաժարական եւ Վազգէն Մանուկեանի ժամանակաւոր նշանակում։ Իսկ եթէ արտահերթ ընտրութիւններ տեղի ունենան՝ 17-ը կտրականապէս պիտի մերժէր մասնակցիլ։ Պիտի պոյքոթէր։ Եւ ահաւասիկ արտահերթ ընտրութիւնները տեղի պիտի ունենան։ 17-էն կարեւոր մաս մը՝ նախկին կամ վերափոխեալ անուններով կամ դաշինքներու անդամակցութեամբ, մեծ հաճոյքով պիտի մասնակցի ընտրութիւններուն։ Եթէ պոյքոթէն՝ ոչ ոք կարեւորութիւն պիտի տայ անոնց։

**Նախկին նախագահներ**

Կայ հին նախագահներուն խնդիրը։ Երեքն ալ մէջտեղ ինկած են, երեքն ալ կը պնդեն, որ եթէ իրենք ըլլային նախագահ-վարչապետ՝ պատերազմ տեղի պիտի չունենար։ Այսքան պարզ եւ կտրուկ։ Երեքէն երկուքը պիտի ներկայանան ընտրութիւններուն։ Ես անձամբ խնդիր ունիմ արեւմտեան ժողովրդավարութեան հետ, բայց երբեք տեսա՞ծ էք որ Ֆրանսայի, Գերմանիոյ, Անգլիոյ, Աւստրիոյ կամ ԱՄՆ-ի թիւ 1 առաջնորդներ կրկին ներկայանան ընտրութեան։ Այս եւ նման երկիրները կը հիմնուին անձի նորացումի գաղափարին վրայ, որքան որ այդ նորացումը ըլլայ պատկերային։ Բայց գիտցած են նորացումի կարեւորութիւնը։

Լեւոն Տէր-Պետրոսեան կը ներկայանայ Ազգային Կոնգրէս կուսակցութեան ընդմէջէն, կուսակցութիւն մը՝ որուն ձայնը կը լսենք միայն ընտրութիւններու ժամանակ, կուսակցութիւն մը՝ որ ամէն ընտրութեան կը վերակազմուի նոր անդամներով՝ Տէր-Պետրոսեանի անձին համար։

Ռոբերտ Քոչարեան՝ Հոկտեմբեր 27-ի (ընդդիմադիր իրական ուժերու մաքրագործում եւ քոչարեանական մենատիրութեան հռչակում) եւ Մարտ 1-ի (ընդդիմադիր միակ իրական ուժի ջախջախում եւ Սերժ Սարգսեանի տիրակալութիւն) հոգեւոր հայրը, կը ներկայանայ Հայաստան Դաշինքով՝ որ կ՚ընդգրկէ ՀՅԴ-ն եւ Վերածնուող Հայաստանը։ Աւելի քան յստակ է, որ Քոչարեան վերադարձած է «քաղաքականութիւն» հաշուեյարդարի համար։ Եթէ տեղի ունեցած չըլլար Մարտ 1-ի դատավարութիւնը՝ որմէ կատարելապէս մաքուր դուրս եկաւ սահմանադրութիւնը տապալած չըլլալուն, 10 սպանութիւնները կատարած չըլլալուն, այլեւ ընտրութիւնները կեղծած չըլլալուն եւ բազմաթիւ այլ չըրած բաներուն համար, երբեք պիտի չմտածէր մտնել քաղաքականութիւն։ Քոչարեան՝ սովորական ունեցուածքով քաղաքացի մը, որ 1998-էն ետք դարձաւ Հայաստանի առաջին օլիկարքը, կուտակելով իր ծանօթ ու անծանօթ գերհարստութիւնը, որուն մասին բազմիցս մատնանշած է *Ջահակիր*։

Երկու նախագահներ՝ երկու սլաքներ դէպի ետեւ։

Իրազեկ Քաղաքացիների Միաւորում ՀԿ ծրագիրներու ղեկավար, Անկախ Դիտորդի ներկայացուցիչ Դանիէլ Իոաննիսեան, ամփոփելով պաշտօնական ընտրարշաւի առաջին օրուայ (Յունիս 7) դիտումները, կը շեշտէ՝ որ արդէն Հայաստան Դաշինքի դէմ յանցագործութեան լուրջ ահազանգներ ու փաստեր հասած են իրենց՝ զորս շուտով պիտի հրապարակեն, իսկ ընդհանուր առմամբ կան ընտրակաշառքի եւ այլ բնոյթի յանցագործութիւններու ահազանգներ, գլխաւորապէս կապուած Հայաստան (Քոչարեան), Պատիւ Ունեմ (Վանեցեան) եւ ԲՀԿ (Ծառուկեան) դաշինք-կուսակցութիւններուն հետ։ Հին օրերու գործնական վերադարձ։

**Պատիւ Ունեմ**

Յստակօրէն հաշուեյարդարի կարգով է որ նախկին ԱԱԾ պետ Արթուր Վանեցեան կը վարէ Պատիւ Ունեմ Դաշինքը՝ կազմուած Սերժ Սարգսեանի տխրահռչակ Հայաստանի Հանրապետութիւն Կուսակցութենէն (ՀՀԿ) եւ Հայրենիք Կուսակցութենէն։ Այն Վանեցեանը՝ որ պատերազմէն ետք բոլորէն առջեւ ըսաւ, որ Նոյեմբեր 9-ի յայտարարութիւնը պէտք չէ ստորագրէր Փաշինեան եւ պէտք է շարունակէր պատերազմը մինչեւ վերջնական կարուստ, որմէ ետք կարելի պիտի ըլլար պատերազմով կամ դիւանագիտութեամբ ետ վերադարձնել հողերը (*Ջահակիր*, թիւ 1879)։ Ասիկա կը կոչուի դիւանագիտութիւն եւ այս դիւանագէտը պիտի մտնէ քաղաքականութիւն։ Նման բան քիչ կը պատահի արեւմտեան դիւանագէտ աշխարհի մէջ։

Կէտ մը եւս։ Բոլոր օլիկարքները իրենց հարստութիւնները դիզած են օֆշորային ապահով գօտիներ, թէեւ անկարելի է անոնց հետքերով ընթանալ։ Բայց երբ յանկարծ Փանամայի Փաստաթուղթերով 2016-ին պաշտօնապէս կը յայտնաբերուի՝ որ Միհրան Պօղոսեանի հարստութիւնը կը գտնուի Փանամայի օֆշորային գօտի եւ *Հետքը* կը հրապարակէ հետախուզական մանրակրկիտ տուեալներ, արդէն հանրութեան առջեւ փաստուած կ՚ըլլայ ամէն բան։ Այս պայմաններուն տակ, երբ Սարգսեան-Վանեցեան Պօղոսեանը կ՚ընդգրկեն Պատիւ Ունեմ դաշինքի ցուցակին մէջ, ցոյց կու տան մերժուածը ներգրաւելու իրենց գերինքնավստահութիւնը, ինչպէս նաեւ վերականգնած կ՚ըլլան հանրութեան հետ վերադիր մեծամտութեամբ առնչուելու եւ հանրութիւնը դիտաւորեալ արհամարհելու անցեալի հաճոյքը։ Այլեւ անուղղակի ազդանշան արձակած կ՚ըլլան օլիկարքներուն՝ շարունակելու երկիրի դրամներուն թալանը դէպի արտասահմանեան անորոշ գօտիներ։ Ուրիշ հարց, թէ իրաւական պատճառներով, Յունիս 8-ին, Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովը անվաւեր կը ճանչնայ Պօղոսեանի գրանցումը ցուցակին մէջ եւ կը յարուցէ քրէական գործ, քանի որ ներկայացուցած է Հայաստանէն չորս տարուայ բացակայութիւնը արդարացնող երկու կեղծ փաստաթուղթեր։ Սարգսեան-Վանեցեան չեն կրնար անտեղեակ եղած ըլլալ այդ կեղծ փաստաթուղթերուն։ Յետոյ, Յունիս 16-ին, ԿԸՅ-ն անվաւեր կը ճանչնայ իր սեփական որոշումը եւ Պօղոսեանի անունը կը վերականգնուի։

Հին մեթոտները՝ կանգուն։

**ԲՀԿ**

Պարոն Գագիկ Ծառուկեանի անձնական սեփականութիւնը հանդիսացող Բարգաւաճ Հայաստան Կուսակցութեան մասին կրկին անդրադառնալը աւելորդութիւն մըն է։ Այս կուսակցութիւնը գոյութիւն ունի մէկ նպատակի համար՝ պահպանելու հսկայ օլիկարքին շահերը քաղաքականութեան միջոցով։

**Ազատութիւն Կուսակցութիւն**

Ազատութիւն Կուսակցութեան առաջնորդ Հրանդ Բագրատեանի կարգախօսը աւելի քան յստակ է, ինչպէս յայտարարեց Յունիս 7-ին. «Թքած ունեմ ձեր ստորագրած թղթի վրայ»։ Շատ լաւ, ուրեմն վերականգնենք պատերազմը։ Երկրորդ կարգախօսն է՝ նոյն օրը բացայայտուած. «Ցաւօք սրտի, Ալիեւը Նիկոլի նկատմամբ սեռական հակումներ չի դրսեւորում։ Նիկոլը փող է ստացել Ալիեւից, չի կարող մերժել, որովհետեւ գապիսներ կը յայտնուեն, թէ ինչպէս է դաւաճանաբար յանձնել Արցախը»։ Ասիկա կը կոչուի

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ ՄԵՂԱԴՐԵՑ ՈՒ ՄԷՋԲԵՐՈՒՄ ԱՐԵՑ ՆՐԱ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԻՑ

Հայաստանի վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանի կարծիքով՝ 1998-ին Լեռնային Ղարաբաղը բանակցային սեղանից դուրս թողնելով՝ ոչնչացուել է Արցախի առաջին պատերազմում տարած յաղթանակի ամբողջ քաղաքական արդիւնքը։ *Արմէնպրէսի* հաղորդմամբ՝ վարչապետի պաշտօնակատարը նման տեսակէտ յայտնեց Աբովեանում քաղաքացիների հետ հանդիպմանը։

Փաշինեանն Արցախի առաջին պատերազմի ամենակարեւոր քաղաքական եւ դիւանագիտական արդիւնքը համարեց այն, որ 1994 թուականի Մայիսի 12-ին զինադադարի փաստաթուղթը կնքուել է Հայաստանի, Ադրբէջանի եւ Լեռնային Ղարաբաղի միջեւ։ «Կարեւոր քաղաքական արձանագրումը հետեւեալն էր, որ փաստաթուղթը ստորագրուեց եռակողմ ֆորմատով՝ Հայաստան, Ղարաբաղ, Ադրբէջան։ Սրանով, ըստ էութեան, Լեռնային Ղարաբաղը՝ այս նշաձողի մէջ դարձաւ միջազգային իրաւունքի սուբիեկտ, որովհետեւ երկու միջազգայնօրէն ճանաչուած պետութիւնների հետ ստորագրել է փաստաթուղթ», - ասաց վարչապետի պաշտօնակատարը։

Նա 1996-ի վերջին տեղի ունեցած ԵԱՀԿ Լիսաբոնի գագաթնաժողովը համարեց ամենաառաջին մեծ

↳ 3

## ԼՐՏԵՍՈՒԹԻՒՆ Ի ՆՊԱՍՏ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻՆ

Հայաստանի ԱԱԾ-ն Յունիս 7-ի հաղորդագրութեամբ կը տեղեկացնէ ի նպաստ Ազըրպէյճանին կատարուած լրտեսական գործողութեան մանրամասնութիւնները։

Հայաստանի պետական բարձր մըրցանակներով պարգեւատրուած նախկին զինուորականը եւ Հայաստանի այլ քաղաքացի մը, աշխատանք փնտռելու պատրուակով միասին կը մեկնին Թուրքիա, ուր կը յայտնուին Ազըրպէյճանի յատուկ ծառայութիւններու տեսադաշտին տակ եւ նիւթական օգուտներու դիմաց կը հաւաքագրուին իբրեւ Ազըրպէյճանի լրտեսներ։ Ապա կը մեկնին երրորդ երկիր, ուր Ազըրպէյճանի դեսպանատան մէջ կը ստորագրեն անոր կողմը անցնելու համաձայնագիր եւ կը ստանան ծածկանուններ ու գումարներ։

Անոնք կը լուսանկարեն, կը պատկերահանեն եւ ագէրիներուն կը ղրկեն Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութեան զօրամասերը, այնտեղ գտնուող զինային պաշարը, կը

↳ 3

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

**(մահուան առիթով)**

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

## ՄԱՄՈՒԼԻ ՔՆՆԱԽՕՍԱԿԱՆՆԵՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Ստորեւ ընտրողաբար կը թարգմանեմ ամերիկեան մամուլի լրագրային քննախօսականներու Գանթարճեանին վերաբերող հատուածները:

* * *

12 Դեկտեմբեր 1955. Academy of Music (Ֆիլատելֆիա). Philadelphia Orchestra, նուագավար՝ Eugene Ormandy. Վիենիաւսքի, Քոնչերթօ թիւ 1, մենակատար՝ Ժիրայր Գանթարճեան:

«Անցեալ գիշեր, Երաժշտութեան Աքատէմիին մէջ, Ֆիլատելֆիոյ Նուագախումբի Ուսանողական Նուագահանդէսը տեսողական, երգչային եւ ջութակահարական եղանակներով նշանաւորեց Ծնունդի եւ Խանուքայի զոյգ տօնակատարումները եւ ներկայացուց երիտասարդ վիրթիւոզ ջութակահարի մը տեղական առաջնեկ նուագախմբային ելոյթը, նուագավարութեամբ Եուժէն Օրմանտիի:

«Մենակատարն էր 24-ամեայ Ժիրայր Գանթարճեան: Ծնած Եգիպտոս եւ սերած երաժիշտ հայ ընտանիքէ, ան այժմ կ՚ուսանի Քուրթիս Հաստատութեան մէջ: Արդարեւ, Գանթարճեանին անծանօթ չէ նուագահանդէսի բեմը: Ան ներկայացաւ բաւական հանդարտ, մինչ կենսուրախ անտարբերութեամբ արձակելով Հենրի Վիենիաւսքիի թիւ 1 Քոնչերթոյի (ֆա տիէզ մինոր) ահեղ արփեճիոները, վազքերը եւ երկձայները:

«Այս Քոնչերթօն՝ որ ժողովրդականութեան առումով շատ աւելի ցած մակարդակի վրայ կը գտնուի քան նոյն երաժշտահանի ռէ մինորը, երկար տարիներ է չէր նուագուած այստեղ:

«Երաժշտականապէս դիւրին գործ մըն է՝ առաջին եւ երրորդ շարժումներու վիրթիւոզական ցուցադրութեամբ, իսկ հակիրճ դանդաղ շարժումը՝ «Աղօթք» խորագիրով, սիրուն ծորերգութիւն մըն է, զոր Գանթարճեան նուագեց զգացումով եւ հնչիւնային գեղեցկութեամբ»:

(Samuel L. Singer, ‘Orchestra Gives Student Concert,’ *The Philadelphia Inquirer*, 13 December 1955, p. 23)

* * *

30 Սեպտեմբեր 1956. Marines’ Memorial Theater (Սան Ֆրանսիսքօ). Ժիրայր Գանթարճեանի առաջնեկ մենահամերգ Սան Ֆրանսիսքոյի մէջ. դաշնակի նուագակցութիւն՝ Մարօ Աճէմեան:

«Այս օրերս լաւ երաժիշտները մեզի կու գան անսովոր վայրերէ:

«Անցեալ գիշեր, *Ֆրանչեսքա տա Ռիմինի* օփերային մէջ թուրք սոփրանօ մը կար: Իսկ Ժիրայր Գանթարճեան՝ որ երէկ երեկոյեան Մարինս Թատրոնին մէջ տուաւ բացառիկ ջութակի մենահամերգ մը, ծնած է Եգիպտոս հայ ծնողքէ: Վերջերս այս երկիրը եկաւ ուսանելու համար:

«Պիտի փափաքէի Գանթարճեանին ունկնդրած ըլլալ պինդ յետնախորքով բեմական յարդարանքի առջեւ: Տպաւորութիւնը այն էր, որ գինքը շրջապատող փափուկ վարագոյրներուն պատճառով, իր նման խիստ ընտիր ջութակահարի մը հնչիւնը փոքրացած էր որոշ չափով: Թերեւս վարագոյրները խլացուցած էին հնչիւնին մէկ մասը:

«Բայց եւ այնպէս ան նուագեց յստակ, լաւ դպրոցէ անցած երաժշտական ճաշակով եւ յաճախ բացառիկ գեղեցկութեամբ: Փականինիի քանի մը շլացուցիչ փոփոխակներու մէջ, վիրթիւոզական արհեստի բոլոր հնարքները բաղխեց բռնկուն սրընթացութեամբ եւ ինքնավստահութեամբ:

«Աւելի հարուստ եւ տարածական գեղեցկութիւն կար Էրնեսթ Պլոքի Սոնաթի նուագին մէջ քան Պեթհովէնի տօ մինոր Սոնաթին: Նոյնը կարելի է ըսել նաեւ դաշնակահարուհի Մարօ Աճէմեանի մասին: Ան փայլուն էր Պլոքի մէջ, բայց, Գանթարճեանի նման, չկրցաւ կայուն կերպով ընտանի ըլլալ աւելի ուղիղ հաւասարակշռուած Պեթհովէնի ոճին մէջ:

«Գանթարճեան նուագեց հայ երաժշտահաններ Կոմիտասի եւ Ալեմշահի երկու գործեր՝ որոնք յագեցած են Միջին Արեւելեան հաճելի թախծալի տրամադրութեամբ:

«Ունկնդիրը շատ սիրեց զինքը: Ան արդէն շատ բան կատարելագործած է եւ տակաւին խոստումներ ցոյց կու տայ աւելի հասուն զարգացումի»:

(Alexander Fried, ‘Foreigners Aid S. F. Music,’ *The San Francisco Examiner*, 1 October 1956, p. 14)

* * *

24 Օգոստոս 1957. Civic Auditorium (Սան Ֆրանսիսքօ). ‘Pops’ concert. San Francisco Symphony, նուագավար՝ Arthur Fiedler. Փականինի, Քոնչերթօ թիւ 1, մենակատար՝ Ժիրայր Գանթարճեան:

«Արուեստի Յանձնաժողովի նախաձեռնած Փոփսի եղանակի ամենէն նշանակալի, ինչպէս նաեւ ամենէն հաճոյալի յայտագիրներէն մէկն էր Շաբաթ գիշերուայ նուագահանդէսը, որ տեղի ունեցաւ Սան Ֆրանսիսքոյի Սիվիլ Օտիթորիումին մէջ:

«Անոր յաջողութիւնը մասամբ պարտական է ջութակի հոյակապ մենակատարի եւ Հանս Լեսչքէի մարզած Քաղաքապետական Երգչախումբի գոյութիւններուն, եւ մասամբ յայտագիրի մասնայատուկ ընտրութեան նուագավար Արթիւր Ֆիտլըրի կողմէ:

«Ջութակահարն էր երիտասարդ Ժիրայր Գանթարճեան՝ ծնած Եգիպտոս հայ ծնողքէ, այժմ Քուրթիս Հաստատութեան կրթաթոշակային ուսանող, որ ամառները սովորութիւն ունի բնակութիւն հաստատել Սան Ֆրանսիսքօ եւ Պերքլէյ:

Ժիրայր Գանթարճեան, 1957 (*The San Francisco Examiner*, 18 Օգոստոս 1957)

«Իր կատարած քոնչերթօն հին ժամանակներու շլացնող գործ մըն էր՝ Փականինիի ռէ մաժորը: Այս քոնչերթօն կը պարունակէ Փականինիի ժամանակ յայտնի բոլոր ջութակի հնարքները, որոնցմէ շատերը յայտնաբերած է նոյն ինքը Փականինի, մինչդեռ անկէ ի վեր յայտնաբերումները եղած են շատ քիչ: Գանթարճեան զայն կեանքի կոչեց ոգեշունչ եռանդով, քնարական մասերու հնչիւնային ջերմութեամբ եւ պրաւուրայի յորդառատ հուրով ու փայլքով, պրաւուրաներ՝ որոնցմով երաժշտահանը յագեցուցած է գործը: Շաբաթ գիշերուայ մեծ հասարակութիւնը ջութակահարին պարգեւեց ամենէն երկար եւ ամենէն երախտապարտ արձագանգը՝ զոր երբեւէ մենակատար մը արժանացած ըլլայ այս եղանակի Փոփսին»:

(Clifford Gessler, ‘Violin Soloist, Muni Chorus Tops at Pops,’ *Oakland Tribune*, 26 August 1957, p. 36)

* * *

Նոյն նուագահանդէս:

«Եգիպտոս ծնած Ժիրայր Գանթարճեան կու գար Ֆիլատելֆիայէն, որպէսզի Շաբաթ գիշեր, Սիվիք Օտիթորիումին մէջ, Արուեստի Յանձնաժողովի կազմակերպած «Փոփ» նուագահանդէսին նուագէր Փականինիի ռէ մաժոր Քոնչերթօն:

«Նկատի առնելով այն փաստը՝ որ մինչեւ այսօր ան ժամանակ ունեցաւ կերտելու ընդամէնը համեստ հռչակ մը, իր մասին բան մը պիտի ըսեմ՝ որ կրնայ ցնցել ձեզի:

«Ձեմ յիշեր ոեւէ կենդանի ջութակահար՝ որքան ալ հռչակաւոր ըլլայ ան, որ կրնայ Փականինիի աւելի յաջող ցուցադրութիւն մը կատարել քան Գանթարճեանը:

**Բոլորը հիացած**

«Ամբողջութեան մէջ այս երկար գործը քիչ մը կը նմանի *Լուչիայ*ի Խելագարութեան Տեսարանին քոլորաթուրա ջութակի համար: Գանթարճեան նուագեց երեք շարժումները եւ ոչ թէ սովորական մէկ շարժումով տարբերակը: Իր շլացուցիչ կատարումը հիացում պատճառեց նուագավար Արթիւր Ֆիտլըրին եւ նուագակցող Սան Ֆրանսիսքօ Սէմֆոնիին, այնպէս ինչպէս ընդարձակ հանդիսատեսին:

«Գանթարճեան, որուն անունը կը յուշէ իր սերումը հայ ընտանիքէ, ընդամէնը երկու տարի է որ կը գտնուի այս երկիրը, բարձրագոյն կրթութիւն ստանալու Ֆիլատելֆիոյ Քուրթիս Հաստատութեան մէջ:

«Երեւութապէս կրնաք դատել որ թենոր մըն է եւ ոչ ջութակահար, քանզի կը պարգեւէ Քարուզոյի, Տէլ Մոնաքոյի եւ Թաքըրի հայեացքներուն դեռատի խառնուրդը: Արդէն իր դրոշմը կերտեց Ֆիլատելֆիա Նուագախումբի նուագահանդէսներով:

**Հմայիչ հնչիւն**

«Մէկ կողմ ձգելով իր ջղուտ տիրապետումը հրավառ թեքնիքին՝ երկձայներ եւ փսփսացող հարմոնիքներ, թռչկոտուն աղեղ եւ ջութակի մատնատախտակին վրայ այծանման ոստիւններ, ան ունի իրական եւ հմայիչ հնչիւն: Այնտեղ ուր Փականինիի մակերեսային ցուցադրագործը առիթ ընծայեց, ան իր երաժշտութիւնը դասութաւորեց (phrased) գերազանց ջերմութեամբ եւ նրբութեամբ:

«Անշուշտ իր ունակութիւնը ցոյց պիտի տայ աւելի ամրապինդ երաժշտութեան ընդմէջէն, նախքան ամբողջապէս փաստելու իր առաջնակարգ հնարաւորութիւնները: Մենահամերգ մը պիտի տայ Սեպտեմբեր 30-ին, Մարինս Մեմորիալ Թատրոնին մէջ»:

(Alexander Fried, ‘Kantarjian Hailed as Great Violinist,’ *The San Francisco Examiner*, 26 August 1957, Sec. II, p. 4)

(Շար. 4)

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՊՂՆՁԱՄՈԼԻՊՏԷՆԱՅԻՆԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՑՈՒՑԱԿԻՆ ՄԷՋ

*Փաստերի Ստուգման Հարթակի* հետաքննութիւններէն մէկուն մէջ, Մկրտիչ Կարապետեան կը յայտնաբերէ՝ որ Զանգեզուրի վտանգաւոր եւ խնդրայարոյց պղնձամոլիպտէնային հանքային արդիւնաբերութեան ՓԲԸ միաւորի գլուխներէն ոմանք կը գտնըւին Ռոբերտ Քոչարեանի գլխաւորած Հայաստան Դաշինքի ցուցակին մէջ:

Ցուցակի չորրորդ անունն է միաւորի խորհուրդի անդամ Վահէ Յակոբեան, իսկ անոր եղբայրը՝ Կարէն Յակոբեան, ունի 2.5 տոկոս բաժնեմաս, զոր կը տնօրինէ անուղղակի՝ Մաքուր Երկաթի Գործարան ՓԲԸ-ի միջոցով: Վերջինիս աշխատակիցներ եւս ընդգրկուած են Հայաստան Դաշինքի մէջ:

Դաշինքի 58-րդ թիւն է Էդուարդ Մսրլեան, որ պղնձամոլիպտէնային միաւորի աշխատող է: Մսրլեան եղած է Վահէ Յակոբեանի օգնականը, երբ վերջինս 2017-ին Սիւնիքի մարզպետն էր:

Դաշինքի ցուցակի թիւ 127-ն է Միքայէլ Ներսիսեան, որ Մաքուր Երկաթի Գործարանի իրաւաբան է:

Դաշինքի թիւ 149-ն է Միքայէլ Համբարձումեան, որ նոյն գործարանի կայուն զարգացումի գիծով տնօրէնն է:

Դաշինքի թիւ 96-ն է Լիանա Գասպարեան, որ Զանգեզուրի պղնձամոլիպտէնային միաւորի մասնագէտ է: 4

# ՊԵՏՈՒԹԻՒՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Իրազեկ Քաղաքացիների Միաւորում ՀԿ-ի ծրագիրներու համակարգող Դանիէլ Իոաննիսեան Ֆէյսպուքի էջին վրայ կ՚արձանագրէ՝ որ Զանգեզուրի պղնձամոլիպտէնային միաւորը, իր հետ կապուած ոճրային խումբերու եւ ղեկավարներու միջոցով, կը փորձէ ազդեցութիւն ունենալ ընտրութիւններուն վրայ: Օրինակ, գիւղերէն մէկուն մէջ, կը սպառնան թունաւոր պոչամբարով պայմանաւորուած առողջութեան վնասահատուցումի ամսական 40 հազար դրամը չտալ այն ընտանիքներուն, որոնք պիտի հրաժարին ընտրել Հայաստան Դաշինքը: Հարցը ներկայացուած ըլլալով իրաւապահներուն, Իոաննիսեան առայժմ կը հրաժարի յաւելեալ մանրամասնութիւններ տալ եւ աղբիւրները բացայայտել: Կ՚աւելցնէ՝ որ «Կոմբինատը դարձել է պետութիւն պետութեան մէջ»:

ԳԱՀԻՐԷ

# *ԶԱՀԱԿԻՐԻ* 39-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆԻՆ


ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՈՒՐՈՒԱԳԻԾ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ (1931-1953)

ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԼԹ. (39)

ԳԱՀԻՐԷ
2021

Լոյս տեսաւ *Զահակիրի* ԼԹ. (39) Յաւելուածը՝ *Ուրուագիծ ջութակահար Ժիրայր Գանթարճեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1931-1953)* (83 էջ)։

Կը ներկայացնէ վերջերս մեզմէ հեռացած գանատահայ անուանի ջութակահար Ժիրայր Գանթարճեանի (1931, Գահիրէ – 2021, Թորոնթօ) սկզբնաւորութիւնը եւ կազմաւորումը Գահիրէի մէջ, ուր երեք ու կէս տարեկանին սկսած է ջութակի դասերը եւ վեց ու կէս տարեկանին հանդէս եկած մասնագէտ հասարակութեան առջեւ, Եգիպտոսի մէջ հռչակուելով իբրեւ հրաշք-մանուկ։

1

## ԼՐՏԵՍՈՒԹԻՒՆ Ի ՆՊԱՍՏ ԱԶԵՐՊԷՅՃԱՆԻ

բացայայտեն զինծառայողներուն քանակը, հրամանատարական կազմին տուեալները, հակաօդային պաշտպանութեան համակարգներուն կայանները, ինչպէս նաեւ պետական եւ ռազմավարական կարեւորութիւն ունեցող իրեր՝ ջրամբար, ջրաելեկտրակայան, մարտավարական բարձունքներ։

Վերջին պատերազմին, անոնցմէ մէկը իբրեւ կամաւոր խումբի հրամանատար կը մեկնի մարտավայր՝ յատկապէս Ցադրութ, եւ կը շարունակէ տեղեկութիւններուն հաւաքագրութիւնը եւ առաքումը Ազըրպէյճան, ներառեալ տեղեկութիւններ հակաօդային պաշտպանութեան միջոցներուն, հրթիռային համակարգներուն, զրահական սարքերուն, մարտական դիրքերուն եւ այլնի վերաբերեալ։

Անոնք կը կալանաւորուին։

*Զահ. – Դիտարկութեան արժանի կէտ մըն է, որ լրտեսութեան այս դէպքը չշահագործեցին ներկայ ընտրական քարոզարշաւի կողմերը, թէեւ կրնար մէկ կողմը ասոր միջոցով ինքզինք արդարացնել պատերազմի կորուստին համար, իսկ միւս կողմը ցոյց տալ ներկայ ԱԱԾ-ին անկարողութիւնը լրտեսական գործողութիւնը կանխելու տեսանկիւնէն։*

1

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՔՈՋԱՐԵԱՆԻՆ ՄԵՂԱԴՐԵՑ ՈՒ ՄԷՋԲԵՐՈՒՄ ԱՐԵՑ...

ահազանգը Հայաստանի համար։ «Այդ գագաթաժողովում նախագիծ դրուեց շրջանառութեան մէջ, որի էութիւնը հետեւեալն էր, որ Լեռնային Ղարաբաղի հարցը պէտք է լուծուի Ադրբէջանի տարածքային ամբողջութեան շրջանակներում։ Այսինքն՝ միջազգային հանրութիւնն ասում է՝ կոնֆլիկտ ունէք, գնացէք լուծէք, բայց, մեծ հաշուով, ինչ կարգավիճակ էլ ունենայ Ղարաբաղը, պէտք է լինի Ադրբէջանի կազմում», - ասաց Փաշինեանը՝ յիշեցնելով, որ Հայաստանը, սակայն, վետօ է դրել փաստաթղթի վրայ, այդպիսով այն չի ընդունուել, որից յետոյ դա դարձել է ԵԱՀԿ նախագահի յայտարարութիւն։

Նա յաւելեց, որ մինչեւ 1997 թուականի Ապրիլը բանակցային գործընթացը շարունակուել է եռակողմ ձեւաչափով։ Ղարաբաղը, որպէս ինքնուրոյն կողմ, նստել է բանակցային սեղանի շուրջ։ «1997-ին Ռոբերտ Քոչարեանը նշանակւում է վարչապետ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմից, 1998-ին դառնում է Հայաստանի նախագահ եւ առաջին բանը, որ տեղի է ունենում, այն է, որ Լեռնային Ղարաբաղը դուրս է թողնւում բանակցային գործընթացից։ Սա պէտք է արժանանայ ճշգրիտ գնահատականի, որ Արցախեան առաջին պատերազմում տարած յաղթանակի ամբողջ քաղաքական արդիւնքը ոչնչացւում է», - ասաց Փաշինեանը։

Փաշինեանը կարեւոր արձանագրում համարեց՝ Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման շուրջ վերջին եռակողմ հանդիպումը՝ Հայաստան, ԼՂ, Ադրբէջան, տեղի է ունեցել 1997-ի Ապրիլին Մոսկուայում։ «ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահող երկիրն իր մայրաքաղաքում ընդունում է պատուիրակութիւն, որի կազմում Լեռնային Ղարաբաղի ներկայացուցիչ է։ Սա, ըստ էութեան, Ղարաբաղի միջազգային ճանաչման հնարաւորութեան անկիւնաքարն է, սա չի նշանակում, որ պարտադիր կը ճանաչեն, բայց արդէն ճանաչուած, որոշակի կարգավիճակ ունի», - ասաց նա ու յաւելեց, որ 1998-ից յետոյ ոչ մի այդպիսի հանդիպում տեղի չի ունեցել։

Փաշինեանը մէջբերեց ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահ Բեռնար Ֆասիէի՝ 2009-ին Ստեփանակերտ այցելութեան ընթացքում հնչեցրած յայտարարութիւնը, թէ Ղարաբաղի ներկայացուցիչների մասնակցութիւնը ժամանակին դադարեցուել է հայկական կողմի որոշմամբ։ «Կայացուել է որոշում, որով պատերազմի արդիւնքները ոչնչացուել են», - նշեց վարչապետի պաշտօնակատարը։

Փաշինեանը մէջբերեց նաեւ 2004-ին Ռոբերտ Քոչարեանի՝ *Գոլոս Արմենիի* թերթի ընթերցողների հարցերին տրուած պատասխաններից մի հատուած, որում նա անդրադարձել է Ղարաբաղը բանակցային սեղանից դուրս թողնելուն։ «Տպաւորութիւն է ստեղծուել, որ Հայաստանը պատրաստ է կարգաւորման ցանկացած ձեւի, բայց խնդիրը Ղարաբաղն է, աւելի ճիշտ՝ Ղարաբաղի ղեկավարութիւնը։ Հարց է առաջանում՝ միթէ Հայաստանն ի վիճակի չէ իրենից Ղարաբաղի ակնյայտ կախուածութեան պայմաններում ճնշում գործադրել եւ ստիպել համաձայնել այս կամ այն դիրքորոշման հետ։ Ես առաջարկել եմ փոխել այդ տեսակէտն ու փորձել Հայաստանի ռեսուրսն օգտագործել՝ խնդրի կարգաւորման վերաբերեալ սեփական դիրքորոշումն ու մօտեցումները մշակելու համար։ Այսինքն՝ոչ թէ մենք համաձայն ենք կարգաւորման ցանկացած ձեւին, որին կը համաձայնի Ղարաբաղը, այլ մենք ունենք սեփական դիրքորոշում եւ պատրաստ ենք այն պնդել։ Իմ ընտրուելուց յետոյ ես այդպէս էլ արեցի», - Քոչարեանի խօսքերը մէջբերեց Փաշինեանը։

«1998 թուականին Ղարաբաղը դուրս է թողնւում բանակցային գործընթացից՝ Ռոբերտ Քոչարեանի անձնական որոշմամբ», - նշեց նա։

ԽՈՀԵՐ

# ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

4. Անդրէասեանի գաղափարներէն մէկն ալ այն է՝ որ ազգայինը յարափոփոխ երեւոյթ մըն է, բայց հայ հասարակութիւնը պատրաստ չէ քննարկելու անոր փոփոխութիւնը։

2012-ի վիտէօհարցազրոյցներու շարքին մէջ, ազգագրագէտ Աղասի Թադեւոսեան համոզուած է՝ որ ազգային արժէքները անձեռնմխելի դարձնելով մենք կործանած կ՚ըլլանք մենք մեզի, քանի որ կը կորսնցնենք ճանաչելու կարողութիւնը.

«Ազգային արժէքը անձեռնամխելի ինչ որ մի անկիւն չէ, որը մի անգամ ստեղծուել է ու յետոյ դրան ձեռ տալ չի կարելի։ Եթէ որեւէ ազգ նման ձեւ մօտեցաւ իր ազգային արժէքներին, այդ ազգը կործանուած է որովհետեւ այդ ազգը աստիճանաբար չարանում է, աստիճանաբար բթանում է, կորցնում է աշխարհը ճանաչելու իր ունակութիւնները, ամենակարեւորը կորցնում է իրեն ճանաչելու ունակութիւնները, իսկ դա նշանակում է որ այդ հանրոյթը, այդ հասարակութիւնը ինքնաձեւակերպման ունակութիւնն է կորցնում։ Որեւէ մէկը եթէ չի կարող ինքը իրեն ձեւակերպի, չի կարող դառնալ սուբիեկտ, չի կարող դառնալ դերակատար, [իսկ] այդ նշանակում է որ [չի] կարող դնել նաեւ նպատակ, այն ինչ որ այսօր մեր ժողովրդի, մեր հասարակութեան, մեր պետութեան հետ կատարւում է։ Դրա համար ալ մենք չունենք ձգտումներ, դրա համար ալ մենք չունենք քաղաքականութիւն, մենք չունենք ո՛չ ներքին քաղաքականութիւն, ո՛չ ալ արտաքին քաղաքականութիւն, մեր ամբողջ քաղաքականութիւնը թէ՛ ներսում թէ՛ դրսում, կենտրոնացել է ինքնապահպանման վրայ, խայտառակ մի ստրատեգիա որը մի փուլում այդ հասարակութեան տանելու է վերացման»։

Թադեւոսեան թէեւ կը խօսի Հայաստանի ազգայնականութեան մասին, բայց անհրաժեշտ է չեշտել Սփիւռքի օրինակը, որ հայապահպանումի անունին տակ կը յամառի ազգայինը յաւերժ պահել անփոփոխ, մշակութային լճացումը դարձնելով աւելի քան կարելի։

Անցեալը տարբերակելու հարցը կայ, զոր կը դնէ արուեստաբան Ռուբէն Արեւշատեան վիտէօհարցազրոյցի շարքին մէջ.

«Դիֆերենցման խնդիր է։ Այսինքն պատմութիւնը ենթադրում է այսօր դիֆերենցուած մօտեցում, նոյն ձեւի ինչ որ իրականութիւնն է ենթադրում այսօրուայ դրութեամբ դիֆերենցուած մօտեցում, որովհետեւ վերջին հաշուով, ինչ որ մենք ապրում ենք այսօր, բոլոր խնդիրները անցեալում տեղի ունեցած երեւոյթների չդիֆերենցուած լինելու արդիւնք են։ Մենք ապրում ենք վերջ ի վերջոյ այդ ճգնաժամը այսօր, անցեալը չդիֆերենցուած դիտարկելու համար»։

Իշխանութեան կողմէ ազգային *միակ* գաղափարախօսութեան որդեգրումը տարբերակումի որեւէ կարելիութեան մերժումն է, որուն դիւրութեամբ կրնայ հետեւիլ զանգուածը։ Զտարբերակելով ազգայինը, կը լճանայ իսկական ազգայինը եւ կը փոխարինուի գաւառային ազգայինով, որ կը կորսնցնէ արդիականանալու կարողութիւնը։

Հասարակագիտական մարդաբան Ալինա Պօղոսեան վիտէօհարցազրոյցին սկիզբը կը խօսի ազգայինը անփոփոխ պահելու բացասական հետեւանքներուն մասին, երբ մարդը չի տեսներ իր իսկ փոխուելու կարելիութիւնը. «Ամէն դէպքում, ազգայինի մէջ շատ քիչ է հաշուի առնւում փոփոխելիութիւնը [...]։ Պատկերացւում է ազգայինը անփոփոխ մի բան, ու մի բան որ մեզ ինչ որ տեղից տրուել է ու մենք աւելի լաւ է դրան չդիպչենք որովհետեւ ինչքան դիպչում ես դրան, այնքան փչացնում ես։ Իսկ երբոր մարդը այդպէս է ընկալում, եւ երբոր ընկալում է որ փոփոխութիւնը արդէն բացասական է, արդէն խեղաթիւրում է ազգին, նոյնիսկ կործանում է, ուրեմն բնականաբար պէտք է առաջին պլան մղուի ինքնապաշտպանական ռէակցիան որովհետեւ մարդկանց մէջ ազգային իդենտիֆիկացիան անհատական ինքնութեան մի մասն է դառնում ու թւում է որ եթէ այդ հատուածում ինչ որ մի բան փոփոխւում է՝ ուրեմն մարդը ինքը կարող է կործանուի։ Մարդը ինքը չի տեսնում իր փոփոխուելու հնարաւորութիւնը»։

Ինքնապաշտպանական հակազդեցութիւնը Անդրէասեանի բնագիրին նկատմամբ դարձաւ դատաստանական կոչերու տարափ մը։ Աղասի Թադեւոսեան, Ֆէյսպուքի 2021 Փետրուար 21-ի գրառումով, ուղղակիօրէն կ՚անդրադառնայ այսօրուայ միահամուռ յարձակումներուն, առաջարկելով Նժդեհը՝ եւ ընդհանրապէս ազգայնականութիւնը, դիտել պատմական զարգացումի մէջ. «Մենք միջնադարում չենք ապրում, որ մտքի հանդէպ ինկվիզիցիա յայտարարենք, իսկ Նժդեհն էլ սուրբ չէ, նա մտածող ազգային քաղաքական գործիչ է, ով մտածել ու գործել է 20-րդ դարի առաջին կէսին եւ նրա արտայայտած գաղափարները ժամանակի հետ իրենց արդիականութիւնը կորցնելու յատկութիւն ունեն։ Այնպէս որ ցանկացած գործչի միտք կարող է քննադատուել։ Քննադատութիւնը նոյնպէս կարող է քննադատուել։ Այսինքն, հանգիստ կարելի է քննադատել նաեւ Ժաննայի քննադատութիւնը։ Բայց հայհոյել, պիտակաւորել, դատաստանի կոչեր հնչեցնելը անթոյլատրելի է, որպէսզի չգլորուենք դէպի միջնադար»։

Նժդեհականութիւնը դարձնելով գաղափարախօսային եւ արտապատմական բացառիկութիւն, ան կը վերածուի ազգային տեսանկիւնէն փոփոխութեան ոչ ենթակայ միաւորի։ Ասիկա հասարակութեան համար վտառողջ երեւոյթ մըն է։

(Տար. 7)




## 2 ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՊՂՆՁԱՄՈԼԻՊՏԷՆԱՑԻՆԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆ...

Դաշինքի թիւ 90-ն է Աննա Եղիազարեան, որ Զանգեզուրի պղնձամոլիպտէնային միաւորի գլխաւոր տնօրէնի տեղակալի օգնականն է:

*Ջահ. – Նման իրերամէջ ցանցերը կը հանդիսանան դրամատիրութեան իշխանութեան կարեւոր օղակներէն մէկը, ալ ուր մնաց այս ցանցերու օլիկարքական կառուցուածքը՝ ինչպէս կ՚երեւի վերը: Իրերամէջ ցանցերուն անվերջանալի երկարութիւնն ու շղթայակապուածութիւնը ունակ են տապալելու նոյնիսկ ամենաժողովրդական յեղափոխութիւնները:*

## ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ

1 քարոզարշաւ, անձի մը կողմէ՝ որ 1993-1996-ին եղած է Հայաստանի վարչապետ:

**Ազգային-Ժողովրդավարական Բեւեռ**

Նուազագոյն ձայն ստանալու զեռօ հնարաւորութեամբ ամենահարցական կուսակցութիւններէն է Ազգային-Ժողովրդավարական Բեւեռը, որուն մաս կը կազմէ Ժիրայր Սէֆիլեանի Սասնայ Ծռերը: Եւ այստեղ քիչ մը պէտք է կանգ առնել: 2016 Յուլիսին Երեւանի մէջ տեղի կ՚ունենար ապստամբութեան փորձ, որ յայտնի է ՊՊԾ գունդի գրաւում անունով: Համարձակ նախաձեռնութիւն մըն էր՝ որ շարժեց հասարակութեան մէկ մասը: Շարժեց այլընտրանքային մտաւորականութեան շատ կարեւոր հատուած մը՝ որ հանդէս եկաւ ստորահաւաք խիստ հետաքըրքըրական յայտարարութեամբ, իսկ կառավարութիւնը օգտագործեց իր «մտաւորականութիւն»-ը՝ պաշտօնի գլուխ եղող եւ չեղող ծանօթ անուններ, իր քարացած ու ինքնապաշտպան տեսակէտները յառաջ տանելու համար եւ վարկաբեկելու շարժումը: Ապստամբութիւնը դարձաւ շարժում: Շարժումը շրջանցեց ապստամբութիւնը (*Ջահակիր*, 1770-1772):

Յեղափոխութենէն ետք՝ 2018 Սեպտեմբերին, տակաւին յոյս կար՝ որ Սէֆիլեան եւ իր խումբը ներկայացնէին Փաշինեանի իշխանութեան ընդդիմադիր ազգային հետաքրքրական ձայն մը, անշուշտ, ոչ առանց 2016 Յուլիսի ապստամբութեան թողած ազդեցութեան տակ (*Ջահակիր*, թիւ 1824):

Յետոյ եկան 2018 Դեկտեմբեր 9-ի խորհրդարանական արտահերթ ընտրութիւնները: Սասնայ Ծռեր մասնակցեցաւ ընտրութիւններուն, նախընտրական քարոզարշաւի ընթացքին բացայայտելով լուրջ հակասութիւններ: Պետրոս Ղազարեանի հետ ունեցած հարցազրոյցին, կուսակցութեան առաջնորդ Սէֆիլեան յայտարարեց՝ որ իրենց նպատակն է Արեւմտեան Հայաստանի ազատագրումը: Ղազարեանի հարցումին՝ թէ ինչպէ՞ս, պատասխան չկայ: Նոյն ժամանակ, կուսակցութեան ուրիշ առաջնորդ մը՝ Վարուժան Աւետիսեան, կը յայտարարէր՝ թէ կուսակցութիւնը պիտի հետեւի ռէալ-փոլիթիքի սկզբունքներուն: Գործածեց այդ բառը՝ «ռէալ-փոլիթիք»: Ոչ ոք քննարկեց այն հարցը՝ թէ ճիշդ այդ ռէալ-փոլիթիքի միջոցով է որ կարելի չէ այսօր ազատագրել Արեւմտեան Հայաստանը:

Նաեւ ուրիշ անպատասխանատու յայտարարութիւններ: Օրինակ, պիտի ստեղծեն «կրիպտոտնտեսութեան (բլոքչէյն տնտեսութեան) հարթակներ», առանց իրազեկ ըլլալու՝ որ այս տեսակ առցանց անդըրազգային հարթակներն են որոնք միտուած են դառնալու պետութեան փոխանորդները եւ թուլցնելու պետութիւնները (*Ջահակիր*, թիւ 1830):

Եւ հիմա վերջին նորութիւնը ներկայ ընտրութիւններուն ընդառաջ: Հայաստանը պէտք է խզէ դաշինքը Ռուսաստանի հետ եւ պաշտօնապէս դիմէ Միացեալ Նահանգներ՝ ստանալու դաշնակիցի իրավիճակ: Այս է Բեւեռի գլխաւոր կարգախօսը այսօր: Պէ՞տք է կրկնել՝ թէ Ռուսաստանի հետ դաշինքի խզումը ինչ հետեւանքներ կրնայ ունենալ Հայաստանի համար, չըսելու համար՝ որ նոյն Ռուսաստանը կրնայ ոչնչացնել Հայաստանը իր կամ Թուրքիոյ ձեռքով՝ ԱՄՆ-ին գացած ըլլալու համար: Բոլորովին ուրիշ հարց է դիւանագիտական աշխատանքներով մեղմացնել Ռուսաստանի գերտիրակալութիւնը Հայաստանի վրայ, նուազեցնել Ռուսաստանի գործադրած նորգաղութատիրական քաղաքականութիւնը Հայաստանի նկատմամբ: Այս երկուքը բոլորովին տարբեր բաներ են:

Հիմա: Ռէալ-փոլիթի քաղաքականութիւն վարողը ոչ-ռէալ-փոլիթիքով պիտի ազատագրէ Արեւմտեան Հայաստանը, իսկ ազատագրելէն առաջ արդէն կորսնցուցած պիտի ըլլանք ներկայ Հայաստանը:

Ո՞վ է Բեւեռը ֆինանսաւորողը...:

Բեւեռը ոչ մէկ կարելիութիւն ունի յաջողելու ընտրութիւններուն: Ժողովուրդը շատ աւելի գիտակից է անոնցմէ:

**Հանրապետութիւն Կուսակցութիւն**

Հանրապետութիւն Կուսակցութեան առաջնորդ Արամ Սարգսեան կ՚ուզէ վարել միջին քաղաքականութիւն՝ հայկական ինքնուրոյն կեցուածքով, բայց ոչ բեւեռէ բեւեռ անցում: Ուսանելի են իր մօտեցումները՝ ներկայացուած քաղաքակիրթ ըմբռնումներով: Ըստ անոր, պէտք է զէնքերու աղբիւրները բազմազանել եւ չյենուիլ բացառապէս ռուսականին վրայ:

Այսօր խուրաքանչիւր արտաքին յարաբերութիւն պայմանաւորուած է Ռուսաստանի թելադրանքին, հետեւաբար, ըստ Սարգսեանին, կարեւոր է փորձել արտաքին դիւանագիտական յարաբերութիւններ մշակել նուազագոյն ռուսական միջամտութեամբ, այլեւ ուղղակի բանակցային յարաբերութիւններու միջոցով հարցերը լուծել Ազրպէյճանի ու Թուրքիոյ հետ՝ ընդհուպ մինչեւ անպայմանական ապաշրջափակում:

Սարգսեան կը նշէ միջազգային ատեաններուն եւ յատկապէս ՄԱԿ-ի միջոցով իրաւական պաշտօնական փաստաթուղթեր ձեռք ձգելու կարեւորութիւնը, ինչպէս Ազրպէյճան յաջողութեամբ կատարած է վերջին 30 տարիներուն:

Այս բոլորը, սակայն, առանց լքելու ՀԱՊԿը:

**Լուսաւոր Հայաստան**

Լուսաւոր Հայաստան Կուսակցութեան առաջնորդ Էդմոն Մարուքեան ինքզինք կը ներկայացնէ իբրեւ համերաշխային վարչապետ, որ ընդունակ է ընտրելով բոլոր կուսակցութիւններուն լաւագոյն եւ կարողագոյն անհատները (ըլլան անոնք ներկայ իշխանութենէն թէ նախկին), կազմել ազգային համաձայնութեան կառավարութիւն: Գեղեցիկ բառեր: Բայց կարելի՞ է քրէաօլիկարքը նստեցնել ոչ-քրէաօլիկարքին հետ: Կարելի՞ է յանցագործը նստեցնել ոչ-յանցագործին հետ: Վերջապէս, դաւաճաններ փնտռողն ու ստեղծողը պիտի ընդունի՞ նստիլ իր կողմէ դաւաճան հռչակած անձին հետ:

**Քաղաքացիական Պայմանագիր**

Ներկայ իշխանութիւնը եւ Նիկոլ Փաշինեան կը ներկայանան Քաղաքացիական Պայմանագիր Կուսակցութեամբ: Պիտի չկրկնեմ՝ թէ ինչպէս հակայեղափոխութիւնը, որ մեծ թափով կը ներկայանայ ներկայ ընտրութիւններուն ընդդիմութեան պիտակին տակ, տապալեց յեղափոխութիւնը: Իր շահերը մինչեւ Հայաստանի եւ Սփիւռքի խորքային ծալքերը տարածած օլիկարքիզմը յաջողեցաւ ամէն ձեւով ձախողութեան մատնել յեղափոխութիւնը: Հիմա արդէն Քաղաքացիական Պայմանագիրը գիտէ՝ որ առանց օլիկարքի չի կրնար յարատեւել: Եւ ահաւասիկ ընտրական ցուցակին մէջ կ՚ընդգրկէ կարեւոր օլիկարք մը՝ Խաչատուր Սուքիասեան (յայտնի Գուզօ մականունով): Սուքիասեանը միակը չէ: Օլիկարքիզմը մասնակիօրէն յաղթեց յեղափոխութեան, թէեւ իշխանութիւնները յաջողեցան կասեցնել անոր գրոհումը դէպի գիւղական նոր տարածքներ: Գիւղացիները լաւ կը գնահատեն ասիկա:

Յեղափոխութենէն ի վեր ներկայ իշխանութիւնները կ՚ենթարկուին սեւացումի ահռելի արշաւի՝ ուղեկցուած գործնական գործողութիւններով իրենց դէմ: Արտաքին Գործոց նախարարութեան վերին կազմի հաւաքական հրաժարականը ընտրարշաւի պաշտօնական բացումին ճիշդ առաջին օրը՝ Յունիս 7-ին, չի թուիր պատահական ըլլալ: Հրաժարական՝ որ կու գայ շաբաթներ շարունակ հետեւողական վերելքով նախապատրաստուող պատումէ մը ետք, ներկայ իշխանութիւններուն վերագրելով Հայաստանի նոր տարածքներու ինքնակամ, դիտաւորեալ եւ դաւաճանական յանձնում Ազրպէյճանին: Մէկ հարցումի մը պատասխանը եթէ գոյութիւն ունենայ՝ պատճառը կրնայ դառնալ բացայայտ: Յեղափոխութենէն ի վեր, Արտաքին Գործոց Նախարարութիւնը իրական, այլ ոչ իրաւականսահմանադրական, ենթակայութեան առումով որո՞ւն ազդեցութեան տակ կը գտնուի. վարչապետի՞ն թէ նախագահին:

Թաւշեայ կարգախօսը, կարելիութիւնը եւ շրջանը վերջացած է, վերջանալով՝ հետաքրքրութենէ ու նոր միտք ներկայացնելու կարողութենէ զրկուած է Քաղաքացիական Պայմանագիրը:

**Տիրինեան-Բաբաջանեան Ժողովրդավարների Դաշինք**

Անաւարտ յեղափոխական ձայնի ուշագրաւ շարունակութիւնն է աջակեդրոն Տիրինեան-Բաբաջանեան Ժողովրդավարների Դաշինքը, կազմուած Քրիստոնեայ-Ժողովրդավարական Կուսակցութենէն (առաջնորդ՝ Լեւոն Տիրինեան) եւ Յանուն Հանրապետութեան Կուսակցութենէն (առաջնորդ՝ Արման Բաբաջանեան):

Ունի յստակ ձեւակերպում: Պետականութեան կայացումի գործընթացքը յառաջ տանիլ յեղափոխութեան արդիւնքով յառաջացած իրավիճակով, քանի որ յեղափոխութիւնը մատնուեցաւ հարկադրական անգործութեան իսկ գործընթացքը անհրաժեշտ է շարունակել: 2018-ի հռչակումները կը շարունակեն մնալ կենսունակ ու պահանջուած, քանի որ Հայաստանի ապագային եւ ժողովրդավարացումին համար անոնք ունին կենսական նշանակութիւն:

**Քաղաքացու Որոշում**

Ամենէն ազատագրուած ձայնը, արդարեւ, կու գայ Քաղաքացու Որոշում Սոցիալ Դեմոկրատական Կուսակցութենէն: Անմիջապէս ըսեմ, որ այսօրուայ Սոցիալ Դեմոկրատիան բնաւ կապ չունի հինին հետ, օրինակ՝ Հնչակեաններու Սոցիալ Դեմոկրատիային հետ: Անիկա նոր տեսակ մըն է, աջակողմեայ կողմնորոշումով, բայց ձախակողմեայ տարրերու որոշ խառնուրդով եւ մանաւանդ աքթիւիսթական միտումներով:

ՔՈ-ի նպատակներէն մէկն է ուղիղ ժողովրդավարութեան կայացումը, փոխանակ այսօր գործող ներկայացուցչական ժողովրդավարութեան: Ներկայացուցչականը այն է՝ որ ընտրութիւններէն ետք հինգ տարի քաղաքացին մեքանիզմներ չ՚ունենար որոշումներ կայացնելու, իսկ որեւէ կառավարութիւն հակուած է չարաշահումներու եւ իր սեփական գաղափարները ընկալելու իբրեւ լաւագոյնը: Ուղիղ ժողովրդավարութիւնը այն է՝ որ որոշումները կը կայացնեն նոյն ինքը քաղաքացիները՝ շարունակական հանրաքուէներու միջոցով:

Ունի նաեւ այլ կարեւոր ծրագիրներ: Օրինակ, կրթութիւնը դարձնել անվճար որպէսզի մատչելի ըլլայ բոլորին, քաղցկեղի, սիրտ-անօթային եւ այլ ծանր հիւանդութիւններու բուժումը դարձնել անվճար, արգիլել նոր մետաղական հանքեր օգտագործելու թոյլատրութեան արտօնութիւնը, վեթինգի եւ նոր կառուցակարգերու կիրառումի միջոցով փակել անցեալի յանցագործութիւններուն էջը եւ հանրութիւնը տանիլ հաշտեցումի (հաշտեցում՝ վեթինկի միջոցով յանցագործութիւնները լուծելէ ետք, այլ ոչ թէ Լուսաւոր Հայաստանի նման՝ հաշտեցում առանց անցեալի յանցագործութիւնը լուծելու), եւ այլն:

Հայաստանեան եւ սփիւռքեան միջավայրի մէջ՝ ուր տիրող է ծայրայեղ աջակողմեայ եւ գերազգային ձայնը, ՔՈ-ի ամենամարդկային ձայնը հազիւ թէ լսելի ըլլայ, դժբախտաբար:

Ա.

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),



Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1895 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ՅՈՒԼԻՍ 2021 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՌԿ.* عدد رقم ١٨٩٥ الخميس ١ يوليه ٢٠٢١


## ՅԵՏՊԱՏԵՐԱԶՄԵԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Յունիս 20-ին տեղի ունեցան ութերորդ գումարումի Ազգային Ժողովի արտահերթ ընտրութիւնները (արդիւնքները տեսնել քովի սիւնակը): Ստորեւ, քանի մը դիտարկութիւններ.

### ԱՆԿԱԽ ԴԻՏՈՐԴՆԵՐ

Միջազգային դիտորդական առաքելութիւնը բաղկացած էր 341 դիտորդներէ՝ 37 երկիրներէ եկած: Յունիս 21-ի ամփոփիչ ասուլիսին, ԵԱՀԿ Ժողովրդավարական Հաստատութիւններու եւ Մարդու Իրաւունքներու Գրասենեակի (ԺՀՄԻԳ), ԵԱՀԿ Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԱՀԿ ԽՎ) եւ Եւրոպայի Խորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽԽՎ) համատեղ դիտորդական առաքելութեան ներկայացուցիչները դրական կը գնահատեն ընտրութիւններուն ընթացքը եւ ձայներուն հաշուարկը. «Մեր ընդհանուր եզրակացութիւնը այն է, որ 2021 Յունիս 20-ի խորհրդարանական ընտրութիւնները կարճ ժամանակահատուածի ընթացքին մրցակցային էին եւ լաւ կազմակերպուած» եւ «մեր առաքելութեան ճնշող մեծամասնութիւնը, ընդհանուր առմամբ, դրական կը գնահատէ ընտրութիւններուն օրը՝ ներառեալ ձայներուն հաշուարկը»:

Անկախ Դիտորդ հասարակական դաշինքը՝ կազմուած վեց հասարակական կազմակերպութիւններէ, կ՚իրականացնէ ընտրութիւններու դիտարկութիւն, ի միջի այլոց, յայտարարելով. «ՀՀ Ազգային Ժողովի արտահերթ ընտրութիւնները, որոնց մասնակցում էին 25 կուսակցութիւններ եւ դաշինքներ, անցել են մրցակցային պայմաններում: Չնայած թէ՛ քուէարկութեանը նախորդող օրերին, թէ՛ քուէարկութեան օրը ընտրակաշառքների մասին ահազանգերին, որոնց մի մասի հիմքով յարուցուել են քրէական գործեր, ընտրողները մեծամասամբ ազատ էին իրենց ընտրական կամքն արտայայտելու առումով»:

Մէկ խօսքով՝ ընտրութիւնները տեղի ունեցան առանց ընտրազեղծարարութեան:

### ՁԿԵՂԾՈՒԱԾ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Նախայեղափոխական Հայաստանի խորհրդարանական վերջին չկեղծուած ընտրութիւնները տեղի ունեցած են 1999-ին, որոնք Հայաստանի խորհրդարանական երկրորդ ընտրութիւններն էին:

Պալատական յեղաշրջումով նախագահ եկած եւ 1998-ի կեղծուած ընտրութիւններով աթոռը ամրացուցած Քոչարեան, 1999-ին, ի դէմս Վազգէն Սարգսեան – Կարէն Դէմիրճեան Միասնութիւն Դաշինքի ունեցած պատկառելիութեան եւ գործնական ազդեցութեան, չյաջողեցաւ բանեցնել ընտրակեղծիքի աւանդական մեքենան, որուն շնորհիւ (պատճառով, հետեւանքով) խորհրդարանի մեծամասնութիւնը գրաւեց Քոչարեանի ընդդիմադիր Միասնութիւնը (41,69%): Կամ, Քոչարեան երբեք չէր նախատեսած եւ չէր նկատած Միասնութեան իրական գոյութիւնը որպէսզի անհրաժեշտ նկատէր դիմել ընտրակեղծիքի: Արդիւնքը կ՚ըլլայ չընտրուած նախագահ՝ ընդդէմ ընտրուած Ազգային Ժողովի: Մէկ կողմէ՝ նախագահ, որ ըստ երկիրի օրինական իրաւական համակարգին՝ տեսականօրէն Հայաստանի թիւ 1 առաջնորդն է, բայց իրական հողի վրայ ունի ազդելու նուազ կարելիութիւն, միւս կողմէ՝ խորհրդարան, որ օրինական առումով ունի ածանցեալ դերակատարութիւն, բայց զայն գլխաւորող Սարգսեան-Դէմիրճեան Դաշինքը գործնական հողի վրայ ունի ազդելու իրական կարելիութիւն: Հոկտեմբեր 27-ի գլխատումը լուծեց այս երկուութիւնը, գործնական իրականութիւնը փոխարինելով գերիրական միանձնային իշխանութեամբ, որ շուտով դարձաւ տէ ֆաքթօ իրականութիւն: Տէ ֆաքթօ իրականութիւնը՝ միշտ մնալով գերիրական, պահելու համար իրականութեան պատրանքը ստիպուած էր կեղծել յետագայ բոլոր նախագահական եւ խորհրդարանական ընտրութիւնները, մինչեւ Թաւշեայ Յեղափոխութեան բռնկումը:

Բնականաբար, յեղափոխութեան յաջորդող 2018-ի եօթներորդ խորհրդարանական ընտրութիւնները պիտի անցնէին առանց կեղծումներու: Բնական էր նաեւ, որ յեղափոխութեան տրամադրութեան տակ, նոր իշխանութիւնը ստանար 70,42% ձայն: Այս տոկոսը ճիշդ էր յեղափոխական ռոմանթիզմի յառաջացուցած դրական յուզականութեան հովանիին տակ: Նոյնքան ճիշդ էր նաեւ ներկայ ութերորդ ընտրութիւններուն այս թիւին նուազումը 54%-ի՝ ոչ միայն ռոմանթիզմի վերացումին եւ պատերազմի կորուստին, այլեւ քրէաօլիկարքի երեք տարի տարած անշէջ սեւացումի կրքոտ ու համակարգուած պայքարին պատճառով: Պայքար՝ որուն հետեւանքով քրէաօլիկարքական համակարգը 26%-ով (Հայաստան Դաշինք 21.09% + Պատիւ Ունեմ Դաշինք 5.22%) մտաւ խորհրդարան:

### ՕԼԻԿԱՐՔԸ՝ ԸՆԴԴԻՄԱԴԻՐ

Ի՞նչ կը նշանակէ 26%-ը: Կը նշանակէ՝ որ Ռոբերտ Քոչարեանի ազդեցութիւնը 21.09% է, իսկ Արթուր Վանեցեանի դիմակով ներկայացած Սերժ Սարգսեանինը՝ 5.22%:

Մտահոգիչ երեւոյթը այն է՝ որ ընտրութիւններուն երկրորդէն չորրորդ տեղերը գրաւողները օլիկարքական համակարգի ներկայացուցիչներն են: Յիշեցնեմ, որ չորրորդը Գարոն Ծառուկեանի Բարգաւաճ Հայաստանն է 4%-էն քիչ մը պակասով:

Ահաւասիկ պարզագոյն օրինակ մը հին ու գեղեցիկ օրերու կրկնօրինակութեան: Ներկայ ընտրութիւններուն, Հայաստան Դաշինքը փորձեց իր ենթակայութեան տակ գտնուող առարկաներուն միջոցով ազդեցութիւններ բանեցնել: Զանգեզուրի Պղնձամոլիպտէնային Միաւորը՝ զոր Դանիէլ Իոաննէսեան իրաւացիօրէն անուանած է պետութիւն պետութեան մէջ, իր ենթականերուն նկատմամբ սպառնալիք բանեցուց Հայաստան Դաշինքը ընտրելու համար (*Ջահակիր*, թիւ 1894): Ուրիշ օրինակ մըն է Յունիս 18-ի տարածուած ձայնագրութիւնը, ուր Իգմիրլեան բժշկական կեդրոնի տնօրէնը իր ենթականերուն կը յայտարարէ՝ որ ինք Հայաստան Դաշինքի թեկնածու է եւ բոլորը պէտք է այս Դաշինքին ձայն տան, աւելցնելով՝ որ ինք անձամբ հնարաւորութիւն ունի ստուգելու ընտրացուցակները: Եւ այլն, եւ այլն:

Անկախ Դիտորդի պաշտօնական յայտարարութիւնը յստակ է. «Մասնաւորապէս, բաւականին առատ են եղել Հայաստան Դաշինքի կողմից կամ այդ ուժի համար ընտրակաշառքի ⇘ 4

### ՀԱՅԱՍՏԱՆ

## ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Յունիս 20-ին կայացան Հայաստանի Ազգային Ժողովի ութերորդ գումարումի արտահերթ ընտրութիւնները, հետեւեալ արդիւնքներով.

1. Քաղաքացիական Պայմանագիր Կուսակցութիւն, Նիկոլ Փաշինեան - 53.91%
2. Հայաստան Դաշինք (Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն եւ Վերածնուող Հայաստան կուսակցութիւններ), Ռոբերտ Քոչարեան - 21.09%
3. Պատիւ Ունեմ Դաշինք (Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւն եւ Հայաստան Կուսակցութիւն), Արթուր Վանեցեան - 5.22%
4. Բարգաւաճ Հայաստան Կուսակցութիւն, Գագիկ Ծառուկեան - 3.96%
5. Հանրապետութիւն Կուսակցութիւն, Արամ Սարգսեան - 3.04%
6. Հայ Ազգային Կոնգրէս Կուսակցութիւն, Լեւոն Տէր-Պետրոսեան - 1.54%
7. Շիրինեան-Բաբաջանեան Ժողովրդավարների Դաշինք (Յանուն Հանրապետութեան Կուսակցութիւն եւ Քրիստոնեայ-Ժողովրդավարական Կուսակցութիւն), Արման Բաբաջան- ⇘ 3



## ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ՈՒՂԵՐՁ ԱԺ ԱՐՏԱՀԵՐԹ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԱՌԻԹՈՎ

Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը կը շնորհաւորէ Հայաստանի Հանրապետութեան բոլոր քաղաքացիները, յաջորդական՝ արդար, ազատ եւ թափանցիկ ընտրութիւններուն առիթով:

Ներքաղաքական գերշիկացած մթնոլորտի մէջ՝ հեզասահ ու անցնցում ընտրութիւններու կայացումը մեր ժողովուրդին համար մեծագոյն յաղթանակ է: Միաժամանակ, Հայաստանի մէջ ժողովրդավարութեան ամրապնդման կարեւորագոյն ձեռքբերում է նաեւ այն իրողութիւնը, որ ամբողջ հանրապետութեան տարածքին տեղի ունեցաւ, թէկուզ թերի, բայց բուռն եւ իրական նախընտրական քարոզարշաւ, վստակելու համար Հայաստանի իւրաքանչիւր քաղաքացիի քուէն:

Այս առիթով, կը շնորհաւորենք վարչապետ Նիկոլ Փաշինեանը եւ իր քաղաքական խումբը՝ ընտրութիւններուն իրենց արձանագրած տպաւորիչ յաղթանակին կապակցութեամբ եւ համոզուած ենք, որ վարչապետին տալով նորոգուած մանտաթ, ընտրողը յստակ պատգամ կ՚ուղարկէ առ այն, որ մեր ռազմագերիներու տունդարձի, Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխան տարածքէն ատրպէյճանական զօրքերու դուրս բերման, Արցախի խնդիրի մշտական եւ արդար լուծ-ման, Հայաստանի անվտանգութեան եւ ապահովութեան ամրապնդման կողքին, ժողովրդավարութիւնը, օրէնքի գերակայութիւնը եւ կաշառակերութեան դէմ պայքարը կը մնան առաջնահերթութիւն եւ 2018 թուականին սկսած գործը պէտք է հասցնել աւարտին:

Միւս կողմէ, անընդունելի եւ դատապարտելի կը գտնենք որոշ քաղաքական գործիչներու եւ կարգ մը հոգեւորականներու կողմէ ընտրողներու հասցէին հնչող վիրաւորական արտայայտութիւններն ու պիտակաւորումները, որոնք միայն կը խորացնեն հասարակութեան բեւեռացումը, երբ այսօր միակ հրամայականը ներքին լարուածութեան լիցքաթափումը պէտք է ըլլայ: Այդ տեսանկիւնէն, կ՚ողջունենք վարչապետի՝ համախմբման ու երկխօսութեան կոչը եւ յոյս կը յայտնենք, որ այդ կ՚ըլլայ առաջին քայլը՝ համերաշխութեան վերականգնման եւ միասնական ջանքերով հայրենիքի առջեւ ծառացած խնդիրներու լուծման:

**Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան**
**Կեդրոնական Վարչութիւն**

23 Յունիս 2021

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

**(մահուան առիթով)**

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

30 Սեպտեմբեր 1957. Marines' Memorial Theater (Սան Ֆրանսիսքօ). Ժիրայր Գանթարճեանի մենահամերգ. դաշնակի նուագակցութիւն՝ Մարօ Աճէմեան։

«Անցեալ գիշեր, Մարինս Մեմորիալ Թատրոնին մէջ տուած մենահամերգին, Ժիրայր Գանթարճեան նոյնքան հրաշալի տպաւորութիւն գործեց որքան այս ամառ՝ երբ Ֆիտլըրի «Փոփ» նուագահանդէսներուն կը նուագէր Փականինիի Քոնչերթոն։

«Իսկ այդ տպաւորութիւնը արտակարգ է։

«Եթէ եգիպտահայ ջութակահարը մեկնաբանութեան մէջ ըլլար նոյնքան հասուն որքան հնչիւնային որակին եւ թեքնիքին, կրնար դառնալ այսօրուայ ամենամեծ ջութակահարներէն մէկը։

«Իր աղեղէն արտաբերած ձայնը ազատ է, ընտիր, գեղեցիկ, ջերմ։ Ան երբեք չի ճարճատեր, որքան որ նուագած երաժշտութիւնը ըլլայ դժուար։

«Նմանապէս ծայր աստիճան փայլուն է իր թեքնիքը։ Հռչակաւոր քիչ ջութակահարներ կրնան Պախի կնճռոտ Շաքոնին ձեռք տալ այնքան մաքրութեամբ ու վարպետութեան որքան Գանթարճեանը։

«Բայց Գանթարճեանի Պախին կրնաս ըսել նոյնը՝ ինչ Պեթհովէնի թիւ 10 Սոնաթի մեկնաբանութեան, որուն դաշնակի նուագամասը կատարեց Մարօ Աճէմեան։ Երկու գործերէն ոչ մէկուն մէջ ունի երաժշտութեան պահանջած խառնուածքի յափշտակութիւնը եւ համբերատար, խոր արտայայտչականութիւնը։

«Շաքոնի նուագը աճապարեալ էր եւ գրեթէ մակերեսային։ Երկու կատարողները միասին շատ շարժումի մէջ էին եւ կշռութապէս շատ արձակ՝ հարազատ ըլլալու Պեթհովէնի որոնող գաղափարներուն։

«Միւս կողմէ, այս նոյն յարմարութիւնը, Օր. Աճէմեանի սիրուն ստեղնային հպումին հետ, գեղեցիկ կերպով ծառայեց Ֆօրէի հոսուն, նուրբ թիւ 1 Սոնաթին, ինչպէս նաեւ Կարէն Խաչատրեանի աւելի յուզումնառատ թիւ 3 Սոնաթին։

«Ի դէպ, այս Խաչատրեանը *Գայեանէ*ի եւ այլ գործերու հռչակաւոր երաժշտահան Արամը չէ։ Արամի երիտասարդ եղբօրորդին է։

«Հակառակ արենակցական կապին, Կարէնի Սոնաթը իր երաժշտական գաղափարները կ՚ընդունի ոչ այնքան Խաչատրեանէն որքան Փռոքոֆիեւէն։ Սոնաթը՝ որ նոր էր Միացեալ Նահանգներուն համար, սկաւառակներու վրայ մեր լսած բազմաթիւ Խորհրդային երաժշտութիւններու նման հասարակ ու հնառճ չէր։ Բայց միակ ունկնդրութեամբ, քիչ նիւթ կամ հրապուրանք կրցայ քաղել անկէ»։

(Alexander Fried, 'Violinist Comes Back after 'Pop' Success,' *The San Francisco Examiner*, 1 October 1957, Sec. II, p. 4)

* * *

Նոյն նուագահանդէս։

«Մարինս Մեմորիալ Թատրոնի ջութակի մենահամերգին համար Ժիրայր Գանթարճեան ընտրած էր խստապահանջ յայտագիր մը՝ երեք սոնաթներ եւ Պախի Շաքոնը, զորս նուագեց փայլուն սահունութեամբ։

«Յայտագիրը կը պարունակէր Պեթհովէնի ծանօթ երկ 96-ը եւ նուազ յաճախակի նուագուող Ֆօրէի լա մաժոր Սոնաթը, ինչպէս նաեւ Պախի ռէ մինոր Սոնաթի կոթողային Շաքոնը մենանուագ ջութակի համար։

«Կարէն Խաչատրեանի սոլ մինոր Սոնաթի կատարումը ներկայացուեցաւ իբրեւ գործին ամերիկեան առաջնեկութիւնը, գործ մը՝ որ ժամանակակից ջութակի երաժշտութեան հետեւորդներուն ծանօթ է Օյսթրախի ձայնագրութեան շնորհիւ։ Հաճելի, մեղեդիական գործ մըն է՝ դանդաղ շարժումի ջերմ քնարականութեամբ, թէեւ առանց ուժեղ եզրագիծի կամ ազդեցիկ նիւթի, բայց յատկորոշ կերպով գրուած երկու նուագարաններուն համար։ Ցոյց կու տայ ֆոլքլորի հանդէպ նուազ հետաքրքրութիւն քան երաժշտահանի աւելի լայնօրէն ծանօթ հօրեղբայրը Արամ Խաչատրեան, որուն *Գայեանէ*ի նուագաշարէն հատուած մը կը հանդիսանար զանազան պիսերէն մէկը։ Երկու Խաչատրեաններու ոճերուն միջեւ նմանութիւնը շատ քիչ է։ Կարէնի ոճը աւելի կը թուի ըլլալ Փռոքոֆիեւի նման Խորհրդային երաժշտահաններու տրամադրութեան մէջ։

«Եգիպտոս ծնած ծագումով հայ երիտասարդ ջութակահարը Պերքլէյ փոխադրուած է մինչեւ ամսուայ կէսը, որմէ ետք պիտի վերադառնայ Ֆիլատելֆիա՝ շարունակելու իր կրթաթոշակային ուսումը Քուրթիս Հաստատութեան մէջ։ Ան կանգուն պահեց այն նպաստաւոր տպաւորութիւնը՝ զոր յառաջացուցած էր Արթիւր Ֆիտլըրի ամառնային «Փոփս»-ի ընթացքին, ինչպէս նաեւ Pacific Music Society-ի հովանաւորութեամբ անցեալ եղանակին տուած մենահամերգին։

«Ինչպէս նախապէս, այս անգամ եւս Մարօ Աճէմեան կը հանդիսանար դաշնակի իր գործակիցը այնպիսի գործերու մէջ՝ որոնք էական յանձնարարութիւններ ունին տուեալ նուագարանին համար։

«Գանթարճեան օժտուած է նշանակալի թեքնիքական կազմութեամբ եւ ակնյայտօրէն ջերմ, արտայայտիչ երաժշտական բնազդով։ Շաքոնը նուագեց մաքուր եւ սահուն կերպով՝ նուազագոյն ճարճատումով, իսկ սոնաթի շարժումները յաճախ զգեստաւորեց հնչիւնային գեղեցկութեամբ։ Առաջին երկու սոնաթներուն մէջ հնչիւնային թեթեւութեան տպաւորութիւնը փարատուեցաւ, երբ յայտագիրի երկրորդ կէսին այդ հնչիւնը յայտնուեցաւ լիարժէք ու զօրեղ, առաջնորդելով այն եզրակացութեան՝ թէ առաջին հատուածին մէջ դաշնակի համագործակցութիւնը եղած էր քիչ մը գերակատար։

«Գանթարճեան իր ասպարէզը կը սկսի սքանչելի կազմութեամբ, որ առիթ պիտի տայ իրեն երթալու առաջ՝ եթէ այդ կազմութեան հենքին վրայ կառուցէ գեղարուեստական հասունութիւնը։ Առ այժմ, 25 տարեկան, տակաւին չի թափանցեր Պեթհովէնի կամ Պախի նման երաժշտահաններու խորութեան մէջ։ Իր դիւրութիւնը եւ չեշտուած երաժշտականութիւնը առատաձեռն ծառայութիւն կը մատուցանեն նուազ մտածկոտ գործերու համար, ինչպէս Ֆօրէի եւ Խաչատրեանի սոնաթները եւ Սարազաթէի կարճ կտոր մը՝ զոր աւելի ուշ նուագեց»։

(Clifford Gessler, 'Kantarjian Brilliant in Exacting Violin Recital,' *Oakland Tribune*, 2 October 1957, p. D 25)

* * *

6 Հոկտեմբեր 1957. Roosevelt High School-ի լսարան (Ֆրեզնօ). Ժիրայր Գանթարճեանի մենահամերգ. դաշնակի նուագակցութիւն՝ Մարօ Աճէմեան։

«Սան Ֆրանսիսքոյի առաջնեկ մենահամերգին առիթով գրուած հիացական քննախօսականներուն շնորհիւ, ջութակահար Ժիրայր Գանթարճեանի նկատմամբ ծագեցաւ նկատելի հետաքրքրութիւն։ Երէկ երեկոյեան, Ռուզվելթ Երկրորդական Վարժարանի լսարանը տուած մենահամերգին, Գանթարճեան իրագործեց ակնկալիքները՝ քիչ բացառութեամբ։

«Հաստատապէս այսօրուայ շատ քիչ ջութակահարներ ունին այսպիսի ամբողջական եւ բացարձակ տիրապետութիւն իրենց գործիքին վրայ։ Երկակի թրիլներ գրեթէ անհաւատալի համահաւասարութեամբ, երկձայներ անբասիր հնչերանգով եւ գեղեցիկ, թէեւ մեղմօրէն տարբերակուած հնչիւնային որակ, կը հանդիսանան այն յատկանիշները՝ զորս այս ջութակահարը մշակած է, անցնելով իր սերունդի միջին նուագողէն բաւական անդին։

«Թարթինիի *Սատանայի Թրիլ* Սոնաթին ծայրայեղ դժուարութիւնները յաղթահարուեցան այնպիսի թեթեւութեամբ՝ որ պէտք է դառնայ բոլոր լարային նուագողներուն տենչանքը։ Փականինիի *Nel cor più non mi sento*-ի տհաճօրէն քաղցրահամ եւ ակնյայտօրէն տափակ փոփոխակները, շնորհիւ այս կատարումի շլացուցիչ հրավառ թեքնիքին, հնչեցին գրեթէ երաժշտութեան նման։

«Դժբախտաբար, իրենց պատշաճ արձակումին համար հասուն երաժշտականութիւն պահանջող ընտրութիւններուն մէջ Գանթարճեան չարդարացուց ակնկալիքները։ Միայն դաշնակահարուհի Մարօ Աճէմեանի գեղարուեստական եւ զգայուն նուագը կրցաւ Պեթհովէնի տօ մինոր Սոնաթը բարձրացնել ամբողջապէս միջակ կատարումէ։ Երկրորդ շարժումի իր յղկուած եւ խորապէս զգայուն կատարումը կատարեալ հակադրութիւն մըն էր ջութակահարի մակերեսային եւ երեւակայութենէ զուրկ մեկնաբանութեան։

«Խաչատրեանի սոլ մինոր Սոնաթը բթամիտ նօսրացում մըն է Փռոքոֆիեւի, Շոսթաքովիչի եւ Մենտելսոնի տարրերու։

«Այս մենահամերգը յաջողութիւն մըն էր անոնց համար՝ որոնք հետաքրքրուած էին ջութակահարական թեքնիքի կատարելութեան արտակարգ դրսեւորումով։ Անոնք որոնք եկած էին երաժշտական բաւականութեան համար, ստացան շատ քիչ գոհացում»։

(Fred E. Dempster, 'Kantarjian is Master of Technique,' *The Fresno Bee*, 7 October 1957, p. 16-A)

* * *

13 Հոկտեմբեր 1957. Wilshire-Ebell Theater (Լոս Անճելըս). Ժիրայր Գանթարճեանի առաջնեկ մենահամերգ Լոս Անճելըսի մէջ. դաշնակի նուագակցութիւն՝ Մարօ Աճէմեան։

«Արուեստներու Հայկական Ընկերակցութիւնը (Armenian Allied Arts Association) ներկայացուց Ժիրայր Գանթարճեանի Լոս Անճելոսի առաջնեկ մենահամերգը երէկ կէսօրէ ետք, Ուիլշայր Էպէլ Թատրոնին մէջ։ 25-ամեայ ջութակահարը, որ մարզուած է Ֆիլատելֆիոյ Քուրթիս Հաստատութեան մէջ եւ նախապէս նուագահանդէսներ տուած Նահանգի հիւսիսային մասը, դրսեւորեց կատարեալ թեքնիք, մաքուր ելեւէջ եւ ձայնային երաժշտականութիւն, որոնք, արդարեւ, տակաւին չեն շրջանցեր երեւակայական մեկնաբանութեան նրբերանգները։

«Երեւակայութիւնը նոյնպէս կը պակսէր Պր. Գանթարճեանի յայտագիրի պատրաստութեան մէջ։ Առաջին կէսը ոչ միայն չափազանց երկար էր այլ կը պարունակէր այնպիսի հինցած կտորներ՝ ինչպէս Թարթինիի *Սատանայի Թրիլ* սոլ մինոր Սոնաթը եւ Փականինիի *Nel cor più non mi sento*-ն, որոնք երկուքն ալ կրնային լաւ արտայայտչամիջոցներ եղած ըլլալ իրենց երաժշտահաններու ենթադրաբար զարմանահրաշ վիրթիւոզականութեան բայց այսօր խամրած են եւ դարձած անիմաստ։

**Թեքնիքի մասնագէտ**

«Պր. Գանթարճեան այս գործերուն թեքնիքական կողմը գործադրեց նշանակալի հմտութեամբ, բայց աւելի կրակոտ մօտեցում մը զանոնք հաստատապէս պիտի դարձնէր աւելի հետաքրքրական, եթէ ոչ աւելի գրաւիչ։

«Պեթհովէնի տօ մինոր Սոնաթը, երկ 30 թիւ 2, թէեւ վարպետին ամենէն գրաւիչ ջութակի գործերէն մէկը չի հանդիսանար, բայց կրնայ ունենալ բաւարար երաժշտական բովանդակութիւն՝ եթէ մատուցուի զգայուն եւ հեռանկարային մօտեցումով։ Պր. Գանթարճեանի կատարումը բաւարար չափով չըմբռնեց անոր էութիւնը բայց ունեցաւ բաւական սահունութիւն՝ լաւ տպաւորութիւն յառաջացնելու իր ներկայ կարողութիւններուն եւ ներունակութեան նկատմամբ իբրեւ մենակատար։

**Ջախողակ եղբօրորդի**

«Պր. Գանթարճեանի յայտագիրի կազմութեան մէջ անէծք մը կար՝ զոր կրեց մինչեւ վերջ, քանզի մենահամերգին երկրորդ կէսը կը պարունակէր ուրիշ ձախողանք մը Կարէն Խաչատրեանի սոլ մինոր Սոնաթի կերպարանքով։ Երաժշտահանը՝ Արամ Խաչատրեանի եղբօրորդին, ծնած է 1920-ին եւ այս սոնաթը յօրինած 1947-ին՝ երբ տակաւին Մոսկուայի Երաժշտանոցի ուսանող էր։ Մռայլ յօրինում մըն է՝ երկչոտ երաժշտական լեզուով, եւ անոր առաջին կատարումը Լոս Անճելոսի մէջ Պր. Գանթարճեանի կողմէ ձախողեցաւ բացայայտել երաժշտահանը իբրեւ դիտարժան տաղանդ։

«Աւագ Խաչատրեանի Այշայի պարը *Գայեանէ* պալէէն եւ Սարազաթէի երկու գործերը աւարտեցին յայտագիրը»։

(W. A., 'Violinist Kantarjian in Recital,' *The Los Angeles Times*, 14 October 1957)

(Տար. 5)

ԳԱՀԻՐԷ

## ՋԱՀԱԿԻՐԻ 40-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆԻ

Լոյս տեսաւ *Ջահակիրի* Խ. (40) Յաւելուածը՝ *Ուրուագիծ երգչուհի-դերասանուհի Վալանթին Ամիրայեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1920-1931)* (66 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՈՒՐՈՒԱԳԻԾ ԵՐԳՉՈՒՀԻ-ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻ ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ (1920-1931)

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ Խ. (40)

ԳԱՀԻՐԷ
2021

Կը ներկայացնէ սոփրանօ երգչուհի եւ դերասանուհի Վալանթին Ամիրայեանի (1901, Պոլիս – 1971, Լոս Անճելոս) եգիպտական շրջանը: Իր քնարական գիլ ձայնով եւ բնատուր խաղարկային կարողութեամբ, շուրջ մէկ տասնամեակ Գահիրէի, Աղեքսանդրիոյ եւ Խարթումի (վերջինս՝ կարճ ժամանակով) մէջ Ամիրայեան նուաճած է բացառիկ յաջողութիւն՝ որ, դժբախտաբար, պայմաններու բերումով երբեք չէ կրցած կրկնել Եգիպտոսը թողելէ ետք 1931-ին:

---

### 1 ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

եան եւ Լեւոն Շիրինեան - 1.5%

8. Ազգային-Ժողովրդավարական Բեւեռ Համահայկական Կուսակցութիւն, Վահէ Գասպարեան - 1.47%

9. Լուսաւոր Հայաստան Կուսակցութիւն, Էդմոն Մարուքեան - 1.22%

10. 5165 Ազգային Պահպանողական Շարժում Կուսակցութիւն, Կարին Տոնոյեան - 1.22%

11. Ազատական Կուսակցութիւն, Սամուէլ Բաբայեան - 1.17%

12. Հայոց Հայրենիք Կուսակցութիւն, Անահիտ Եղոյեան - 1.03 %

13. Մեր Տունը Հայաստանն է Կուսակցութիւն, Տիգրան Ուրիխանեան - 0.95%

14. Հայաստանի Դեմոկրատական Կուսակցութիւն, Տիգրան Արզաքանցեան - 0.39%

15. Զարթօնք Ազգային Քրիստոնէական Կուսակցութիւն, Արա Զօհրաբեան - 0.36%

16. Ազատ Հայրենիք Դաշինք (Ազգային Ինքնորոշում Միաւորում, Արդարութիւն, Ժողովրդավարական Հայրենիք, Հայ Կառուցողական, Պահպանողական կուսակցութիւններ), Անդրիաս Ղուկասեան - 0.32%

17. Արդար Հայաստան Կուսակցութիւն, Նորայր Նորիկեան - 0.31%

18. Քաղաքացու Որոշում Սոցիալ-Դեմոկրատական Կուսակցութիւն, Սուրէն Սահակեան - 0.3%

19. Ինքնիշխան Հայաստան Կուսակցութիւն, Դաւիթ Սանասարեան - 0.28%

20. Հայաստանի Եւրոպական Կուսակցութիւն, Տիգրան Խզմալեան - 0.22%

21. Ազատութիւն Կուսակցութիւն, Հրանդ Բագրատեան - 0.14%

22. Վերելք Կուսակցութիւն, Ալեքսան Մինասեան - 0.1%

23. Միասնական Հայրենիք Կուսակցութիւն, Լուսինէ Աւագեան - 0.08%

24. Համահայկական Ազգային Պետականութիւն Կուսակցութիւն, Արթուր Վարդանեան - 0.06%

25. Ազգային Օրակարգ Կուսակցութիւն, Արա Յակոբեան - 0.06%

Այսպէս, Քաղաքացիական Պայմանագիր Կուսակցութիւնը կ՚ունենայ սահմանադրական մեծամասնութիւն եւ կը ձեւաւորէ կառավարութիւնը:

Խորհրդարանի երկրորդ քաղաքական ուժը կ՚ըլլայ Հայաստան Դաշինքը:

Պատիւ Ունեմ Դաշինքը թէեւ չէ յաղթահարած դաշինքի համար նախատեսուած սահմանը, սակայն ներկայացուած կ՚ըլլայ խորհրդարանին մէջ, քանի որ ըստ սահմանադրութեան՝ Ազգային Ժողովը պէտք է բաղկացած ըլլայ առնուազն երեք քաղաքական ուժերէ:

Ազգային Ժողովը կազմուած պիտի ըլլայ 107 պատգամաւորներէ: ՔՊ պիտի ստանայ 71 աթոռ, Հայաստանը՝ 29, Պատիւ Ունեմը՝ 7:

Ազգային փոքրամասնութիւններուն համար նախատեսուած 4 աթոռներէն 3-ը՝ եզտի, ռուս եւ քուրտ, պիտի ստանայ ՔՊ-ն, իսկ ասորական համայնքի ներկայացուցիչ պատգամաւորը պիտի ներգրաւուի Հայաստան Դաշինքի կազմին մէջ:

---

ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Վիտէօհարցազրոյցներուն գրեթէ բոլոր մասնակցողները կը խօսին պետական, մշակութային եւ էթնիքական-ազգագրական ազգայնականութիւններուն մասին, նրբօրէն անցնելով մէկէն միւսը, ցոյց տալով անոնց յարակցութիւնները ժամանակի թաւալքին մէջ: Բայց չեն խօսիր քաղաքական ազգայնականութեան մասին՝ իբրեւ ազգայինի անհասկընալի երեսակ: Նժդեհականութեան սեփականացումը իշխանութեան կողմէ ծայրայեղ անկլինով կը քաղաքականացնէ նժդեհական ազգայնականութիւնը, բան մը՝ որ ազգայինը կը զերծէ անոր բաղադրիչի ներկայ իրական տարրերէն՝ պետական, մշակութային:

Գալով ցեղային ազգայնականութեան՝ որ հիմքն է ցեղակրօնութեան, կ՚արտայայտեն ոչ-դրական մօտեցում, որոնցմէ մէկն էր Անդրէասեան, ինչպէս վերը տեսանք, որ կը նախընտրէր մշակութային ազգայնականութիւնը, քանի որ անիկա իր մէջ կը կրէ հաղորդակցող եւ ներգրաւող կարողութիւն:

Ցեղայինի փոխարէն մշակութային ազգայնականութեան կարեւորութեան մասին կը խօսի նաեւ քաղաքագէտ Արմինէ Առաքելեան վիտէօհարցազրոյցին մէջ, հիմնաւորելով որ ցեղայինը բացառական ու մեքենայական է, հետեւաբար դէմ է մարդու իրաւունքներուն, մինչդեռ մշակութայինը առիթ կու տայ մտածելու եւ ընտրելու ազգայինը.

«Տարբեր հասկացութիւններ, մեկնաբանութիւններ կան ազգին վերաբերեալ: Եթէ ուզենք աւելի խորքային սահմանեմ, դա ես տեսնում եմ իբր գաղափար: Սա ստատիկ մի հասկացողութիւն չէ, պիտի տեսնել դինամիկի մէջ: Այսինքն ես դա չեմ կապում ցեղային կամ կրօնական նոյնութեան հետ, [թէեւ] կան նաեւ այդպիսի մեկնաբանութիւններ: Բայց մանաւանդ 18-րդ դարից յետոյ, եթէ նայենք ազգպետութիւնների զարգացումը, աւելի այս [իմա՝ մշակութային ազգ] հասկացութիւնն է ներկայ մարդկային հաւաքականութիւնների զարգացման յարիր որովհետեւ եթէ միւս ձեւով փորձենք մեկնաբանել, այսինքն՝ ազգը իբրեւ ցեղային կամ արիւնակցական հաւաքականութիւն, դա արդէն [կը լինի] հիմնականում մարդու իրաւունքների եւ ազատութիւնների դէմ, որովհետեւ բացառման պրոցէսների է երթում, [մինչդեռ] ազգը մշակութային գործօն է, այսինքն մշակութային իմաստով հաւաքականութեան անհատականութիւնն է, ինչպէս անհատականութիւնը՝ մարդ անհատինը: Դրա համար դա կերտւում է, այդտեղ է իր պրոցէսային, դինամիկ հասկացողութիւնը: Եւ շատ կարեւոր է որ ինքը անհատը [ներկայանայ իր] քաղաքական անձնագրով, այսինքն դու ընտրում ես: Իսկապէս սա գիտակցական պրոցէս է եւ այդպիսով տարբերւում է արմատական իմաստով ցեղային կամ կրօնական հասկացութիւնից, որ աւելի մեխանիկօրէն հաւաքականութիւնների մեկնաբանութիւնն է»:

Ճիշդ այս գաղափարը կ՚արտայայտէր Ստեփան Շահումեան՝ երբ մէկ դար առաջ կը գրէր. «Ազգային կուլտուրան պէտք է ազատ եւ անձեռնմխելի լինի» (տես վերը):

Մշակութային ազգայնականութեան պարագային հայը այն է՝ որ կ՚ուզէ ըլլալ այդպէս, կը մտածէ ու կ՚ապրի հայկական առօրեայով եւ մտահոգութիւններով: Եթէ չ՚ուզեր հայերէն խօսիլ, հայ ըլլալ՝ իր ընտրութիւնն է: Միաժամանակ, սակայն, մշակութային ազգայնկութիւնը դուռ կը բանայ ոչ-արենակցական հայուն ընդգրկուիլ հայ ազգին մէջ, մեր յաճախ կոչած «օտար»-ը դառնայ հայ:

Ինչպէս Անդրէասեան, Առաքելեան եւս ցեղակրօնութիւնը կ՚անուանէ ֆաշիսթական՝ իբրեւ բացառական ազգայնականութիւն: Երկուքն ալ ցեղակրօնութիւնը յիշատակած են ամենապարզ պատճառով՝ որ ան 2012-ին կը կազմէր կառավարող վերնախաւի որդեգրած *պաշտօնական* գաղափարախօսութիւնը, եւ իրենց մտադրութենէն դուրս է ինչ որ նախկին ժամանակները արծարծուած հարց մը կրկին թատերաբեմ բերել եւ ինքնանպատակօրէն քննադատել՝ քննադատութեան նիւթ մը գտած ըլլալու հաճոյքէն ելլելով.

«Ճիշդ է որ 20 տարի է մենք ունենք պետութիւն բայց խնդիրը նրանումն է՝ որ պիտի կարողանանք ինքնորոշուած, ինքնուրոյն, գիտակից անհատականութիւնների համախմբումը մշակել եւ կարողանալ ազգը այդպիսով կերտել: Այսինքն, ինքն ըստ ինքեան դա չի լինում. ես ապրում եմ այս հողատարածքում եւ անունս ալ այդպէս է, հայ ծնողներից եմ ծնուել, նշանակում է որ ես հայ եմ: Չէ, այդպէս չէ: Եւ դրանում է մեր պրոբլէմը եւ դրանում է նաեւ միւս ազգայնականի, կ՚ասէի աւելի ֆաշիստականի պրոբլէմը, որովհետեւ ցեղակրօնականութեան է գնում: Դու փորձում ես արդարացնել ներկայ իրավիճակը քանի դու այս անունն ունես, քանի դու այս հողում ես ապրում, քանի այս արիւնը ունես, ուրեմն դու հայ ես, իսկ ով որ դա չունի ուրեմն ազգի անդամ չէ: Բայց դա նաեւ աբսուրդի է հասնում որովհետեւ այս երկրում կան հայանուն ապրող մարդիկ բայց գուցէ ուրիշ կրօն են, այս համախումբը դրանց չի համարում իբր ազգի անդամ: Սա է աբսուրդը եւ վտանգը նման հասկացութեան»:

Կարեւոր է նշել, որ 1999-ին, Առաքելեան իր միջոցներով կը հիմնադրէ Մարդու Իրաւունքներու եւ Ժողովրդավարութեան Ինստիտուտ (ՄԻԺԻ) հասարակական կազմակերպութիւնը, բաւական տհաճութիւններ պատճառելով իշխանութիւններուն:

Ան նաեւ քաղաքական աքթիւիսթ է: 2016-ի քաղաքացիական ցոյցի մը համար ոստիկանական ուժով կը ձերբակալուի եւ ապօրինի կերպով բռնի կը պահուի Նուբարաշէնի հոգեբուժարանը, ենթարկուելով անմարդկային վերաբերմունքի(22):

Իբրեւ իրաւաբան, քանիցս ենթարկուած է սպառնալիքներու: Իսկ 2017-ին, անյայտ մարդիկ կը կրակեն իր վրայ՝ սպաննելու նպատակով, բայց փամփուշտը կը վրիպի(23):

Դիտելի է, որ վիտէօհարցազրոյցի մասնակցողներէն երկուքը՝ որոնք կը քարոզեն ազգային ներգրաւուածութիւն, համերաշխութիւն եւ ազատութիւն եւ կը պայքարին անոր համար, կ՚ենթարկուին խօսքային (Անդրէասեան) եւ մարմնական (Առաքելեան) բռնութիւններու: Համերաշխութիւնը կը թարգմանուի իբրեւ բռնութիւն:

6. 1-5-էն ետք արդէն կարելի է կարդալ Նժդեհին յատկացուած բնագիրը:

Այս բնագիրը ունի երկու կողմեր:

Առաջինը՝ Նժդեհի անձի քաջայայտնի ցեղակրօնութեան նշումն է, երկրորդը՝ այդ գաղափարախօսութեան Անդրէասեանի մեկնաբանութիւնը:

Իր մեկնաբանութեան մէջ Անդրէասեան կ՚ուզէ տեսնել հասարակութիւն մը, որ ֆաշիսթական չէ՝ այլ ժողովրդավարական է, չունի յարձակողական յղացում՝ ունի համակեցային յղացում, չի միտիր աշխարհէն փակուիլ՝ կը միտի բացուիլ աշխարհին, չի քարոզեր այլ հասարակութիւններու նկատմամբ հայկական գերազանցութիւն՝ կը քարոզէ միջ-ազգային ներգրաւուածութիւն: Այս է հիմնական գաղափարը, նախաբնագիր ունենալով Նժդեհը:

Քանի որ քննադատողները համաձայն չեն Անդրէասեանի բնագիրին, ուրեմն պարտաւոր են իրենց իսկ ներկայացուցած բնագիրը տանիլ մինչեւ վերջ: Նկատի ունենալով որ քննադատողները կը հաստատեն Անդրէասեանի բնագիրին առաջին մասը, այսինքն՝ Նդժեհը իբրեւ ցեղակրօնութեան կրող, եւ տրամաչափօրէն կը հակառակին երկրորդ մասին՝ ցեղակրօնութեան մեկնաբանութեան, ուրեմն, հաստատած կ՚ըլլան մեկնաբանութեան ճիշդ հակառակը: Հետեւաբար, պէտք է յստակօրէն յառաջացնէին հակաբնագիր մը, որ պիտի ըլլար այսպէս (կը հիմնուիմ իրենց իսկ յառաջ քաշած կրճատ բնագիրին վրայ). «Նժդեհական գաղափարախօսութիւնը, ըստ էութեան, ժողովրդավարական գաղափարախօսութիւն է: Ցեղակրօն գաղափարախօսութիւնը մեզ համար՝ որպէս 21-րդ դարի հասարակութիւն, շատ օգտակար է, որովհետեւ այն հիմնուած է աշխարհի հանդէպ համակեցային կոնցեպցիայի, աշխարհին բացուելու եւ այլ հասարակութիւնների նկատմամբ հաւասարութեան»:

4




**ՀԱՅԱՍՏԱՆ**

## 3705 ԶՈՀ, 268 ԱՆՀԵՏ ԿՈՐԱԾ. ՓԱՇԻՆԵԱՆԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Այս պահի դրութեամբ պատերազմի զոհերի թիւը 3705 է, անհետ կորածներինը՝ 268, հաստատուած գերիների թիւը՝ 60 հոգի, կայ վարկած եւս 110 հոգու գերեվարուած լինելու վերաբերեալ: Այս մասին յայտարարել է վարչապետի ժամանակաւոր պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը՝ Յունիսի 18-ին Հանրային ուղիղ եթերում ընթացող բանավէճի ժամանակ:

Նաեւ յիշեցրել է, որ մինչ այժմ Հայաստան է վերադարձուել 89 (ռազմա)գերի, որոնցից վեցը, ըստ Փաշինեանի, գերեվարուած է եղել մինչ 2020 թուականի պատերազմը:

Յիշեցնենք՝ Ղարաբաղի Պաշտպանութեան Բանակը մինչ օրս հրապարակել է պատերազմում զոհուած 3029 մարդկանց անունները: Ադրբէջանը մինչ օրս հրապարակել է 2904 անուն:


3

## ԱԶԳԱՅԻՆԸ՝ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ՀԱՐԹԱԿԻ ՎՐԱՅ

Եթէ քննադատները հաստատեն այս հակաբնագիրը, այսինքն ցեղակրօնութիւնը տեսնեն իբրեւ ժողովրդավարական, համակեցային եւ ոչ-գերադասային, ուրեմն խնդիրը ինքն ըստ ինքեան լուծուած կ՚ըլլայ: Ամբողջ հարցը այն է՝ որ կը քննադատենք առանց կարդալու մինչեւ վերջ, ֆեթիշականացնելով բառեր, անտեսելով ուրիշներ:

Բացի այդ, Անդրէասեանի բնագիրին մէջ Նժդեհի վարկաբեկում չկայ, ինչպէս ուզեցին ներկայացնել քննադատողները: Զ՚ըսեր՝ որ Նդժեհ չէ մասնակցած ազատագրական պայքարներու:

Այս բոլորէն ետք, եթէ տակաւին կը պնդենք Անդրէասեանին անուանել բարբարոս ու տգէտ, գիրն ու բառը այլեւս անկարող են բացատրողական ըլլալ:

Մտածելու հրաւէրն ալ կը դառնայ անտեղի, քանի որ մտածելու նախապայմաններէն մէկը մտածելու պատրաստակամութիւնն է:

Հրաչ Բայադեան վիտէօհարցազրոյցին մէջ պիտի ըսէր. «Բարեբախտաբար բոլոր ռաբիզները ազգայնական չեն, դժբախտաբար բոլոր ազգայնականները ռաբիզ են»: Նկատի ունի ոչ թէ ազգայնականութիւնը՝ իբրեւ այդպիսին, այլ ազգայնականութեան ստացած այսօրուայ տեսքը:

(Վերջ 8)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

22. «Ինչպէս են խոշտանգում հայաստանեան հոգեբուժարանում», *Epress.am,* 3 Յուլիս 2016, https://epress.am/2016/06/03/Ինչպես-են-խոշտանգում-Հայաստանյան-Հոգ.html:

23. «Անյայտ անձինք կրակել են իրաւապաշտպանի ուղղութեամբ եւ փախուստի դիմել», *Epress.am,* 15 Փետրուար 2017, https://epress.am/2017/02/15/Անհայտ-անձինք-կրակել-են-իրավապաշտպան.html:


1

## ՅԵՏՊԱՏԵՐԱԶՄԵԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

բաժանման մասին ահազանգերը, ինչպէս նաեւ մի խումբ խոշոր ձեռնարկութիւններում ենթակաների վրայ ապօրինի ազդեցութեան դէպքերը: Այդպիսի ձեռնարկութիւնների թւին են պատկանում Գազպրոմ Արմենիան, Հայաստանի Էլեկտրական Ցանցերը, Զանգեզուրի Պղնձամոլիբդէնային Կոմբինատը եւ այլն: Նոյն ուժի նախընտրական հանրահաւաքներին մասնակցելու եւ այդ ուժի օգտին քուէարկելու պարտադրանքը եղել է նաեւ մի շարք տեղական ինքնակառավարման մարմիններում եւ դրանց ենթակայ կառոյցներում»:

Հին, անփոփոխ մեթոտներ, որոնց տարողութիւնը թէեւ կարելի չէ չափել, բայց անկասկածօրէն էական ազդեցութիւն չեն ունեցած ընտրութեան արդիւնքներուն վրայ:

Բայց կայ խորքային կողմը: Օլիկարքութիւնը գրաւեց խորհրդարանական ընդդիմութիւնը, եղաւ ընդդիմութեան ներկայացուցիչ, յառաջացնելով երկբեւեռ խորհրդարան, չնչելու համար անոր հաշուեյարդարային նկրտումները:

### ԵՐՐՈՐԴ ԿՈՂՄԻ ԲԱՑԱԿԱՅՈՒԹԻՒՆԸ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻՆ ՄԷՋ

Խորհրդարան չմտան անհրաժեշտ երրորդ, չորրորդ եւ այլ տարրերը՝ տարասեռութեան կրողները: Այս տարրերը կային ընտրական ցուցակի կուսակցութիւններուն մէջ եւ անոնց ձայնը լսելի էր նախընտրական քարոզարշաւի ընթացքին:

Հանրապետութիւն Կուսակցութիւն, Լուսաւոր Հայաստան, Շիրինեան-Բաբաջանեան Ժողովրդավարների Դաշինք, Քաղաքացու Որոշում եւ ուրիշներ ունէին շատ հետաքրքրական գաղափարներ եւ ընտրական ծրագիրներ, որոնք կը ներկայացնէին երրորդ տարրը իր բազմազանութեամբ:

Բայց ահաւասիկ կը պարզուի դրամատիրական բրգաձեւ ժողովրդավարութեան առանձնայատկութիւնը, որ բնորոշ է ոչ միայն Հայաստանին, այլ նման ժողովրդավար ուղի բռնած Ֆրանսային, Գերմանիոյ, Անգլիոյ, Միացեալ Նահանգներուն: Այսինքն, ներկայ ընտրութիւնը եւ անոր նախորդած ընթացքը ժողովրդավարական էր, այն իմաստով որ ընտրական ու քարոզարշաւային կեղծումներ չկային եւ գործընթացքը կը կայանար օրինական հենքով: Բայց բրգաձեւ ժողովրդավարութիւնը՝ որ հիմնուած է նաեւ աղբիւրներու, միջոցներու եւ ապաւէններու վրայ, դժուարութեամբ առիթ կու տայ նոր եւ մանաւանդ տարբեր ձայներու եւ ուղղութիւններու մուտքը ասպարէզ:

Արդ, ինչ որ տեսանք ընտրական ցուցակներուն եւ ընտրապայքարին մէջ, *հնչող* ձայները այլազան էին ու այլասեռ՝ բաւական գեղեցիկ նրբերանգումներով, *տեղ հասնող* ձայները՝ երկու: Բրգաձեւ ժողովրդավարութեան մէջ, ձայն հասցնող անտեսանելի խողովակները՝ որոնք աւելի կարեւոր են քան պաշտօնապէս տրուած ու բաշխուած քարոզարշաւի օրինական միջոցները, որոշիչ դեր կը խաղան իշխանական համակարգներու վերարտադրութեան եւ ինքնավերարտադրութեան համար:

Ինչպէս միշտ, կը բացակայէր ձախակողմեայ իրական ձայնը: Գիտենք որ ձախը հող չունի զարգանալու Հայաստանի եւ Սփիւռքի հիմնահոսանքի աջակողմեան տիրակալութեան տակ՝ ներառեալ Քաղաքացիական Պայմանագիրի, ալ ուր մնաց Հայաստան Դաշինքի, բայց անոր գոյութիւնը իբրեւ ձայն կրնայ հետաքրքրական շերտաւորում մտցնել ընդհանուր կարծր մտածողութեան մէջ:

### ՅԵՏԸՆՏՐԱԿԱՆ ՄՏԱՀՈԳՈՒԹԻՒՆՆԵՐ

Առաջին մտահոգութիւնը Քաղաքացիական Պայմանագիր մեծամասնական կուսակցութիւնն է: Յստակ է, որ Փաշինեան չկրցաւ յարատեւել առանց օլիկարքի մասնակի ներգրաւուածութեան, ՔՊ-ի մէջ ընդգրկելով քանի մը օլիկարքներ: Հին ու արմատացած համակարգը չթոյլատրեց ընթացավարել առանց իրեն՝ թէկուզեւ տարբեր դէմքերով: Թէեւ, պէտք է յստակ ըլլայ, մէկ բան է իշխանական յարատեւութեան համար օլիկարքական ներառումներ կատարել՝ որ բնաւ բաղձալի չէ, բոլորովին ուրիշ բան է ներկայացուցիչը ըլլալ նոյն ինքը օլիկարքութեան, ինչպէս այսօրուայ խորհրդարանական ընդդիմութիւնն է: Տարբերութիւնը, պէտք է շեշտել, շատ մեծ է:

Գլխաւոր մտահոգութիւնը, սակայն, հիմնուած է նախընթաց երեք տարիներու իրականութեան վրայ: Յեղափոխութիւնը կրնար բոլորովին ուրիշ ընթացք ստանալ, եթէ դիտաւորեալ եւ բաւական յաջող խափանումի ու խոչընդոտումի գործարքները տեղի չունենային: Գործարքներ՝ որոնք ոչ թէ ընդդիմութիւն էին, շտկելու ու սրբագրելու իշխանութեան սխալները, այլ ուղղակիօրէն անդամալուծելու իշխանութիւնը: Անդամալուծութեան գործարքները պիտի շարունակուին, մինչեւ որ Քոչարեան, Ծառուկեան, Սարգսեան վերջնականապէս ապահով զգան իրենց գերհարստութիւններուն նկատմամբ: Եւ այս նպատակին հասնելու համար իւրաքանչիւր կաթիլ մը մեղրէ համահայկական աղէտներ պատկերացնել պիտի տան: Այս է բուն մտահոգութիւնը:

Դեռ Ռուսաստանի եւ Ազրպէյճանի հետ պայմանագիր կայ ստորագրուելիք, որուն բովանդակութեան ու մանրամասնութիւններուն տակաւին անտեղեակ, արդէն շրջան մըն է ընդդիմութեան տարազը հագուած հակայեղափոխական տարրը Փաշինեանը պիտակաւորած է հայրենիքը ինքնակամ ու յօժարակամ ծախող անձ, որ նոյնիսկ մեծ դրամական կաշառք վերցուցած է անձամբ Ալիեւէն:

Նախապատրաստուած կարգախօսներ ու կարծրատիպեր՝ որոնք մեքենայաբար ու կրկնողաբար պիտի օգտագործուին պիտակաւորելու նոր կառավարութեան իւրաքանչիւր քայլը: Այս բոլորը տեղի պիտի ունենայ, կրնաք վստահ ըլլալ:

Կարծէք անցեալ երեք տարիներուն Փաշինեան ոչինչ ըրած ըլլայ:

### ԻՆՉՈ՞Ի ՓԱՇԻՆԵԱՆ

Պատասխանը համարձակօրէն համառօտագրած է Պեուլինէն Սամուէլ Հովասափեան, *Գեղարդ* առցանց պարբերականի Յունիս 24 թուակիր յօդուածով, որ կը սկսի այսպէս.

«Առաջին հայեացքից Յունիսի 20-ի ԱԺ-ի ընտրութիւնների արդիւնքը խօսում է այն մասին, որ ընտրութիւն է կատարուել նոր՝ յեղափոխական ուժերի եւ անցեալի՝ նոր կեանք ստացած՝ իշխանութիւնների միջեւ: Սակայն խորքում հայ ժողովուրդը մղում էր դասակարգային պայքար, իհարկէ ոչ դասական հասկացողութեամբ: Այնուամենայնիւ նա մերժելով հներին, փաստօրէն մերժում է՝ դրամատէրերի, դրամի բռնատիրական իշխանութիւնը: Դրան նպաստել է նոր իշխանութիւնների անցեալ երեք տարուայ ընթացքում մի շարք դրական ծրագրերի նպատակամղուած իրագործումը, նախ եւ առաջ բարելաւել կարիքաւոր խաւի, աշխատաւորութեան, գիւղացիութեան կեանքի պայմանները: Անուրանալի է, որ օրէնքի գերակայութեան համար, ինչպէս նաեւ անօրինականութիւնների, կաշառակերութեան եւ պաշտօնեաների կամայականութիւնների դէմ պայքարը, զգալի բարելաւել է այդ զանգուածների ոչ միայն նիւթականը, այլ նաեւ բարձրացրել է նրանց ինքնագիտակցութիւնը: Հէնց այս խաւն է, որ անցեալ տարիներին կրել է ծանր զրկանքներ, տուել է բազմաթիւ զոհեր, սակայն այս հասարակ ժողովրդի հաւաքական գիտակցութիւնը իմաստուն է, յիշողութիւնը արթուն, գնահատանքը անաչառ, գիտի թալանչիներին, պատերազմի իսկական մեղաւորներին եւ կայացրել է իր իմաստուն որոշումը, քուէների մեծամասնութեամբ ընտրելով նոր իշխանութիւններին:

«Վստահօրէն կարելի է ասել, որ առաջին անգամ հայոց դարաւոր պատմութեան ընթացքում հայ հասարակ աշխատաւորը, հայ հասարակ գիւղացին, հայ մարդը, հայ կինը, հայ զինուորը իրենց առօրեայ փորձերով տեսան, գիտակցեցին, իրենց մաշկի վրայ զգացին, որ իրենք այլեւս պետական պաշտօնեաների, դրամատէրերի, վերադասների, կամ այլեւայլ զօրեղների դէմ միայնակ եւ անզօր չեն, այլ, չլսուած բան, երկրում առաջին անգամ օրէնքն է իշխում եւ հարկ եղած դէպքում այն է, որ իրենց տէր է կանգնելու ու պաշտպանելու»:

Մնացածը կարդալ աղբիւրէն (https://keghart.org/hovasapian-elections-2021/): Իրաւունք չունիմ շարունակելու:

Ըրածներուն մասին տեղը չէ այստեղ աւելի մանրամասնել, բայց հրաշալի եւ նուրբ արձակագիր Արփի Ոսկանեան քանի մը օր առաջ Ֆէյսպուքի էջին վրայ կ՚արձանագրէր. «Պատերազմը չլինէր, մարգերի ժողովրդի համար շատ էլ լաւ էր՝ գիւղատնտեսական վարկեր, ճանապարհներ, լիքը բան փոխուեց իրականում: Երեւանում էլ աղբահանութիւնը տեղն ընկաւ, տրանսպորտն ա նորմալանում, կոռուպցիան քոքահան արուեց, բիզնէսներ ստեղծըւեցին, չտեսնել հնարաւոր չի: Պատերազմը ամէն ինչ աւերեց: Եւ մարդկային կեանքերը, որ ոչ մի ձեւով վերականգնել չի լինի»:

Պատերազմ՝ որ հիմա երեք առաջին նախագահներէն իւրաքանչիւրը առանձին մէջտեղ ինկած է պնդելու, որ եթէ ինք (անձամբ *ինք*՝ եւ ոչ թէ միւս նախագահներէն մէկը) ըլլար իշխանութեան գլուխ՝ ան տեղի չէր ունենար: Այնքան վստահ են: Պատերազմ՝ որ շատ աւելի մեծ էր ներկայ Հայաստանէն, միլիոն անգամ աւելի մեծ Տէր-Պետրոսեանէն, Քոչարեանէն, Սարգսեանէն եւ Փաշինեանէն: Աւելի մեծ նոյնիսկ Ազրպէյճանէն: Պատերազմը սեփականութիւնն էր մեծ զէնք արտադրող գերտէրութիւններուն՝ Իսրայէլ, Ռուսաստան, Թուրքիա, բան մը որ, միաժամանակ, պիտի չհերքէ 30 տարուայ հայկական քաղաքական միտքի էական սխալները, պիտի ըսէ՝ գաւառամտութիւնը, որոնց մասնակից է նաեւ պաշտօնական Սփիւռքը:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1896 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՅՈՒԼԻՍ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՌկ. عدد رقم ١٨٩٦ الخميس ٢٩ يوليه ٢٠٢١


## ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆ ՀԻՒԱՆԴ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

‘For the American People’, ‘Pour le peuple français’ (Pour les français), «Հայ ժողովուրդի համար» արտայայտութիւնը իշխանաւորներու ամենասիրելի կարծրատիպ-կարգախօսներէն մէկն է: Իշխանաւորը՝ յատկապէս նախագահն ու վարչապետը, այս արտայայտութեամբ ինքզինքին համար կերտած կ՚ըլլայ ժողովուրդի սիրոյն զոհուող անձի տիպարը: Այս պատկերը կարեւոր է իր սեփական յարատեւութեան համար:

Վարժուեցանք ու յառաջ անցանք:

Արդարեւ, ժողովուրդը՝ որուն համար ինքզինքը կը նուիրաբերէ իշխանաւորը, պէտք է մնայ զանգուածային-ամբոխավարական կացութեան մէջ: ԺԹ. դարէն սկիզբ առած զանգուածային կրթութիւնը եւ զանգուածային լրատուամիջոցները անփոխարինելի գործիքներ են այս առումով:

Զանգուած՝ որ պէտք է անուանուի հնազանդ: Հնազանդ՝ որո՞ւն: Մարդը՝ հնազանդ ուրիշ մարդու: Ստորին մարդը՝ անանուն զանգուածը, հնազանդ վերի մարդուն՝ անուանեալ ընտրելախաւին, ընտրելախաւ՝ որ ինքզինքին տուած է հիմնարկի, կուսակցութեան կամ պետութեան փոխանորդի հանգամանքը:

Միջանկեալ յիշողութիւն մը՝ առանց անուններու: Լիբանանի մէջ կար միջին մակարդակի հայ գրող մը՝ զոր կուսակցութիւնը դարձուց առաջին մակարդակի: Յետմահու, մեկնաբան մը հեռատեսիլէն կը յիշեցնէ, չես գիտեր գովելու թէ քննադատելու համար, թէ այս գրողը պատահած է ըմբոստանալ իր կուսակցութեան դէմ: Բայց, կ՚աւելցնէ, ասիկա ներելի է, քանի որ մտաւորականը բնազդով ըմբոստ կ՚ըլլայ [եղեր]: Ուշադրութիւն. «ներելի» է: Ընտրելախաւը «ներած» է անոր:

Ասոր ալ վարժուեցանք ու յառաջ անցանք:

Կու գանք կարեւոր եւ վտանգաւոր խնդիրին՝ երբ ժողովուրդի զանգուածայնութեան կարօտ վերնախաւը կը չափազրէ ժողովուրդը:

Սփիւռքի մէջ գրեթէ ամէն օր կը լսենք հասարակութեան ստորադասութիւնը չեշտող կարգախօսը՝ «Եթէ գաղութիս ժողովուրդը հասկցող ըլլար, տես ինչեր կրնայի ընել», որ իր հերթին պիտի առաջնորդէր ինքնեզրակացութեան՝ «Ես ամէն ճիգ գործադրեցի, բայց գաղութիս ժողովուրդը չհասկցաւ ու չարձագանգեց»: Հայապահպանեցի բայց գաղութը չհայապահպանուեցաւ:

Սփիւռքէն Հայաստան: 2017-ին *Ջահակիր* կը ներկայացնէր Հայաստանի մէջ «ակադեմական» շատ մեծ կշիռ ունեցող (մինչեւ այսօր ունեցող) հռետորաբան-հռետորագիրի մը բացայայտօրէն արտայայտած կարծիքը՝ թէ «Հայաստանի... հասարակութիւնը հիւանդ է, պէտք է բուժել», հիմնուելով գերազգային յարմարաւէտ պատումի մը վրայ, որ տուեալ ակադեմականին պիտի տար յաւելեալ հայրենասէրի տիպար (*Ջահակիր*, թիւ 1794-1795):

Եւ հիմա հասանք խորհրդարանական յետընտրական շրջանը, ուր Սփիւռքն ու Հայաստանը խառնուեցան իրարու:

Վերյիշենք արդիւնքները. Քաղաքացիական Պայմանագիր (Նիկոլ Փաշինեան)՝ 53.92%, Հայաստան դաշինք (Ռոբերտ Քոչարեան)՝ 21.04%, Պատիւ Ունեմ դաշինք (Արթուր Վանեցեան)՝ 5.23%:

Քաղաքագէտ Էրիկ Յակոբեան, *Սիվիլ Նէթի* Յունիս 25 տեսագրութեամբ, կը նախատէ Սփիւռքի հատուածի մը կեցուածքը Հայաստանի ընտրութիւններուն նկատմամբ, որ ուղղակիօրէն կը մեղադրէ ժողովուրդը.

«Յետընտրական այս շրջանում ինձ համար աչքի ընկած բաների շարքում հայկական սփիւռքում շատերի արձագանքն է, մասնաւորապէս այս ընտրութեան արդիւնքներին: Նկատի ունեմ սփիւռքում շատերից եկող անհանդուրժողական տողերը: Մարդիկ, որոնք հիասթափուել են ընտրութիւնների արդիւնքներից, ինչը հասկանալի է, ունեն իրենց նախընտրելի կողմերը:

«Սակայն սա արագ գահավիժելով՝ իջել է հետեւեալ մակարդակին՝ մարդիկ այստեղ [իմա՝ Հայաստանի մէջ, Ա.] յիմար են, չգիտեն ինչն է իրենց համար լաւ. «Մենք իրենցից աւելի լաւ գիտենք՝ ինչն է իրենց համար լաւ»: Անկեղծ ասած՝ սա շատ իգնոռանտ/անտեղեակ/տգէտ մօտեցում է եւ ոչնչով չի օգնում»:

Կարելի է քննարկել, քննադատել ու մեկնաբանել ամէն բան, բայց ոչ երբեք մեղադրել ամբողջ ժողովուրդ մը եւ զայն ներկայացնել իբրեւ յիմար:

Բայց տակաւին Էրիկ Յակոբեան անտեղեակ էր, որ իր ելոյթէն չորս օր ետք՝ Յունիս 29-ին, Հայաստան Դաշինքի առաջին ընդհանուր ժողովին, Ռոբերտ Քոչարեան պիտի արտասանէր. «Առողջ հասարակութիւնն այսպիսի արդիւնքների համար չպէտք է քուէարկէր իշխանութեանը վերընտրուելու համար»:

Հայաստանի ժողովուրդը հիւանդ է՝ քանի որ չընտրեց իրեն: Վերի ակադեմիկոսին խօսքերը կը կրկնուին տառացիօրէն:

Ինչպէս Տարօն Զախոյեան նոյն օրը Ֆէյսպուքի իր էջին վրայ պիտի արձագանգէր՝ «Գոնէ մէկդ կողքից յուշէիք, որ երբ հասարակութեանն անուանում է ԱՆԱՌՈՂՋ, էլ թող չսպասի, որ էդ հասարակութիւնն իրեն ծափահարելու է»:

Ընտրութիւններուն 0.32% արդիւնք ստացած ղեկավար մը, *Lragir.am*-ի Յուլիս 14-ի հարցազրոյցին եւս փորձեց «փաստել» հայ ժողովուրդին անգիտութիւնը. «Քաղաքացիները մանդատ տուեցին Նիկոլ Փաշինեանին, եւ հիմա մենք պէտք է այդ իրավիճակի ողջ ողբերգութիւնը տանենք: Մենք ամէն ամիս ունենալու ենք զոհեր, գերիներ եւ այլն: Ցաւալի է, բայց մեր հանրութիւնը որոշեց հանդուրժել այդ ամէնը [...]: Այսինքն՝ սա մնում է մի բեռ ժողովրդի ուսերին, որն այս ժողովուրդը պէտք է տանի, քանի որ դա հէնց մեծամասնութեան ընտրութիւնն է»:

Այսինքն, ժողովուրդին կ՚ըսուի՝ «Մեղքը քո վզին»: Այսինքն, «Ժողովո՛ւրդ, դուն ողբերգական որոշում կայացուցիր, կրէ՛ որոշումիդ ամբողջ հետեւանքները»:

Ժողովուրդները կրնան սխալիլ: *Կրնան* սխալիլ: Կրնան նաեւ չսխալիլ: Սխալն ու անսխալը յարաբերական ըլլալէ անդին, հազար ու մէկ հանգամանքներ կը մտնեն քուէարկութիւններու միջոցով ժողովուրդներու կայացուցած որոշումներուն մէջ, որոնց մասին խորանալը մեր նիւթէն դուրս է: Ինչ որ ալ ըլլայ

➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՆՈՐ ԴԵՍՊԱՆՆԵՐ Է ՆՇԱՆԱԿԵԼ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ, ԹՈՒՐՔՄԷՆՍՏԱՆՈՒՄ, ԿՈՒԲԱՅՈՒՄ, ԿՈԼՈՒՄԲԻԱՅՈՒՄ ԵՒ ԲՈԼԻՎԻԱՅՈՒՄ

Հայաստանի նախագահ Արմէն Սարգսեանը Յուլիսի 26-ի հրամանագրերով Հայաստանի դեսպաններ է նշանակել Եգիպտոսում, Թուրքմէնստանում, Կուբայում, Կոլումբիայում եւ Բոլիվիայում:

Ինչպէս տեղեկացրին նախագահի աշխատակազմի հասարակայնութեան հետ կապերի վարչութիւնից, հիմք ընդունելով Սահմանադրութեան 132-րդ յօդուածի 1-ին մասի 2-րդ կէտը, Հայաստանի նախագահը Հրաչեայ Փոլադեանին նշանակել է Եգիպտոսի Արաբական Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան՝ երեք տարի ժամկէտով (նստավայրը՝ Կահիրէ), Ռուբէն Խարազեանին՝ Թուրքմէնստանում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան՝ երեք տարի ժամկէտով (նստավայրը՝ Աշգաբատ), Կանադայում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Անահիտ Յարութիւնեանին, համատեղութեան կարգով, Կուբայի Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան (նստավայրը՝ Օտտաւա), Բրազիլիայի Դաշնային Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Արման Յակոբեանին, համատեղութեան կարգով, Կոլումբիայի Հանրապետութիւնում եւ Բոլիվիայի Բազմազգ Պետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան (նստավայրը՝ Բրազիլիա):

## 44-ՕՐԵԱՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ԶՈՀՈՒԵԼ Է ԱՐՑԱԽԻ 750 ՔԱՂԱՔԱՑԻ. ԱՐՑԱԽԻ ՄԻՊ

Արցախի Մարդու Իրաւունքների Պաշտպան (**ՄԻՊ**) Գեղամ Ստեփանեանը հրապարակել է 44-օրեայ պատերազմի հետեւանքով զոհուած, անհետ կորած, գերեվարուած եւ գերութիւնից վերադարձած Արցախի Հանրապետութեան քաղաքացի հանդիսացող անձանց վերաբերեալ տուեալները:

Ըստ այդմ, ադրբէջանական ագրեսիայի հետեւանքով զոհուել է Արցախի Հանրապետութեան 750 քաղաքացի, որից 81-ը քաղաքացիական անձինք են: Քաղաքացիական անձանցից 42-ը զոհուել են ադրբէջանական Զինուած Ուժերի հեռահար հարուածների, ներառեալ՝ հրթիռակոծութեան, հրետակոծութեան, ռմբակոծութեան, դիվերսիոն խմբերի հրազէնային կրակոցների հետեւանքով, 39-ը՝ ադրբէջանական գերութեան կամ առնուազն վերահսկողութեան ներքոյ՝ ֆիզիկական բռնութեան, դանակահարութեան, գլխատման, հրազէնային մերձակայ կրակոցի կիրառմամբ:

«Վիրաւորում է ստացել 163 քաղաքացիական անձ: Վիրաւորում ստացած զինծառայողների յստակ թիւը այս պահին մեզ մօտ առկայ չէ: Հաստատուած տուեալներով՝ Արցախի Հանրապետութիւնից 83 անձ համարւում է անհետ կորած, որից 23-ը քաղաքացիական անձինք են», - գրել է Գեղամ Ստեփանեանը:

Արցախի ՄԻՊ տուեալներով՝ գերեվարուած եւ գերութիւնից վերադարձած 103 անձանցից 23-ը Արցախի Հանրապետութեան քաղաքացիներ են:

## 44-ՕՐԵԱՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՔՆՆԻՉ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ Է ՍՏԵՂԾՈՒԵԼՈՒ. ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆ

Որոշում է կայացուել, որ քննիչ յանձնաժողով է ստեղծուելու 44-օրեայ պատերազմի վերաբերեալ: Այս մասին Յուլիսի 26-ին Քաղաքացիական Պայմանագրի գրասենեակում վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանի եւ նորընտիր Ազգային Ժողովի ՔՊ խմբակցութեան պատգամաւորների հանդիպումից յետոյ լրագրողների հետ զրոյցում ասաց Ալէն Սիմոնեանը, տեղեկացնում է *news.am*ը:

# ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

## (մահուան առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

20 Դեկտեմբեր 1957. Town Hall (Նիւ Եորք). Ժիրայր Գանթարճեանի առաջնեկ մենահամերգ Նիւ Եորքի մէջ. դաշնակի նուագակցութիւն՝ David Garvey:

«Անցեալ գիշերուայ Թաուն Հոլի մենահամերգին, ջութակահար Ժիրայր Գանթարճեան դրսեւորեց երկակի անհատականութիւն:

«Առաջին կէսին ան ակադեմական էր՝ լաւ աշակերտը որ կը նուագէ մաքուր թեքնիքով բայց ակնյայտօրէն կը տառապի Թաուն Հոլի առաջնեկութեան թելադրած զսպուածութենէն: Ապա, ամրացած ծափահարութիւններէն եւ ներշնչուած երաժշտութենէն, դադարէն ետք վերադարձաւ՝ դրսեւորելու Կարէն Խաչատրեանի սոնաթին եւ այլ գործերու չափազանց բարելաւուած ցուցադրութիւն մը: Դաշնակով կը նուագակցէր Տէյվիտ Կարվի:

«Թարթինիի սոլ մինոր Սոնաթը (*Սատանայի Թրիլ*), Պեթհովէնի տօ մինոր Սոնաթը, երկ 30 թիւ 2, եւ Պախի թիւ 2 Փարթիթայի ռէ մինոր Շաքոնը յաճախակի նուագուող գործեր են (ոմանք կրնան ըսել՝ շատ յաճախակի) մեր երաժշտասրահներուն մէջ: Այս պատճառով, արուեստագէտը պէտք է անոնց պարգեւէ մասնայատուկ բան մը, եթէ երբեւէ կ՚ուզէ հաղորդակցիլ իր ունկնդիրին հետ:

«Դժբախտաբար, Պր. Գանթարճեան այս գործերուն մօտեցաւ պզտիկ հնչիւնով եւ մանրախնդրութեամբ՝ ցուցաբերելով երկչոտ մօտեցում: Կը պակսէին տինամիք հակադրութիւնները՝ աքորներուն կը պակսէր «խայթ»-ը, կար նաեւ ջութակը երգել չտալու հակում: Ի նպաստ իրեն՝ իր ելեւէջը գրեթէ անթերի էր ամբողջ ընթացքին, աղեղնաւորումը՝ սահուն, իսկ Շաքոնին մէջ, շնորհիւ մատներու եւ աղեղի ճարտար գործածութեան, երաժշտական տարրերը պահպանեց պարզորոշ:

«Կարէն Խաչատրեանի սոլ մինոր Սոնաթը Պր. Գանթարճեանին վերածեց տարբեր անհատի: Ինք եւս հայ, Գանթարճեան այս հայ երաժշտահանի երաժշտութեան մէջ ակնյայտօրէն գտաւ ուժեղ գրաւչութիւն, որ եղբօրորդին է հռչակաւոր Արամ Խաչատրեանի: Եզրափակիչ փրեսթօն նուագեց ուժեղ կշռութային կենսունակութեամբ, իսկ միջին դանդաղ շարժումին մէջ Պր. Գանթարճեանի ջութակը այնպէս երգեց՝ որուն նմանը երբեւէ չէր կատարած:

«Փականինիի Փոփոխակներ թեմայի մը վրայ (*Nel cor più non mi sento*) գործը առիթ ընծայեց իրական ջութակահարական հրավառութիւններու՝ շլացուցիչ աղեղով, ինչպէս նաեւ ձախ ձեռքի փիծիքաթոներու վճռական կատարումով: Բայց եւ այնպէս, Պր. Գանթարճեանի ողջ փայլքը չի կրնար թաքցնել այն փաստը՝ որ ասիկա իրապէս դռեհիկ երաժշտութիւն մըն է:

«Ռաւէլի հանդարտ *Pièce en forme de Habanera*-ն նրբօրէն նուագուեցաւ, անոր խաղաղութիւնը չեշտադրուեցաւ այն հանգամանքով՝ որ կու գար Փականինիի փոփոխակներէն անմիջապէս ետք»:

(V. R-R., 'Kantarjian Gives Recital on Violin: Changes from Academician to Musician after Losing his Debut Fears at Town Hall,' *The New York Times*, 21 December 1957)

* * *

25 Յունուար 1961. Assembly Hall (Մանսի). Muncie Symphony Orchestra, նուագավար՝ Robert Hargreaves. Փականինի, Քոնչերթօ թիւ 1, մենակատար՝ Ժիրայր Գանթարճեան:

«Ժիրայր Գանթարճեան Փականինիի ռէ մաժոր Առաջին Քոնչերթօն նուագեց այն ողջ հմտութեամբ եւ զգացումով՝ զորս ուրիշ քննադատներ, ուրիշ քաղաքներու մէջ վերագրած էին իրեն:

«Նուագախումբի եւ հանդիսատեսի շարքերը գտնուող լարային գործիքներ նուագողները նոյնիսկ աւելի տպաւորուած էին քան սովորական ունկնդիրը, քանի որ հասկցան ենթադրաբար այսքան դիւրութեամբ իրագործած մատնաշարերուն (fingerings) ու աղեղնաւորումին իրական դժուարութիւնը:

«Բայց Տէր եւ Տիկին Միջակ ունկնդիրը, պալքոնները լեցուցած ուսանողներուն հետ միասին, շարժումներուն միջեւ ծափահարութեան երկարատեւ բռնկումով մատուցեց իր յարգանքի տուրքը:

«Փականինիի այս քոնչերթօն, Պեթհովէնի նախերգանքին եւ Մոցարթի սէմֆոնիին նման, լեցուն է մեղեդիներով՝ որոնք շահագործուեցան առեւտրական փոփ երգաստեղծներուն եւ հեռատեսիլի յետամասային երաժշտութեան գրագիրներուն կողմէ: Գլխաւորաբար այս մեղեդիներու երգային վերածութիւնն էր Գանթարճեանի կողմէ՝ աւելի քան անոնց զարդարումը Փականինիի ջութակահարական հնարքներով, որուն արձագանգեց հանդիսատեսը»:

Ժիրայր Գանթարճեան, 1961 (*The Star Press*, 22 Յունուար 1961)

(Dorothea Bump, 'Symphony Concert Casual, Stimulating,' *Muncie Evening Press*, 26 January 1961, p. 13)

* * *

Նոյն նուագահանդէս:

«Չորեքշաբթի գիշեր, Մանսի Սէմֆոնի Նուագախումբը ներկայացուց իր ամենաերկար նուագահանդէսներէն մէկը, որ նաեւ ամենէն հրաշալիներէն մէկն էր՝ նկատի առնելով ներգրաւուած մենակատարները: Ժիրայր Գանթարճեան, ջութակահար, արդարացուց այն բարձր ակնկալիքները՝ որոնք առաջին անգամ յառաջացան երբ յայտարարուեցաւ Լեւենթրիթի մրցանակի ֆինալիսթ դառնալը:

«Յայտագիրին առաջին կէսը կը թուէր ըլլալ նախապատրաստական մարզանքի ընթացք մը: Թէ՛ Պեթհովէնի նախերգանքը եւ թէ՛ Մոցարթի սէմֆոնին անվրդով փորձեր էին: Երկուքին մէջ կը պակսէր հովասուն թեթեւութիւնը, թէեւ նուագավար Տոքթ. Ռոպըրթ Հարկրիվս որսաց ճշգրիտ կշռոյթը եւ դուրս թողեց զգայնականութիւնը:

«Ունկնդիրը առիթ ունեցած է Մանսի Սէմֆոնիին հետ լսելու Լեւենթրիթ Միջազգային Մրցոյթի ուրիշ առաջնակարգ մենակատարներ, որոնք անսայլայլօրէն տուած են ցնցող կատարումներ: Գանթարճեան տուաւ բացառիկ կատարում մը: Ոչ միայն Փականինիի քոնչերթոյի նման անսովոր գործի մը կատարումին պատճառով, այլ նաեւ իր նուագի յատուկ որակին շնորհիւ:

«Իր ջութակին արտաբերած փարթամ հնչիւնը, իր ներհայեցողական գեղարուեստականութիւնը եւ մեծ թեքնիքական սահունութիւնը կատարումը պարուրեցին գերող գեղեցկութեամբ:

«Բացառիկ գեղեցկութեամբ օժտուած երկրորդ շարժումը նուաճեց հրաշալի կերպով: Հանդիսատեսը յափշտակուած էր առաջին ալլեկրոյով, որ կը պարունակէր առանց նուագակցութեան երկարատեւ մենանուագ հատուածներ: Մենակատարին խոտորումները բարձր դիրքերուն մէջ՝ իր ճկուն մատնահարումէն եւ դիւրաշարժ աղեղնաւորումէն բխած հարուստ ու հնչեղ հնչիւններու անխախտ յարատեւութեամբ, յառաջացուցին ունկնդիրներուն ինքնաբուխ ծափահարութիւնը: Ան կը նուագէ սքանչելի դիւրութեամբ եւ տիրապետութեամբ, իսկ երկձայները ճախրող ձայնանիշներ էին առկայծուն գոյնով:

«Կատարումը շլացուցիչ էր եւ քնքուշօրէն քնարական իսկ Գանթարճեան կը վայելէր Տոքթ. Հարկրիվսի եւ նուագախումբի առաջնակարգ աջակցութիւնը: Լարայիններու սիրահարներուն համար անկասկած անմոռանալի գիշեր մըն էր, քանզի զգացին որ աշխարհի ամենագեղեցիկ երաժշտութենէն մաս մը կու գար Ասէմպլի Հոլի բեմէն»:

(Alberta Greicus, 'Long, Exciting Concert for Muncie Symphony,' *The Star Press*, 26 January 1961, p. 4)

* * *

7 Փետրուար 1961. Salesianum High School (Ուիլմինկթոն). Wilmington Symphony Orchestra, նուագավար՝ Van Lier Lanning. Արամ Խաչատրեան, Ջութակի Քոնչերթօ, մենակատար՝ Ժիրայր Գանթարճեան:

⇘ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԳԻՒՂԱՊԵՏԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է ՅԱՆՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՄԻՆՉԵՒ 220 ՀԱԶԱՐ ԿԱՇԱՌՔ ՏԱԼՈՒ ՀԱՄԱՐ

Ձերբակալուել է Գորիս համայնքի Քարահունջ բնակավայրի վարչական ղեկավար Լ.Ա.-ն, Յուլիսի 5-ին հաղորդում է Քննչական Կոմիտէն:

Վերջինս, օգտագործելով Քարահունջի չորս բնակիչներին Մայիսին «դրամական աջակցութիւն» անուան տակ 100.000-220.000 դրամ տրամադրած լինելու հանգամանքը, նրանց հարկադրել է մասնակցել Յունիսի 8-ին Գորիսում Հայաստան դաշինքի քարոզարշաւին, ինչպէս նաեւ մասնակցել Ազգային Ժողովի արտահերթ ընտրութիւններին եւ քուէարկել Հայաստան դաշինքի օգտին:

Բացի այդ՝ Լ.Ա.-ն 100.000 դրամ է տուել գիւղի մէկ այլ բնակչի՝ որպէս առողջական եւ սոցիալական խնդիրների հետ կապուած ֆինանսական աջակցութիւն: Ընտրութիւնների նշանակումից յետոյ գիւղապետը յիշեալ բնակչին եւ նրա ամուսնուն այդ գումարը ներկայացրել է որպէս ընտրակաշառք եւ հարկադրել մասնակցել Հայաստան դաշինքի նոյն հաւաքին ու քուէարկել այդ դաշինքի օգտին:

Յարուցուել է քրէական գործ: Կատարւում է նախաքննութիւն:

## ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ԼՐԱԳՐՈՂԱԿԱՆ ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ ՄԱՐԴԿԱՆՑ ՇԱՐՈՒՆԱԿԱԲԱՐ ՃԻՇՏ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ՓՈԽԱՆՑԵԼ ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ՓՈՔՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ ՎԵՐԱԲԵՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ. ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆ

Մարդու Իրաւունքների Պաշտպան Արման Թաթոյեանը Յուլիսի 6-ին մասնակցել է Եւրասիա համագործակցութիւն հիմնադրամի կազմակերպած ամենամեայ լրագրողական մրցանակաբաշխութեանը կրօնական եւ ազգային փոքրամասնութիւնների մասին հանդուրժողականութեան թեմայով:

Մրցանակաբաշխութեանը բացման խօսքով հանդէս են եկել Հայաստանում Նիդերլանդների դեսպան Նիկօ Սխերմերսը, Եւրասիա համագործակցութիւն հիմնադրամի գլխաւոր տնօրէն Գէորգ Տէր-Գաբրիէլեանը, Մարդու Իրաւունքների Պաշտպան Արման Թաթոյեանը:

«Իւրաքանչիւր հասարակութեան զարգացման գրաւականն է համերաշխութիւնը, որի ձեւաւորող տարրերից է յարգանքը կրօնների եւ ազգային փոքրամասնութիւնների նկատմամբ: Այս հարցերում տեղեկատուութեան պակասը ձեւաւորում է կարծրատիպեր, որոնք էլ առաջ են բերում անհանդուրժողականութիւն եւ, անգամ, ծայրայեղական դրսեւորումներ:

«Նման արատաւոր երեւոյթների բացառման կարեւոր միջոցներից են լրագրողական լուսաբանումներն այս թեմաների վերաբերեալ: Անհրաժեշտ է լրագրողական պրոֆեսիոնալ աշխատանքով մարդկանց շարունակաբար ճիշտ տեղեկութիւններ փոխանցել կրօնական եւ ազգային փոքրամասնութիւններին վերաբերող հարցերի մասին: Այս նուրբ ու զգայուն հարցերում լրագրողական աշխատանքը պէտք է լինի միայն խրախուսելի», - մրցանակ յանձնելիս ասել է Մարդու Իրաւունքների Պաշտպանը:

Եւրասիա համագործակցութիւն հիմնադրամի Մարդու Իրաւունքների ծրագրի տնօրէն Իզաբելլա Սարգսեանը մրցանակաբաշխութեան ժամանակ նշել է, որ մրցոյթը նպատակ ունի խրախուսել Հայաստանում հանդուրժողականութեան, խաղաղ համակեցութեան եւ բազմազանութեան վերաբերեալ հաւասարակշռուած եւ նրբանկատ լրագրողական լուսաբանումը, որը կը նպաստի փոքրամասնութիւն կազմող համայնքների նկատմամբ հասարակութեան հանդուրժողական եւ յարգալից վերաբերմունքի ձեւաւորմանը:

Մրցանակաբաշխութիւնն իրականացւում է 2015 թուականից:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՆՐԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՄԻՆՉԵՒ 2030 ԹՈՒԱԿԱՆԻ ՌԱԶՄԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՓԱԹԵԹԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**Համառօտ բնութագիր**

Հանրային Կառավարման Բարեփոխումների (ՀԿԲ) մինչեւ 2030 թուականը ռազմավարութեամբ Հայաստանի Հանրապետութեան յետանկախացման շրջանում առաջին անգամ փորձ է արւում ձեւակերպել երկրի պետական կառավարման համակարգի վերափոխման ու արդիականացման համապարփակ օրակարգը՝ նախանշելով ապագայի պետութեան կառուցման ռազմավարական ուղեծիրը, առաջնահերթութիւնները եւ դրան հասնելու քաղաքականութեան փուլային օրակարգը:

ՀԿԲ ռազմավարութիւնը յենւում է մինչ օրս պետական կառավարման համակարգի եւ ենթահամակարգերի ձեւաւորման, կայացման ու զարգացման ուղղութեամբ իրականացուած գործընթացների, ձեռքբերումների ու կուտակուած դրական փորձի, ձախողումների ու քաղուած դասերի վրայ: Ռազմավարութեան մշակման համար առանցքային նշանակութիւն են ունեցել 2020 թուականին երկրին պատուհասած ճգնաժամերի՝ կորոնավիրուսի համավարակի եւ Արցախի Հանրապետութեան նկատմամբ Ադրբեջանի Հանրապետութեան կողմից Սեպտեմբերի 27-ից սանձազերծած պատերազմի ընթացքում պետական կառավարման համակարգում դրսեւորուած լրջագոյն մարտահրաւէրներն ու խորքային խնդիրների հետ առերեսումը:

Հանրային Կառավարման Բարեփոխումների արժէքային առանցքը մարդն է՝ քաղաքացին ու հանրային ծառայողը: Բարեփոխումների ռազմավարական մօտեցումը կառուցւում է «միասնական» կամ «ինտեգրուած» կառավարութեան (Whole-of-the-Government) փիլիսոփայութեան շուրջ, որով խնդիր եւ նպատակ է դրւում ապահովել գործադիր իշխանութեան համակարգի ներդաշնակ, սիներգիկ, արհեստավարժ, տեխնոլոգիահենք առաջադէմ լուծումներով եւ պատասխանատու գործունէութիւնը:

Հանրային կառավարման բարեփոխումների յենման կէտը պետութեան եւ հասարակութեան արժէքային հիմքն է ու սոցիալ-մշակութային համատեքստը, պետութեան արդիականացման օրակարգը, պետութիւն-հասարակութիւն փոխյարաբերութիւնների բնոյթի, ծաւալների եւ ձեւի վերարժեւորումը՝ առաջադէմ հասարակութիւն եւ պետութիւն կայացնելու ճանապարհին, հանրային-պետական շահի եւ քաղաքական գործընթացների հաւասարակշռումը՝ յօգուտ երկրի կայունութեան, անվտանգութեան եւ զարգացման:

Բարեփոխումների ռազմավարական տեսլականով սահմանւում են ապագայի պետութեան եօթ բնութագրիչներ՝ մարդակենտրոն, արդար, կայուն, պատասխանատու, դինամիկ, նորարար, օպտիմալ: Այս որակին հասնելու ճանապարհային քարտէզը նախագծւում է եօթ ռազմավարական (քաղաքականութիւն, ծառայութիւններ, մարդիկ, ինստիտուտներ) եւ հորիզոնական (կարողութիւնների զարգացում, թուայնացում եւ ինովացիա, կայուն եւ ռեսուրսարդիւնաւէտ գործելակերպեր) տիրոյթների ուղղութեամբ վերափոխման օրակարգերի ձեւաւորմամբ եւ գործողութիւնների նախանշմամբ:

Ապագայի պետութեան վերափոխման ռազմավարական հորիզոնը մինչեւ 2030 թուականն է, միաժամանակ, Ռազմավարութեան իրագործումը նախատեսւում է 3 փուլով՝ այդպիսով բարեփոխումների շղթան դարձնելով աւելի արդիւնքամէտ, իրագործելի ու արդիական, ապահովելով դրանց միջեւ ժառանգականութիւնը եւ բարեփոխումների կենսունակութիւնն ընթացիկ զարգացումներին համահունչ: Իւրաքանչիւր յաջորդ փուլի նախագծման համար պէտք է հիմք ընդունուեն ընթացիկ ձեռքբերումները, արդիւնքները եւ քաղուած դասերը:

Ռազմավարութեան մշակման հիմքում դրուել են կուտակուած փորձը, տեղեկատուութիւնն ու գիտելիքը, ինչպէս նաեւ՝ իրականացուած փաստահաւաք ու վերլուծական աշխատանքը հանրային կառավարման համակարգի առանձին տարրերի վերաբերեալ: Այդուհանդերձ, հիմնարար տուեալների 4

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ԱՐՏԱԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ԽՈՐՀՐԴԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԱՌԱՋԻՆ ՆԻՍՏԸ

Յուլիսի 24-ին, վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանը մասնակցել է արտախորհրդարանական քաղաքական ուժերի հետ համագործակցութեան խորհրդակցական ժողովի առաջին նիստին:

Նիստին մասնակցել են Հանրապետութիւն Կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը, Ազատական Կուսակցութեան առաջնորդ Սամւէլ Բաբայեանը, Ալեանս առաջադիմական ցենտրիստական կուսակցութեան առաջնորդ Տիգրան Ուրիխանեանը, Արդար Հայաստան կուսակցութեան ղեկավար Նորայր Նորիկեանը, Ինքնիշխան Հայաստան կուսակցութեան ղեկավար Դաւիթ Սանասարեանը, Հայաստանի Եւրոպական Կուսակցութեան ղեկավար Տիգրան Խզմալեանը, Հայաստանի Քրիստոնեայ-Դեմոկրատական Կուսակցութեան նախագահ Լեւոն Շիրինեանը, Միասնական Հայրենիք կուսակցութեան նախագահ Մհեր Տէրտէրեանը, Պահպանողական Կուսակցութեան ղեկավար Միքայէլ Հայրապետեանը, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան Հայաստանի վարչութեան ատենապետ Սեդրակ Աճէմեանը:

Նիկոլ Փաշինեանը ողջունել է ժողովի մասնակիցներին եւ մաղթել յաջող ու արդիւնաւէտ քննարկումներ:

Վարչապետի պաշտօնակատար Նիկոլ Փաշինեանի եւ արտախորհրդարանական քաղաքական ուժերի ղեկավարների մասնակցութեամբ յաջորդ նիստը տեղի կ՚ունենայ առաջիկայում:

## ՑԻՇՈՂՈՒԹԵԱՆ ԹԱՐՄԱՑՈՒՄ՝ ԲՌՆԱՃՆՇՈՒՄՆԵՐԻ, ՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ, ԱԶԱՏ ԽՕՍՔԻ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՄԱՆ ՔՈՉԱՐԵԱՆԱԿԱՆ ՏԱՍՆԱՄԵԱԿԻ ՄԱՍԻՆ

**ՌՈԲԵՐՏ ԱՆԱՆԵԱՆ**

Արտահերթ խորհրդարանական ընտրութիւնների քարոզարշաւի ընթացքում Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը ներկայանում է որպէս ուժեղ եւ յաջողակ նախագահ, ով պիտի փրկի Հայաստանը: Տարբեր տեխնոլոգիաներով կերտուող Քոչարեանի նոր կերպարը, սակայն, հակասութեան մէջ է նրա կառավարման տասնամեակի փաստերի հետ: Ռոբերտ Քոչարեանի կառավարման տարիները ժամանակի ընդդիմադիրներն ու իրաւապաշտպանները որակել են որպէս արիւնոտ տասնամեակ: Կասկածելի, երբեմն՝ առեղծուածային պայմաններում կեանքից զրկուել են բարձր պաշտօններ եւ ազդեցիկ դիրք զբաղեցրած անձինք, որոնց սպանութիւններն այդպէս էլ չեն բացայայտուել, ընդդիմութեան ներկայացուցիչները ենթարկուել են բռնաճնշումների, փակուել են անկախ լրատուամիջոցներ:

ԽՈՀԵՐ

## ՄԷԿ ԱՆՁԸ՝ ԱՄԷՆ ԲԱՆ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Կարելի՞ է արդեօք ստորեւ բոլոր յիշուածները մարմինստանան մէկ անձի մէջ, որ կը ներկայանայ իբրեւ թիւ 1 «գործիչ-մտաւորական»:

Եթէ իր ուզած պաշտօնին չընտրուի, չընտրողներուն կ՚որակէ ոչ-հայ եւ թուրքի ու թաթարի արտադրութիւն: Երբ ընտրուի՝ գործընկերներուն հետ կը վարուի ոչխարներու նման:

Եթէ զինքը հովանաւորող գերմեծահարուստը դատի կանչուի՝ բացայայտ հակազգային ու հակաօրինական որոշումի մը համար, դատական հայցուոր-դիմողը (ամբաստանողը) կը ներկայացնէ իբրեւ Թուրքերուն սպասարկող վաճառուած անձ:

Եթէ արդար ցուցարարներուն դիմաւորէ մարզուած աւազակախումբ՝ որուն հովանաւորը իր հովանաւորի մտերիմն է, արդարութիւն պահանջողը կը դառնայ աւազակ, ծեծող աւազակախումբը՝ արդարամէտ:

Եթէ մէկը փորձէ քննադատելով բացայայտել իր հովանաւորներէն մէկուն աւազակապետութիւնը, զինք կը հռչակէ միասեռական, նոյնիսկ եթէ ան ամուսնացած ըլլայ:

Եթէ դպրոց փակուի ու ծախուի եւ գումարները երթան իրեն քաջածանօթ ուղղութեամբ, փակումը կը վերագրէ սփիւռքահայու ճակատագրականութեան եւ կ՚ողբայ հայութեան վրայ:

Եթէ գաղութային ընտրութիւններուն ոչ թէ «հակառակորդ» կուսակցութիւնը վաստակելու յաւակնութիւն ունենայ, այլ բոլորովին անկախներ ազդեցիկօրէն մէջտեղ ելած ըլլան, այդ անկախները պետութեան գործակալներ հռչակելով ուրախութեամբ կը վերացնէ ասպարէզէն:

Զինքը հովանաւորող գերմեծահարուստները կը ներկայացնէ իբրեւ մշակութասէր անձնաւորութիւններ, որոնք ծաղկեցուցած են արուեստն ու մշակոյթը:

Իր համակիրներուն կազմակերպած ամենավատ ձեռնարկը կը քննախօսէ իբրեւ աննախադէպ յաջողութիւն եւ կը ծափահարուի մշակոյթէ հասկցող մը ըլլալուն համար: Յետոյ համագումարի մը ընթացքին կ՚արդարացնէ ինքզինքը՝ թէ կուսակցութիւնը «ստիպուած» է իր մարդոց գովել:

Հանդիսաւոր արարողութեամբ ողբացեալ հարազատին անունով կը կոչէ իր տնօրինած հիմնարկի մը մէկ բաժինը՝ անոր կիսակատար գործերուն համար, մինչդեռ որքան սփիւռքահայ ողբացեալներ կան՝ որոնք իրապէս ինքզինքնին նուիրած են լիակատար ծառայութիւններու բայց անցած-գացած առանց յիշատակուելու:

Առանց թատրոն դիտած ըլլալու՝ կը գրէ անոր քննախօսականը:

Առանց նկարչութեան հանդէպ որեւէ հասկացողութիւն ունենալու, կիսատ նկարիչները կը վերածէ առաջնակարգ արուեստագէտներու:

Հակառակ որ գրականութեան իր ըմբռնողականութիւնը կմախքայնացուած Թէքէեանէ եւ Օշականէ մը անդին չէ անցած, կը բաշխէ արդի գրականութեան մրցանակներ:

Յետոյ հակառակորդ կողմը լաւ մը կը ծեծէ զինքը: Կը ծեծէ ոչ թէ վերոյիշեալներուն համար, բնականաբար: Ծեծէն ետք դուրս կու գայ իբրեւ զոհուած հերոս եւ կ՚ընդլայնուի ժողովրդականութիւնը:

Իրապէս, կարելի՞ է վերոյիշեալներն ամբողջութեամբ մարմին ստանան մէկ անձի մէջ:

Կարելի է:

Ինչո՞ւ կարելի է:

Որովհետեւ լռեցինք եւ թիկունք կանգնեցանք անոր՝ յանուն աւանդականութեան:

ԱՐՑԱԽ

## TECH WEEK. ՊԱՏԵՐԱԶՄԻՑ ՅԵՏՈՅ ԱՌԱՋԻՆ ՄԵԾ ՄԻՋՈՑԱՌՈՒՄԸ ԱՐՑԱԽՈՒՄ

Յուլիսի 3-ից 5-ը Ստեփանակերտում անցկացուեց Tech Week Արցախ կոնֆերանսը: Տեղեկատուական տեխնոլոգիաների ոլորտը Արցախում զարգացնելուց բացի սա լաւ հնարաւորութիւն էր Արցախի եւ Հայաստանի երիտասարդների տրամադրութիւնը փոխելու դէպի լաւը: Միջոցառման մասնակիցներին համախմբում էր #եկԱրցախ հեշթեգը:

*Factor.am*






## 1 ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆ ՀԻՒԱՆԴ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

պարագան, վերը բազմած երկու-երեք հոգիին չէ տրուած վճիռներ արձակել ժողովուրդին հանդէպ: Յատկապէս *անոնք* իրաւունք չունին որոշել ժողովուրդի մը ճշդութիւնն ու սխալանքը:

Կարգը կու գայ Հայաստան եւ Պատիւ Ունեմ դաշինքներու խորհրդարանական մուտքին:

Առաջին կարգախօսը՝ ընտրութիւնները կեղծուած են: Իրենց ողջ կեցութեան ընթացքին կեղծուած ընտրութիւններով «յաղթանակած» իշխանաւորութիւնը արդար ընտրութիւնները կը մեղադրէ կեղծարարութեամբ:

Ասիկա ոչ միայն ծիծաղաշարժ է, այլեւ կը հակասէ իրենց իսկ յայտարարութեան՝ թէ ժողովուրդը հիւանդ է: Եթէ ընտրութիւնները կեղծուած են ներկայ իշխանութիւններուն կողմէ, ուրեմն ժողովուրդը առողջ է՝ քանի որ ձայները տուած է Քոչարեանին: Իսկ եթէ ժողովուրդը հիւանդ է եւ ձայները տուած է Փաշինեանին, ուրեմն ընտրութիւնները չեն կեղծուած:

Հայաստանն ու Պատիւը արդիւնքները կը վիճարկեն Սահմանադրական Դատարան: Հակառակ Ժիրայր Թովմասեանի ջանքերուն, հակառակ իր պնդումին որ Դատարանը վկայ հրաւիրէ ամենամեծ չյայտարարուած ընդդիմադիրը՝ երկիրի նախագահը (որ կը մերժուի), վերջնական վճիռը կ՚ըլլայ ոչ ի նպաստ իրենց:

ՄԻԵԴ պիտի դիմենք, կը յայտարարեն:

«Աթոռներէն պիտի հրաժարինք» (՞) սպառնալիքներէն ետք, Յուլիս 20-ի պաշտօնական յայտարարութեամբ կ՚որոշեն ընդունիլ աթոռները ու մտնել Խորհրդարան, «ուրիշ ճար չունինք» նշանաբանին տակ:

Ինչո՞ւ չխորացան ենթադրեալ կեղծարարութեան հարցին մէջ: Որովհետեւ, նախ եւ առաջ, ընթացքին աւելի պիտի բացայայտուէին այն բռնաճնշումները՝ զորս գործադրեցին իրենց ձեռքին տակ գտնուող օլիկարքական հիմնարկներու աշխատողներուն վրայ, որոնց մասին մամուլը բազմիցս անդրադարձաւ (*Ջահակիր*, թիւ 1895):

Մտան խորհրդարան: Մտան իբրեւ քաղաքական ընդդիմութիւն Քաղաքացիական Պայմանագիրի՞ն, թէ ընդդիմութիւն հիւանդ ժողովուրդին՝ որ չընտրեց իրենց:

Մտան՝ իր նախադէպը չունեցող քայլով: Քոչարեան՝ Հայաստան դաշինքի առաջին դէմքը, որուն համար դաշինքը ստացաւ 21.04%, կը հրաժարի պատգամաւորական աթոռէ: Այն դէմքը՝ որ Մարտ 1-ի իւրաքանչիւր դատավարութենէ ետք կը յայտարարէր աշխուժօրէն քաղաքականութիւն մուտք գործելու վճռականութիւնը, չմոռնալով նաեւ իր յայտարարութիւնները ծաղկազարդել մեծաշուինդ բառերով ու խօսքերով:

Փոխարէնը դաշինքի ղեկավար կ՚ընտրուի Սէյրան Օհանեան, այն զինուորականը՝ որ Մարտ 1-ի դէպքերուն կը հանդիսանար Հայաստանի Զինուած Ուժերու գլխաւոր շտաբի պետ եւ Պաշտպանութեան նախարարի առաջին տեղակալ, եւ իբրեւ այդպիսին՝ պատասխանատու է Մարտ 1-ի դէպքերուն համար Ղարաբաղի բանակը Երեւան տեղափոխելու եւ կոտորածին մասնակից դարձնելուն: Այս ծառայութեան համար, 2008 Ապրիլ 14-ին կը նշանակուի Հայաստանի Պաշտպանութեան նախարար:

Հայաստան դաշինքի քարտուղար կ՚ընտրուի Արծուիկ Մինասեան, անձ մը՝ որ կրնայ ամէն պահու գոյնը փոխել:

Ի թիւս այլոց, Պատիւ դաշինքի աչքառու գլուխներէն է Երեւանի նախկին քաղաքապետ Տարօն Մարգարեան: Ինչ որ այսօրուայ քաղաքապետ Հայկ Մարութեան կը կատարէ՝ Մարգարեանի անօրինութիւններուն վերացումն է: Կը վերացուին մեծ քանակութեամբ անօրէն շինութիւններ եւ մեծ ու փոքր կրպակներ՝ որոնք հիմնուած էին կամ կը գործէին Մարգարեանի հովանաւորութեամբ: Երթեւեկութեան նկատելի բարելաւում՝ որ անհասկնալի ստաիճանի հասած էր նախորդին ժամանակ: Եւ այլն, եւ այլն: Այս բոլորը, անշուշտ, մեզի՝ սփիւռքահայերուս, չի հետաքրքրեր: Մեր ի՞նչ գործն է եթէ Երեւանի հիւանդ բնակիչը կ՚երթեւեկէ կամ ոչ:

Աւելի օգտակար է ընդդիմանալ հիւանդ ժողովուրդին:

Ա.

## 3 ՀԱՆՐԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՄԻՆՉԵՒ 2030 ԹՈՒԱԿԱՆԻ ՌԱԶՄԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՓԱԹԵԹԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

եւ վերլուծական նիւթերի էական սահմանափակումների պատճառով տարբեր ուղղութիւններով որդեգրուած ռազմավարական բարեփոխումները կեանքի կոչելու նպատակով առարկայական միջամտութիւններ պլանաւորելու եւ իրագործելու համար նախատեսւում են հետազօտական ու վերլուծական ծաւալուն աշխատանքներ եւ միայն դրանց արդիւնքներով արդէն՝ փաստահենք քաղաքականութեան մշակում:

Հանրային կառավարման բարեփոխումների ռազմավարութեան փաթեթը ներառում է՝

- Հանրային կառավարման բարեփոխումների մինչեւ 2030 թուականի ռազմավարական տեսլականը, որով տրւում են բարեփոխումների ռազմավարական համատեքստը եւ ներկայ վիճակի գնահատումը, բարեփոխումների յարացոյցը, շրջանակը եւ փուլերը.

- Հանրային կառավարման բարեփոխումների 1-ին փուլի՝ 2021-2023 թթ. օրակարգը՝ ներառելով ռազմավարական տիրոյթների մասով բարեփոխումների ուղղութիւնները, նպատակներն ու շրջանակը, վիճակի գնահատումը, ճանապարհային քարտէզն ու արդիւնքային շրջանակը.

- Հանրային կառավարման բարեփոխումների կառավարումը, այդ թւում՝ կառավարման ինստիտուցիոնալացման հարցերը, մոնիտորինգի, հաշուետուողականութեան եւ գնահատման համակարգը, ռիսկերի մատրիցան եւ դրանց հասցէագրման միջոցները, հանրային հաղորդակցութեան եւ իրազեկման հարցերը:

Հանրային կառավարման համապարփակ բարեփոխումները Հայաստանի կառավարման կարգի, պետութիւն-հանրութիւն փոխյարաբերութիւնների սահմանադրական եւ արժէքային հիմքերի ձեւաւորման ու արդիականացման, ազգային անվտանգութեան ու զարգացման օրակարգերի մշակման ու արդիւնաւէտ իրագործման երաշխիքն են եւ որպէս այդպիսին՝ առաջնահերթութիւն են Կառավարութեան համար՝ անկախ քաղաքական կոնիւկտուրայից:

Հանրային կառավարման բարեփոխումների համար ուղենշային են երկրի զարգացման ռազմավարական օրակարգը, Հայաստանի 2020-2050 վերափոխման ռազմավարութիւնը, ՄԱԿ Կայուն Զարգացման նպատակների, Եւրոպական Միութեան հետ համապարփակ եւ ընդլայնուած գործընկերութեան համաձայնագրով, երկրի կողմից գլոբալ եւ միջազգային առնչուող օրակարգերի շրջանակներում ստանձնած յանձնառութիւնները: Նշուածների մասով վերաբերելի եւ ընդունելի նպատակադրումներն ու թիրախները հաշուի են առնուելու ՀԿԲ բարեփոխումների իրականացման շրջանակներում:

## 2 ՆԱԽԿԻՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

«Անցեալ գիշեր, Ուիլմինկթոն Սէմֆոնի Նուագախումբը եւ իր փայլուն այցելու ջութակահար Ժիրայր Գանթարճեանը միաւորուեցան Խաչատրեանի յուզախռով Քոնչերթոյի ներշնչեալ կատարումի մը մէջ:

«Շուրջ 800 ներկաները՝ որոնք թողելով իրենց ձիւնապատ տուները եւ տաք վառարանները, եկած էին լսելու Սալեսիանում Դպրոցին մէջ կայացած նուագախումբի նուագահանդէսը, վարձատրուեցան գեղեցկապէս մարմին առած երկու ժամ տեւողութեամբ յիշարժան երաժշտութեամբ:

«Անցեալ գիշերուայ ողջ ցուցադրութիւնը ռոմանթիքականութիւնն էր: Սկսելով Սիպելիուսի *Քարելիա նուագաշարով*, որ ներկայացուեցաւ բիւրեղային յստակութեամբ եւ գրեթէ նոյնքան պաղ եւ կտրուկ սահմանումով որքան ֆինլանտացի երաժշտահանին սպիտակ ձմեռուայ բնապատկերները, նուագավար Վան Լիր Լաննինկ իր ուժերը փորձեց Խաչատրեանի ջութակի եւ նուագախումբի Քոնչերթոյին ընդմէջէն, եւ, դադարէն ետք, Պերլիոզի երկար եւ մեղեդիական *Ֆանթաստիք Սէմֆոնիին*:

«Առաջին քլարինէթահար Սթուտտարտ Կրէյ կատարեց հակիրճ բայց սիրուն մենանուագային անցքը *Քարելիա նուագաշարի* Պալլատ շարժումին մէջ:

«Խաչատրեանի ջութակի Քոնչերթոն բազմաթիւ պահանջներ կը դնէ մենակատար ջութակահարին առջեւ, ներառեալ առանց նուագակցութեան ընդարձակ անցքեր, բայց Ժիրայր Գանթարճեան աւելի քան ընդունակ էր առնչուիլ անոնց հետ»:

(‘800 at Concert of City Symphony,’ *The Morning News,* Wilmington, 8 February 1961, p. 7)

* * *

Նոյն նուագահանդէս:

«Սալեսիանում լսարանին մէջ, անցեալ գիշերուայ երկրորդ բաժանորդագրային նուագահանդէսին, Ուիլմինկթոն Սէմֆոնի Նուագախումբը՝ ղեկավարութեամբ Վան Լիր Լաննինկի, նուագեց ականաւոր յայտագիր մը:

«Մենակատարն էր մեծապէս օժտուած երիտասարդ Ժիրայր Գանթարճեանը, որ նուագեց Արամ Խաչատրեանի ջութակի եւ նուագախումբի Քոնչերթոն: Միւս գործերն էին Սիպելիուսի *Քարելիա նուագաշարը* եւ Պերլիոզի *Ֆանթասթիք Սէմֆոնին*:

«Պր. Գանթարճեանի հնչիւնը, թէեւ ոչ վիթխարի, լաւ պտուտաւորուած (well-rounded) է եւ ունի գրաւիչ փայլք ու թաւշային գեղեցկութիւն: Իր թեքնիքը, ոճը եւ գեղարուեստականութիւնը ընտրելագոյնն են: Խաչատրեանի Քոնչերթոյին մասին բաւարար չափով խօսուած է: Վիրթիւոզական ցուցադրական գործ մըն է՝ իր լաւագոյն իմաստով, եւ նուիրուած է մեծ ռուս ջութակահար Տաւիտ Օյսթրախին:

«Քարնաւալային կորովով եւ կենսուրախութեամբ, ան յագեցած է կշռութային եւ հարմոնիք օգտագործումներու դառնախիստ ընտրութեամբ, զորս կ՚արժէ լսել, որքան որ անոնց կատարումը դժուար ըլլայ յաճախ: Իր տոգորիչ, միջին արեւելեան մեղեդիական գիծերը, յատկապէս տխրատանջ դանդաղ շարժումը՝ զոր այնքան յիշարժանօրէն նուագեց Պր. Գանթարճեան, գործին կու տան տարաշխարհիկ անմիջականութիւն, ինչպէս նաեւ ուղղակի թովչանք:

«Նուագախումբի մասի կնճռոտութիւնները յաղթահարուեցան յաջող կերպով, հակառակ որոշ քանի մը կողմնակի անցքերու ջղագրգիռ պահերուն: Մենակատար ջութակահարին արտակարգօրէն ոլորուն դասութաւորումը (phrasing) եւ տինամիք նրբերանգները միշտ չէ որ կը համընկնէին իրարու, իսկ սակաւաթիւ պարագաներու գերհաւասարակշռուած էր ստորին լարային նուագակցութիւնը: Բայց եւ այնպէս, նկատելի էին ամբողջական գործին ձեւն ու արտաձգութիւնը: Այս դժուար գործին ընտիր կատարումով, Պր. Լաննինկ եւ նուագախումբը ինքզինքնուն համար սահմանեցին նոր բարձր մակարդակ մը»:

(David B. Kozinski, ‘City Symphony at Best at Berlioz, Audience not,’ *The News Journal,* Wilmington, 8 February 1961, p. 27)

(Վերջ 6)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1897 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՕԳՈՍՏՈՍ 2021 | *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* | عدد رقم ١٨٩٧ الخميس ١٢ أغسطس ٢٠٢١


## Ո՞Վ ՊԱՐՏՈՒԵՑԱՒ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ՝ ՀԱՅԱՍՏԱ՞ՆԸ ԹԷ ԱՐՑԱԽԸ

**ԳԵՂԱՄ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆ**

*ՍիվիլՆէթ*ի «Արցախի դիտանկիւն» շաբաթական հաղորդաշարին մէջ, Գեղամ Բաղդասարեան կ՚ամփոփէ Արցախի մէջ եւ Արցախի մասին տեղի ունեցող իրադարձութիւնները։ Չորրորդ թիւին ընթացքին (26 Յուլիս) կը վերլուծէ հայկական երկու պետութիւններուն երկիմաստ յարաբերութիւնները եւ առկայ իրաւական խառնաշփոթը։

Իր կարեւորութեան համար, *Ջահակիր* գրառեց հաղորդումը նոյնութեամբ եւ ամբողջութեամբ՝ զայն վերածելով արեւմտահայերէնի։

* * *

Արցախի մէջ եւ Արցախի շուրջ նախորդ շաբաթները տեղի ունեցածներէն ուշադրութիւնս յատկապէս գրաւեց լրագրող Պետրոս Ղազարեանի հարցազրոյցը Հայաստանի Պաշտպանութեան նախկին փոխնախարար Գագիկ Մելքոնեանի հետ։

Ի դէպ, վերջերս կայացած խորհրդարանական ընտրութիւններուն, Պր. Մելքոնեան Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութեան ընտրական ցուցակի 16-րդ թիւն էր։

Հարցազրոյցին մէջ նախկին զինուորականը այնպիսի պնդում մը կ՚ընէ՝ որ ըստ ամենայնի հասկնալի է։ Այն է՝ նպաստել 44-օրեայ պատերազմէն ետք Հայաստանի ու անոր ղեկավարութեան պատիւը փրկելու։ Սակայն այս հասկնալի նպատակին հասնելու համար ընտրուած միջոցը այնքան ալ հասկնալի չէ, եւ մեղմ ըսելու համար՝ ազնիւ չէ։

Սակայն իմ լրագրողական եւ քաղաքական նախապատուութիւններուս մէջ կարեւորը ոչ այնքան անձերն են՝ ճշգրիտ քաղաքական գործիչները, որքան երեւոյթներն ու անոնց պատճառահետեւանքային կապերը։ Ասոնց մասին է որ պիտի անդրադառնամ։ Բայց նախ եւ առաջ լսենք նախկին փոխնախարարին.

«[Գագիկ Մելքոնեան] - Մենք Հայաստանէն որեւէ տարածք չենք տուած, մենք կորսնցուցած ենք Արցախի մէկ հատուածը ու ասիկա ոչ թէ Հայաստանը այլ Արցախը կորսնցուցած է։ Մեր զօրքերը օգնեցին պատերազմի ժամանակ ու պարտուեցան»։

Նախկին փոխնախարարին պարզապէս յիշեցնեմ՝ որ 2000-ականներու առաջին տարիներէն սկսեալ, Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութեան եւ Արցախի Պաշտպանութեան Բանակի յարաբերութիւնները սկզբունքօրէն փոխուեցան՝ տեղափոխուելով իրաւենթակարգային բոլորովին նոր հարթութիւն։ Ասոր մասին հասկնալի պատճառներով չեմ ուզեր խօսիլ, բայց ոչ այնքան իրազեկ ունկնդիրին համար պարզապէս լուսաբանեմ՝ որ պատասխանատուութեան ամբողջ բեռը կրելու համար Արցախի ՊԲ-ն ինքնուրոյնութեան բաւարար աղբիւրներ չունէր, չունէր իրաւական բաւարար աղբիւրներ, իսկ Արցախի ղեկավարութիւնը փաստացի չունէր քաղաքական ինքնուրոյնութիւն։ Թէ ինչո՞ւ՝ ուրիշ նիւթ է։

Անցնիմ առաջ, քանի որ ինծի առաւել կը հետաքրքրէ երկու հայկական պետութիւններու յարաբերութիւններուն թեման։ Ի վերջոյ, ամէն բան ածանցեալ է այդ յարաբերութիւններէն, այն իրաւական գիտակցուած խառնաշփոթութենէն՝ որ ի վերջոյ կերաւ մեր ապագան։

Հարցը այն է, որ զուգահեռաբար հաշտ ու խաղաղ կը շարունակէին գործել ու օգտագործուիլ թէ՛ Արցախի անկախութիւնը հաւաստող փաստաթուղթերը եւ թէ՛ Արցախը իբրեւ Հայաստանի մաս ընդունող իրաւական գործերը։ Անոնք զարմանալիօրէն զիրար չէին խանգարեր, այլեւ չէին խանգարեր Արցախի ու Հայաստանի իշխանութիւնները։

Գեղամ Բաղդասարեան

Աւելին. կ՚օգնէին այս իրաւական երկիմաստութիւնը դարձնել իսկական ծուղակ՝ որուն մէջ յայտնուեցան մեր երկիրն ու ժողովուրդը։

Ծուղակի էութիւնը հետեւեալն էր.

Երբ Արցախին պէտք ըլլար, օրինակ՝ պետական պաշտօնեաներու աշխատավարձքի բարձրացումին հարցը լուծել, անոր իշխանութիւնները կ՚ըսէին՝ դէմ ենք, Հայաստանի հետ նոյն դաշտի վրայ կը գտնուինք, մենք փաստացի Հայաստանի մէկ մասն ենք։ Եւ հարցը կը լուծէին ճիշդ այդ տրամաբանութեամբ։ Երբ Արցախին պէտք չէր ըլլար Հայաստանի այս կամ այն իրողութիւնը պատճէնել, իշխանութիւնները կ՚ըսէին՝ մենք առանձին, անկախ պետութիւն ենք եւ պէտք է հաշուի առնենք տեղական առանձնայատկութիւնները։ Ուղղակի հովուերգական իրավիճակ, ցանկացած հարց սեփական օգուտին համար լուծելու համար։

Նոյնը կ՚ընէին նաեւ Հայաստանի իշխանութիւնները։ Երբ պէտք կ՚ըլլար գլուխնին ազատել հարցէ մը, կ՚ըսէին՝ Արցախը անկախ պետութիւն է։ Երբ պէտք կ՚ըլլար փաստացի վերահսկողութիւն հաստատել, կ՚ըսէին՝ Արցախը Հայաստան է ու վերջ։

2015 Յունուարին, Բերձորի մէջ, Հայաստանի քաղաքական ուժերէն մէկուն կազմակերպած ինքնաշարժներու երթի ներկայացուցիչներուն ջարդը ճիշդ այս երկիմաստ ու երկերեսանի յարաբերութիւններու արդիւնք էր նաեւ։

Երկու իշխանութիւններուն կը թուէր՝ թէ իրենք ծուղակի մէջ կը դնեն նաեւ միջազգային հանրութիւնը։ Սակայն ցաւօք ասիկա այն դէպքն էր՝ երբ փորձած ես խաբել մէկուն, որ քեզի նման հարիւրաւորներու կը տանի աղբիւրի մօտ եւ ծարաւ ետ կը բերէ։ Իրականութեան մէջ, Հայաստանի եւ Արցախի իշխանութիւններ ծուղակի մէջ նետած էին իրենց սեփական պետութիւնն ու ժողովուրդը։ Վերջին զարգացումները ճիշդ ասոր ապացոյցներն են։ Նաեւ ապացոյցներ են այն բանի՝ որ տեղական ներքին աչքաբացութիւնները չեն անցնիր միջազգային ասպարէզին մէջ։ Այնտեղ բոլորովին այլ քաղաքական եւ քաղաքակրթական իրողութիւն է։

Ասոր մասին շատեր տարիներ շարու-

⇘ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԸ ՆՇԱՆԱԿՈՒԵՑ ՎԱՐՉԱՊԵՏ

Նախագահ Արմէն Սարգսեանի Օգոստոսի 2-ի հրամանագրով՝ Նիկոլ Փաշինեանը նշանակուեց վարչապետ։



Հրամանագրի տեքստը տեղադրուած է նախագահի պաշտօնական կայքէջում։

Ըստ Սահմանադրութեան 149-րդ յօդուածի 1-ին մասի՝ «Հանրապետութեան նախագահը նորընտիր Ազգային Ժողովի լիազօրութիւնների ժամկէտն սկսուելուց յետոյ անյապաղ վարչապետ է նշանակում Սահմանադրութեան 89-րդ յօդուածով սահմանուած կարգով ձեւաւորուած խորհրդարանական մեծամասնութեան ներկայացրած թեկնածուին»։

Նիկոլ Փաշինեանը վարչապետի պաշտօնակատարն էր 2020-ի Ապրիլի 25-ից, երբ Յունիսի 20-ի արտահերթ խորհրդարանական ընտրութիւնների նպատակով հրաժարական տուեց։

## ՊԱՏՐԱՍՏԱԿԱՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԵԼՈՒ ԲՈԼՈՐ ՈԼՈՐՏՆԵՐՈՒՄ՝ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ. ՍԴՀԿ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ՝ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ



Վարչապետ Նիկոլ Փաշինեան, Համբիկ Սարաֆեան, եւ Սեդրակ Աճէմեան։

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Օգոստոսի 10-ին ընդունել է Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան ներկայացուցիչներին՝ Կենտրոնական վարչութեան ատենապետ Համբիկ Սարաֆեանին, Կենտրոնական վարչութեան անդամ Խաչիկ Քէշիշեանին եւ Հայաստանի վարչութեան ատենապետ Սեդրակ Աճէմեանին։

Ողջունելով ՍԴՀԿ ներկայացուցիչներին՝ վարչապետ Փաշինեանը նշել է.

«Յարգելի պարոնայք,

Ողջունում եմ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան պատուիրակութեանը եւ շատ ուրախ եմ այս առիթի համար։ Մենք միշտ կապի մէջ ենք եղել կուսակցութեան հետ՝ ե՛ւ կենտրոնական մարմնի, ե՛ւ հայաստանեան մարմնի։ Ուրախ եմ արձանագրել, որ կուսակցութիւնը՝ նաեւ հայաստանեան կազմակերպութիւնը մասնակցում է արտախորհրդարանական ուժերի նոր ձեւաւորուած ֆորմատին, որտեղ մենք արդէն երկու հանդիպում ենք ունեցել։ Նաեւ փորձում ենք այնպէս անել, որ որոշումներ ընդունենք եւ կոնկրէտ քայլերով առաջ շարժուենք։ Իհարկէ, այս համագործակցութիւնը եւ երկխօսութիւնը շատ կարեւոր է մեզ համար՝ հաշուի առնելով կուսակցութեան շատ կարեւոր եւ բացառիկ դերը Սփիւռքի մեր համայնքներում, ներգրաւուածութիւնը եւ ներդրումն

⇘ 4

# ՇԱՀԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ ԿԸ ՁԱՅՆԱԳՐԷ ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ԱՆՏԻՊ ԳՈՐԾԵՐԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

Հայկական արդի երաժշտագիտական խօսոյթին մէջ անտիպ գործերու պատումը աւելի ուժեղ է՝ քան այդ նոյն անտիպներուն վերաճումը ոչ-անտիպներու:

Կարծէք հաճոյք կայ անտիպը տեսնելու ընդմիշտ անտիպ, անոր շուրջ կատարելով կորուստի գրեթէ սովորական դարձած ողբասացութիւն:

Ալան Յովհաննէսի մեծ մասամբ ձեռագիր ու անտիպ գործերու ձայնագրութիւնը՝ զոր կը ներկայացնէ յայտնի դաշնակահար Շահան Արծրունի (խտասալիկ, Kalan 773, 2019), հերքումն է այս առասպելանման խօսոյթին:

Արծրունի կատարած է քննական աշխատանք ձեռագիրները վերականգնելու, դասակարգելու եւ կատարումի պատրաստ դարձնելու համար, բախելով ձեռագրական աշխարհի հաճելի երկմտութիւններուն, անորոշութիւններուն, բազմիմաստութիւններուն:

Բնականաբար, դարձած է ձեռագիրներէն երեքին՝ *Սոնաթ Հաղբատ*, *Լէյոնա* եւ *Ուղեւորութիւն դէպի արշալոյս*, աշխարհի առաջնեկ (world premiere) ձայնագրողը: Իսկ *Կախարդական սրինգին* ցարդ գոյութիւն ունեցող ձայնագրութիւնը հիմնուած է 1962-ի հրատարակութեան վրայ (C. F. Peters), մինչ Արծրունի այստեղ առաջին անգամ կը ներկայացնէ 1941-ի տպագրութիւնը (Whitney Blake)՝ որ բաւական տարբեր է միւսէն:

Արծրունի առաջին անգամ չէ որ ձայնագրած է աշխարհի առաջնեկութիւններ:

1979-1980-ին ձայնագրած *An Anthology of Armenian Piano Music* (Musical Heritage Society – MHS 4080, 4110, 4229) երեք սկաւառակներու յատկապէս առաջին երկուքին մէջ կարելի է գտնել բազմաթիւ առաջնեկութիւններ, օրինակ՝ Քարոլ Միքուլիի *Էթիւտն* ու *Լիտը*, Գենարիոս Ղորղանեանի *Պայաթին*, Ստեփան Էլմասի *Նոքթիւրնը*, Ստեփան Բաբէլեանի *La Fin d'un rêve*-ը, Օննիկ Պէրպէրեանի *Փրելիւտը*, Տիգրան Զուհաճեանի *Էմփրոմթիւն*, Լորիս Ճգնաւորեանի *Հայկական պար* թիւ 2-ը, Սիրվարդ Գարամանուկի *Admiration*-ը, Գոհարիկ Ղազարոսեանի *Փրելիւտ* մը, իր սեփական գործերը, եւ այլն:

Գոհարիկ Ղազարոսեանի խտասալիկին մէջ (REF – 309 KA) հանդէս կու գայ չորս *Էթիւտ*ներով, չորս *Փրելիւտ*ներով եւ Նուագաշարի մէկ մասով:

2015-ի *Ընծայում* խտասալիկը՝ նուիրուած վաղ շրջանի հայ երաժշտահաններուն (Kalan Müzik), կը բովանդակէ առաջնեկութիւններ, օրինակ՝ Յակոբ Ասատուրի *Լէպլէպիճի քատրիլը*՝ Զուհաճեանի թեմաներով, Զուհաճեանի երկու Ֆիւկերը, Յարութիւն Սինանեան, Էտկար Մանաս, Գենարիոս Ղորղանեան եւ ուրիշներ:

Ասիկա հեռու է Արծրունիի ձայնագրած առաջնեկութիւններու ամբողջական ցանկը ըլլալէ, բայց պարզապէս գաղափար մը կու տայ դաշնակահարի մղումին:

Ալան Յովհաննէսի գործերուն նուիրուած ներկայ խտասալիկին համար Արծրունի անձամբ գրած է ուղեկցող գրքոյկը, ուր մանրամասն տեղեկութիւններ տուած ձեռագիրներուն եւ գործերուն հանգամանքներուն մասին:

**Ձեռագիր գործեր**

*Invocations to Vahakn* (Աղերս առ Վահագն), թիւ 1-5, հարուածային զանազան նուագարաններու ուղեկցութեամբ: Արծրունիի մեկնաբանութեան մէջ կարելի է գտնել խիզախ ու բոցեղէն հնչականութիւնն ու չեշտադրուած կշռութաւորութիւնը մինչեւ խորոխտ ու վսեմ նկարագրողական պատումը: Հարուածահար՝ Ատամ Ռոզենպլաթ:

*Yenovk*-ը (Ենովք) բաղկացած է վեց շարժումներէ՝ «Fantasy», «Canzona», «Jhala», «Canzona», «Ballata» եւ «Fugue»: Համաձայն գրքոյկին, խորագիրը կապուած է Ենովք Տէր Յակոբեանի անունին հետ, որ Յովհաննէսին ծանօթացուցած է հայկական ժողովրդական երաժշտութիւնը: Երաժշտահանը մեծապէս ազդուած է Տէր Յակոբեանի երգեցողութենէն:



Շահան Արծրունի (աջին) եւ Ալան Յովհաննէս (ձախին), Նիւ Եորք, 1987

Հայկական երաժշտութեան շարք մըն է, որուն խորագիրներէն մէկը հնդկական երաժշտութեան եղրոյթ մըն է՝ Jhala, *չիքարի* ձայնանիշերու վարպետօրէն վերարտադրուած երկշերտութեամբ. կաթիլ մը Յովհաննէսի հանճարեղ բազմամտածողութենէն:

Արծրունիի նուագը հարթ է եւ ողորկ, բազմաձայն գիծերու յստակադոյն վերարտադրութեամբ:

*Lalezar*-ի (Լալեզար) առաջին շարժումը՝ «Fantasy», կը նուագուի մեղաղեայ նրբութեամբ:

*Suite on Greek Tunes* (Շարանուադ յունական մեղեդիներով), բաղկացած երեք շարժումներէ՝ «Wedding Song», «Grapeyard Song» եւ «Dance in Seven Tala», կը հրամցուի սերտ հպումով եւ խորագոյն երգայնութեամբ:

*Journey into Dawn* (Ուղեւորութիւն դէպի արշալոյս), հինգ շարժումներէ՝ «Hymn», «Fugue», «Jhala», «Aria» եւ «Alleluia», գոյներու տարուբերումով:

*Laona* (Լէյոնա)՝ աքորներու եթերանման շարասիւնով:

*Vijag* (Վիճակ)՝ փայլուն ինքնավստահութեամբ: Յօրինուած է երկու դաշնակի համար: Երկուքին դաշնակահարն ալ Արծրունին է՝ շնորհիւ թեքնոլոճիի:

Sonata *Haghpat* (Հաղբատ Սոնաթ), ութ շարժումներէ՝ «Canzona», «Fantasy», «Jhala (ռէ հնչիւն)», «Pastoral (սոլ հնչիւն)», «Jhala (սոլ հնչիւն)», «Jhala (ԱԶ – հայկական ձայնեղանակ)», «Aria and Carnzona (մի հնչիւն)» եւ «Jhala (լա հնչիւն)», հարուածայիններու ուղեկցութեամբ: Հարուածահար՝ Ատամ Ռոզենպլաթ: Կատարողական ներկապնակի բազմադիմի գունաւորում՝ բարեկիրթ բարեհնչիւն ներկայացուցչականութենէն մինչեւ սանձարձակ տարահնչիւն չփոթմունք, թեթեւ ու խաղաղ ծփանքէն մինչեւ սուր կշռութաւորութիւն, հնչիւնային խոնարհումներ՝ յստակութեան պահպանութեամբ: Խտասալիկի արժանաւոր բարձրակէտային աւարտը:

**Տպագիր գործեր**

*Mystic Flute*-ը (Կախարդական սրինգ) կը կատարէ ոլորապտոյտ դայլայլանքով:

Երեք շարժումներէ բաղկացած *Lake of Van Sonata*-ն (Վանայ Լիճի Սոնաթ) հրատարակուած է Peters-ի կողմէ: Ներկայ ձայնագրութեան համար դաշնակահարը համառօտագրած է առաջին մասը՝ հեղինակին արտօնութիւնը ստանալէն ետք:

Կրկնողական ձայներու աներեր տիրապետութիւնը Սոնաթի ողջ հիւսուածքին մէջ՝ որ կրնայ ըլլալ լիճի ջրային հոսքի պատկերումը եւ որուն շուրջ կը բարձրանան տրամադրութիւնները, թեքնիքական հրաւիրատոմս մըն է դաշնակահարին համար: Արծրունին կարելի է ընդունիլ իբրեւ մատներու կրկնողական ձայնանիշերու վարպետ մը:

Շահան Արծրունի այս բոլորը կատարած է սիրով: Փոխանցուող հաճոյք մը կայ իր նուագին մէջ:

Շնորհաւորելի է նաեւ Kalan Müzik թրքական ընկերութիւնը, որ այստեղ եւ այլուր ստանձնած է ոչ-հիմնահոսանքային նուագացանկի ձայնագրութեան նախաձեռնութիւնը:

Ձայնագրութիւնը իրականացած է Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկի մասնակի օժանդակութեամբ:

---

**ՎԵՆԵՏԻԿ**

## ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ



Օգոստոս 2-17-ին, Վենետիկի Studium Generale Marcanium Հաստատութեան գլխաւոր շէնքին մէջ տեղի կ'ունենայ Վենետիկի Պո-Արաքս Մշակութային Ընկերակցութեան հայ լեզուի եւ մշակոյթի ամառնային խտացեալ դասընթացքը:

Դասընթացքը ունի չորս մակարդակ՝ բացարձակ սկսնակներէ մինչեւ յառաջադէմներ:

Յիշեցնենք, որ Պո-Արաքսի հիմնադիրն ու նախագահն է յայտնի հայագէտ ու փիլիսոփայ՝ Արհիապատիւ Հայր Լեւոն Զէքիեան:

---

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԼԻԼԻԹ ՄԱԿՈՒՆՑԸ ՆՇԱՆԱԿՈՒԵԼ Է ԱՄՆ-ՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ



Նախագահ Արմէն Սարգսեանը Օգոստոսի 2-ին հրամանագիր է ստորագրել Իմ Քայլը խմբակցութիւնը 2.5 տարի ղեկավարած Լիլիթ Մակունցին ԱՄՆ-ում Հայաստանի արտակարգ եւ լիազօր դեսպան նշանակելու մասին, յայտնում է նախագահի աշխատակազմը:

«Հիմք ընդունելով վարչապետի առաջարկութիւնը՝ համաձայն Սահմանադրութեան 132-րդ յօդուածի 1-ին մասի 2-րդ կէտի Լիլիթ Մակունցին նշանակել Ամերիկայի Միացեալ Նահանգներում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան՝ չորս տարի ժամկէտով (Նստավայրը՝ Վաշինգտոն)», - մասնաւորապէս ասուած է հրամանագրում:

---

## ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԽՆԴԻՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԴԻՍԿՈՒՐՍՈՒՄ

*Ղարաբաղեան խնդիրը հայաստանեան պաշտօնական դիսկուրսում ուսումնասիրութիւնը մաս է կազմում Պետական գործիչների կողմից ներկայացուող հաւաքական յիշողութեան բովանդակութիւնը* հետազօտական նախագծի, որն իրականացուել է Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հասարակական կազմակերպութեան կողմից:

Հետազօտական նախագծի այս հատուածում ուշադրութեան կենտրոնում են յայտնուել Հայաստանի երեք նախագահների՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի, Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի դիրքորոշումներն ու ելոյթները Ղարաբաղեան խնդրի առնչութեամբ:

Թէեւ ժամանակագրական առումով կոնֆլիկտի վերաբերեալ պաշտօնական դիսկուրսի պատմութիւնը բաժանւում է ըստ Տէր-Պետրոսեանի, Քոչարեանի եւ Սարգսեանի պաշտօնավարութեան, համապատասխանաբար, 1991-1998, 1998-2008, 2008-2018 թուականների, սակայն հարցի լուծման առնչութեամբ բովանդակային առումով երկու մօտեցում է եղել հայաստանեան պաշտօնական շրջանակներում, մասնաւորապէս՝ 1991-1998 թուականների՝ հարցի լուծման տէր-պետրոսեանական տարբերակը, որը յայտնի է իբրեւ հարցի լուծման փուլային մօտեցում, եւ 1998-2018 թուականների քոչարեան-սարգսեանական մօտեցումը, որը ենթադրում էր կոնֆլիկտի փաթեթային լուծում:

Նախագծի այս հատուածում, ի դէպ, մանրամասն անդրադարձ է կատարւում Արցախեան հարցի կարգաւորման փուլային եւ փաթեթային տարբերակների շուրջ դիսկուրսին, ինչպէս նաեւ առանձին գլխով ներկայացւում է բանակցային գործընթացում արցախեան կողմի մասնակցութեան խնդիրը:

Ինչպէս նշում է ուսումնասիրութեան հեղինակը, Ղարաբաղեան հակամարտութիւնն աւելի շատ սակրալացուած, քան տրամաբանուած եւ իրատեսական ընկալում ունի, ինչը հիմք է հանդիսացել հիմնախնդիրը քաղաքական շահարկումների եւ

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՆԴՐԱՆԻԿ ՔՈՉԱՐԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ Է ՄՈՍԿՈՒԱՅՈՒՄ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՊՆ-Ի ՏԱՐԱԾԱԾ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆԸ

ԵՐԵՒԱՆ, 9 ՕԳՈՍՏՈՍԻ, ԱՐՄԵՆՊՐԷՍ: Մոսկուայում Հայաստանի եւ Ռուսաստանի պաշտպանական գերատեսչութիւնները քննարկել են հայ-ադրբէջանական սահմանին հնարաւոր զարգացումների կանխումը:

Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*, այս մասին ասաց Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեան պատգամաւոր, Ազգային Ժողովի պաշտպանութեան եւ անվտանգութեան հարցերի մշտական յանձնաժողովի նախագահի թեկնածու Անդրանիկ Քոչարեանը:

Անդրանիկ Քոչարեանը պատասխանեց Հայաստան խմբակցութեան պատգամաւոր Աննա Գրիգորեանի հարցին, ով, յղում անելով հայ-ադրբէջանական սահմանին լարուածութեան վերաբերեալ Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութեան Յուլիսի 28-ի յայտարարութեանը, որում խօսք էր գնում Մոսկուայում նախատեսուող բանակցութիւնների մասին, հարցրեց, թէ ի՞նչ մակարդակներով հանդիպում է նախատեսուած եղել եւ ի՞նչ էր դրուած բանակցութիւնների սեղանին, որի վերաբերեալ հաղորդագրութիւն էր տարածել Պաշտպանութեան Նախարարութիւնը:

«Այս պահի դրութեամբ ո՞ւր են հասել, մեր եւ Ռուսաստանի Զինուած Ուժերի միջեւ ի՞նչ պայմանաւորուածութիւններ են հաստատուել, ես կը դժուարանամ ասել: Բայց դա ի վնաս Հայաստանի Հանրապետութեան երբեք չի կարող լինել: Ամէն ինչ կախուած է այդ զարգացումների մէջ մենք մեր կորցրած հնարաւորութիւններն ինչքան արագ կարող ենք վերականգնել՝ զինուած ուժերի մասով», - ասաց Քոչարեանը:

Պատգամաւորը յաւելեց, որ Ռուսաստանում քննարկւում են Հայաստանի սահմանների հետ կապուած խնդիրներ, որին, պարզ է, մասնակցում է նաեւ հակառակորդ կողմից որեւէ զինուորական պաշտօնեայ:

«Ոչ ոք Ազգային Ժողովի յետեւում որեւէ բանակցային գործընթաց չի կարող տանել, վերջին հաշուով այդ ամէնը քննարկուելու է նաեւ Ազգային Ժողովում, եթէ դրա կարիքը լինի», - նշեց նա:

*Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը Յուլիսի 28-ին յայտարարութիւն էր տարածել, որում նշւում էր, որ Ադրբէջանը, Ռուսաստանի մայրաքաղաք Մոսկուայում նախատեսուող բանակցութիւններից առաջ, նախայարձակ մարտական գործողութիւններ է սկսել Հայաստանի սահմանների վրայ՝ Սոթքից մինչեւ Վերին Շորժա հատուածում:*

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԱՊԻՏՈՒԼԵԱՑԻԱՅԻ ՉԻ ԵՆԹԱՐԿՈՒԵԼ, ՉԻ ՅԱՆՁՆՈՒԵԼ. ՌՈՒԲԷՆ ՌՈՒԲԻՆԵԱՆ

Հայաստանը կապիտուլեացիայի չի ենթարկուել, չի յանձնուել, Ազգային Ժողովի Օգոստոսի 9-ի նիստում իր ելոյթում ասաց խորհրդարանի փոխխօսնակ Ռուբէն Ռուբինեանը:

«Այս ամբիոնից արդէն որերորդ անգամ հնչում է «կապիտուլեացիա» բառը: Ինձ համար շատ զարմանալի է այս բառի կիրառումը: Ես կ՚ուզէի պարզաբանենք, որովհետեւ կարծում եմ, որ «կապիտուլեացիա» բառը սխալ տերմին է, երբ նկարագրւում է 44-օրեայ պատերազմի աւարտը կամ Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութիւնը: «Կապիտուլեացիա» տերմինն ըստ էութեան նշանակում է անձնատուր լինել կամ յանձնուել: Այն կարող է ենթադրել տարբեր բաներ, օրինակ՝ բոլոր տեսակի զինուած ուժերի յանձնումից թշնամուն մինչեւ պետութեան գոյութեան դադարեցում, պետութեան օկուպացիա: Համաձայնէք, որ Հայաստանի հետ դա տեղի չի ունեցել: Հայաստանը 44-օրեայ պատերազմի աւարտին չի յանձնուել, Արցախը չի յանձնուել, անձնատուր չի եղել, Հայաստանի Զինուած Ուժերը կամ Արցախի Պաշտպանութեան Բանակը չեն դադարել գոյութիւն ունենալուց, չեն յանձնուել թշնամուն, կապիտուլեացիա տեղի չի ունեցել: Տեղի է ունեցել պարտութիւն եւ այդ պարտութեան աչքերի մէջ պէտք է նայել, պէտք է առերեսուել այն փաստի հետ, որ մենք ունեցել ենք հսկայական մարդկային ու տարածքային զոհեր: Բայց սա չի նշանակում, որ մենք ինքներս պէտք է նսեմացնենք մեր պետութիւնը, որովհետեւ եթէ ասում ենք, որ տեղի է ունեցել կապիտուլեացիա, դա նշանակում է, որ Հայաստանը յանձնուել է», - ասաց Ռուբէն

↳ 4

## ԱՆՀԱՏՆ ԻՐ ՓՈՔՐԻԿ ՇՐՋԱՊԱՏԻ ՎՐԱՅ ՊԷՏՔ Է ԱԶԴԻ, ՈՐՊԷՍԶԻ ԱՏԵԼՈՒԹԵԱՆ ԽՕՍՔ ՉՏԱՐԱԾՈՒԻ. ԳԷՈՐԳ ՏԷՐ-ԳԱԲՐԻԷԼԵԱՆ

ԱՆՆԱ ԲԱԲԱՋԱՆԵԱՆ

«Աշխարհում ծաղկում է դաւադրապաշտութիւնը, Հայաստանում վիճակն աւելի բարդ է պատերազմի պատճառով: Պատճառահետեւանքային կապերի վերլուծումը, նպատակաբանութիւնը, համակարգային մտածողութիւնը օգտագործւում են դաւադրապաշտութիւնը զարգացնելու համար», - նման տեսակէտ է յայտնում արձակագիր, Եւրասիա Համագործակցութիւն Հիմնադրամի տնօրէն Գէորգ Տէր-Գաբրիէլեանը *Factor TV*-ի հետ զրոյցում: Նա անդրադառնում է նաեւ մեր հանրութեան շրջանում ատելութեան խօսքի տարածմանը՝ նկատելով, որ մարդիկ, ինչպէս ամբողջ աշխարհում, մեզ մօտ եւս չունեն վարքականոններ համացանցում. «Ամենաթողութիւնը չի զսպըւելու, օրինակ, դպրոցում. այս հարցում որոշիչ է լինելու միայն անհատական, ընտանեկան դաստիարակութիւնը: Անհատը պէտք է իր փոքրիկ շրջապատի վրայ ազդի, որպէսզի ատելութեան խօսք չտարածուի: Ոչ մի հանրային ինստիտուտ այլեւս չի կարողանալու զսպել ատելութեան խօսքը: Մարդկանց զգայունութիւնը «իշխի» անարդար ազդեցութեան նկատմամբ սարսափելի կերպով մեծացել է»:

Հանրային համերաշխութեան մթնոլորտի ձեւաւորման հարցում մեր զրուցակիցը կարեւորում է կրթութեան դերը: Նրա համոզմամբ՝ կրթական գործընթացներում այսօր միաժամանակ ունենք ե՛ւ դրական միտումներ, ե՛ւ խոշոր թերացումներ. «Այսօր Հայաստանում ոչ ֆորմալ կրթութիւնը հսկայական քայլերով զարգացում է ապրում նաեւ շնորհիւ միջազգային աջակցութեան: Ռեֆորմը, որ տեղի է ունենում մեր կրթական համակարգում, առաջընթաց է, այն առաջարկում է ուսուցում՝ հիմնուած կոմպետենցիաների վրայ: Ֆորմալ կրթութիւնն այլեւս ի զօրու չէ կատարել այն, ինչ իրենից ուզում ենք, պէտք է գայ ոչ ֆորմալ կրթութիւնը, ձեւաւորուի քննադատական մտածողութեամբ քաղաքացի, որը կ՚ունենայ ֆունկցիոնալ, ոչ հիերարխիկ պատկերացումներ»: Ինչ վերաբերում է կրթութեան ոլորտի մասնագէտներին, Գէորգ Տէր-Գաբրիէլեանի կարծիքով, նրանք վատը չեն, պարզապէս մեզ հարկաւոր են, այսպէս ասած, մասնագէտների մասնագէտներ:

*Factor.am*

ԽՈՀԵՐ

## ՄԷԿ ԱՆՁԸ՝ ԱՄԷՆ ԲԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Տեսածներէդ կ՚ըսես՝ որ Հայաստանի եւ Սփիւռքի (միաժամանակ՝ երկուքի, որ գրեթէ չի պատահիր) թիւ 1 արուեստագիտուհին է:

Արեւմտեան աշխարհ մտաւ «բարեփոխուած» իտալահնչիւն անունով, քանզի հայերէնը դաւառական է (Աթոմ Եղոյեան եւ Արսինէ Խանճեան թիւ 1 դարձան առանց անուննին փոխելու. անոնց արուեստը մնաց անուններէ վեր):

Արաբական աշխարհ մտաւ իբրեւ ֆրանսացի արուեստագէտ: Այդպէս գրել տուաւ արաբերէն ֆիլմի եւ թատրոնի անուանաթերթերուն վրայ:

Հայկական աշխարհ մտաւ իբրեւ ծայր աստիճան հայրենասէր անձ, հայրենիքին համար մինչեւ վերջ մտահոգուած նուիրեալ:

Երկիրի նախագահէն ստացաւ քաղաքացիական առաւելութիւն՝ օլիկարքական յարաբերութիւններու օգնութեամբ, եւ հայրենասիրական յայտարարութիւնները հասցուց իր գագաթնակէտին՝ գրեթէ անհաւատալի մակարդակով: Մարդիկ սիրեցին այդ հայրենասիրութիւնը:

Պէտք եղած ատեն հայ է, պէտք չեղած ատեն՝ ծագումով հայ:

Զ՚ընդունիր հայերէն լեզուով քննադատութիւն, հայ քննադատողները վերացնելու համար յարմար անձեր կը ճանչնայ:

Գիտէ առաւելագոյն կերպով սիրալիր ըլլալ նուազագոյն օտարին հետ, շահ մը կորզելու եւ կենսագրութեան մէջ կէտ մը աւելցնելու համար: Այդ կենսագրական կէտերուն կուտակային քանակը շատ կարեւոր է, յատկապէս օտարներէն ստացուած կէտերը:

Ֆրանքօ-իտալացի ներկայացողը անընդհատ կը խօսի հայ մշակոյթի կարեւորութեան մասին՝ հայերուն ուղղուած ուղերձներուն մէջ, այդ հայ մշակոյթէն ընտրելով այն մեծադմուկ կաթիլը՝ որուն միջոցով կրնայ ցոյց տալ իր գերազգային պատկանելութիւնը: Կը յուզուի, կու լայ այդ մշակոյթով՝ հայերուն դիմաց, օտարներուն դիմաց կը խոնարհի անոնց մշակոյթին առջեւ:

Բազմամշակութային է, ինքզինքին համար օգտագործած ըլլալու համար այս սիրուած բառային կմախքը, մինչդեռ ոչ մէկ մշակոյթի գործադրութեան ընթացքին կ՚ընդունի ուրիշ մշակոյթի ներթափանցումն ու փոխներթափանցումը: Բազմամշակութային է՝ մշակոյթներու օտարացումով:

Կը խօսի հասարակական համապատասխանութեան մասին՝ անհատապաշտական դիրքերէ, միաժամանակ հերքելով հասարակական կամքը:

Բարեգործութիւնը կը դարձնէ իր պատկերներէն մէկը, նման բոլոր ենթադրեալ ու ոչ-ենթադրեալ աստղերուն՝ որոնք բարեգործութեամբ ինքնապատկերներ կը ստեղծեն, կ՚արդարացնեն իրենց դրամական շահոյթները եւ կը դառնան ալ աւելի ժողովրդական «աստղ»-եր, միաժամանակ կտրականապէս մերժելով օգնել ճիշդ իրենց քովը կանգնած կարօտեալները՝ որոնց օգնելով ինքնապատկեր պիտի չկրնան ստեղծել: Քովի կարօտեալը ցնցոտիներով աղքատ ու տգէտ մըն է (կարեւոր է աղքատ բառին առնչել տգէտը), հեռուն գտնուող անյայտ բարեգործուողը՝ կիրթ ու զարգացած:

Կը ժպտի առերես, կը բամբասէ տականց... միշտ ժպտերես:

Անընդհատ կը փոխէ արտաքինը՝ New Look-ով նորացնելով ինքզինքը, New Look-ը փոխարինելով գաղափարին:

Կարելի՞ է վերոյիշեալներն ամբողջութեամբ մարմին ստանան մէկ անձի մէջ:

Կարելի է:

Ինչո՞ւ կարելի է:

Որովհետեւ ծափահարեցինք ենթակային իւրաքանչիւր քայլը՝ առանց հարցուփորձելու:




## Ո՞Վ ՊԱՐՏՈՒԵՑԱՒ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ՝ ՀԱՅԱՍՏԱ՞ՆԸ ԹԷ ԱՐՑԱԽԸ

1

նակ խօսած են հայ հանրութեան մէջ:

Ահա ընդամէնը դրուագ մը վեց տարի առաջ [2015] *ԲունTV*-ի մէջ քաղաքագէտ Մանուէլ Սարգսեանի հետ ունեցած իմ զրոյցէս.

«[Մանուէլ Սարգսեան] – Ի վերջոյ մենք մէ՞կ պետութիւն ենք, թէ՞ Ղարաբաղն ու Հայաստանը առանձին են: Այս հարցերը շատ այժմէական դարձած են: Կը թուի թէ ասիկա նշանակութիւն չունի: Տասնամեակներ շարունակ մարդիկ ըսած են՝ թէ ասիկա ի՞նչ նշանակութիւն ունի: Ես բազմիցս կրկնած եմ այն օրինակը՝ թէ ասիկա միացում է ազնիւ խօսքի վրայ, ամէն մէկը ազնիւ խօսք տուած է: Յետոյ պարբերաբար եկած են իրականութիւններ, որոնք ցոյց տուած են թէ՝ ո՛չ, հարցը քիչ մը աւելի բարդ է: Երբ Թուրքիան խնդիրներ ունեցաւ Կիպրոսի հետ, Թրքական զօրքը մտցուց Կիպրոսի այն տարածքը՝ ուր կ՚ապրէին Թուրքերը, քանի որ տեղի ունեցած էր խտրականութիւն, որմէ ետք Թուրքիան *ճանաչեց* զայն իբրեւ անկախ պետութիւն: Չճանաչեց Կիպրոսը իբրեւ միասնական պետութիւն: Եւ աշխարհին յայտարարեց՝ որ գացէք լուծեցէք այս մարդոց խնդիրները, անոնց դէմ ճնշում կայ, իսկ իմ զօրքերս այնտեղ պիտի մնան մինչեւ որ ամբողջ աշխարհը յոյներուն հետ լուծէ այս խնդիրը: Ես չեմ ալ խառնուիր: Պարզ ու յստակ լուծում մըն է: Ով ինչ կ՚ուզէ թող ըսէ Թուրքիոյ մասին՝ մեզի չի հետաքրքրեր: Այսպիսով ան լուծեց լրջագոյն խնդիր մը: Արդէն այդ ժամանակ՝ 1975-ին, կը նախապատրաստուէր յայտնի Հելսինքեան Հռչակագիրը, եւ այս քայլով Թուրքիան թոյլ չտուաւ որ Հռչակագիրը տարածուի Կիպրոսի վրայ: Կիպրոսը իրաւունք չունի մտնել Հռչակագիրին մէջ: Թուրքերը մտածուած ստեղծած են իրաւական կառուցուածք, որուն միջոցով կը խօսին աշխարհի հետ: Իսկ Հայաստանի մէջ նոյնիսկ այս խնդիրը չկայ, եւ այս պատճառով, երբ մենք կու գանք մէկ թէ երկու պետութեան հարցին, ի սկզբանէ պէտք է հասկնանք՝ որ արդեօք պետականութեան վերաբերեալ լուրջ պատկերացում ունի՞նք թէ ոչ: Իմ կարծիքովս, այս 25 տարուայ մէջ ստեղծուած փաստաթուղթերը կ՚ապացուցեն՝ որ մենք չենք հասկցած թէ՛ ներքին իրաւունքը եւ անոր նշանակութիւնը, եւ թէ՛ միջազգային իրաւունքը: Մենք կարծած ենք որ ասիկա շինծու բան մըն է: Մինչեւ հիմա այդ ժամանակներէն մնացած գործիչներ կան, որոնք կ՚ըսեն թէ սուտ բաներ են ասոնք, շինծու են: Իրենց համար կարեւորը ազնիւ խօսքի վրայ կառուցուածն է, իսկ աշխարհի հետ ինչպէս ուզենք կը խօսինք: Բայց աշխարհը շատ ճշգրիտ կը խօսի հետդ: Մենք այս բաները մինչեւ հիմա լաւ չենք հասկցած»:

Ինչ որ է, եղաւ՝ ինչ որ եղաւ: Եւ պարզուեցաւ, որ շինծուն մեր յարաբերութիւններն են, այդ յարաբերութիւններուն երկիմաստութիւնն ու երկերեսանիութիւնը, մեր երկատուածութիւնը: Հիմա Արցախը ոչ անկախ պետութիւն է, ոչ ալ Հայաստանի մէկ մասը: Արցախը նոյնիսկ Արցախ չէ: Արցախը նոյնիսկ ԼՂԻՄ չէ: Հայաստանն ալ Հայաստան չէ, այն Հայաստանը չէ: Այնպէս որ պարտուած ենք բոլորս, բոլորս միասին: Եւ պարզել թէ ով աւելի քիչ, ով աւելի շատ, շատ տկար մխիթարանք է, կամ բնաւ մխիթարանք չէ:

Հիմա, այս տխուր իրավիճակին մէջ, իրարու մեղադրելը ուղղակի անիմաստ է: Մեր ամբողջ ժամանակն ու ջիղերը վատնել մեղաւորներ փնտռելու վրայ, ուղղակի անիմաստ է եւ չի կրնար բարելաւել մեր կեանքը:

Ասիկա ալ նոր ծուղակ մըն է: Գոնէ կարողանանք այս ծուղակէն դուրս գալ, եւ փորձենք այս աղիտալի վիճակէն դուրս գալու ելքերը գտնել, ոչ ոքի չթողունք ամօթի ու խայտառակութեան մէջ, փրկենք բոլորիս պատիւը: Եթէ պէտք է պատիւ փրկել, ապա մեր ժողովուրդի պատիւը պէտք է միասին փրկենք, միասին ձեւաւորենք այս իրավիճակէն դուրս գալու, գոյատեւելու եւ զարգանալու համահայկական օրակարգը եւ տեսլականը, միասին որոշենք մեր ապագան եւ անոր պատասխանատուները:

Մեզի համար գրեթէ կատարեալ, խաղաղ ու ջինջ պայմաններու մէջ տասնամեակներ շարունակ մենք չկրցանք ընել ասիկա: Հիմա ստիպուած ենք ընել ճգնաժամային պայմաններու մէջ եւ շատ արագ: Շատ դժուար պիտի ըլլայ, անասելի դժուար, կան հաղորդակցային բազում եւ այլ խնդիրներ, սակայն մենք պէտք է հասկնանք որ միտքը սահման չունի, ստեղծագործող հաւաքական միտքը սահմաններ չունի, անոր համար չկան արգելքներ եւ պատնէշներ, ուղեկալներ եւ անցակէտներ, ինչպէս անոնք չկան աղօթքներուն համար առ Աստուած:

Ամէն ինչ լաւ պիտի ըլլայ:

## ՊԱՏՐԱՍՏԱԿԱՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԵԼՈՒ ԲՈԼՈՐ ՈԼՈՐՏՆԵՐՈՒՄ՝ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ. ՍԴՀԿ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ՝ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ

1

ընդհանրապէս հայ ժողովրդի քաղաքական մշակոյթի ձեւաւորման գործում:

Մենք միշտ բաց ենք եղել երկխօսութեան համար, եւ ուրախ եմ, որ նոյնպիսի պատրաստակամութիւն կայ նաեւ ձեր կողմից: Այս հանդիպումները լաւ առիթ են, որպէսզի տեղի ունեցած արտահերթ խորհրդարանական ընտրութիւններից յետոյ ճշգրտենք մեր օրակարգը, մտքեր փոխանակենք առաջիկայ անելիքների վերաբերեալ, գուցէ նաեւ անհրաժեշտութեան դէպքում կայացնենք կոնկրէտ որոշումներ: Կրկին ողջունում եմ ձեզ եւ ուրախ եմ այս առիթի համար:

ՍԴՀԿ Կենտրոնական վարչութեան ատենապետ Համբիկ Սարաֆեանը նշել է. «Շնորհակալ ենք, պարոն վարչապետ: Մենք ենք շնորհակալ, որ հիւրընկալում էք մեզ այստեղ: Նախ թոյլ տուէք համայն Հնչակեան ընտանիքի անունից շնորհաւորել Ձեզ՝ վերանշանակման առիթով: Մեր պատմութեան երեւի ամենաճակատագրական ժամանակահատուածում, անշուշտ, Դուք մեզնից բոլորից լաւ պատկերացնում էք, տեղեակ էք բոլոր մարտահրաւէրներին՝ ե՛ւ ներքին, ե՛ւ արտաքին: Ինչպէս տեսանք, նաեւ ընտրութիւններից յետոյ Ձեր կատարած քայլերը, մանաւանդ միասնականութեանը եւ համախմբուածութեանն ուղղուած մօտեցումները ե՛ւ խորհրդարանական, ե՛ւ արտախորհրդարանական ձեւաչափով, կարծում ենք, շատ ճիշտ են: Որովհետեւ եթէ նախկինում միասնականութեան, համագործակցութեան, համերաշխութեան մասին կոչերը ցանկութիւններ էին, այսօր ուղղակի բացարձակ անհրաժեշտութիւն են, որովհետեւ եթէ մենք համագործակցաբար, միասնականութեան մթնոլորտի մէջ չկարողանանք աշխատել, շատ դժուար է լինելու ապագան: Որպէս կուսակցութիւն միշտ պատրաստակամ ենք եղել, այսօր էլ պատրաստակամ ենք Ձեզ հետ համագործակցելու բոլոր ոլորտներում՝ Սփիւռքի մէջ եւ Հայրենիքում: Նաեւ կարեւորում ենք այս պահին իսկապէս համագործակցութիւնը բոլոր ուժերի հետ, որովհետեւ դա երեւի միակ



ձեւն է, որով կարողանանք մեր Հայրենիքը, Արցախն այս ծանր իրավիճակից դուրս բերել»:

ՍԴՀԿ պատուիրակութեան անդամների կողմից ընդգծուել է վարչապետ Փաշինեանի՝ արտախորհրդարանական ուժերի հետ նախաձեռնած երկխօսութեան եւ փոխգործակցութեան կարեւորութիւնը ի շահ հայրենիքի: Վարչապետը նշել է, որ Հայաստանն ու Արցախն անցնում են ծանր փորձութիւնների միջով, բայց կարեւորն այն է, որ ընդհանուր ըմբռնում է ձեւաւորուել առկայ մարտահրաւէրները յաղթահարելու եւ համատեղ ջանքերով առաջ շարժուելու շուրջ: Նիկոլ Փաշինեանի խօսքով՝ արտախորհրդարանական ձեւաչափով արդէն իսկ տեղի ունեցած երկու հանդիպումը, որոնցում ներգրաւուած է նաեւ ՍԴՀԿ հայաստանեան կազմակերպութիւնը, վկայում են այդ ձեւաչափի գործուն լինելու մասին եւ շարունակական բնոյթ են կրելու:

Վարչապետը Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան պատուիրակութեան հետ քննարկել է Հայաստան-Սփիւռք-Արցախ կապերի ամրապնդմանը եւ առկայ ներուժի լիարժէք օգտագործմանը վերաբերող հարցեր: Զրուցակիցները մտքեր են փոխանակել տեղեկատուական տեխնոլոգիաների, կրթութեան, միջուկային բժշկութեան եւ մի շարք այլ ոլորտների ակտիւացման հեռանկարների շուրջ, խօսել զարգացման ծրագրերի եւ նախաձեռնութիւնների մասին:

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԱՊԻՏՈՒԼԵԱՑԻԱՅԻ ՉԻ ԵՆԹԱՐԿՈՒԵԼ, ՉԻ ՅԱՆՁՆՈՒԵԼ. ՌՈՒԲԷՆ ՌՈՒԲԻՆԵԱՆ

3

Ռուբինեանը:

Նրա խօսքով՝ ընդդիմադիրները Հայաստանի ղեկավարին համեմատում են Հիտլերի կամ Թալեաթի հետ: «Սիրելի գործընկերներ, գուցէ մի օր Թուրք-ադրբէջանական տանդէմին համեմատէք Հիտլերի կամ Թալեաթի հետ: Ես, իհարկէ, հասկանում եմ, որ դուք ընդդիմադիր էք, բայց եկէք չմոռանանք, որ որոշ դէպքերում դա վերածւում է սեփական երկրին ուղղուած մեղադրանքի: Եթէ պատերազմի ժամանակ երկրի ղեկավար եղած անձին նմանեցնում ես մարդկութեան դէմ յանցագործութիւններ գործած անձանց հետ, դու քո երկիրն ես դրա մէջ մեղադրում անուղղակիօրէն: Խնդրում եմ, մի մաքրագործէք մեզ վրայ յարձակուած հակառակորդին: Մեր նախկին ղեկավարներից ոմանք վերջին հարցազրոյցներում այնպիսի տպաւորութիւն էին ստեղծում, որ Հայաստանն է հրահրել պատերազմ, Հայաստանն է յարձակուել ու ռազմական յանցագործութիւններ իրականացրել», - յաւելեց Ռուբինեանը:

## ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԽՆԴԻՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԴԻՍԿՈՒՐՍՈՒՄ

2

մոլորութիւնների առիթ դարձնելու համար: Հակամարտութեան կարգաւորման մինչ այժմ եղած տարբերակները հանրային ընդունելութեան չեն արժանացել: Ստորագրել սեղանին եղած փաստաթուղթը նշանակում է ստորագրել սեփական վճիռը: Գնա՞լ կոնֆլիկտը իրապէս լուծելու ճանապարհով եւ կանխել աղէտը, թէ՞ լուծման իմիտացիա անել եւ իշխանութեան հարց լուծել. քաղաքական այս հարցին ամէն իշխանութիւն պէտք է պատասխան տայ:

Նշենք, որ *Պետական գործիչների կողմից ներկայացուող հաւաքական յիշողութեան բովանդակութիւնը* հետազօտական նախագծի շրջանակներում ուսումնասիրուել են նաեւ Հայաստանում անկախութիւնից ի վեր Հայոց ցեղասպանութեան, մարդու իրաւունքների, խորհրդային անցեալի եւ ազգային ինքնագիտակցութեան ու ազգայնականութեան վերաբերեալ պաշտօնական դիսկուրսների զարգացումն ու նշուած թեմատիկ ուղղութիւններով հաւաքական յիշողութեան ձեւաւորման տրամաբանութիւնը:

*Ղարաբաղեան խնդիրը հայաստանեան պաշտօնական դիսկուրսում* ուսումնասիրութիւնը կարող էք կարդալ այս յղումով՝ https://uic.am/wp-content/uploads/2020/07/Լեռնային-Ղարաբաղ.pdf

دار شروشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1898 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٨٩٨ الخميس ٩١ سبتمبر ٢٠٢١


## ԵԹԷ ՄԵՆՔ ՑԱՆԿԱՆՈՒՄ ԵՆՔ ՄՆԱԼ ՔԱՐՏԷԶԻ ՎՐԱՅ, ՊԷՏՔ Է «ՍՓԻՒՌՔԱՑՆԵՆՔ» ՀԱՅԱՍՏԱՆԸ. ՏԻԳՐԱՆ ԵԿԱՒԵԱՆ

**Հարցազրուցավար՝ ՄԱՐԻՆԷ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ**

*Հետքի* հարցերին պատասխանում է ֆրանսաբնակ լրագրող, արեւելագէտ Տիգրան Եկաւեանը.

**- Պարոն Եկաւեան, դեռ Մարտին մեզ հետ զրոյցում ասացիք, որ Հայաստանի համար՝ որպէս անկախ պետութեան, ապագան Սփիւռքի հետ է: Իսկ ռիսկը, որ կը դառնանք Ռուսաստանի ինքնավար մարզ կամ կը կրկնենք ասորական ժողովրդի ճակատագիրը, անիրատեսական չէ: Այս ամիսներին ի՞նչ արձանագրումներ էք արել: Ի՞նչ փոփոխութիւններ էք նկատել:**

- Հայաստանում հանդիպած պաշտօնեաների կողմից ես տեսնում եմ բարի մտադրութիւնների յայտարարութիւններ, բայց դեռ չեմ տեսնում իրավիճակի լրջութեան գիտակցում: Ապացոյցն այն է, որ հայ առաջնորդները բաւարարուած են ներկայիս ճգնաժամի միակ պատասխանատուներ «հներին» նշելով՝ առանց ճանապարհային քարտէզ սահմանելու եւ առանց երկրի վերականգնմանը մասնակցելու ունակ առաւել իրաւասու մարդկանց ձեռք մեկնելու: Հայաստանի ապագայի վերաբերեալ լաւատեսական կամ հոռետեսական կանխատեսումներ անելիս կայ մէկ հիմնարար փաստ. ժողովրդագրական գործօնը նոյնքան կարեւոր է, որքան աշխարհաքաղաքական գործօնը:

Ժողովրդագրութիւնը երկրի բոլոր խոցելի տեղերի հիմքն է, այն մեծապէս բացատրում է Արցախում կրած պարտութիւնը եւ երկրի ու պետութեան վերականգնման մարդկային ռեսուրսների բացակայութիւնը: Առանց լուծելու այս խնդիրը՝ ժողովրդագրական արինահոսութիւնը, որը չի ապահովում սերունդների նորացում, Հայաստանը չի կարող վստահութեամբ նայել իր ապագային: Ուստի, ես շեշտում եմ Սփիւռքի էական ներդրումը Հայաստանի գոյատեւման գործում, եթէ ցանկանում ենք պահպանել այս վիճակը:

Աշխարհի իւրաքանչիւր հայ, ով ցանկանում է օգնել Հայաստանին, պարզապէս պէտք է գնայ եւ ապրի Հայաստանում ու յաջողութեան հասնի մասնագիտական նախագծում: Խնդիրն այն է, որ երեսուն տարի մենք մոլորութեան մէջ էինք: Մեզ ասել են, որ Հայաստանը մեր հայրենիքն է, քանի դեռ չենք միջամտում իր ներքին գործերին: Յաջորդական իշխանութիւնները չկարողացան Սփիւռքի ռեսուրսները պատշաճ կերպով ուղղել երկրի զարգացմանը: Փոխարէնը նրանք ստեղծեցին անառողջ յարաբերութիւններ՝ հիմնուած երկու բանի վրայ՝ հումանիտար օգնութեան եւ գրօսաշրջութեան: Բացառութեամբ Ցեղասպանութեան ճանաչման հարցի՝ Հայաստանն ու Սփիւռքը երբեք իսկապէս չեն աշխատել ընդհանուր բարօրութեան համար փոխադարձ յարգանքի եւ փոխկախուածութեան յարաբերութիւններում:

**- Հայաստանն այսօր կանգնած է անվտանգային նոր սպառնալիքի առաջ՝ հայ-ադրբէջանական սահմանի գրեթէ ամբողջ երկայնքով լարուածութիւն է, ներքաղաքական դաշտում երկրորդական հարցերի քննարկում է: Այս պարագայում Սփիւռքն ի՞նչ խնդիրներ կարող է առաջադրել, ի՞նչ դերակատարում կարող է ունենալ:**

- Սփիւռքը կարող է իշխանութեան լծակ հանդիսանալ Հայաստանի անվտանգութիւնն ապահովելու առաջին պայմանով. այն է, որ հայկական պետութիւնը նպաստի քաղաքական ցանցերի կառուցմանը եւ լոբբինգն առաւել համակարգուած եւ արդիւնաւէտ կերպով կազմակերպելուն, որ աշխատի ստեղծել մէկ նոր կառոյց՝ ամրապնդելու համար հայկական ինքնութիւնը աշխարհում: Փաստ է, որ ցանկացած փոփոխութիւն, ցանկացած բարեփոխում, որը պէտք է յաջողուի Սփիւռքում, պէտք է սկսուի Հայաստանից:

Անհրաժեշտ է նաեւ, որ ամբողջ աշխարհի հայ էլիտան կարողանայ տարբերութիւն դնել «մայր հայրենիք» հասկացութեան միջեւ, որն աւելի ու աւելի վերացական է, եւ «ազգային պետութիւն» հասկացութեան միջեւ, ինչը նշանակում է ընդհանուր շահեր եւ ներառական քաղաքացիութեան ձեւաւորում: Ցաւօք, պետութեան գաղափարը դեռ բացակայում է հայ քաղաքական մտքից: Նայէք Հայաստանի Ազգային Ժողովում բանավէճերի մակարդակով առաջարկուող անհանդստացնող տեսարանը եւ նայէք Ադրբէջանին. սա երկիր է՝ առանց յստակ պատմական եւ քաղաքակրթական խարիսխի, առանց ազգային անձի, բայց ի տարբերութիւն Հայաստանի՝ ադրբէջանական էլիտան, որքան էլ որ բռնակալական է, ունի պետականութեան զգացում, եւ դա, իմ կարծիքով, նրանց հզօրութեան մեծ մասն է:

**- Իսկ ինչո՞ւ մինչեւ հիմա մեզ չի յաջողուել կառուցել ազգային պետութեան գիտակցութեան վրայ խարսխուած երկիր, որտե՞ղ են եղել սխալները:**

- Հայերը դարեր շարունակ եղել են գերազանց ծառաներ օտարերկրեայ վարպետների համար, աւանդաբար աւելի անկաշկանդ են բազմազգ պետութիւններում, նրանք գտնում են, որ դժուար է յարմարուել ազգային պետութեան մոդէլին:

Պետութեան գաղափարն, անկասկած, համեմատաբար բացակայում է հայ քաղաքական մտքում: Սա 1375 թ. Կիլիկիայում Հայաստանի թագաւորութեան անկումից ի վեր պատմութեան արդիւնքն է: 1918 թ. հայկական էլիտան ընդհանրապէս պատրաստ չէր այս նախագծին: 1991 թ. անկախութիւնը վախեցրեց Սփիւռքի քաղաքական ուժերին, ովքեր վախենում էին, որ պանթուրքիզմը սպառնում է իր ռուս պաշտպանից զրկուած Հայաստանի գոյութեանը: Ցաւօք, 1991-ից յետոյ Հայաստանի յաջորդական ղեկավարները կառուցել են աւելի շատ ռեժիմներ, քան ուժեղ ինստիտուտներ եւ ներառական քաղաքացիութիւն ունեցող պետութիւն: Ընդհանրապէս, հայ տիրակալները թոյլ տուեցին երկու սխալ՝ «ռեժիմը» «պետութեան» հետ շփոթելու սխալը: Օրինակ, էլիտաներն ընտրում են ոչ թէ տաղանդը, այլ հաւատարմութիւնը: Երկրորդ սխալն այն է, որ Սփիւռքի էլիտաներին միտումնաւոր բացառել են երկրի վարչական ապարատից եւ

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆԻՆ ՀԱՍԱՒ ԱԳՆ ՂԵԿԱՎԱՐԻ ՊԱՇՏՕՆԸ

Արարատ Միրզոյեանը նշանակուել է Հայաստանի արտաքին գործերի նախարար, հաղորդում է կառավարութիւնը:


Արարատ Միրզոյեան

Միրզոյեանը 7-րդ գումարման Ազգային Ժողովի նախագահն էր:

Յիշեցնենք՝ Հայաստանի գլխաւոր դիւանագէտի պաշտօնը թափուր էր մնացել Մայիսի 27-ից, երբ Արա Այվազեանը հրաժարական տուեց: Մինչ օրս արտգործնախարարի պարտականութիւնները կատարում էր Յուլիսի կէսերին նախարարի առաջին տեղակալ նշանակուած Արմէն Գրիգորեանը, ով ազատուել էր Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնից: Գրիգորեանը վարչապետի որոշմամբ կրկին նշանակուեց Անվտանգութեան Խորհրդի քարտուղար:

## ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ՀԱՊԿ ԱՐՏԱՀԵՐԹ ՆԻՍՏ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Օգոստոսի 23-ին մասնակցել է Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) խորհրդի արտահերթ նիստին, որն անցկացուել է տեսակապի միջոցով:

Նիստին մասնակցել են ՀԱՊԿ անդամ պետութիւնների՝ Հայաստանի, Ռուսաստանի, Բելառուսի, Ղազախստանի, Տաջիկստանի, Ղրղզստանի ղեկավարները, ՀԱՊԿ գլխաւոր քարտուղարը, ինչպէս նաեւ որպէս հրաւիրեալ՝ Ուզբեկստանի նախագահը:

Նիստի ընթացքում ՀԱՊԿ առաջնորդները քննարկել են ՀԱՊԿ պատասխանատուութեան գօտում անվտանգութեան ապահովմանը, Աֆղանստանում ստեղծուած իրավիճակին առնչուող հարցեր:

## ՕՐԷՆՍԴԻՐՆԵՐԸ ՎԱՐԿԱԲԵԿՈՒՄ ԵՆ ՎԱՐԿԱԲԵԿՈՒԱԾԸ

Կառավարութեան անդամների եւ նորաստեղծ խորհրդարանի առաջին հանդիպումն իր առաջին երկու օրերին (Օգոստոսի 24-25) արդէն ընթացաւ արտահերթ ընդմիջումներով. խորհրդարանում ծեծկռտուքներ, քաշքշուքներ, հրմշտոցներ, հայհոյանքներ են:

**ԿԳԲ-ական Վահէ Յակոբեան**

Օգոստոսի 25-ի առաւօտեան նիստն ընդհատուեց, քանի որ օրէնսդիրները միմեանց վրայ շշեր էին նետում: Վերամեկնարկից կարճ ժամանակ անց կրկին ընդմիջում յայտարարուեց. այս անգամ՝ քաշքշուքի պատճառով:

Ընդմիջումից յետոյ ելոյթ էր ունենում ԿԳԲ-ի ռուսական դպրոցի շրջանաւարտ, նախկին ԱԱԾ-ական, Սիւնիքի նախկին մարզպետ, Զանգեզուրի պղնձամոլիբդէնային կոմբինատի փայատէր, Para TV լրատուական կայքի հովանաւոր, Ռոբերտ Քոչարեանի գլխաւորած Հայաստան Դաշինքի պատգամաւոր Վահէ Յակոբեանը: Յակոբեանը կառավարութեան ծրագիրը, նախ, համեմատեց «կուրսային աշխատանքի» հետ: Իշխանական պատգամաւորները սկսեցին տեղից արձագանքել: Յակոբեանը պատասխանեց՝ գոռալով. «Արան դու ես, այ [հայհոյանք]»: Հնչեցին հայհոյանքներ, սկսուեց քաշքշոց, նորից ընդմիջում յայտարարուեց:

**Մեծահարուստ Սէյրան Օհանեան եւ հարսանիքաւոր Հայկ Սարգսեան**

Մինչ այդ, նիստն ընդհատուել էր ՔՊ-ական Հայկ Սարգսեանի ելոյթի ժամանակ: Սարգսեանը, որը վերջին անգամ մամուլի ուշադրութեան կենտրոնում էր յայտնուել իր ճոխ հարսանիքի շնորհիւ, յայտարարեց, թէ «այն նախարարները, որոնց օրօք բանակից փողով մարդ է ազատուել, ազգի դաւաճան են»: Ռեպլիկին արձագանքելով՝ ընդդիմադիր պատգամաւորներից մէկը Սարգսեանի ուղղութեամբ ջրի շիշ նետեց: Գործողութեանը միացան նաեւ միւսները. իշխող եւ ընդդիմադիր

↳ 2

# ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆ

**Թուղթ յուշերը Նանիի մասին**

**ԷՏՈՒԻՆ ԺԵՐԱՐ ՀԱՄԱՄՃԵԱՆ**

**Թարգմանեց՝ Հ. Ա.**

Երգչուհի եւ դերասանուհի, Վալանթին Ամիրայեան 1920-1931 թուականներուն հմայած է եգիպտահայ եւ եգիպտացի հասարակութիւնը իր զիլ սոփրանօ ձայնով եւ բնատուր դերասանական խաղարկութեամբ, դառնալով հռչակաւոր անուն մը։ Եգիպտոսէն ետք, բացի հատուկենտ փորձերէ, ան երբեք չկրցաւ շարունակել արուեստագիտուհիի գործունէութիւնը։ Դեռ քանի մը ամիս առաջ լոյս տեսած *Ջահակիր*ի 40-րդ (Խ.) Յաւելուածը նուիրուած էր անոր եգիպտական շրջանի գործունէութեան։

Գահիրէ կը գտնուի Վալանթինի թոռը՝ ֆրանսահայ-ամերիկահայ բեմադրիչ, դերասան եւ թատերագիր Էտուին Ժերար Համամճեան։ Որոշ ժամանակ է հաստատուած է այստեղ եւ կը թուի թէ տակաւին երկար պիտի մնայ Մա՛ատիի իր բնակարանը՝ ուր կը զմայլի թաղի գեղեցկութեամբ։ Իսկ ժամանակը կ՚անցընէ շրջագայելով ու գեղանկարելով։ Ան նաեւ հրաշալի գեղանկարիչ մըն է, թէեւ զայն չէ դարձուցած իր ապրուստի նպատակը (պատրաստութեան մէջ է իր մասին գիրք մը)։

Ծանօթանալով հետը, խնդրեցի իրմէ գրել յուշերը մեծմօր մասին (ի դէպ, Յաւելուածը հրատարակուած էր նախքան ծանօթութիւնս Էտուինի հետ)։ Անմիջապէս կատարեց խնդրանքս եւ էլ-նամակով ղրկեց անգլերէն լեզուով շատ գեղեցիկ գրութիւն մը, ուր կը ներկայացնէ արուեստագիտուհիի կեանքին վերջին շրջանը՝ բոլորովին անծանօթ մեզի։

Թարգմանելով այս յուշերը, ստորեւ զանոնք կը ներկայացնեմ *Ջահակիր*ի ընթերցողներուն։

Արդարեւ, աւելի հասկնալի դարձնելու համար գրութիւնը, կը համառօտագրեմ այստեղ տեղ գտած անուններուն ու դէմքերուն կենսագրութիւնները։

Վալանթին Ամիրայեան (1901, Կ. Պոլիս – 1971, Լոս Անճելոս) դուստրն է Ագապի Համամճեանի եւ պոլսաբնակ իտալացի Նիքոլայ Առնոյի։

Ագապի, Վալանթին եւ քոյրը Օկիւսթա Գահիրէ կը փոխադրուին 1920-ի մօտերը։ Նիքոլայ մահացած էր արդէն։

Գահիրէի մէջ Վալանթին կ՚ամուսնանայ Ստեփան Ամիրայեանի հետ։ 1921-ին կը ծնի իրենց միակ զաւակը՝ Ալիտա (կը մահանայ անցեալ տարի, Լոս Անճելոս, 99 տարեկան հասակին)։ 1920-ականներու վերջաւորութեան կ՚ամուսնալուծուին։

1927-ին Ագապի կ՚ամուսնանայ Գահիրէ բնակող զուիցերիացի Էմիլ Մօրէյի հետ եւ շատ չանցած կ՚ամուսնալուծուի։

1931-ին Վալանթին վերջնականապէս կը հեռանայ Եգիպտոսէն եւ ճաբոնական «Հարունա մարու» շոգենաւով կը մեկնի Փարիզ։ Շոգենաւին վրայ կը ծանօթանայ ամերիկեան սինեմայի բեմադրիչ, արտադրիչ եւ դերասան Սեսիլ ՏըՄիլին (Cecil B. DeMill) եւ կապ կը հաստատէ անոր հետ։

Փարիզի մէջ կարճատեւ ելոյթներ ունենալէ ետք իբրեւ մեներգչուհի, կ՚երթայ Շանկհայ եւ ապա 1933 Ապրիլին կը հասնի ԱՄՆ՝ Սեսիլ ՏըՄիլի խոստումին վրայ մտնելու Հոլլիուտի սինեմայի աշխարհը։ Կը յաջողի ընդամէնը փոքր դերով պատկերահանուիլ *I Loved a Woman* ֆիլմին մէջ։ Սեպտեմբերին կը վերադառնայ Փարիզ։

1934-ին կը գտնուի Շանկհայ ուր կը նշանուի նախկին եգիպտահայ հռչակաւոր բռնցքամարտիկ Հայկ Ասատուրեանի հետ, որ 1929-էն հաստատուած էր Շանկհայ եւ դարձած շատ յաջող գործարար (Ասատուրեանի եգիպտական շրջանի մարզական բացառիկ յաջողութիւնները՝ որոնք հպարտութեամբ արձանագրուած են եգիպտահայ մամուլին մէջ, տակաւին պէտք ունին համադրուելու)։ Իրենց յետագային կը միանան Ագապի եւ Օկիւսթա։



Վալանթին Ամիրայեան եւ Սեսիլ ՏըՄիլ, «Հարունա մարու» շոգենաւին վրայ, Միջերկրական Ծով, 1931, երբ Վալանթին Եգիպտոսէն կը մեկնէր Ֆրանսա (Էտուին Համամճեանի հաւաքածոյէն)։

Եգիպտահայ Երուանդ Համամճեան (ծն. 1912, Գահիրէ) 1935-ին կ՚երթայ Շանկհայ եւ նոյն տարին կ՚ամուսնանայ Օկիւսթայի հետ։ Երուանդ ծանօթ էր Օկիւսթային Գահիրէէն։

1936 Հոկտեմբեր 28-ին Հայկ եւ Վալանթին կ՚ամուսնանան Տիթրոյթի (ԱՄՆ) մէջ, որմէ ետք կը վերադառնան Շանկհայ։

Օկիւսթա ջրծաղիկէ կը մահանայ 1937-ին, երբ ճաբոնական զօրքը կը խուժէր Շանկհայ։

1937-ին Վալանթին կու գայ Գահիրէ եւ Ալիտան իր հետ վերցնելով վերջնականապէս կը տանի Շանկհայ, հօր Ստեփանի հաւանութեամբ։ Հակառակ ամուսնալուծութեան, Վալանթինի եւ Ստեփանի յարաբերութիւնները մնացած էին մտերիմ։

Երուանդ եւ Ալիտա կը համակրին իրարու եւ իրենց միջեւ կը մշակուի յարաբերութիւն։

Շանկհայի մէջ Հայկ արդէն կառուցած է ու կը վարէ երկու մեծ մարզադաշտ-ակումբներ սպանիացի ընկերոջ մը հետ։ Մանիլայի մէջ կը կառուցեն հատ մը եւս։ Հայկ՝ կնոջ, դստեր եւ զոքանչին հետ կ՚երթայ բացումին, որ կ՚անցնի փառաւոր հանդիսաւորութեամբ։ Իրենց նպատակն էր շուտով վերադառնալ Շանկհայ։ Բայց 1941 Դեկտեմբեր 8-ին ճաբոնցիները կը ռմբակոծեն ու կը գրաւեն Մանիլան եւ ընտանիքը շրջափակուած կը մնայ այնտեղ։ Արկածախնդրութիւններէ եւ մահէ բախտով փրկուելէ ետք, Հայկ, Վալանթին եւ Ալիտա կը տեղակայուին համակեդրոնացումի ճամբար, ուր անմարդկային պայմաններու մէջ կը մնան երեք ու կէս տարի՝ մինչեւ Երկրորդ Համաշխարհային Պատերազմին աւարտը, մինչ Ագապի կը տեղադրուի սպանիացի մայրապետներու մենաստան մը։ Համամճեան մնացած էր Շանկհայ, այնպէս որ կը խուսափի ճամբարի տառապանքէն։

Հայկ, Վալանթին, Ալիտա եւ Ագապի 1946-ին նաւով ճամբայ կ՚ելլեն գաղթելու Ամերիկա։ Ուժեղ փոթորիկի պատճառով, նաւը պատահաբար քանի մը օր կանգ կ՚առնէ Շանկհայ, ուր կը վերականգնուին Ալիտայի եւ Երուանդի յարաբերութիւնները եւ կ՚որոշեն ամուսնանալ ԱՄՆ-ի մէջ։ Կեանքի ճակատագրականութիւն, անկասկած։

Հայկ, Վալանթին, Ալիտա եւ Ագապի Ապրիլին կը հասնին Միացեալ Նահանգներ։ Աւելի ուշ անոնց կը միանայ Երուանդ, իսկ 1946 Յունիս 17-ին, Պեւերլի Հիլսի մէջ Երուանդ եւ Ալիտա կ՚ամուսնանան։ Բայց Երուանդ Ամերիկա եկած էր ժամանակաւորապէս, հետեւաբար, Ալիտայի հետ անմիջապէս կը վերադառնայ Շանկհայ։ ➪ 4

## «ՆՈՐ ԳԻՐՔ»

*Արմենպրէս* լրատուական գործակալութիւնը ներկայացնում է իր հեղինակային «Նոր գիրք» նախագիծը։ Այս շաբաթ *Արմենպրէս*ն առանձնացրել է 2021 թուականին հրատարակուած երեք ուշադրաւ գրքեր՝ տարբեր խորագրերի ներքոյ։

**Հայ հեղինակ**

**Արմէն Բարխուդարեան, *Frisson***

Արմէն Բարխուդարեանի *Frisson* բանաստեղծութիւնների ժողովածուում հեղինակն անդրադառնում է տարբեր թեմաների։ Այն պատկերում է գաղթականի հոգու տառապանքները, նրա անդարձ կարօտը եւ վերադարձի բաղձանքը։ Բանաստեղծութիւնները իւրատեսակ մտորումներ են սիրոյ, ուժի, հիասթափութեան, ապրելու ու արարելու ձգտման եւ այլ հարցերի շուրջ։ Գիրքը լոյս է ընծայել Էդիթ Պրինտը։

**Թարգմանական գրականութիւն**

**Ռոբերտ Մենասէ, *Մայրաքաղաք***

Աւստրիացի գրող Ռոբերտ Մենասէի *Մայրաքաղաք* վէպում ծաւալուող իրադարձութիւնների կենտրոնում Եւրամիութեան վեց պաշտօնատար անձինքն են, որոնք պատասխանատու են Եւրամիութեան տարեդարձը նշելու նախապատրաստական աշխատանքների համար։ Տօնակատարութիւնները նախատեսուած են Օսվենցիմում, որտեղ շատերն առաջարկում են տեղափոխել Եւրոպայի քաղաքական մայրաքաղաքը։ Բացի բարձր հասարակութեան ներկայացուցիչներից՝ վէպում կայ նաեւ մարդասպան, որը սպանել է ինչ-որ կարեւոր մէկին... Թարգմանութիւնը գերմաներէնից՝ Կարլէն Մատինեանի, խմբագիր՝ Արքմենիկ Նիկողոսեան։ Գիրքը լոյս է ընծայել Անտարեսը։

**Մանկապատանեկան գրականութիւն**

**Մայքլ Բոնդ, *Փադինգթոն անունով արջուկը*** ➪ 4

1 ➪

## ՕՐԷՆՍԴԻՐՆԵՐԸ ՎԱՐԿԱԲԵԿՈՒՄ ԵՆ ՎԱՐԿԱԲԵԿՈՒԱԾԸ

պատգամաւորները սկսեցին շշեր նետել միմեանց վրայ։

ԱԺ նախագահը ներս հրաւիրեց ՊՊԾ-ականներին, մինչեւ կէսօրը ընդմիջում յայտարարուեց, հեռարձակումն ընդհատուեց։ Արգելուեց նաեւ լրագրողների տեսանկարահանումը։ ԱԺ միջանցքներից գոռգոռներ էին լսւում. փակ դռների յետեւում կրկին հրմշտոց էր։

Միջադէպը անմիջապէս մեկնաբանեց Ղարաբաղի եւ Հայաստանի պաշտպանութեան նախկին նախարար, այժմ՝ Հայաստան խմբակցութեան ղեկավար Սէյրան Օհանեանը, ում բանակային կարիերան սկսուել է դեռ խորհրդային ժամանակներից։ Հայաստանի անկախացումից ի վեր Օհանեանը զբաղեցրել է բացառապէս պետական պաշտօններ՝ հասնելով գեներալ-գնդապետի բարձրագոյն զինուորական կոչմանը, ինչը չի խանգարել նրան կուտակել հսկայական ֆինանսական կարողութիւն, օրինակ՝ մօտ 40 սենեականոց դղեակ կառուցել էլիտար Վահագնի թաղամասում։ «Իշխանութիւնն ինքն իր ելոյթով սադրեց, որ այս բախումը տեղի ունենայ», - յայտարարեց Օհանեանը։

**Քասախցի Աննա Մկրտչեան**

Խորհրդարանում «բախում էր» նաեւ Օգոստոսի 24-ին՝ Կառավարութեան հնգամեայ ծրագրի քննարկման առաջին օրը։

Նախկին ԱԱԾ-ական Արթուր Վանեցեանի գլխաւորած ՀՀԿ-ական Պատիւ Ունեմ պատգամաւոր, Քասախի գիւղապետ Արա Մկրտչեանի դուստր, հանրապետական Աննա Մկրտչեանը յայտարարեց՝ «այս անձնաւորութիւնը [նկատի ունի վարչապետին] իր հետ դահլիճ է բերել ախրաննիկներ»։ Ռեպլիկին տեղից սկսեցին արձագանքել ՔՊ-ականները։ Մկրտըչեանը պատասխանեց՝ «կապիտուլեանտների կողմից ձայներ մի հանէք»։

Լեզուակռիւը շարունակուեց։ Ալէն Սիմոնեանը անջատեց Աննա Մկրտչեանի խօսափողը, նկատողութիւն տուեց նաեւ Նիկոլ Փաշինեանի աներորդի, ՔՊ պատգամաւոր Հրաչեայ Յակոբեանին։

Խօսափողը անջատուած էր, տիկին Մկրտչեանը խօսում էր տեղից։ Նրան դուրս հրաւիրելու համար՝ ներս հրաւիրուեցին անվտանգութեան աշխատակիցները։ Տեղից վեր կացան ընդդիմադիր մնացած պատգամաւորները։ Լարուած իրավիճակը վերածուեց քաշքշուքի, յետոյ՝ ծեծկռտուքի։ Լրագրողները նկարահանելու իրաւունք չունէին։ Միջանցքից գոռոցներ էին լսւում։ Յետագայում յայտնի դարձաւ, որ քաշքշուքի ընթացքում պատռուել է Սերժ Սարգսեանի օրօք սոցապ, էկոնոմիկայի եւ բնապահպանութեան նախարարի պաշտօնները զբաղեցրած դաշնակցական Արծուիկ Մինասեանի վերնաշապիկը։

*Epress.am*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ ՋԱՀԱԿԻՐԻ 41-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՆԵՐՈՒՆ ՄԱՍԻՆ

Լոյս տեսաւ Ջահակիրի ԽԱ. (41) Յաւելուածը՝ *Եգիպտական սինեմայի առաջին հայ դերասանները* (66 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՆԵՐԸ
ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԽԱ. (41)
ԳԱՀԻՐԷ
2021

Եգիպտական սինեմայի ցարդ յայտնաբերուած առաջին երկու դերասանուհիներն են Էհսան Քամէլ (բուն անունով՝ Վարդանոյշ Պարթեւեան) եւ Նաթիա (բուն անունով՝ Արաքսի Օհաննեան), որոնց նուիրուած է գիրքը:

Գրքոյկը կը բովանդակէ նաեւ անյայտ անուն մը՝ Վազգէն Ամիրեան, ինչպէս նաեւ կը փորձէ բացատրութիւններ գտնել կասկածելի հայութեամբ երկու դերասանուհիներու մասին՝ Նատրա եւ Տիկին Կարպիս:

2

### «ՆՈՐ ԳԻՐՔ»

Փադինգթոն արջուկը, օվկիանոսը հատելով, հեռաւոր Պերուից հասնում է Անգլիա՝ Լոնդոն: Այստեղ նա հանդիպում է տէր եւ տիկին Բրաուններին եւ շուտով դառնում այս հրաշալի ընտանիքի լիիրաւ անդամը: Մեծ քաղաքում Փադինգթոնին սպասում են անհամար նորոյթներ, հետաքրքիր ու անհաւանական արկածներ: Թարգմանութիւնը՝ Լուսինէ Հայրապետեանի, նկարազարդումները՝ Փեգի Ֆորթնումի: Գիրքը լոյս է ընծայել Զանգակը:

## ԳՆԴԱԿԸ ԹՈՒՐՔԻԱՅԻ ԴԱՇՏՈՒՄ Է, ԱՅԴ ԵՐԿԻՐԸ ՊԷՏՔ Է ՔԱՅԼ ՁԵՌՆԱՐԿԻ ԱՌԱՆՑ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ՈՐԵՒԷ ԲԱՆ ԱԿՆԿԱԼԵԼՈՒ. ԷՍՏՈՒԿԵԱՆ

ԵՐԵՒԱՆ, 3 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ, ԱՐՄԵՆՊՐԷՍ: Հայ-թուրքական յարաբերութիւնների կարգաւորման առումով գնդակը շարունակում է մնալ Թուրքիայի դաշտում, եւ Թուրքիան է, որ պէտք է քայլեր ձեռնարկի այդ ուղղութեամբ: *Արմէնպրէսի* հետ զրոյցում նման կարծիք յայտնեց *Ակօս* շաբաթաթերթի հայերէն բաժնի խմբագիր եւ հեղինակ Բագրատ Էստուկեանը՝ անդրադառնալով վերջին շաբաթներին Երեւանի եւ Անկարայի միջեւ, այսպէս ասած, «դրական ազդակների» փոխանակմանը:

Պոլսահայ լրագրողը չեշտեց, որ իր համոզմամբ՝ Հայաստանը այս պահին Թուրքիայի հետ բանակցելու եւ մանաւանդ սակարկութեան սեղան նստելու կարիք չունի, քանի որ Թուրքիան է հրաժարուել Հայաստանի հետ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատումից եւ Թուրքիան է միակողմանիօրէն փակել սահմանը: Հետեւաբար, ինքն էլ պէտք է առաջընթաց արձանագրի այս հարցում՝ առանց հայկական կողմից որեւէ բան ակնկալելու:

«Այս օրերին Էրդողանը խօսում է հնգակողմ համաձայնութեան մասին՝ նկատի ունենալով Հայաստանը, Ադրբէջանը, Ռուսաստանը, Թուրքիան եւ Իրանը, եւ չի բացառում, որ 6-րդ գործօնն էլ կարող է լինել Վրաստանը: Մինչդեռ մեր խնդիրը երկկողմանի է: Այդ խնդիրը հետեւեալն է. Հայաստանի անկախացումից անմիջապէս յետոյ Թուրքիան, պաշտօնապէս ճանաչելով Հայաստանի Հանրապետութիւնը, հրաժարուել է դիւանագիտական յարաբերութիւններ հաստատել: Ուրեմն, այս առումով գնդակը իր կիսադաշտում է, ինքը պէտք է այդ ուղղութեամբ քայլ ձեռնարկի: Նոյն յաջորդութեամբ, Արցախեան պատերազմը պատճառաբանելով՝ Թուրքիան փակել է Հայաստան-Թուրքիա ցամաքային սահմանը: Այդ մասին էլ պէտք է, որ ինքը առաջընթաց արձանագրի՝ առանց մեզնից որեւէ բան ակնկալելու, որովհետեւ այդ սահմանները բանակցութիւններով չէ, որ փակուել են, պարզապէս Թուրքիայի միակողմանի որոշումով են փակուել: Այսօր, եթէ պիտի վերաբացուեն, դարձեալ իր միակողմանի որոշումն է: Մեզ հետ բանակցելու նիւթ չկայ: Հետեւաբար, մենք Թուրքիայի հետ բանակցելու եւ մանաւանդ սակարկութեան սեղան նստելու կարիք բնաւ չունենք», - ասաց Բագրատ Էստուկեանը:

Պոլսահայ մեկնաբանի խօսքով՝ Էրդողանի ասածը հայ-թուրքական յարաբերութիւնների վերաբերեալ Հայաստանում շատ աւելի լայն արձագանք ստացաւ, քան Թուրքիայում: Ընդ որում, զրուցակիցը չեշտեց, որ Թուրքիայի նախագահի այդ խօսքերը, թէ Անկարան պատրաստ է աշխատել Հայաստանի հետ յարաբերութիւնները աստիճանաբար կարգաւորելու ուղղութեամբ, ոչ թէ պատրաստուած, ծրագրուած յայտարարութիւն էր, այլ պարզապէս լրագրողի հարցին յանպատրաստից տուած պատասխան:

«Նախագահ Էրդողանի ասածները ծրագրի մասին չէին: Աւելի շատ նա տրամադրութիւն յայտնեց եւ այդ տրամադրութիւնը նախապէս էր յայտնել 44-օրեայ պատերազմի աւարտին՝ ասելով, որ հետզհետէ կարգաւորուեն այդ յարաբերութիւնները Կովկասում եւ, անշուշտ, Հայաստան-Թուրքիա յարաբերութիւններն էլ՝ նոյնպէս: Եւ սակայն որեւէ յստակ քայլ արտաքին նախարարութեան սահմանմամբ մինչեւ այսօր չենք նկատել: Հետեւաբար, մենք շատ լուրջ չենք ընդունել այդ յայտարարութիւնը: Դա ինչ-որ զարգացման բացայայտում չէր, այլ պարզապէս տրամադրութեան բացայայտում», - մեկնաբանեց *Ակօսի* խմբագիրը:

*Ըստ Հայաստանի կառավարութեան 2021-2026 թթ. ծրագրի՝ Հայաստանը պատրաստ է Թուրքիայի հետ յարաբերութիւնների կարգաւորմանը առանց նախապայմանների: Հնգամեայ ծրագրում նշւում է, որ Հայաստան-Թուրքիա դիւանագիտական յարաբերութիւնների բացակայութիւնը, փակ սահմանները, ինչպէս եւ Թուրքիայի բացայայտ ներգրաւուածութիւնը 2020 թ. 44-օրեայ պատերազմում բացասական ազդեցութիւն են ունենում տարածաշրջանի խաղաղութեան եւ կայուն զարգացման վրայ:*

*Օգոստոսի 26-ին Թուրքիայի նախագահ Ռեջէփ Էրդողանը Թուրքիայում հաւատարմագրուած օտարերկրեայ դեսպանների հետ հանդիպման ժամանակ ասել էր, թէ Արցախեան վերջին պատերազմից յետոյ տարածաշրջանում խաղաղութեան եւ կայունութեան հաստատման ուղղութեամբ առաջընթացի նոր հնարաւորութիւններ են ստեղծուել, եւ եթէ «Հայաստանը դրականօրէն արձագանքի այդ հնարաւորութիւններին», Թուրքիան էլ կ՚անի անհրաժեշտ քայլեր:*

*Օգոստոսի 27-ի կառավարութեան նիստի ընթացքում վարչապետ Նիկոլ Փաշինեանը յայտարարել էր, որ տարածաշրջանային խաղաղութեան տեսանկիւնից որոշակի դրական հրապարակային ազդակներ կան Թուրքիայի կողմից: «Մենք այդ ազդակները կը գնահատենք եւ դրական ազդակներին դրական ազդակով կը պատասխանենք», - ասել էր Հայաստանի վարչապետը:*

*Օգոստոսի 29-ին լրագրողներից մէկը Թուրքիայի նախագահից հետաքրքրուել է՝ ինչպէ՞ս է Անկարան արձագանքում Հայաստանի վարչապետի յայտարարութեանը, ինչին ի պատասխան Էրդողանն ասել է, որ Թուրքիան պատրաստ է աշխատել Հայաստանի հետ* 4

ԽՈՀԵՐ

## ՄԷԿ ԱՆՁԸ՝ ԱՄԷՆ ԲԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Սփիւռքի թիւ 1 արուեստագէտը փորձեց ըլլալ: Ձեղաւ: Ուրիշ հայեր իրմէ առաջ անցան: Սկսաւ այստեղ-այնտեղ բողոքել այդ ուրիշներուն դէմ՝ իրեն օգնած չըլլալնուն համար, «Հայը հայուն չ՚օգներ» դիւրին տրամաբանութեան մէջ: Ձեն օգնած, որովհետեւ գիտեն անոր կարողութեան սահմանները, գիտեն անոր կուսագան բնաւորութիւնը, գիտեն որ իրենք պիտի վնասուին անոր միջնորդը ըլլալնուն հետեւանքով:

Իսկ ինքը օգնա՞ծ է հայերուն: Հաստատապէս օգտուած է անոնցմէ՝ միշտ փորձելով շահագործել յաջողած սփիւռքահայերը եւ միայն անոնց ենթակայ դառնալու միջոցով ձեռք բերել ենթադրեալ յաջողութիւններ, եւ ապա այդ մանր յաջողութիւնները լրատուամիջոցներու ընդմէջէն դարձնել բացարձակ, քանզի լրատուային ցանցերու վրայ իշխողներու հետ ունի ազգակցական կապեր: Յետոյ ըսէք որ Սփիւռքի մէջ օլիկարքութիւն չկայ:

Սփիւռքի մէջ ինքզինքը սպառելէ ետք, փորձեց մտնել Հայաստան: Կրցաւ դեր մը ունենալ Հայաստանի ֆիլմի մէջ, ուր ոչ իր հայերէն լեզուն կը հասկնաս՝ բաղաձայն տառերը չկարենալ արտասանելու պատճառով, ոչ ալ ներկայութիւնը կը զգաս՝ խաղարկութենէ զուրկ ըլլալուն համար:

Հայաստանի քաղաքացիութիւն ստացաւ եւ լրատուամիջոցներուն մէջ յայտարարեց՝ թէ նոր մարդ դարձաւ, յայտարարութեամբ վաստակելով հայրենասիրական կէտ մը: Կարծես առաջինը ըլլար քաղաքացիութիւն ստացողը:

Կը պոռայ՝ սովորական խօսակցութեան ընթացքին: Նոյն պոռալն է որուն ականատես կ՚ըլլաս բեմին վրայ: Պոռալէն անդին, զուրկ է իր արուեստը բեմական այլազանութեան մէջ արտայայտելու կարողութենէ: Ձի կրնար քիչ մը նրբութիւն եւ գունաւորում դրսեւորել բեմին վրայ: Կը պոռայ, իսկ պոռչտուքը հարազատ է որոշ ընկալողական խումբերու, որոնք կը ծափահարեն ու կը փառաբանեն բարձր ձայնին համար:

Ուր որ մտած է, կռիւով աւարտած է: Ձինքը հազուագիւտ հրաւիրած են նորէն:

Հաճոյք է նաեւ արուեստագէտներու շրջանակէն զատ տեղ ունենալ գիտահետազօտական խումբերու մէջ: Այս ձգտումով կը ստեղծէ գիտահետազօտական հիմնարկ, վերնագիրին մէջ դնելով «միջազգային» բառը: Շատ, շատ, շատ մեծ բառ է միջազգայինը: Կը գտնէ չորրորդ կարգի անգործ «գիտահետազօտող»-ներ, որոնց անվճար աշխատցնելէ զատ, կը փորձէ անոնց աշխատանքներուն միջոցով դրամ հաւաքել «միջազգային»-ի անունին տակ... իր գրպանին համար: Իսկ երբ այդ չորրորդ կարգի կամաւորը կ՚անդրադառնայ կատարուածը եւ կը հրաժարի հետը գործելէ, գայն կը հռչակէ հայ մշակոյթին չծառայող անձ՝ համարժէք դաւաճանի: Հիմնարկի ամէն քայլին մէջ դրած է հայրենասիրութիւն: Հայրենասէր է՝ քանի որ «միջազգային» է եւ հայ մշակոյթը կը միջազգայնացնէ, հայրենասէր է՝ քանի որ *իր* «միջազգային»-ին ծառայել չուզողը կրցած է դարձնել հայ մակոյթի դաւաճան:

Հանրային ելոյթներուն անընդհատ կը խօսի *միասին* կերտելու, *միասին* գործելու, եւ այլ *միասին*ներու մասին, պայմանով որ այդ միասինը կեդրոնանայ իր անձին շուրջ, կամ վերջապէս յանգի իրեն:

Ինչպէս շատ արուեստագէտներ, կը խօսի հանրային բարեգործութեան մասին, բարեգործութիւնը կապելով հայրենասիրութեան հետ, այնպիսի բարեգործութիւն՝ որ ամենէն վերջը պիտի ծառայէ գործողութեան մը՝ որուն ընդմէջէն ինք պիտի կրնայ իր սեփական արուեստը փայլեցնել:

Ինչպէս վերնախաւի շատ ներկայացուցիչներ, կը խօսի երիտասարդներու մասին: Հայ երիտասարդութիւնը իր մտահոգութեան կեդրոնն է: Երիտասարդութիւնը շատ կարեւոր է մեր ապագայի համար, իսկ ինք զբաղած է դաստիարակելով, մշակելով, զարգացնելով ներկայ երիտասարդութիւնը՝ հայերու ապագային համար: Ինք երիտասարդութեան մէջ հայութիւնը կ՚արթնցնէ: Ինք դպրոց մըն է երիտասարդութեան համար:

Բան մը իրեն համար չըներ, ամէն բան հայութեան համար կ՚ընէ: Հոգ չէ մեծաշուինդ ինքնագովութիւններուն:

Կարելի՞ է վերոյիշեալներն ամբողջութեամբ մարմին ստանան մէկ անձի մէջ:

Կարելի է:

Ինչո՞ւ կարելի է:

Որովհետեւ ծափահարեցինք ենթակային իւրաքանչիւր քայլը՝ առանց հարցափորձելու:




## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
## ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ 2021-Ի ԱՐՏԱՀԵՐԹ ՆԻՍՏ

Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի արտահերթ նիստը պիտի գումարուի Ուրբաթ, 1 Հոկտեմբեր 2021-ին, առաւօտեան ժամը 11.00-ին, Ազգային Առաջնորդարանին մէջ:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ
ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

Յարգելի ծնողաց կը տեղեկացնենք, թէ Մերճանեան Մանկապարտէզի 2020-2021 ուսումնական տարեշրջանի Կոկոն եւ Ծաղիկ դասարաններու վերամուտը տեղի պիտի ունենայ Երկուշաբթի, 11 Հոկտեմբեր 2021-ին, իսկ Բողբոջ դասարանի վերամուտը տեղի պիտի ունենայ Երեքշաբթի, 12 Հոկտեմբեր 2021-ին:

Արձանագրութիւնները պիտի սկսին Շաբաթ, 2 Հոկտեմբեր 2021-ին, առաւօտեան ժամը 9:00-12:00:

Նորեկ աշակերտներու ծնողներէն կը խնդրուի բերել ութ (8) փոքր լուսանկարներ ինչպէս նաեւ ծննդեան եւ մկրտութեան բնագիրը:

*****

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Յարգելի ծնողաց կը տեղեկացնենք, թէ Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի 2021-2022 ուսումնական տարեշրջանի վերամուտը տեղի պիտի ունենայ Շաբաթ,9 Հոկտեմբեր 2021-ին:

Արձանագրութիւնները պիտի սկսին Շաբաթ, 2 Հոկտեմբեր 2021-ին, առաւօտեան ժամը 9:00-12:00:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

### ԵԹԷ ՄԵՆՔ ՑԱՆԿԱՆՈՒՄ ԵՆՔ ՄՆԱԼ ՔԱՐՏԷԶԻ ՎՐԱՅ, ՊԷՏՔ Է «ՍՓԻՒՌՔԱՑՆԵՆՔ» ՀԱՅԱՍՏԱՆԸ. ՏԻԳՐԱՆ ԵԿԱՒԵԱՆ

1

քաղաքական կեանքից՝ մի քանի բացառութիւններով: Սփիւռքի հսկայական ներուժը չի օգտագործուել, դա հսկայական վատնում է:

**- 44-օրեայ պատերազմից յետոյ ակնյայտ է, որ Սփիւռքում ընդհանուր առմամբ հիասթափութիւն է: Դա նոյնիսկ արտացոլւում է բարեգործական անհատական նախաձեռնութիւններում: Ի՞նչ սպասումներ կան Սփիւռքում Հայաստանից, ի՞նչ պէտք է անի Հայաստանը՝ յարաբերութիւնների նոր որակ ստեղծելու համար:**

- Պատերազմը ցոյց տուեց, որ Հայաստան-Սփիւռք յարաբերութիւնների մոդէլն արդէն չի գործում: Այն բաւականին հնացած է: Դուք չէք կարող առողջ յարաբերութիւններ կառուցել օգնականութեան եւ գբօսաշրջութեան հիման վրայ, Ցեղասպանութեան յիշողութեան, վերացական ազգայնականութեան եւ իրականութեան զգացման բացակայութեան հիման վրայ:

Հայաստանում եւ Սփիւռքում ապրող հայերը նոյն խնդիրն ունեն. նրանք դժուարանում են պատկերացնել աշխարհն այնպիսին, ինչպիսին կայ, եւ նախընտրում են փախչել իրականից՝ պատրանքներ պահելով: Կարծում եմ, որ հայկական էլիտաները պէտք է մտածողութեան յեղափոխութիւն անեն՝ Սփիւռքի հայերին դրդելով ամրապնդել այս պետութիւնը: Ինչո՞ւ Սփիւռքի «նախարարութիւնը» չվերածել հայրենադարձութեան գործակալութեան: Ինչո՞ւ հնացած հայկական հիմնադրամը չդարձնել զարգացման բանկ: Եթէ Երեւանը պէտք է լինի հայկական աշխարհի հիմնական հանգոյցը, անհրաժեշտ է նշանակալի տեղ յատկացնել Սփիւռքի գործադիրներին՝ տալով նրանց օրինականութիւն: Սա կարող է լինել սենատ կառուցելու ձեւով: Այլ կերպ ասած, եթէ մենք ցանկանում ենք մնալ քարտէզի վրայ, պէտք է «սփիւռքացնենք» Հայաստանը:

Իւրաքանչիւր համայնք ունի պատմական պատասխանատուութիւն՝ մեծ ներդրումներ կատարել այս երկրում ռազմավարական ճանապարհով: Ֆրանսիայի հայերը պարտաւոր են նպաստել Ֆրանկոֆոնիայի զարգացմանը այս երկրում եւ օգնել կառուցել «հայկական soft power», Մերձաւոր Արեւելքի հայերն իրենց «նոու-հաուն» են բերում բիզնէսի, արհեստների, ծառայութիւնների աշխարհում, Միացեալ Նահանգների հայերը՝ ձեռներեցութեան աշխարհում եւ այլն: Բոլորն ունեն իրենց դերը ազգի ընդհանուր բարօրութեան համար, բայց պէտք է լինի նաեւ գիտակցում, որ այս ամէնի հիմքը հայկական պետութիւնն է:

**- Այսօր տեսնո՞ւմ էք այդ գիտակցումը:**

- Հայ դիւանագէտները, հայ զինուորականները, ովքեր իրենց երկրին ծառայում են պրոֆեսիոնալիզմով եւ նուիրումով, ունեն պետութեան զգացում: Բայց նոյնը չեմ կարող ասել քաղաքական դասի մասին, որը շատ յաճախ հակուած է շփոթել անհատական եւ ընդհանուր շահը: Հայաստանը չի կարող ունենալ կոռումպացուած կամ ոչ կոմպետենտ էլիտայի օժտելու շքեղութիւն, որն օգնել է սպառել երկրի կենսական ուժը: Ուժ, որը նախընտրում է ընդգծել տաղանդի նկատմամբ կոյր հաւատարմութիւնը: Սա ազգային անվտանգութեան խնդիր է:

### ԳՆԴԱԿԸ ԹՈՒՐՔԻԱՅԻ ԴԱՇՏՈՒՄ Է, ԱՅԴ ԵՐԿԻՐԸ ՊԷՏՔ Է ՔԱՅԼ ՁԵՌՆԱՐԿԻ ԱՌԱՆՑ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ՈՐԵՒԷ ԲԱՆ ԱԿՆԿԱԼԵԼՈՒ. ԷՍՏՈՒԿԵԱՆ

3

*յարաբերութիւնները աստիճանաբար կարգաւորելու ուղղութեամբ՝ միմեանց տարածքային ամբողջականութեան եւ ինքնիշխանութեան ճանաչման հիման վրայ: Միաժամանակ Էրդողանը ակնարկել է, թէ «անցեալի պատմութիւնը չպէտք է թշնամանքի աղբիւր լինի»:*

*«Միակողմանի մեղադրանքների փոխարէն պէտք է գերակշռեն հեռանկարային, իրատեսական մօտեցումները: Մենք կարող ենք աշխատել աստիճանաբար կարգաւորել մեր յարաբերութիւնները Հայաստանի կառավարութեան հետ, որը յայտարարել է, որ պատրաստ է շարժուել այս ուղղութեամբ: Այժմ մենք պէտք է խաղաղութիւնն ու կայունութիւնը դարձնենք մշտական եւ պայմաններ ապահովենք տնտեսական զարգացման եւ տարածաշրջանային համագործակցութեան համար: Եթէ նոյնիսկ կան տարաձայնութիւններ՝ հարեւանների հետ յարաբերութիւնները պէտք է զարգացնել տարածքային ամբողջականութիւնը եւ սուվերենութիւնը յարգելու հիման վրայ», - ասել է Էրդողանը:*

*Թուրքիայի նախագահը նաեւ անդրադարձել է այսպէս կոչուած «Վեցի հարթակ»-ին, որին կարող են մասնակցութիւն ունենալ Թուրքիան, Ադրբէջանը, Ռուսաստանը, Իրանը, Հայաստանը, Վրաստանը: Նրա խօսքով՝ եթէ այդպիսի հարթակի կազմակերպումը հնարաւոր դառնայ, տարածաշրջանում շատ աւելի հանգիստ կը լինի:*

2

### ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆ
**Թոռան յուշերը Նանիի մասին**

Համայնավար ուժերու յառաջխաղացումին հետեւանքով օտարաբնակները կը ստիպուին հեռանալ Շանկհայէն, եւ 1947-ի կէսերուն Երուանդ ու Ալիտա վերջնականապէս կը հաստատուին ԱՄՆ, երբ Ալիտա երեք ամսական յղի էր: 1948 Փետրուար 1-ին, Լոս Անճելոսի մէջ կը ծնի աւագ զաւակը՝ Էտուին Ժերար Համամճեան: Մնացած խօսքը իրենն է:

Կը մնայ նաեւ յուշերուն մէջ օգտագործուած մէկ անուն մը եւս՝ Ռէյ Մուայէ: Երեք անգամ Օսքարի դափնեկիր իբրեւ Best Art Direction, ինն անգամ առաջադրուած նոյն մրցանակին, Մուայէ ամուսինն էր արեւելեան պարուհի Ջանուպայի: Նախկին եգիպտահայ, բուն անունով՝ Լիւսի Մանուկեան, Ջանուպա 1950-1951-ին ելոյթներ ունեցած է հայկական ակումբներուն համար, ապա գաղթելով ԱՄՆ դարձած հռչակաւոր արեւելեան պարուհի, փոքր ելոյթներով մասնակցելով նաեւ հոլլիուուտեան ֆիլմերու: Ֆիլմերուն մէջ ծանօթ է Լիւսի Մուայէ ամուսնական անունով, մինչ պահելով Ջանուպա մականունը իբրեւ պարուհի:

Հ. Ա.

* * *

Երբ կը մտածեմ մեծմօրս Վալանթինի մասին, անմիջապէս կը յիշեմ իր բազմաթիւ անունները: Ծնած՝ Վալենթինա Առնօ (Valentina Arnaud), յետագային՝ Ասատուրեան: Քրոջս եւ ինծ համար ան պարզապէս **Նանի** էր եւ ասիկա այն անունն է զոր պիտի գործածեմ սոյն գրառումներուս ընդմէջէն զինքը վերագրելու համար:

Իր ամուսինին՝ Հայկ Ասատուրեանին համար ան **Փուսսին** էր, որ փոխադարձաբար զինք կը կանչէր **Նուսսի**: Իր դստեր՝ մօրս Ալիտա Ժերարի համար ան **Մոմսին** էր եւ իր մօր Ագապիի համար՝ **Վալանթին**, ֆրանսական շեշտով արտասանուած (*à la française*): Հօրս (իր փեսային), իր բոլոր բարեկամներուն եւ ընտանիքի միւս անդամներուն համար ան **Թուսսան** էր, բայց երբեմն, զինք գրգռելու համար հայրս կը կանչէր *Ղայնանա*, որ թրքերէն զոքանչ կը նշանակէ: Բայց իմ ամենաշատ լսած անունը Թուսսան էր. կ'ըսէր թէ կու գայ ֆրանսերէն ***Tout ça!***-էն, որ կը նշանակէ *այս բոլորը*: Ինծի համար ան հաստատապէս «այս բոլոր»-ն էր, ամենէն սիրող, ուշադիր, հոգատար... (եւ յաճախ չափէն աւելի ներողամիտ) մեծմայրը՝ զոր երեխայ մը երբեւէ փափաքէր ունենալ: Բայց ինծի համար ան միշտ Նանին էր:

Այս է պատճառը որ մինչեւ տասը տարեկանս, իմ նախասիրած վայրս պիտի ըլլար Նանիի եւ Տէտէի անկողինը՝ խցկուած երկուքին միջեւ, երբ Կիրակի առաւօտները արթննալէս ետք կը միանայի իրենց: Վալանթին կը նստէր՝ ծունկերուն վրայ ունենալով թրքական սուրճի ափսէն, զոր Հայկ ամէն առաւօտ հաւատարմօրէն կը բարձրացնէր երկրորդ յարկ, մինչ երկուքը կը կարդային *Լոս Անճելոս Թայմզի* կիրակնօրեայ թիւը: Վալանթին մասնաւորապէս կը սիրէր կարդալ Քոմիքսը եւ Արուեստի սիւնակը, իսկ Հայկ առանց հապճեպի կը թերթէր միջազգային քաղաքականութեան, պիզնէսի եւ մարզանքի բաժիններուն ընդմէջէն: Կը գտնուէին նաեւ գունաւոր լուսանկարներով բազմաթիւ կիրակնօրեայ հանդէսներ եւ միշտ գոյութիւն ունէին զոյգ մը առձեռն մկրատներ, որպէսզի կտրէի փափաքած լուսանկարներս եւ տեղադրէի ծաղկաքաղ ալպոմիս մէջ, որուն կազմութեան համար տարիներ շարունակ օգնած էր ան: Կը գտնուէին ամէն տեսակ լուսանկարներ տեղավայրերու՝ զորս օր մը պիտի այցելէինք, այլեւ բնութեան գեղեցիկ տեսարաններու եւ յատկապէս մեր ապագայ «երազի տանը»՝ ամբողջութեամբ լողաւազանով շրջապատուած: Տակաւին կը սպասեմ այս տունը երթալու...:

(Շար. 1)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1899 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2021 — *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՌԿ.* — عدد رقم ١٨٩٩ الخميس ٢٣ سبتمبر ٢٠٢١


## Ո՞ՐՆ Է ԷԱԿԱՆԸ

Ազերիները Սիւնիքի ճամբուն վրայ տուգանք կը վերցնեն իրանցի վարորդներէն: Հասկցանք: Ազերիները կաշառակերներ են:

Ազերիները Սիւնիքի ճամբուն վրայ կը ձերբակալեն իրանցի վարորդները: Հասկցանք, ազերիները անարդար մարդիկ են:

Ազերիները այստեղ-այնտեղ այս ու այն բաները կ՚ընեն: Հասկցանք: Ազերիները վատ ժողովուրդ են:

Ազերիներուն տնտեսութիւնն ալ վատ է: Ան հիմնուած է քարիւղի վրայ, հետեւաբար քանի մը տասնեակ տարիներ ետք, երբ քարիւղը վերջանայ աշխարհի ընդերքէն, տնտեսութիւնը պիտի քայքայուի ու Ազըրպէյճանի պետութեան գոյութիւնը վտանգի առջեւ պիտի յայտնուի: (Կարծէք մենք հայերս վերջին 30 տարիներուն հիմնած ըլլայինք մեր տնտեսական հեռանկարն ու տեսլականը: Ստեղծեցինք մակաբուծական դրամատիրութիւն մը՝ հիմնուած քանի մը օլիկարքներու քմահաճ տնտեսվարութեան եւ աճուելի թալանի վրայ: Գոնէ այդ մակաբուծութենէն ազատելու Փաշինեանի ճիգերը հանդիպեցան օլիկարքական համակարգի անհաւատալի հակաճառութեան, մինչեւ որ ան՝ իր երկրորդ շրջանին համար, լռելեայն ընդունեց մակաբուծութեան գոյութիւնը, չխօսելով օլիկարքութեան դէմ պայքարի փաստացի անկարելիութեան մասին:)

Վատ ժողովուրդը՝ վատ տնտեսութեան հետ, ունի վատ նախագահ: Քարվաճառի մէջ պարոն Ալիեւ յայտարարեր է՝ որ Սիւնիքը, Սեւանը, Վարդենիսը եւ Երեւանը պատմական ազըրպէյճանական հողեր են: Լաւ է որ բաներ մը ձգեց Հայաստանին: Կարծեմ Արարատն ալ ազըրպէյճանական լեռ եղած էր: Մոռցաւ ըսելու:

Լաւ: Յետոյ ի՞նչ ընենք որ այդպէս ըսեր է: Պարզապէս կարելի է ժպիտ մը նետել այս արտայայտութեան վրայ ու անցնիլ առաջ: Բացի եթէ կ՚ուզենք մենք եւս հայրենասիրական թիւ մը վաստակիլ՝ մեր արդէն գոյութիւն ունեցող գերհայրենասիրութեան վրայ: Ալիեւը տուաւ այս առիթը: Եւ ամենայն հայոց պատմաբանը չուշացաւ «գիտականօրէն» պատասխանել Ալիեւին՝ հայկական շրջանակի մէջ եւ հայերուն ուղղուած խօսքով (այսինքն՝ մենք ենք մեր սարերը), պատմաբանելով՝ որ Պաքուն եղած է հայկական: Ամբոխավարութիւն՝ ամբոխավարութեան դէմ: Մէկ տարբերութեամբ. Ազըրպէյճանի բռնատէր արքան՝ ընդդէմ հայոց «գիտական» ինքնաներկայացուցիչին:

Հիմա եթէ ազերին իր ամբողջութեան մէջ վատ ժողովուրդ է եւ անոր գլուխը կանգնած անձը աւելի վատ է քան նոյն ինքը վատ ժողովուրդը, ինչպէ՞ս պէտք է մենք՝ կաշառք չվերցնող, արդարամիտ, բարի ու գիտականութեամբ առաջնորդուող հայ ժողովուրդս վերաբերինք այդ բոլորին: Հաստատապէս ոչ խօսքային վատաբեկումով, լրատուային պոռչըտուքով, ակադեմական հռետորաբանութեամբ եւ վերադիր ամբոխավարութեամբ, որոնք միտուած են մնալ այդպէս՝ աղմուկի սահմաններուն մէջ: Վատ ժողովուրդին եւ ղեկավարին աղմուկով չեն դիմաւորեր:

Բայց, անշուշտ, հարցը շատ աւելի հեռու է վատ ու բարի ըլլալէ: Հարցը կը գտնուի բոլորովին այլուր: Վերոյիշեալները երկրորդային կարեւորութիւն ունին իրական հողի վրայ: Վասն ոչինչի երկկողմանի բարձրացած աղմուկը այդ իրական այլուրէն ինքնակամօրէն եւ հաճոյաբար անջատուելու հրճուանք մըն է: Հրճուանք՝ աղմուկի ու ժխորի մէջ: Մինչդեռ այդ այլուրը գործնական է ու գործնապաշտ: Հեռու է հաճոյակատարութիւն ըլլալէ:

Այսպէս, Սեպտեմբեր 6-11-ին, Բերձոր-Լաչինի միջանցքի մերձակայքը կայացաւ թուրքա-ազըրպէյճանական յատուկ նշանակութեան զօրքերու համատեղ զօրավարժութիւններ, որոնք առաջինն էին Ղարաբաղի տարածքին վրայ 44-օրեայէն ետք: Զօրավարժութիւններ՝ Հայաստան-Արցախ տարածքային միացումի եւ Արցախը շրջափակումէ զերծ պահող միակ հնարաւոր ճանապարհին մերձակայքը: Ուրեմն, ուղղակի սպառնալիք միջանցքը փակելու:

Հիմա հայկական պաշտօնական կողմը քիչ մը պոռաց՝ որ ասիկա եռակողմ համաձայնութեան դէմ է: Իսկ Ռուսաստանը Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակ Զախարովայի բերանով յայտարարեց՝ որ Ռուսաստան Պաքուին յայտնած է իր դիրքորոշումը այս զօրավարժութիւններուն նկատմամբ, բայց ձեռնպահ կը մնայ հրապարակային յայտարարութիւններէ: Եւ նման բաներով ուրախացանք: Առաջնային հարցը մղուեցաւ երկրորդային մեկնաբանական հարթակ:

Զարմանալին այն է՝ երբ կը զարմանանք այս զօրավարժութիւններէն, կամ կը ձեւացնենք անակնկալի եկած ըլլալ:

Յիշեցնեմ, որ Յուլիսին, ազըրպէյճանական AzTV հեռատեսիլի կայանի հարցազրոյցին մէջ Ալիեւ շեշտած էր. «Մենք ամէն օր կը վերահսկենք ու կը հաշուարկենք՝ թէ քանի ինքնաշարժ անցած է Լաչինի միջանցքով եւ քանի հատ հեռացած»:

Ըսած էի, կ՚ըսեմ ու պիտի ըսեմ: Ղարաբաղի հարցը Թուրքիոյ, Ռուսաստանի եւ Ազըրպէյճանի համար պէտք է մնայ ՉԿԱՐԳԱՒՈՐՈՒԱԾ: Հիմքը՝ ոչ-կարգաւորումն է: Ղարաբաղի հարցը շատոնց դուրս ելած է հայ-ազըրպէյճանական հակամարտութենէն եւ մտած միջազգային գինարտադրութեան ծիրին մէջ՝ դառնալով անոր կարեւոր կեդրոններէն մէկը: Կարգաւորում պիտի նշանակէ զէնքի թօթափում, գինարդիւնաբերական անդրազգային ընկերութիւններու գերշահոյթի նուազում: Այս կապը շատ կարեւոր է: Սիւնիքի կապակցութեամբ այսօր գոյութիւն ունեցող ԲՈԼՈՐ խնդիրները, ինչպէս նաեւ Լաչինի զօրավարժութիւնները եւ այլ լուրջ հարցեր՝ որոնք ներկայիս առկայ են եւ որոնց նմանները անպայմանօրէն պիտի ծագին (աւելի ճիշդ՝ արհեստականօրէն պիտի երեւան բերուին) մօտ ու հեռու ապագային, ուղղակի արդիւնքը պիտի ըլլան ոչ-կարգաւորումին: Ո՛չ Լեւոն Տէր-Պետրոսեան, ո՛չ Ռոբերտ Քոչարեան, ո՛չ Սերժ Սարգսեան, ո՛չ Նիկոլ Փաշինեան կարող էին Ղարաբաղի հարցը կարգաւորել, հակառակ առաջին երեքին տարօրինակ պնդումներուն՝ թէ *իրենք* կրնային ըլլալ Ղարաբաղի հարցի լուծումի բանալիները, եթէ շարունակէին ղեկավարել երկիրը: Այս առումով, Հայաստանի չորս առաջնորդներն ալ կը հաւասարին իրարու: Անոնցմէ ո՛չ մէկը ունէր կարգաւորելու բանալին: Բանալին շատոնց տրուած էր ուրիշներու, կամ խլած էին ուրիշները:

Ղարաբաղի հարցը տակաւին երկար պէտք է մնայ չկարգաւորուած, անկէ բխած յետագայ բոլոր բախումներով, այլեւ պիտի մնայ այդպէս՝ ազերիներուն համար բախումներ ստեղծելու հնարաւորութիւն ընձեռելու համար: Ազըրպէյճանի եւ ուրիշներու համար նպաստաւոր է ոչ-կարգաւորուած վիճակը՝ ան կը բխի իրենց սեփական շահերէն: Հայաստանի համար նպաստաւոր է կարգաւորուած վիճակը՝ որ նոյնպէս կը բխի իր սեփական շահերէն:

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՎԱՐՉԱՊԵՏԻ ԵՒ ԱՐՏԱԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ԽՈՐՀՐԴԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԵՐԿՐՈՐԴ ՆԻՍՏԸ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Սեպտեմբերի 11-ին մասնակցել է արտախորհրդարանական քաղաքական ուժերի հետ համագործակցութեան խորհրդակցական ժողովի երկրորդ նիստին:

Նիստին մասնակցել են Հանրապետութիւն Կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը, Ազատական Կուսակցութեան առաջնորդ Սամուէլ Բաբայեանը, Ալեանս առաջադիմական ցենտրիստական կուսակցութեան առաջնորդ Տիգրան Ուրիխանեանը, Արդար Հայաստան կուսակցութեան ղեկավար Նորայր Նորիկեանը, Ինքնիշխան Հայաստան կուսակցութեան ղեկավար Դաւիթ Սանասարեանը, Հայաստանի եւրոպական կուսակցութեան ղեկավար Տիգրան Խզմալեանը, Հայաստանի Քրիստոնեայ-Դեմոկրատական կուսակցութեան նախագահ Լեւոն Շիրինեանը, Միասնական Հայրենիք կուսակցութեան նախագահ Մհեր Տէրտէրեանը, Պահպանողական Կուսակցութեան ղեկավար Միքայէլ Հայրապետեանը, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի վարչութեան ատենապետ Սեդրակ Աճէմեանը, Հայաստանի դեմոկրատական կուսակցութեան ներկայացուցիչ Տիգրան Արզաքանցեանը:

Նիկոլ Փաշինեանը ողջունել է ժողովի մասնակիցներին եւ մաղթել յաջող ու արդիւնաւէտ քննարկումներ:

Վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ արտախորհրդարանական քաղաքական ուժերի ղեկավարների մասնակցութեամբ յաջորդ նիստը տեղի կ՚ունենայ առաջիկայում:

## ՎԱՐՉԱՊԵՏԻ ԽՕՍՆԱԿԸ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ Է ԷՐԴՈՂԱՆԻՆ

Հայաստանի վարչապետի մամուլի խօսնակ Մանէ Գէորգեանն անդրադարձել է Թուրքիայի նախագահ Ռեջէփ Թայիփ Էրդողանի այն յայտարարութեանը, թէ վարչապետ Նիկոլ Փաշինեանը Վրաստանի վարչապետ Իրակլի Ղարիբաշվիլի միջոցով իրեն հանդիպման առաջարկ է արել: Մանէ Գէորգեանը նշում է, որ Թուրքիայի հետ խօսակցութեան մեկնարկի՝ իր պատկերացումների մասին վարչապետը խօսել է Ած-կառավարութիւն վերջին հարցուպատասխանի ընթացքում՝ ասելով, որ կարծում է՝ բարձր մակարդակի շփումներին պէտք է նախորդեն աշխատանքային քննարկումներ, եւ միջազգային գործընկերներին նոյնպէս այս պատկերացումն է ներկայացնում:

Ներկայացնում ենք թեմայի վերաբերեալ *Արմենպրէսի* (20 Սեպտեմբեր) հարցերն ու վարչապետի մամուլի խօսնակ Մանէ Գէորգեանի պատասխանները.

**Հարց – Թուրքիայի նախագահ Ռեջէփ Թայիփ Էրդողանը յայտարարել է, թէ Հայաստանի վարչապետը Վրաստանի վարչապետի միջոցով իրեն հանդիպման առաջարկ է արել, ի՞նչ կ՚ասէք այս մասին:**

Պատասխան – Վարչապետ Փաշինեանն իր բոլոր միջազգային շփումներում գործընկերներին ներկայացնում է կառավարութեան ծրագրում արձանագրուած՝ Հայաստանի եւ տարածաշրջանի համար խաղաղ զարգացման դարաշրջան բացելու տեսլականը եւ արտայայտում է այդ ուղղութեամբ ջանքեր գործադրելու Հայաստանի կառավարութեան պատրաստակամութիւնը: Թուրքիայի հետ խօսակցութեան մեկնարկի իր պատկերացումների մասին վարչապետը խօսել է Ած-կառավարութիւն վերջին հարցուպատասխանի ընթացքում, ասելով, որ կարծում է, որ բարձր մակարդակի շփումներին պէտք է նախորդեն աշխատանքային քննարկումներ եւ միջազգային գործընկերներին նոյնպէս այս պատկերացումն է ներկայացնում: Այս պահի դրութեամբ Հայաստանի եւ Թուրքիայի պաշտօնեաների միջեւ որեւէ շփում տեղի չի ունեցել, չնայած Հայաստանի կառավարութիւնը պատրաստ է նման շփումների: Այսպիսի

↳ 4

# ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆ

## Թուան յուշերը Նանիի մասին

**ԷՏՈՒԻՆ ԺԵՐԱՐ ՀԱՄԱՄՃԵԱՆ**

**Թարգմանեց՝ Հ. Ա.**

Անձնական գործերով տարուածութիւնը երբեք խոչընդոտ չէ հանդիսացած՝ որ Նանին եւ Տէտէն չփացնեն իրենց փոքրիկ Թունիկը համբոյրներով, գրկախառնումներով, փաղաքշանքներով, վիզի ու կռնակի մերսումներով եւ սիրալիր խօսքերու դէզերով: Իրենց կրնայի պատմել այն բոլորը՝ ինչ չէի կրնար պատմել ծնողքիս, իսկ իրենք սրտանց կը լսէին զիս՝ առանց երբեք դատելու: Երբոր ծնողքս զիս ընտրութեան առջեւ կանգնեցնէր Ա.-ի եւ Բ.-ի միջեւ, Նանի պիտի ստիպէր զիս հարցնելու՝ «Ինչո՞ւ չէ ԵՐԿՈՒՔԸ»: Կիրակի առաւօտուայ հրեշտակ մեծ ծնողքս միշտապէս կը վստահեցնէր զիս՝ որ կեանքը գեղեցիկ ու արժանի ճանապարհորդութիւն մըն է եւ ես ուրախութեամբ ու դիւրութեամբ պիտի նաւարկեմ անոր ընդմէջէն: Այսօր՝ 73 տարեկանիս, կը կարծեմ որ անոնք ճիշդ ճամբու մէջ դրին զիս, քանի որ հակառակ մանկութեանս ունեցած լուրջ առողջական խնդիրներուս, կեանքս եղաւ բաւական սահուն նաւարկութիւն մը, եւ իրենց նկարագրած ճանապարհորդութիւնը արդարացուց կանխատեսումը:

Նանին եւ Տէտէն լրիւ կը գիտակցէին՝ որ կը հանդիսանան իմ նախասիրած ծնողական դասը, եւ երբեք չէին մոռնար յիշեցնելու նախասիրած անկողինս թողելէս ետք երթալ ու նստիլ «իրական» ծնողքիս հետ՝ *անոնց* անկողինին մէջ, որպէսզի ինքզինքին չզգան թերագնահատուած: Բայց միշտ կը գիտակցէի՝ որ ծնողքիս համար ակներեւ էր, թէ իրենք հաստատապէս չեն հանդիսանար Կիրակի առաւօտուայ գրկախառնութեան ժամանցի առաջին ընտրութիւնս:

Նանին «ընող» մըն էր: Երբեք չէր դադրեր տնական աշխատանքը ընելէ: 1956-ին ութ անձեր կը բնակէին ծնողքիս բնակարանը Պեւերլի Հիլսի El Camino Drive-ին վրայ. վեցամեայ քոյրս եւ ես, ծնողքս՝ Երուանդ եւ Ալիտա, Նանին եւ Տէտէ Հայկը, Տէտէ Ստեփանը (Վալանթինի առաջին ամուսինը) եւ Ագապին՝ Վալանթինի 70-ամեայ մայրը: Նանին էր որ կ'ընէր լուացքին մեծամասնութիւնը: Անընդհատ հագուստներու հսկայ տոպրակներ կը կրէր դուրսը՝ լուացքի մեքենային մէջ, ապա զանոնք կը չորցնէր, կը ծալէր եւ կը բաժնէր: Երբեք չէր արտօներ դստեր Ալիտային ճաշէն ետք ամանները լուալու, վախնալով որ օճառը կրնայ վնասել իր թանկագին ձեռքերը: Նանին միշտ կ'ընէր ամաններու լուացումը՝ հօրս օգնութեամբ:

Ան նաեւ կ'եփէր հրաշալի ճաշեր, յատկապէս բազմաթիւ իտալական կերակուրներ՝ զորս հաւանաբար սորված ըլլար հօրմէ: Իր մասնագիտութիւնն էր *Սթիֆաթոն*, որ կարծեմ տեսակ մը յունական շոգեխաշ մըն է՝ քանի մը ժամ կարմիր գինիի մէջ եռացած կովու միսով եւ մարգարիտ սոխերով: Բայց իր մեծագոյն կիրքն էր սփակեթթին: Երբեմն, ճաշէն ժամեր անց, ինքը եւ մայրը կ'որոշէին կարօտցած ըլլալ իրենց «աղուոր ֆըշըր-ֆըշըր մախարնա» կոչած ճաշապնակը եւ կէսգիշերին կը խուժէին խոհանոց ու կ'եռացնէին լոլիկի սօուսով տաք սփակեթթիի հսկայ կաթսաներ: Հայրս յաճախ կը կատակէր՝ թէ ինչպէս Նանի կրնար պատառաքաղին վրայ տեղաւորել փաթթուած սփակեթթիի հսկայ գնդակներ եւ այս բոլորը տեղաւորել թուացեալ մանրիկ բերանին մէջ: Կը կարծէր որ ան պէտք է ունենայ վայրի կատուային ծիներ՝ որոնք իր ծնօտը լայնօրէն բանալ կու տան անօթի ընձառիւծի մը նման:

Ան յաճախ կ'ուտէր այն ժամանակ՝ երբ ուրիշները չէին ուտեր: Չէր սիրեր շատ ուտել ճաշի ժամանակ՝ երբ ողջ ընտանիքը սեղանին առջեւ նստած կը վայելէր իր համեղ ճաշերը, այլ կը նախընտրէր ոտքի վրայ բան մը ուտել՝ երբ բոլորը կը պատրաստուէին մտնել անկողին: Այդ ժամանակ կը նստէր բազմոցին վրայ հեռատեսիլին առջեւ՝ մէկ ոտքը դրած յետոյքին տակ, եւ չոր, ճերմակ հացի մեծ շերտերը կը թաթխէր հալած կարագով շաղախուած տաք կաթի թասին մէջ: Ըստ երեւոյթին, այս աւանդոյթը կու



Հայկ Ասատուրեանի (ձախին) եւ Վալանթին Ամիրայեանի (մէջտեղը) ամուսնական լուսանկարը, Տիթրոյթ, 28 Հոկտեմբեր 1936: Աջին՝ Վարդան Արք. Գասպարեան (Էտուին Համամճեանի հաւաքածոյէն):

գար իր իտալացի հօրմէ: Ցետագային կարդացի ցուրտ ձմեռուայ ընթացքին տաք, կարագոտ կաթի մէջ չոր հացի թաթախումի աւանդոյթին մասին հիւսիսային Իտալիոյ մէջ, ուր կը գտնուին իր հօր Նիքոլայ Միշէլ Առնոյի արմատները: Կը ցաւիմ մեծհօրս երբեք հանդիպած չըլլալուս համար: Զինք կը կոչէին Միշէլ Տէտէ: Ըստ երեւոյթին, ինք եւս եղած էր երաժիշտ եւ արուեստագէտ, եւ աղօտ կերպով կը յիշեմ իր մասին յիշատակութիւնը նաեւ իբրեւ պարող (*): Մահցաւ ծնունդէս շատ առաջ, թողելով որ Ագապին առանձին մեծցնէ Վալանթինն ու անոր քոյրը Օկիւսթա: Օկիւսթա ամուսնացաւ հօրս հետ եւ ջրծաղիկէ մահցաւ Շանկհայի մէջ՝ երբ ճաբոնական բանակը կը յառաջանար դէպի քաղաք: Ագապի ի վերջոյ ամուսնացաւ զուիցերիացի Էմիլ Մօրէրի հետ՝ որ դարձաւ Վալանթինի խորթ հայրը, եւ ապա ամուսնալուծուեցաւ:

Կը յիշեմ՝ թէ ընտանիքի միակ անդամը որուն հետ Նանի անհանդստութիւններ ունեցած է, եղած է սեփական մայրը՝ Ագապի: Զաւով մը, Մամա Ագապիի խօսքերը սրտնեղացուցիչ էին դստեր համար: Անընդհատ կը վիճէին եւ ասիկա միակ պարագան է երբ Նանին կը տեսնէի իրապէս վրդոված եւ վիճաբանող: Կը կարծեմ Ամերիկա փոխադրութիւնը ցնցած էր տարեց մօրը՝ 70 տարեկանը լրացուցած խիստ յղկուած ու եւրոպականացած հայ տիկին մը, որ տակաւին վերջերս երեք տարիներ անցուցած էր պատերազմէն յօշոտուած Մանիլայի մէջ, ապաստանելով սպանիացի մայրապետներու մենաստան մը: Տարեցներուն հանդէպ գոյութիւն ունեցող յարգանքի պակասը Ամերիկայի մէջ, բարդուած այն հանգամանքով՝ որ անգլերէնը չէր հանդիսանար իր խօսած հինգ լեզուներէն մէկը, Ագապին դարձուցին յուսախաբ եւ անհանգիստ ծեր զաղթական մը, որ պէտք է յարմարուէր ամբողջապէս անծանօթ եւ չներող մշակոյթի մը: Ան յարատեւօրէն կը գանգատէր, իսկ Նանի չէր կրնար զայն հանդուրժել: Հակառակ իր բոլոր ջանքերուն, ան երբեք չկրցաւ երջանկացնել Ագապին: Կը յիշեմ անոնց մշտական կռիւները հայերէն լեզուով՝ որ երբեմն կը փոխուէր թրքերէնի, երբ չէին ուզեր հասկնալի դառնալ իրենց զաւակներուն: Նանիի կեանքի յաջորդող տարիներուն մեծ մասը անցաւ փորձելով իր մօրը համար հանգստաւէտ բնակարաններ գտնել: Զինք փոխադրեցին East Adams Blvd-ի եկեղեցիին քովը գտնուող հայկական Ծերանոցը: Աղաչեց ձգել Ծերանոցը, պնդելէ ետք որ Բենիամին անունով 86 տարեկան մարդ մը սեռական ոտնձգութիւն կը կիրարկէ իր հանդէպ:

1956-ին, Նանիի առաջին ամուսինը Ստեփան կու գայ Գահիրէէն եւ կ'ապրի մեր բոլորիս հետ: ➪ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԱԾՈՒԹԵԱՄԲ՝ «ՄԱՐՏԻ 1»-Ի ԳՈՐԾԸ ՓԱԿՈՒԵԼ Է.

**ՍԵԴԱ ՍԱՖԱՐԵԱՆ**

Մարտի 1-ի հարցը քաղաքական լուծում է ստացել, եւ այս դատարանն անում է այն, ինչ, ըստ էութեան, առաջին ատեանի դատարանն էր անում, անգամ ներկայացրածդ վերաքննիչ բողոքը չեն ուզում լսել ամբողջական, եւ դու հասկանում ես, որ դատարանը եկել է ուղղակի ինչ-որ ձեւական գործընթաց իրականացնի: Այս մասին Medialab.am-ին տուած հարցազրոյցում ասել է փաստաբան Սեդա Սաֆարեանը: Վերաքննիչ բողոքների քննութիւնն աւելի շատ ձեւականութեան տարր է պարունակում, դատախազներն ուզում են ցոյց տալ, որ իրենց ուժերի ներածին չափ անում են ամէնը:

«2008 եւ 2021 թուականների դատավարութիւնների մէջ տարբերութիւն չկայ. 2008-ին Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը շատ արագ լուծում տուեցին քաղաքական ընդդիմադիր խաւի դաշնագրին, իսկ այս պարագայում երկարաժամկէտ մաշեցին հանրութեանը եւ ուշադրութիւնը շեղելու համար ընտրեցին այս տակտիկական խնդիրները: Որեւէ ակնկալիք չունեմ այս դատարանից, «Մարտի 1»-ի էջը փակուել է նախկինում, այն փակելու քայլեր արւում են նաեւ այսօր: Տուժող կողմը գտնում է, որ սպառուած է իր պայքարը ներպետական դատական համակարգում, եւ այլեւս չենք ուզում յոյս կապել նախաքննական ու դատական մարմինների հետ», – ասել է Սաֆարեանը:

## ԱՊԱՇՐՋԱՓԱԿՈՒՄԸ ԹՈՅԼ ԿԸ ՏԱՅ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆԱ-Ն ԵՐԿՈՒ ՏԱՐՈՒԱՅ ԸՆԹԱՑՔՈՒՄ ԱՒԵԼԱՑՆԵԼ 30 ՏՈԿՈՍՈՎ. ՔԵՐՈԲԵԱՆ

Տարածաշրջանում հաղորդակցութեան ուղիների ապաշրջափակումն էապէս կը բարելաւի հնարաւորութիւնները եւ թոյլ կը տայ Հայաստանի համախառն ներքին արդիւնքը (ՀՆԱ) երկու տարուայ ընթացքում աւելացնել 30 տոկոսով: Այս մասին Սեպտեմբերի 20-ին, «Ռուս-հայկական բիզնէս-երկխօսութիւն» համաժողովի ժամանակ՝ պատասխանելով *Սիվիլ Նէթ*ի հարցին, ասաց Հայաստանի էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը:

ՀՆԱ-ի 30 տոկոս աճը, նախարարի խօսքով՝ տեղի կ'ունենայ, եթէ ապաշրջափակուեն տարածաշրջանում հաղորդակցութեան բոլոր ուղիները Հայաստանի ու Ադրբէջանի, ինչպէս նաեւ Հայաստանի ու Թուրքիայի միջեւ:

«Հաշուարկուած է, որ տարածաշրջանում հաղորդակցութեան ապաշրջափակումը կը յանգեցնի Հայաստանի ՀՆԱ-ի 30 տոկոս աճին: Սա ոչ միայն մեր, այլ միջազգային գործընկերների, այդ թւում Համաշխարհային Բանկի ու Ասիական Զարգացման Բանկի ուսումնասիրութիւններն են», - նկատեց Վահան Քերոբեանը:

Թէեւ հաղորդակցութեան ապաշրջափակումը հայ-ռուսական համաժողովի թեման չէր, բայց նախարար Քերոբեանը նկատեց՝ «շատ լաւ հասկանում ենք, որ այն էապէս կը բարելաւի հնարաւորութիւնները եւ մրցունակ կը դարձնի այն նախաձեռնութիւնները, որոնք մենք քննարկում ենք այստեղ»:

Իր հերթին Ռուսաստանի տնտեսական զարգացման փոխնախարար Դմիտրի Վոլվաչը յայտնեց, որ փոխադարձ առեւտրի արգելքները վերացնելու համար այժմ վերակառուցւում են Վերին Լարսի ենթակառուցուածքները:

«Մինչեւ 2022-ի կէսերը կ'աւարտուեն մարդատար աւտոմեքենաների մասով ենթակառուցուածքի վերակառուցումը Վերի Լարսի անցակէտում: Տարուող աշխատանքների արդիւնքում մինչեւ 2022-ի վերջը թողունակութիւնը Վերին Լարսում օրական 6,5 անգամ կ'աւելանայ՝ հասնելով 2,650 բեռնատար աւտոմեքենայ՝ մինչեւ 3 հազար աւտոմեքենայ ընդլայնելու հնարաւորութեամբ: Սա լուրջ եւ պրակտիկ քայլ է մեր երկկողմ եւ ԵԱՏՄ-ի շրջանակում համագործակցութեան համար՝ ուղղուած ապրանքաշրջանառութեան հեշտացման ու դրա ծաւալների աճին», - ասաց Վոլվաչը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՃԱՀԱԿԻՐԻ* 42-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻ ՖԱՅՐՈՒԶԻ ՄԱՍԻՆ

Լոյս տեսաւ *Ճահակիրի* Թիւ. Յաւելուածը՝ *Եգիպտական սինեմայի առաջին հայ աստղը՝ Ֆայրուզ* (250 էջ):

Կը բովանդակէ դերասանուհի, երգչուհի եւ պարուհի Ֆայրուզի (բուն անունով՝ Փերուզ Գալֆայեան) կենսագրութիւնը եւ խաղացած տասը ֆիլմերուն (1950-1959) մանրամասն նկարագրութիւնը՝ ճոխացած բազմաթիւ լուսանկարներով:




Ստանալու համար դիմել՝
tchahagir@journalist.com.

ՌՈՒՍԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՔՈՎ ԴԷՊԻ ՆԱԽԻՋԵՒԱՆ ՄԻՋԱՆՑՔ ԲԱՑԵԼՈՒ ՀԱՐՑ ՉԻ ՔՆՆԱՐԿԻՈՒՄ. ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏ

Եռակողմ աշխատանքային խմբում չի քննարկւում Հայաստանի տարածքով դէպի Նախիջեւան միջանցք բացելու հարց: *Արմենպրէսի* հաղորդմամբ՝ այս մասին լրագրողների հետ Սեպտեմբերի 20-ի ճեպազրոյցում ասաց ՌԴ փոխվարչապետ Ալեքսէյ 4

## ԿՐԹՈՒԹԻՒՆ ԿԱՐՈՂ ԷՔ ՍՏԱՆԱԼ, ԱՂՋԻԿՆԵ՛Ր, ԲԱՅՑ ՄՆԱՑԷՔ ԽՈՀԱՆՈՑՈՒՄ

ՃԱՐՈՒՀԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Ամէն տարի, երբ Սեպտեմբերին ազդարարւում է նոր ուսումնական տարուայ մեկնարկը, դպրոց են գալիս առաջին դասարանցիները: Նրանք մուտք են գործում կրթօջախ ու ստանում առաջին դասագիրքը՝ Այբբենարանը: Անհամբեր, սպասումով լի փոքրիկների աչքերը վազում են գունազարդ էջերով եւ արագ փորձում պատկերացում կազմել կրթութեան բովանդակութեան մասին, ու ի՞նչ...

Կրթօջախում, ինչպէս ընտանեկան օջախում, նկարազարդ գրքում Հայրիկն իր սիրած բազմոցին նստած թերթ է կարդում, իսկ մայրիկը՝ խոհանոցում ճաշ է պատրաստում: Եւ հէնց տարրական դպրոցի դասագրքերից էլ սկսւում է դերաբաշխումը, խտրականութիւնը, տղամարդկային ու կանացի համարուող աշխատանքի, մասնագիտութեան, կերպարների ամրապնդումը:

Կրթական համակարգում դասագրքերի պատկերները ցուցադրում են ուժեղ, կամային յատկանիշներով օժտուած արական կերպարների եւ տնային հոգսերի մէջ թաթախուած իգական սեռի ներկայացուցիչների: Այբբենարանի պատկերներում յայտնուող մայրիկը խոհանոցում կերակուր է պատրաստում, իսկ աղջիկ երեխան օգնում է նրան: Եթէ նոյնիսկ երեխաները բնութեան գրկում են, ապա տղաները ակտիւ խաղում են՝ լողում, վազվզում, ծառ մագլցում, իսկ աղջիկները՝ մայրիկների օրինակով, լծւում կերակուր պատրաստելու կանացի գործին, կարծես աղջիկ երեխան կարիք չունի ակտիւութեան, չի կարող գնդակ խաղալ կամ լողալ, նա հէնց սկզբից պէտք է ունենայ կերակրողի պարտականութիւն:

Դասագրքերում քիչ չեն երջանիկ, խաղաղ, «օրինակելի ընտանիքի» պատկերները՝ յստակ բաժանուած դերերով, որտեղ տատիկները գուլպայ են գործում, թէեւ վաղուց ես չեմ ճանաչում տատիկների, որոնք գուլպայ գործել ընդհանրապէս գիտեն, պապիկները հեռուստացոյց են դիտում: Դէ, իհարկէ, տատիկը չի կարող պապիկի հետ պարզապէս հեռուստացոյց դիտել: Նա պարտադիր պէտք է իգական դերին համահունչ գործով զբաղուի: Կնոջը հեռուստացոյցի առաջ հանգիստը վայելելը հակացուցուած է: Պատկերուած իդէալական ընտանիքը համախմբող որեւէ զբաղմունք չկայ, ընտրուած է ընտանիքը միմեանցից բաժանող մօտեցումը՝ շիւղերը ձեռքին տատիկ, հեռուստացոյց դիտող պապիկ, թերթ կարդացող հայրիկ, կերակուր պատրաստող մայրիկ, ու նոյնիսկ տարբեր սեռերի երեխաները միասին որեւէ բան չեն խաղում, աղջիկը՝ տիկնիկ, տղան՝ մեքենայ: Ընտանիքը գուտ ֆիզիկապէս է գտնւում նոյն տարածքում, ընդ որում՝ մի քանի սերունդ նոյն բնակարանում, որտեղ ամէն մէկն իր դերն է կատարում՝ չնկատելով միւսի գոյութիւնը:

Այս մօտեցումը խիստ վնասակար է գենդերային կարծրատիպերի ամրապնդման ու նաեւ հասարակութեան, պետութեան կառուցման տեսանկիւնից: Միասին որեւէ գործողութիւն կատարել, թէկուզ նայել հեռուստացոյց, լոտօ, շախմատ խաղալ կամ պարել, երգել, նուագել, չեն պատկերում, դա մեր ընտանիքներում չի կարող պատահել: Մեր երջանկութիւնը տարանջատուած է, մեր երջանկութիւնը մեր յստակ դերաբաշխուած պարտականութիւններն են:

Ինչ վերաբերում է դասագրքերում պատկերուող մասնագիտութիւններին, ապա կանանց վերապահուած են ուսուցչուհու, պարուհու, վաճառողի, հացթուխի, կար ու ձեւ անողի, տնային տնտեսուհու դերերը, շատ հազուադէպ կարելի է հանդիպել նաեւ բուժքոյրերի: Առաւել լուրջ եւ բազմազան է տղամարդկանց մասնագիտական ցանկը՝ երաժշտից սկսած մինչեւ գիտնական, շինարար, վարորդ, նկարիչ, տիեզերագնաց ու ոստիկան: Եւ եթէ տղաները կարող են անկախ ներկայանալ, ապա կանանց կերպարները զուգորդւում են կենցաղային հոգսերով:

Գերիշխողը մայրիկի կերպարն է, որն այնպէս է տարուած խոհանոցային գործերով, որ նոյնիսկ նկարից կարելի է կերակրատեսակի բուրմունքը զգալ: Այդ բուրմունքի մասին նոյնիսկ տեքստեր կան դասագրքում, երբ երեխային փորձում են բացատրել քթի ֆունկցիան, որով նա զգում է մայրիկի թխած կարկանդակների համադամ հոտը: Իսկ աղջիկ երեխան կամ օգնում է մայրիկին, կամ էլ՝ տիկնիկ է խաղում: Քնքուշ ու լալկան աղջիկները դասագրքերում հակադրւում են չարաճճի, ինքնուրոյն ու համարձակ տղաներին:

Եւ որքան էլ Հայաստանի աշխատանքի ու սոցիալական հարցերի նախարարութեան դիմաց «Անվախ աղջկայ» արձանը կանգնեցնենք, մեր դասագրքերը բոլորովին այլ աղջիկներ ու կանայք են պատկերում, որոնց հետ մեր երեխաները շփւում են ամէն օր՝ ընդօրինակելով դրանք: Յետոյ էլ զարմանում ենք, թէ ինչու կանայք քիչ են քաղաքականութեան, գիտութեան ու տնտեսութեան մէջ: Նրանց կրթութեան հէնց առաջին օրուանից ցոյց են տուել իրենց տեղը՝ խոհանոցը:

*Սիվիլ Նէթ*

ԽՈՀԵՐ

## ՄԷԿ ԱՆՁԸ՝ ԱՄԷՆ ԲԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ամբողջ էութեամբ եւ ժամանակով աւանդականներէն մէկուն մէջ մեծցած «գինուոր»-ներուն եւ «մտաւորական»-ներուն առանձնայատկութիւնն այն է՝ որ իրենց պատկանող ամէն բան կը դառնայ բացառիկ, իսկ միւսներունը՝ վատ, առաւելագոյնը՝ ընդունելի, հիմնականապէս՝ թապու:

Օրինակ, բնազդաբար իմ բանաստեղծս լաւ է՝ առանց նոյնիսկ մէկ բառ կարդացած ըլլալու անկէ, կամ, աւելի մտահոգիչը, կարդացած ըլլալով վերջնական ու վճռական նախապաշարումներէ ետք՝ որ համազօր է չկարդալու:

Խնդիրը այն է, որ ասիկա կը դառնայ բնազդ՝ *մեքենայական* բնազդ: Բնազդաբար մերը լաւ է, բնազդաբար միւսը լաւ չէ կամ գոյութիւն չունի: Բնազդի վերածումը կը հանդիսանայ հարցին ամենավտանգաւոր կողմը: Բնազդային *մեքենայականութիւնը* սպանումն է նոյն ինքը բնազդային *փորձառութեան*: Բնազդ՝ ընդդէմ բնազդի:

Վտանգաւորէն կ՚անցնինք ծիծաղելիին, երբ ազգամիջեան «բնազդական» տարանջատում օտարացումները կը ներկայանան համահայկական բնաբանի տակ: Օտարացնողները կը խօսին համահայկականութեան մասին: Պէտք ըլլայ համագումարներ ալ կ՚ընեն այս անունին տակ: Մրցանակներ ալ կու տան:

Օտարացում-համահայկականութեան բնաբանով շատ մրցանակներ բաշխած է մեր խնդրոյ առարկայ անձը: Մրցանակակիրներ՝ որ ընդունելով մրցանակները, դարձած են գաղափարական գեղծարարութեան մասնակիցները: Մրցանակակիրը դարձած է աւելի վտանգաւոր քան մրցանակ պարգեւողը, քանի որ Սփիւռքի մէջ բնաւ դժուար չէ ինքզինքը պարտադրել մրցանակի համար: Կը բաւէ որ խօսքդ ուղղես յատուկ ուժային խմբաւորումներու եւ զայն յարմարցնես անոնց պատումին, առանց դժուարութեան կը դառնաս մշակութային հերոս եւ կը ստանաս մրցանակդ:

Կուսակցութենէն դուրս չի կրնար իր ձայնը տեղ հասցնել, կուսակցութիւնը իր արդիւնաբերութիւնն է:

Ունեցած է արուեստագիտուհիի անկեղծ ու բնատուր մղումներ, բայց կուսակցութիւնը զինքը ներքաշած է գերկուսակցականացուած մշակոյթի անպտղաբեր ոլորտը, շուտով դառնալով այդ տեսակ մշակոյթի արտադրողն ու պարտադրողը: Մասնակցած է հայկական մշակոյթի կուսակցականացումին՝ համահայկականութեան անունին տակ, եւ պայքարած *իր* մշակոյթէն անդին ձայն բարձրացնողներուն դէմ: Պայքարած՝ ամբողջ համոզումով, մեքենայաբար:

Գերագոյն չափով օգտուած է կուսակցութենէն եւ կուսակցական յարաբերութիւններէն՝ դրամական տեսանկիւնէն: Այդ յարաբերութիւններուն մասին իրաւունք չունիմ խօսելու:

Օգնած է երիտասարդներու, ըսուեցաւ: Շուրջդ կը նայիս, ամէն մարդ որ «բան մը» դարձած է, միշտ մեզի յիշեցնել տուած է որ օգնած է երիտասարդներուն: Երիտասարդութիւնը արդիւնաբերութիւն մըն է՝ որ նպաստաւոր է «մեծ»-երուն համար ինքնապատկերներ կերտելու: Աւելի յառաջ երթալով պիտի ըսել՝ որ երիտասարդութիւն կամ մատաղ սերունդ մշակելու, կերտելու եւ նման բաներու համար հասարակութիւնը պաշտօնականացուցած է ուսուցիչը, իսկ վերջինս առիթէն օգտուելով ո՛չ թէ ինքզինքին նպատակ դրած է տարիքով փոքրերու հետ փորձառութիւն փոխանակելով միտքի հարթակներ ստեղծել, այլ ինքն իրեն ստանձնած է սերունդ կերտելու մեծաշուինդ ու հայերուս համար հայրենասիրական պաշտօնը, չմոռնալով նաեւ միշտ ինքզինքը ներկայացնել իբրեւ երիտասարդ սերունդներուն համար իր անձը զոհած անձ, հոգ չէ փոխարէնը ստացած ըլլայ հսկայական ամսականներ: Եւ սերունդ կերտած ըլլալու համար մրցանակ ստացած է հնազանդութիւնը ջատագովող միութիւններու կողմէ: Ստացողը նոյնքան վտանգաւոր է որքան տուողը: Մեր խնդրոյ առարկայ անձը տուող մըն էր՝ կուսակցական հենքի վրայ, որուն ոտքերուն առջեւ կը տարածուէին ստացողները:

Կարելի՞ է այսքան կուսակցականացուած կիրք ամբարուած ըլլայ մէկ անձի մէջ:

Կարելի է:

Ինչո՞ւ կարելի է:

Որովհետեւ ծափահարեցինք ենթակային իւրաքանչիւր քայլը՝ առանց հարցափորձելու:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2020-2021 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Թուաբանական ճիւղ**

| | |
|---|---|
| Լուհ Վարուժ Չիլինկիրեան | 89.8% |

**Գիտական ճիւղ**

| | |
|---|---|
| Եուսապ Վիքթոր Վահան | 87.6% |
| Գարէն Հրայր Տրդատեան | 84.6% |
| Արեգ Քրիս Սիմոլեան | 84.4% |
| Կարօ Գէորգ Սարգիսեան | 82% |

**Գրական ճիւղ**

| | |
|---|---|
| Կլորիա Րաֆֆի Մկրտիչեան | 86.1% |
| Լարա Սիմոն Զամքէրթճնեան | 83.7% |
| Ռիթա Եուսէֆ Գէորգեան | 82.2% |
| Փիէր Սարգիս Ջերտելեան | 78.5% |
| Ալէն Մայք Բարմաքեան | 58.2% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

## 1 ՈՐ՞Ն Է ԷԱԿԱՆԸ

Կարգաւորումի հարցն ալ կը վախնամ հիմա սկսած է չահարկային գործողութիւններու առարկայ դառնալ որոշ «ընդդիմադիր»-ներու կողմէ, որոնք իրենց գիտցած «միջազգային ատեան»-ներուն մէջ Ղարաբաղի ճանաչումի հարց պիտի բարձրացնեն, առանց այդ միջազգային ճանաչումները գործնական ազդակներ դարձնելու ցանկութիւն եւ մտադրութիւն ցուցաբերելու: Տարիներ շարունակ այս կամ այն խորհրդարանները ճանաչեցին Հայոց Ցեղասպանութիւնը, որպէսզի վերջապէս Թուրքիան իր գործուն մասնակցութիւնը ունենար վերջին 44-օրեային: Փոխանակ մենք տիրանալու Արեւմտահայաստանին՝ որ կը կարծեմ կը հանդիսանար ցեղասպանային ճանաչումներուն վերջնական նպատակը, Թուրքիան տիրացաւ յաւելեալ տարածութիւններու՝ Ազրպէյճանի հովանաւորութեամբ: Ճանաչում՝ առանց քաղաքական եւ մանաւանդ մշակութային ազդակի, առանց մեր կողմէ ձեռնարկուած շարունակութեան, առաւելագոյնը կը դառնայ հաշուարկումի առարկայ՝ թէ աշխարհի մէջ քանի անձ գիտէ Հայոց Ցեղասպանութեան փաստը: Թուաքանակ՝ որ գիտէ, բայց ոչ հասարակութիւն՝ որ կը հասկնայ: Կը վախնամ «ընդդիմադիր»-ները Ղարաբաղը տանին նոյն ճանապարհով, իւրաքանչիւր «միջազգային» ճանաչումի համընթաց բարձրացնելով շատ մեծ աղմուկներ, աղմուկ՝ առանց ազդակի, առանց ճանաչումէն բխած գործնապաշտ գործողութիւններու, այլ պարզապէս ուրախանալով ճանաչումի դէպքային ֆեթիշականութեամբ եւ այդ ֆեթիշականացումին շնորհիւ կարողանալով պարտադրաբար ինքնագոյատեւել: Ճիշդ Թուրք-ազէրիներուն ուզածը:

Այս բոլորէն ետք, Հայաստանի նախագահը կը մասնակցի Ֆրանսայի Միտքի Գագաթնաժողովի մը, ուր Սեպտեմբեր 18-ին պաշտօնապէս կը յայտարարէ՝ որ հայերը աշխարհի առաջին քրիստոնեայ ազգն են: Այս յայտարարութենէն ետք միջազգային հանրութիւնը Շուշին վերադարձուց հայերուն...: Բան մըն ալ պիտի չսորվինք:

Ղարաբաղի այլընտրանքային ըմբռնողութեան մը գոյացումը անհրաժեշտ է: Ասոր մասին՝ ուրիշ յօդուածով:

Ա.

## 3 ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՔՈՎ ԴԷՊԻ ՆԱԽԻՋԵՒԱՆ ՄԻՋԱՆՑՔ ԲԱՑԵԼՈՒ ՀԱՐՑ ՉԻ ՔՆՆԱՐԿՒՈՒՄ...

Օվերչուկը՝ պատասխանելով լրագրողի ճշտող հարցին:

«Ոչ, այդ հարցը չի քննարկւում: Քննարկւում է Հարաւային Կովկասում տնտեսական, տրանսպորտային ուղիների ապաշրջափակման հարցը», - ասաց Օվերչուկը:

## 1 ՎԱՐՉԱՊԵՏԻ ԽՕՍՆԱԿԸ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ Է ԷՐԴՈՂԱՆԻՆ

արդիւնաւէտ աշխատանքի պարագայում՝ Հայաստանը պատրաստ կը լինի նաեւ բարձր եւ բարձրագոյն մակարդակով հանդիպումների:

**Հարց – Թուրքիայի նախագահը կրկին խօսել է Հայաստանի տարածքով միջանցք բացելու խնդրի մասին, ասելով, որ դա քաղաքական հարց է: Ինչպէ՞ս կը մեկնաբանէք:**

Պատասխան – Վարչապետ Փաշինեանը բազմիցս արտայայտուել է այդ կապակցութեամբ: Հայաստանը կարեւորում է Նոյեմբերի 9-ի եւ Յունուարի 11-ի յայտարարութիւններում արձանագրուած պայմանաւորուածութիւնների ճշգրիտ իրագործումը: Կոմունիկացիաների բացումը բացառիկ կարեւոր նշանակութիւն ունի տարածաշրջանում երկարատեւ խաղաղութիւն ու կայունութիւն հաստատելու, տարածաշրջանում ցաւալիօրէն առկայ թշնամանքի մթնոլորտը յաղթահարելու համար եւ Հայաստանը վճռական է այդ ուղղութեամբ առաջ շարժուելու եւ արդիւնքներ արձանագրելու գործում: Որոշ յայտարարութիւններում կոմունիկացիաների վերաբացման թեման վերափոխւում է եւ ստանում տարածաշրջանային մեկուսացման պահպանման տրամաբանութիւն: Միջանցքների մասին խօսակցութիւնը հէնց այսպիսին է եւ հակասում է տարածաշրջանում խաղաղութիւն եւ կայունութիւն հաստատելու, թշնամանքի մթնոլորտը յաղթահարելու տրամաբանութեանը: Այն նպատակ ունի ոչ միայն մեկուսացած պահել տարածաշրջանի պետութիւնները եւ ժողովուրդներին, այլեւ այդ մեկուսացմանը անշրջելի տեսք տալ: Բայց կան նաեւ տարածաշրջանային կոմունիկացիաները բացելու այնպիսի տարբերակներ, որոնք ընդգծում են տարածաշրջանային փոխկապակցուածութիւնը եւ թշնամութեան մթնոլորտի քայլ-առ-քայլ յաղթահարման իրական միջոց կարող են դառնալ: Հայաստանի կառավարութիւնը հէնց նման տարբերակի կողմնակից է եւ հէնց այդ տարբերակն է նկարագրուած Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան 9-րդ կէտում եւ Յունուարի 11-ի եռակողմ յայտարարութեան մէջ:

**Հարց – Ստեղծուած պայմաններով որքանո՞վ էք իրատեսական եւ համարժէք համարում տարածաշրջանի համար խաղաղ զարգացման դարաշրջան բացելու օրակարգը:**

Պատասխան – Ցաւօք, գրեթէ ամէն օր տեղի են ունենում իրադարձութիւններ, որոնց նպատակը խաղաղութեան օրակարգը դելեգիտիմիզացիայի ենթարկելն է, թշնամութեան մթնոլորտը ոչ միայն խորացնելը այլեւ այն առաւել համակարգուած դարձնելը: Այս եւ միւս քայլերն արւում են ի ցոյց դնելու խաղաղութեան անհնարինութիւնը մեր տարածաշրջանում, բայց Հայաստանի կառավարութիւնը հետեւողականօրէն առաջ է տանելու այդ օրակարգը՝ մեր տարածաշրջանի համար խաղաղութեան դարաշրջան բացելու բոլոր հնարաւորութիւնները օգտագործելով եւ նոր հնարաւորութիւններ ստեղծելով: Վարչապետ Փաշինեանը բազմիցս է նշել, որ այս ճանապարհին մեզ ամուր նեարդեր են պէտք եւ արագ ու հեշտ լուծումներ գոյութիւն չունեն:

## 2 ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆ

### Թոռան յուշերը Նանիի մասին

Քիչ ժամանակ անց, Նանի եւ Հայկ կը փոխադրուին հանգստաւէտ բնակարան մը Parklabrea Towers համալիրին մէջ, մեր բնակարանէն 15 վայրկեան հեռաւորութեան վրայ: Իրենց մօտ պզտիկ սթուտիօ մը կը վարձեն Ազապիի համար, բայց երկու տարի ետք այլեւս անկարող ըլլալով վճարել վարձքերը, 1958-ին կամ 1959-ին բոլորն ալ կը վերադառնան մեր մօտ՝ հօրս տան մէջ: Իրենց համար անկարելի կը դառնայ առնչուիլ Ազապիի բռնկումներուն եւ գանգատներուն հետ, հետեւաբար Նանի եւ Հայկ կը փորձեն գտնել տարեցներու զանազան ամերիկեան կացարաններ, որոնցմէ ոչ մէկը կը հաւանի Ազապի: Զինք անընդհատ կը փոխադրեն մէկ տեղէն միւսը: Վերջապէս, Ազապին կը ղրկեն Լուսանոյշ Եաղսըզեան անունով բարեկամուհիի մը մօտ Ֆրեզնոյի մէջ, որ քանի մը ամիս ետք կը խնդրէ լքել բնակարանը: Նոյն բանը կը պատահի զանազան մենակեաց հայ տիկիններու հետ Լոս Անճելոսի մէջ: Նանիի կեանքը կը չարչկուի իր մօր անվերջանալի դժգոհութիւններուն լուծում գտնելու դժուար կացութեամբ, քանի որ հայրս չէր ուզեր որ ան ապրի մեզի հետ նոյն բնակարանը:

1956-ին, Նայլ Հիլթըն պանդոկի ճարտարապետ Ուելթոն Պեքէթ աշխատանք կ'առաջարկէ Հայկին Գահիրէի մէջ: Տէտէին պաշտօնական կոչումն էր՝ Միջին Արեւելեան Ծրագիրներու Համակարգող: Քանի որ ան կը խօսէր արաբերէն եւ անձնական բարեկամն էր նախագահ Նասէրի արտաքին գործոց նախարար եւ ապա Եգիպտոսի փոխ նախագահ Մահմուտ Ֆաուզիի, Հայկ եւ Վալանթին կը հրաւիրուին Գահիրէ՝ աշխատելու առաջին Հիլթընի ծրագիրին վրայ: Ամերիկայի մէջ ունեցած նիւթական զրկանքներէն ետք, Նանի հրճուած էր կրկին ապրելու շքեղ պանդոկներու լաւ կեանքը, ուտելու բարձրորակ ճաշարաններու մէջ եւ յայտնուելու հասարակական լուսարձակին տակ: Դժբախտաբար, վերադարձը դէպի հարազատ քաղաքը Գահիրէ պիտի ըլլար կարճատեւ: Հասնելնէն անմիջապէս ետք կը ծագի Սուէզի Ջրանցքի պատերազմը եւ, իբրեւ ԱՄՆ քաղաքացիներ, ստիպուած կը տարահանուին Եգիպտոսէն, ինքնաշարժով կ'երթան Թոպրուք (Լիպիա), ուրկէ օդանաւով կը թռչին Լոս Անճելոս: Կը թուէր թէ ուր որ երթար Թուսսա, սկիզբ կ'առնէր պատերազմը:

Եգիպտոսէն ետք, Հայկ երբեք չկրցաւ գտնել կայուն պաշտօն մը՝ որ պատշաճ ըլլար իր փորձառութեան: Գալիք տարիները եւս մարտահրաւէր մը եղան նախկին օփերայի երգչուհի/դերասանուհիին համար, որ համոզուեցաւ թէ անկարելի է երկրորդ անգամ ճեղքել Հոլլիուուտի դերասանական շրջանակը: Արդարեւ, կրցաւ վերցնել հեռատեսիլի քանի մը փոքրիկ դերեր: Անոնցմէ մէկն էր *Lux Video Theatre* սերիալի 1955-ի էփիզոտներէն մէկը՝ 'June Bride', ուր հանդէս եկաւ Թուսսա Հայկ մականունով Փօուլայի դերին մէջ: Տարիներու ընթացքին անոր ամուսինը փորձեց Լոս Անճելոսի մէջ բանալ Հայ Ալաի մարզադաշտը բայց Քալիֆորնիոյ հակա-խաղարկային օրէնքները զայն դարձուցին անկարելի: Անկէ ետք փորձեց Լաս Վեկասը, բայց իտալական մաֆիան խափանեց իր ծրագիրները: Հայկը մնաց զէրօ եկամուտով, իսկ Նանին ստիպուած էր գտնել վճարովի աշխատանք: Բնականաբար, անոնցմէ ոչ մէկը երբեք չէր գիտցած ինչպէս դրամ խնայել: ԱՄՆ հասնելնէն ի վեր, մէկ տարի շարունակ իրենց ապրուստը ծախսեցին Լոս Անճելոսի ամենասուղ պանդոկին՝ Beverly Wilshire-ի մէջ, ապա իրենց խնայողութենէն մնացած գումարը սպառեցին Ուեսթուուտի շքեղագոյն բնակարանի վարձքին համար: Հայկ եւ Վալանթին ոչ մէկ գաղափար ունէին ինչպէս մատակարարել իրենց եկամուտները:

(Շար. 2)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1900 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՌԿ. عدد رقم ١٩٠٠ الخميس ٧ أكتوبر ٢٠٢١


## ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 30-ԱՄԵԱԿ

**Ազատ/անազատ**

Հայաստանի անկախութեան 30-ամեակն ալ նշեցինք: Երեսուն տարի է որ անկախ ենք: Այսինքն, անկէ առաջ, 70 տարի ազատ ու անկախ չէինք եղած, եղած էինք անազատ ու կախեալ: Այսքան պարզ: Անկախ ու կախեալ: Ազատ ու անազատ: Անվիճելի երկուութիւն մը՝ պարտադրուած անկախութեան բառի վերտառութեան շնորհիւ:

Ազատ չէինք, քանի որ Ռուսաստանն էր մեր կամքը տնօրինողը՝ Խորհրդային Միութեան հովանիին տակ:

Հիմա ազատ ենք, քանի որ մենք ենք տնօրինողները՝ Հայաստանի սահմանները տեղադրըուած եւ այդ սահմանները իր պաշտպանութեան տակ առած ռուսական ծանրագոյն զէնքերու առկայութեամբ:

Ազատ չէինք, քանի որ Հայաստանի հանքային ընդերքի հարստութիւնը կ՚երթար Ռուսաստան եւ այնտեղէն կը վերաբաշխուէր հանրապետութիւնները:

Հիմա ազատ ենք, քանի որ Հայաստանի հանքային ընդերքը սեփականացնող ընկերութիւններուն կարեւոր մասը ռուսական է, որ այդ ընդերքը կը ղրկէ Ռուսաստան կամ այլուր, առանց անկէ հատիկ մը վերադարձնելու բուն երկիրին:

Ազատ չէին արուեստագէտները, քանի որ կար սոցիալիսթական ռէալիզմը: Անհասկնալի եզրոյթ մը՝ որ կրնար բովանդակել ամենատարբեր ուղղութիւններ, բայց եզրոյթ մը՝ որուն անունով կարելի կ՚ըլլար լռեցնել արուեստագէտները, անկախ ուղղութիւններէն:

Հիմա ազատ են արուեստագէտները, պայմանով որ ենթարկուին շուկայի (ան)ազատութեան:

Ազատ չէին փիլիսոփաները, քանի որ ամէն բան պէտք է ենթարկուէր խորհրդային մաթերիալիզմի կարգախօսին: Միջնադարի նոր-պղատոնեան (neo-platonic) հայ փիլիսոփայ Դաւիթ Անյաղթը դարձած էր մաթերիալիսթ (ի տարբերութիւն սոցիալիսթական ռէալիզմի անյստակ իմաստէն, մաթերիալիզմը համեմատաբար ճդգրիտ հասկացողութիւն մըն է):

Այդ նոյն խորհրդային փիլիսոփաներուն մէկ մասը երկար կեանք ունեցաւ ազատ Հայաստանի մէջ: Մէկ թիզ չգիջեցաւ Դաւիթ Անյաղթի մաթերիալիզմէն:

Անազատ աշխարհի մէջ ազա՞տ էր, օրինակ, Արամ Խաչատրեան: Անշուշտ, շատ մակերեսային հարցում մըն է, երբ չկայ ազատութեան եւ անազատութեան միջեւ յստակ գծուած սահման: Բայց եկէք հարցը պարզապէս դնենք ներկայ ընդհանրացած պատումնաբանային մթնոլորտին մէջ: Խաչատրեան մեր մեծերէն է, կ՚ըսենք միշտ: Իսկ եթէ ան մեծ է (անշուշտ այդպէս է), ինչպէ՞ս կրնայ անազատ աշխարհը արտադրել մեծեր: Պակաս բան մը կայ բառերու այս զուգորդութեան մէջ: Այստեղ խնդիրս չէ այս պակասը լրացնել:

2018-ին մասնակցեցայ Արամ Խաչատրեանին նուիրուած համագումարին Երեւանի մէջ: Գերմանուհի մը խօսեցաւ սթալինեան տրամաբանութեան մասին եւ կիսափիլիսոփայական մեկնաբանութիւններով փորձեց գտնել յարաբերութիւններ ժամանակաշրջանի եւ Խաչատրեանի միջեւ՝ հեռու ազատ-անազատ երկուութենէն: Ոմանց չգոհացուց: Մէկը հարցուց՝ ուրեմն ազատ չէ՞ր Խաչատրեան: Հարցումին իմաստը այլ էր: Զարտասանուած հարցումը այն էր, թէ ինչպէ՞ս կրնաս ամենադոյգն կասկածը ունենալ՝ որ Խաչատրեանի նման տաղանդը իբրեւ անձ կրնար ազատ չըլլալ: Զեկուցողը հասկցաւ հարցումին բուն իմաստը: Բաւարարութիւն տուած ըլլալու համար հարցադրողին պատասխանեց՝ որ Խաչատրեանի *Սպարտակը* դէպի ազատութիւնը տանող ճանապարհի տեսլականն էր: Հարցերը չկապուեցան իրարու, բայց պատասխանը գոհացուց հարցադրողին:

Միւս կողմէ, երբ կ՚ուզենք անպայմանօրէն Խաչատրեանը դնել սթալինեան բռնատիրական անազատութեան ծիրին մէջ, առաւելագոյնը զայն կը ներկայացնենք իբրեւ այդ քաղաքականութեան *զոհ*: Զոհը կամ զոհաբերութիւնը համահունչ է ազատութեան գաղափարին, քանի որ կայ չենթարկուելու ակնառու կամ թաքուն հասկացողութիւնը: Տակաւին չլուծուեցաւ ազատութեան եւ անազատութեան հարցը: Ազատութիւն՝ անազատ երկիրի մէջ:

Կարեւորը, մեր ուզած պահուն, մեր ուզած բովանդակութեան համար գործածենք այս կամ այն բառը եւ զգանք բաւարարուած:

Խաչատրեանը նշեցի լոկ իբրեւ նմոյշ:

**Սփիւռքեան խնդիր**

Եւ յետոյ կայ Սփիւռքի աւանդականներուն մուտքը ազատ-անկախ Հայաստան: Այս աւանդական միութիւններն իրենց ներքին կառուցւածքով արդեօ՞ք ազատ միաւորներ են, որ մտնեն ազատ Հայաստան: Արդեօ՞ք ղեկավարները ընտրուած են ժողովրդավարական ազատ կամքի արդիւնքով, թէ եկած են սահմանափակ անձերու որոշումով: Արդեօ՞ք իւրաքանչիւր ղեկավար իր ընտրութեան համար ներկայացուցած է նախընտրական ծրագիր եւ կատարած նախընտրական քարոզարշաւ: Սփիւռքի աւանդական կեդրոնները՝ որոնք յայտնի են իրենց ցկեանս նախագահներով, ատենադպիրներով եւ այլներով, պիտի մտնեն երկիր մը՝ որ գոնէ, կեղծուած կամ ոչ, ստիպուած է 10 տարին անգամ մը առաջնորդ փոխել ընտրութիւններով՝ ներկայացուած նախընտրական ծրագիրի մը վրայ, հիմնուած նախընտրական քարոզարշաւի վրայ: «Նախընտրական քարոզարշաւ» արտայայտութիւնն ու հասկացողութիւնը գոյութիւն չունին Սփիւռքի մէջ:

Երբ Սփիւռքի իւրաքանչիւր աւանդական միաւորի զինուորագրուած անդամը *միեւնոյն* բանը կը կրկնէ՝ *միեւնոյն* բառապաշարով, կարծելով որ իր սեփական կարծիքը կ՚արտայայտէ (օրինակ՝ երբ ամբողջ սփիւռքեան զանգըւած մը *միեւնոյն* բառապաշարով տառացիօրէն կը հայհոյէ Փաշինեանը, իւրաքանչիւր հայհոյող համոզուած ըլլալով արտայայտել սեփական կարծիքը, չխօսելու համար նոյն ինքը հայհոյանքի մասին՝ իբրեւ անազատութեան ամենայուսահատ արտայայտութիւն), ուրեմն տուեալ աւանդականն ու անոր անդամները կը գտնուին ամբոխավարական անազատութեան կիզակէտը: Իսկ այս տեսակ ամբոխավարական անազատութիւն արտադրողն ու գործադրողը արդեօք իրաւունք ունի՞ մտնել անկախութեան վերտառութիւնը որդեգրուած Հայաստանի մէջ, բացի եթէ վերջինիս ազատութիւնն

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ ՀԵՌԱՎԱՐ ԵԼՈՅԹ ՈՒՆԵՑԱՒ ՄԱԿ-Ի ՆՍՏԱՇՐՋԱՆԻՆ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան հեռավար ելոյթ ունեցաւ ՄԱԿ-ի Գլխաւոր Վեհաժողովի 76-րդ նստաշրջանի ընդհանուր քննարկումներուն: Խօսեցաւ 44-օրեայ պատերազմի ազըրպէյճանական յարձակումին մասին, անոր պատճառած հազարաւոր մարդկային զոհերուն, տասնեակ հազարաւոր ղարաբաղցի բնակիչներու տեղահանումին, բնակչութեան եւ կենսական ենթակառուցուածքներու դիտաւորեալ թիրախաւորումին, ռազմագերիներու եւ քաղաքացիական պատանդներու արտադատական մահապատիժներու եւ այլ ոճրագործութիւններու մասին:



Անդրադարձաւ 2021 Յունիս 20-ի արտահերթ խորհրդարանական ընտրութիւններուն, շեշտելով՝ որ արդար ընտրութիւններու միջոցով ժողովուրդը լիազօրութիւն տուաւ կառավարութեան տարածաշրջանի խաղաղ զարգացումի դարաշրջան բանալու համար:

Խաղաղութեան հասնելու միակ ճանապարհը երկխօսութիւնն է, հակառակ թշնամութիւնը հրահրող առօրեայ իրադարձութիւններուն: Խաղաղութիւնը խոչընդոտող կարեւոր հանգամանք մըն է գերիներու անարդարացի դատավարութիւնները եւ գերիներու իրական քանակի դիտաւորեալ քօղարկումը Ազըրպէյճանի կողմէ:

Տարածաշրջանի երկիրներու փոխկապակցութեան համար անհրաժեշտ է երթեւեկութեան զարկերակներու կենսունակութիւնը: Եթէ բացուի նաեւ Թուրքիան Հայաստանին կապող երկաթուղին, տարածաշրջանային հաղորդակցութեան բացումին թեման շատ աւելի մեծ ծաւալներ կրնայ ունենալ:

Անհրաժեշտ է վերսկսիլ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորումի խաղաղ գործընթացքը ԵԱՀԿ Մինսքի խումբի համանախագահութեան հովանիին տակ:

Անհրաժեշտ է հայ-ազըրպէյճանական սահմանի սահմանագըծումն ու սահմանազատումը, զոր, սակայն, դժուար է պատկերացնել ներկայ պայմաններուն մէջ, երբ գրեթէ ամէն օր սահմանին տեղի կ՚ունենան կրակոցներ եւ տարաբնոյթ սադրանքներ, մինչեւ անգամ Մայիս 12-ին Ազըրպէյճանի Զինուած Ուժերուն ներխուժումը Հայաստանի տարածք:

ԹՈՒՐՔԻԱ

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆ ԿԸ ՏՐՈՒԻ

ՊՈԼԻՍ, *Ժամանակ* - Թուրքիոյ Հայ Կաթողիկէ համայնքի համայնքային Թուրքիոյ Հայ Կաթողիկէ հասարակութեան վիճակաւոր Լեւոն արք. Զէքիեան շաբաթասկիզբին Անգարայի մէջ ընդունուեցաւ Վաքըֆներու ընդհանուր տնօրէն Պուրհան Էրսոյի կողմէ:



Հանդիպումին ընթացքին յատուկ ուշադրութեան առարկայ դարձաւ Տիգրանակերտի Հայ Կաթողիկէ եկեղեցւոյ կացութիւնը: Եկեղեցին մեծապէս վնասուած էր պատմական Սուր թաղամասին մէջ տեղի ունեցած զինեալ բախումներու ընթացքին ու վերանորոգուած՝ պետութեան հովանաւորութեամբ: Լեւոն արք. Զէքիեան մատնանշեց, որ շրջանին մէջ Հայ Կաթողիկէ հասարակութիւնը բոլորովին նօսր վիճակի մը մէջ է, ինչ որ պատճառ կը դառնայ այդ սրբավայրին մէջ հերթականօրէն պաշտամունք կատարելու գործնական դժուարութիւններու: Ան յայտնեց, որ եկեղեցւոյ կառոյցը կարելի է օգտագործել մշակութային, կրթական, գիտական եւ ուսումնական ձեռնարկներու համար՝ պահպանելով անոր ճարտարապետական դիմագիծը եւ բոլորովին յարիր

3

# ՎԱԼԱՆԹԻՆ ԱՄԻՐԱՅԵԱՆ

## Թոռան յուշերը Նանիի մասին

**ԷՏՈՒԻՆ ԺԵՐԱՐ ՀԱՄԱՄՃԵԱՆ**

**Թարգմանեց՝ Հ. Ա.**

Համաշխարհային Երկրորդ Պատերազմէն եւ Մանիլայի ճաբոնական արգելափակային ճամբարի ազատագրութենէն ետք, Հայկ, Վալանթին եւ մայրը մէկ տարի եւս կը շարունակեն ապրիլ նոյն ճամբարին մէջ իբրեւ տեղահանուած անձեր: Այս անցումային տարին, Հայկ կը յաջողի կուտակել նկատելի հարստութիւն՝ Մանիլայի մէջ տեղակայուած ամերիկացի զինուորներուն համար արտադրելով եւ ծախելով տնական պաղպաղակ: Գրաւումին ժամանակ, մեծ ծնողքիս արուեստի եւ գոհարեղէնի հաւաքածոյէն մեծ մաս մը կը թալանուի ֆիլիփինցիներուն կողմէ, թէեւ Շանկհայի մէջ պահեստաւորուածը յաջողեցան յետագային վերականգնել: Իրենց ամբողջ հաւաքածոն վերջապէս Միացեալ Նահանգներ հասցնելէ ետք, Պեւերլի Հիլսի մէջ կը բանան չինական հնութիւններու փոքրիկ խանութ մը ‘Arts and Gifts’ անունով, ուր վաճառքի կը դնեն իրենց սեփական չինական արուեստի եւ հնութեան հաւաքածոն: Նանին էր խանութը մատակարարողը: Ամէն բան վաճառուելէ ետք, Նանի կ՚որոշէ սորվիլ ներքին յարդարում եւ կը յաջողի գտնել քանի մը յաճախորդներ, բայց ապա, չեմ գիտեր ինչու, կը հրաժարի աշխատիլ այդ բնագաւառին մէջ:

Տարիները կը թաւալին եւ դրամը կը դառնայ աւելի ու աւելի սակաւ: Վալանթին կը սկսի ծախել իր գոհարեղէնը, եւ կը յիշեմ մենք բոլորս որքան տխուր էինք երբ կը ստիպուէր ծախել ողբացեալ քրոջ Օկիւսթայի գեղեցիկ հին Քասթելլի ջութակը, հաւաքորդի գործ մը՝ որուն ետեւը կը գտնուէր ձեռքով գեղանկարուած Մեծն Եկատերինայի դիմանկարը: Շուտով ամէն բան կը սպառի: Առնուազն հայրս կարող եղաւ անոնց տրամադրել ապրելու տնիք մը: Ան յաւերժ պարտական կը զգար անոնց հանդէպ, քանի որ օգնած էին սկսելու իր կեանքը՝ երբ պատերազմէն առաջ կը փոխադրուէր Շանկհայ եւ կ՚ամուսնանար Վալանթինի քրոջ Օկիւսթայի հետ: Բայց տնիքէն անդին, Նանին եւ Տէտէն ոչինչ ունէին ապրելու համար: Հայրս միշտ սառնարանը կը լեցնէր առատ ճաշով, բայց կը յիշեմ թէ ինչպէս Նանին միշտ կը հրաժարէր սուղ տեսակներէն եւ կը սնուէր գլխաւորապէս հացով, պանիրով եւ մաքարոնիով, հազուադէպ դիմելով միսին: Ձեւով մը, այս սնունդը իր փոքր մարմինը ցկեանս պահեց նիհար ու վայելուչ:

Կը յիշեմ 1958-1962 թուականները՝ երբ իր ժամանակին մեծ մասը կ՚անցընէր տունը, յաճախ սոլիթէր խաղարով, գիշերները բակին մէջ փազըլներ (jigsaw puzzles) լուծելով, եւ երբեմն դերակատարելով Հոլլիուտի սիրողական թատրերգութիւններու մէջ: Կը յիշեմ զինքը երկիցս տեսած ըլլալ բեմին վրայ, անգամ մը Նոէլ Քօուարտի *Family Album* կատակերգութեան Լաւինիայի դերին մէջ, ինչպէս նաեւ խիստ քրքջալիր դերի մը մէջ՝ որուն անունը չեմ յիշեր: Ան միացաւ Հոլլիուտի դերասանական խումբի մը, ներկայ գտնուեցաւ փորձերուն եւ յղկեց արհեստը: Կը յիշեմ զինքը օգնած ըլլալ տանը մէջ իր դերը սորվելու ժամանակ:

Բայց ԵՐԲԵՔ ՉԻՆՔԸ ՉԵՄ ԼՍԱԾ ԵՐԳԵԼ: Ունէինք դաշնակ մը, որուն վրայ սովորութիւն ունէր ջանադիր կերպով նուագել դիւրին Սոնաթիններ: Քուլաուի տօ մաժոր Սոնաթինը իր նախասիրածն էր: Ան կը փորձէր նաեւ ընթերցել Սինտինկի *Գարնանային սօսափիւնները*, որուն վրայ աշխատեցաւ շուրջ մէկ տարի: Իր նուագը միշտ մնաց խիստ նախնական մակարդակի վրայ: (Ան երբեք չէր կտրեր երկար, կարմիր ներկուած եղունգները): Բայց այդ նոյն նուագը զիս ներշնչեց մեծ կիրքով նուիրուելու դաշնակին: Ամենայն համբերութեամբ ժամեր կը տրամադրէր՝ օգնելու համար սերտել իմ ուսուցիչիս նշանակած գործերը, յատկապէս Պախի *Աննա Մակտալենայի* մանկական գործերը ընթերցելու մեծապէս դժուար պարտականութիւնը: Միաժամանակ ձայնամարզութեան դասեր կու տար քրոջս եւ իր բարեկամուհիներուն: Քոյրս բնական դիւրութիւն ունէր երգի հանդէպ: Կոկորդը թուլցնելու համար կը սիրէր մատիտ մը դնել բերանը, ինչպէս նաեւ ստոծանիի շնչառութիւնը մարզելու համար ձեռքը դնել կու տար որովայնին վրայ: Բայց նոյնիսկ երբ կ՚ուսուցանէր ձայնի դիրքաւորում, չեմ յիշեր Նանին երբեւէ անձամբ երգած ըլլայ նոյնիսկ մէկ ձայնանիշ մը: Մարդիկ կը հարցնէին՝ թէ ինչո՞ւ ամբողջապէս դադրեցուց երգը: Կը պատասխանէր՝ որ ձայնալարերուն վրայ *նոտուլա* ունի: Ճաբոնցի զինուոր մը սուինով անսպասելիօրէն հարուածած է կոկին, պատճառ հանդիսանալով որ արձակէ յանկարծակի շնչակտուր ճիչ մը եւ յաւիտենապէս փճացնէ ձայնը: Իրականութիւնն այն էր՝ որ ան չափազանց առատ սիկարէթ ծխող մըն էր, եւ ընտանիքի շատ անդամներ չէին հաւատար սուինի պատմութիւնը: Բայց բոլորը գաղտնապէս համաձայն էին՝ որ նախընտրելի է պատմել ձայնի փճացումի պատմութիւնը քան ծխելու իրականութիւնը: Հակառակ իր ձայնական խնդիրներուն, Նանի չափազանցօրէն համբերատար էր իբրեւ դաշնակի խորհրդատու: Ան իրապէս կը փափաքէր որ դառնամ նուագահանդէսային դաշնակահար (concert pianist): Իրազեկ դարձուց՝ թէ նուագացանկի որ գործերը պէտք է նուագեմ մարդոց առջեւ, եթէ կ՚ուզեմ տպաւորել անոնց վրայ: Գիտէր արուեստագէտ ըլլալու «շուկայական» կողմը, զոր կը փափաքէր փոխանցել զիս:



Վալանթին Ամիրայեան եւ Հայկ Աստուրեան, Գահիրէ, 1956, երբ Հայկ եկած էր իրագործելու Նայլ Հիլթըն պանդոկի կառուցումին ծրագիրը (Էտուին Համամճեանի հաւաքածոյէն):

Օր մը զիս ճաշի առաջնորդեց Հոլլիուտի Paramount Studio-ները: Իր բարեկամը՝ Ռէյ Մուայէ (Ray Moyer), որ կը հանդիսանար Սեսիլ Պ. տը Միլլի (Cecil B. de Mille) նախասիրած գեղարուեստական ղեկավարներէն մէկը, երեսունականներէն ի վեր մնացած էր բարեկամ: Ան կը կարգադրէ որ հանդիպիմ մանկութեանս կուռքին՝ Ճերրի Լէուիսին (Jerry Lewis), որ այդ ժամանակ կը պատկերահանուէր *The Delicate Delinquent* կատակերգութեան մէջ: Կրցայ այցելել պատկերահանումի հրապարակը, եւ երկիւղով տեսայ Պր. Լէուիսը՝ որ լայն ժպիտով կը մօտենար ինծի, կը սեղմէր Նանիի եւ իմ ձեռքերը, եւ ինծի կը նուիրէր ստորագրուած լուսանկարը:

Հրապարակի այցելութենէն ետք, Նանի որոշեց զիս ճաշի տանիլ սթուտիոյի ճաշարանը: Հարցուց՝ որ արդեօք կ՚ուզե՞մ օր մը սինեմայի դերասան դառնալ: Բնականաբար պատասխանեցի հնչեղ «ԱՅՈ» մը: Ապա, մինչ կը շրջագայէինք սթուտիոյի խճողուած իրերուն ընդմէջէն ճաշարան երթալու համար, ցոյց տուաւ ինչպէս քալել սինեմայի աստղի նման: «Ուղիղ կանգնէ, ձեռքերդ կախուած պահէ երկու կողմերդ, գլուխդ մի կախեր, ձախ եւ աջ նայէ՝ կարծես տեղավայրի սեփականատէրը ըլլաս, եւ ուրախ երեւայ»: Ճաշասեղանին ցոյց տուաւ ինչպէս «ճաշակով» ուտել տապկած գետնախնձոր (French fries), եւ ոչ թէ ինծ նման՝ պնակիս վրայ կորանալով քանի մը հատ միաժամանակ խցանել բերանս, այլ շիտակ նստիլ, իւրաքանչիւրը վերցնել առանձին, աննկատօրէն կրծել մէջտեղէն, դադար առնել, խոհականօրէն դիտել շրջապատող մարդոց, եւ ապա հանդարտօրէն վերջացնել երկրորդ կէսը: Իւրաքանչիւր քայլ ուսումնասիրուած եւ վերահսկուած էր, որուն նպատակն էր ուշադրութիւն գրաւել, մինչ ներկայացնելով լրիւ անջատուած ըլլալու պատկերը: Հասկցայ որ շատ բան ունիմ սորվելու եթէ երբեւէ կ՚ուզեմ յաջողիլ իբրեւ Հոլլիուտի դերասան: Սիկարէթի երկար ծուխ մը քաշելէն ետք ըսաւ. «Միշտ լաւագոյն տեսքով երեւցիր: Չես կրնար գիտնալ որ մէկ բեմադրիչը կրնայ դիտել քեզի, եւ կարելի է ճիշդ իր փնտռած անձը ըլլաս»:

Վաթսունականներուն սկիզբը, իբրեւ դերձակուհի Նանի սկսաւ աշխատիլ Պեւերլի Հիլսի զանազան հագուստի խանութներու մէջ, յատկապէս Profils du Monde-ի, որ կը գտնուէր Wilshire Blvd-ի վրայ, բաւական մօտ Beverly Wilshire պանդոկին՝ ուր ապրած էր ժամանակին: Կը զանգատէր խանութի սեփականատիրոջ անտանելի վերաբերմունքէն, Թոնի անունով լիբանանուհի մը՝ որ զինքը հասցուց խելագարութեան աստիճանին:

Վաթսունականներուն վերջը, ֆրանսացի գործընկերոջ մը հետ մայրս բացաւ իր անձնական պուլթիքը, զոր անուանեց JIL of Beverly Hills: Այնտեղ մայրս անձնապէս կը նախագծէր անհատ յաճախորդներու պատուէրները եւ բարձր նորաձեւութեան (haute-couture) հագուստները: Նանին JIL-ին համար մեծ քանակութեամբ կար եւ ասեղնագործութիւն կը կատարէր եւ տարիներ շարունակ մեծապէս օգտակար եղաւ մօրս: Անոնք միասին կը գործէին զգեստաւորելու սինեմայի աստղերն ու երեւելիները՝ որոնք իրենց տարեկան ամբողջ հանդերձարանը կը գնէին անոնցմէ: Ձեռնարկութիւնը կը բարգաւաճէր, եթէ ոչ անպայմանօրէն նիւթապէս, այլ հաստատապէս իբրեւ բարձր նորաձեւութեան մեծավարկ եւ յարգուած սալոն մը: Կը շարունակեն գործել միասին, մինչեւ որ 1969-ի վերջերը Նանի կ՚ախտորոշուի թոքի քաղցկեղով: Բժիշկը մէկ-երկու տարի ժամկէտ կու տայ ապրելու: Մայրս կը փակէ խանութը եւ ողջ ժամանակը կը տրամադրէ խնամելու մայրը, որ կեանքի վերջին տարին կ՚անցընէ El Camino բնակարանին ննջասենեակը, շրջապատուած զինքը պաշտող դուստրով, ամուսինով եւ թոռնիկներով:

Ինծի համար Նանին կը ներկայացնէ այն ամէնը ինչ հրաշալի կեանք մը կրնայ պարգեւել՝ մարմնական գեղեցկութիւն, վայելչագեղութիւն, հմայք, սէր արուեստի եւ երաժշտութեան նկատմամբ, մտաւոր հետաքրքրութիւն, ազնիւ շնորհ, ինչպէս նաեւ զուարճանքի զգացողութիւն եւ թատերականութիւն:

Արձակուրդային համախմբութիւններուն, ան միշտ կը հանդիսանար հաւաքոյթի կենսահոգին, կատարելով տպաւորիչ մուտքեր, Ծնունդի ընտանեկան տօնախմբութիւններուն սարիներ հագուելով, իր անցեալի մասին պատմելով անզուսպ պատմութիւններ (որոնցմէ շատերը չափազանցուած էին ըստ քմաց բայց մեծապէս հետաքրքրաշարժ): Կը յիշեմ թէ ինչպէս առաջին անգամ մեր տունը այցելող բազմաթիւ ամերիկացի այցելուները իրենց աչքերը սեւեռած կը հետեւէին անոր, մինչ ան զանոնք կը զուարճացնէր պատմութիւններով՝ թէ ինչպէս Հնդկաստանի մէջ, Քափուրթալայի Մահարաճայի հետ գացած է վագրի որսորդութեան՝ օգտագործելով ընդամէնը դաշոյն մը, կամ ինչպէս, առանց երբեք թռիչքի դասեր առած ըլլալու, սեփական օդանաւ մը կրցած է անձամբ վայրէջք կատարել տալ՝ երբ օդաչուն կորսնցուցած է գիտակցութիւնը: Կը պնդէր թէ կրնար սեղանները բարձրացնել տալ, եթէ հիւրերու խումբեր նստին փոքրիկ փայտէ սեղանի մը շուրջ եւ իրենց մատնածայրերը վրան դնելով կազմեն շրջանակ մը: Մեր մատներէն ելած ոյժը ենթադրուած էր բարձրացնել սեղանը: Այդպէս ալ եղաւ, թէեւ քոյրս եւ ես նկատեցինք որ իր ծունկերով սեղանին տակէն գաղտնաբար զայն վեր կը հրէր: Ամերիկացիները կը հաւատային իր բոլոր ըսածները, կամ առնուազն այդպէս կը ձեւացնէին, բայց մեր ընտանիքը եւ մտերիմ բարեկամները գիտէին որ ասիկա ընդամէնը թուսսան էր՝ թուսսա ըլլալու համար, տարուած իր սեփական երեւակայական մտահաճոյքներով եւ ունկնդիրը մինչեւ վերջին շունչը հմայուած պահելու ներքին պահանջով:

Ամբոխը հաճոյացնող մըն էր, եւ կը կարծեմ որ իր փոքրիկ թոռնիկը կը հանդիսանար եւ միշտ պիտի մնայ իր մեծագոյն երկրպագուն:

(Վերջ 3)

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՆ *ՃԱՀԱԿԻՐԻ* ԵՐԵՔ ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ՀԱՅ ՊԱՐՈՒՀԻՆԵՐՈՒՆ ՄԱՍԻՆ

Լոյս տեսան *Ճահակիրի* երեք յաւելուածները՝ որոնք կը պարունակեն մանրամասն տեղեկութիւններ եւ մեկնաբանութիւններ եգիպտական սինեմայի չորս հայ պարուհիներու մասին, երեքը՝ արեւելեան, մէկը՝ դասական:

**Յաւելուած ԽԳ.** (43)՝ *Եգիպտական սինեմայի հայ պարուհիներ. Ա. Արեւելեան պարուհի՝ Հոտա Շամս Ալ-Տին* (328 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՅ ԱՍՏՂԸ՝ ՖԱՅՐՈՒԶ
ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԽԲ. (42)
ԳԱՀԻՐԷ 2021

Հատորին առաջին մասն է՝ «Արեւելեան պարը Եգիպտոսի մէջ», որ կը քննարկէ եզրոյթը՝ առաջարկելով «պորտապարուհի» արեւելապաշտական եզրոյթին փոխարէն գործածել չէզոք «արեւելեան պարուհի» եզրոյթը, ինչպէս նաեւ կը համառօտագրէ եգիպտական գուարճացումի մշակոյթին պատմութիւնը, կը մեկնաբանէ արեւելեան պարին բնոյթը, պարագգեստը, արեւելապաշտութիւնը, արեւելեան պարը եգիպտական սինեմայի մէջ, արեւելեան պարի երաժշտութիւնը, սեռականութիւնն ու հայկականութիւնը, վերջապէս կը ներկայացնէ դրուագ մը ՚աուալէմ-եգիպտահայ յարաբերութենէն:

Մանրամասն կը ներկայացնէ սինեմայի սեւ-ճերմակ շրջանին փայլած պարուհի եւ դերասանուհի Հոտա Շամս Ալ-Տինի (Ալիս Միսաքեան) 36 ֆիլմերու բովանդակութիւնները, իւրաքանչիւրին մէջ տեղ գտած պարերուն մատնանշումներով եւ բացատրողական լուսանկարներով:

**Յաւելուած ԽԴ.** (44)՝ *Եգիպտական սինեմայի հայ պարուհիներ. Բ. Արեւելեան պարուհիներ՝ Հերմին եւ Ծովինար* (404 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ՀԱՅ ՊԱՐՈՒՀԻՆԵՐ
Բ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԱՐՈՒՀԻՆԵՐ՝ ՀԵՐՄԻՆ ԵՒ ԾՈՎԻՆԱՐ
ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԽԴ. (44)
ԳԱՀԻՐԷ 2021

Կը ներկայացնէ երկու արեւելեան պարուհիներ: Առաջինը սեւ-ճերմակ շրջանի հռչակաւոր Հերմինն է (Հերմինէ Սանոսեան), իր 26 ֆիլմերու մանրամասն նկարագրութեամբ, երկրորդը ներկայ շրջանի աստղ Ծովինարն է (Ծովինար Գրիգորեան), իր 10 գունաւոր ֆիլմերով եւ մէկ սերիալով: Լուսանկարներու միջոցով կ՚ամբողջանան պարերուն նկարագրութիւնները:

**Յաւելուած ԽԵ.** (45)՝ *Եգիպտական սինեմայի հայ պարուհիներ. Գ. Դասական պարուհի՝ Սոնիա Սարգիս* (55 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ՀԱՅ ՊԱՐՈՒՀԻՆԵՐ
Գ. ԴԱՍԱԿԱՆ ՊԱՐՈՒՀԻ՝ ՍՈՆԻԱ ՍԱՐԳԻՍ
ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԽԵ. (45)
ԳԱՀԻՐԷ 2021

Գիրքին առաջին մասն է՝ «Դասական պարը Եգիպտոսի մէջ», որ կը բովանդակէ ակնարկ Եգիպտոսի պալէի պատմութեան եւ եգիպտական նուագացանկին վրայ եւ կը ներկայացնէ հայերը եգիպտական պալէի մէջ: Երկրորդ մասը նուիրուած է Եգիպտոսի նախկին առաջին պարուհի (prima ballerina) Սոնիա Սարգիսի (Սոնիա Զամքէրթճեան) կենսագրութեան եւ անոր պարած ու խաղացած ֆիլմին:

Ստանալու համար դիմել՝
tchahagir@journalist.com.

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆ...

3

ձեւով անոր սրբավայրի բնոյթին: Նոյն ժամանակ, ան փոխանցեց իր եւ Թուրքիոյ Հայ կաթողիկէ հասարակութեան կամքը, որպէսզի երբ փափաքին՝ կարենան, կանխաւ իմացնելով, անխափան պաշտամունք կատարել եկեղեցւոյ մէջ:

Վաքըֆներու ընդհանուր տնօրէնութեան խորհուրդի նիստը որոշեց եկեղեցւոյ պահպանութիւնը, ապահովութիւնը եւ հոգատարութիւնը յանձնել Տիճլէի համալսարանին՝ երաշխաւորելու պայմանով կառոյցին ճարտարապետական առանձնայատկութիւններուն պահպանումը եւ շեշտելով, որ ամէն անգամ, երբ Հայ Կաթողիկէ համայնքը փափաք յայտնէ, արտօնութիւնը պէտք է տրուի պաշտամունք կատարելու:

Կաթողիկէ Հայոց արքեպիսկոպոսարանին կողմէ հրապարակուած մամլոյ հաղորդագրութեան մէջ կը շեշտուի, որ Վաքըֆներու խորհուրդին որոշումը ընդունուեցաւ միաձայնութեամբ:

ԽՈՀԵՐ

# ՊԱՏՄԱԲԱՆԻ ԱՆՁՆԱԿԱՆ ԿԱՄՔԸ՝ ԻԲՐԵՒ ՀԻՄՔ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՐԱԶԱՏՈՒԹԵԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ժողովուրդներու պատմութիւններ կեղծըւած են, կը կեղծուին ու պիտի կեղծուին: Արդէն տարբեր լեզուներով գրուած են յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ՝ թէ ինչպէս պատմագրութիւնը ուղղութիւն կրնայ ստանալ տիրող վերադիր պատուէրներէն: Այսինքն, դրուած է բուն պատմաբանի կամքէն անդին գտնուող ընդհանուր տեսանելի եւ անտեսանելի ուղղորդումներու տիրակալութեան հարցը: Ասիկա՝ ամբողջովին ճիշդ է:

Շատ ճիշդ է յատկապէս հայոց հայագիր պատմագրութեան պարագային: Վաղ միջնադարէն սկսեալ հայոց պատմութիւնները կը հովանաւորուէին եկեղեցական եւ նախարարական մեծատուներու կողմէ:

Խորհրդային Հայաստանի մէջ քանի մը անգամ փոխուեցաւ հայոց պատմութեան ուղղուածութիւնը:

Հայաստանի Երրորդ Հանրապետութեան մէջ՝ որ կը կոչուի անկախ Հայաստան, արդէն կարելի է խօսիլ հիմնահոսանքային եւ այլընտրանքային պատմագրութիւններու մասին: Առաջինը՝ զոր որդեգրած են հիմնարկներու մեծամեծերը, կը հետեւի իշխանական վերախօսութեան, ստեղծելով չոր ու կտրուկ գերազգային դպրոցական դասագիրքեր (ծանօթ եմ բոլորին, որոշ կէտերու մասին արդէն արտայայտուած եմ) եւ, ինչպէս մեծաշուինդ խորագիրով հեռատեսիլային մրցոյթի հաղորդաշարէ մը կ՚երեւար, արտադրելով թութակի նման կրկնող յառաջադէմ աշկերտներ: Եթէ իշխանութիւնը ըսէ մենք նժդեհական ենք, կը տեսնենք որ Վարդան Մամիկոնեանն ալ կը դառնայ նժդեհական, քիչ մը պատկերաւոր երգիծանքով խօսած ըլլալու համար:

Բոլորովին ուրիշ է Հայաստանի այլընտրանքայինը, որ, դժբախտաբար, հիմնահոսանքի եւ ամենայն հայոց պատմաբաններու պոռչտուքներուն տակ կը մնայ անտեսանելի: Անտեսանելի, բայց առկայ ու գործուն, հրաշալիօրէն միտք արտադրող, այլեւ ներքնապէս տարածւող ու ծաւալուող, ժամանակին դիմացող: Եթէ առաջինը պէտք ունի անընդհատ վերարտադրուելու միանման բնագիրներու վերահրատարակութեամբ եւ վերախմբագրութեամբ, երկրորդի բնագիրը ինքնավերարտադրութեան կարիք չունի՝ բովանդակած միտքերու տարածականութեան շնորհիւ:

Ֆրանսան ալ ունի իշխանական արմատաւորւած պատմութիւն: Բայց այնտեղ, այլընտրանքային ձայնը՝ որ բաւական ուժեղ է եւ յաճախ կը մօտենայ հիմնահոսանքին, չի վնասուիր հիմնահոսանքէն եւ չի պախարակուիր անոր կողմէ: Հայերուն պարագային՝ կը պախարակուի եւ կը մեկուսացուի:

Եւ սփիւռքահայութիւնը: Սփիւռքահայ կուսակցութիւններուն յայտնի հայագիր պատմութիւնները կեղծ չեն, սուտ տեղեկութիւններ չեն հաղորդեր: Բայց զանոնք պատմագրողները դիտաւորեալ դուրս կը ձգեն շատ մեծ քանակութեամբ փաստեր, որոնք պիտի փոխեն ներկայացուցչական ուղղուածութիւնը: Ծայր աստիճան կը յղկուին ու կը բիւրեղանան տեղեկութիւնները, անոնց վրայ աւելնալով պատմաբանին հայրենասիրական մեծ բառերն ու նախադասութիւնները, իբրեւ պատմութենէն աւելի կարեւոր պատմութիւններ: Այդ յաւելագրեալ բառերը մեկնողական չեն, բացատրողական չեն, այլ կարծրատիպային պարտադրանքներ են: Կարծրատիպային պարտադրանք-կարգախօսը կը բռնէ բուն պամագրութեան տեղը:

Վերադիր ուղղորդումներ՝ պիտի ըսենք:

Հասկցանք: Հայաստանի Խորհրդային շրջանին այլ կերպ կարելի չէր վարուիլ, հիմա՝ կարելի է, բայց այլընտրանքային հարթակի վրայ: Կուսակցութիւններուն մէջէն ելած պատմութիւնները այլ կերպ չէին կրնար ըլլալ, հիմա եւս այլ կերպ չեն կրնար ըլլալ:

Այնպէս կը ստացուի՝ որ այսօր, չբիւրեղացումի կարելիութիւնները սակաւաթիւ են: Իրականութեան մէջ, կարելիութիւնները բազում են՝ եթէ գոյութիւն ունենայ անձին, պատմաբանին սեփական կամքը: Նախ եւ առաջ անձը ինքն է որ պիտի վերափոխէ ինքզինքը, ինքն է որ պիտի համոզուի պատմագրութիւնը չբիւրեղացնելու, հետեւաբար՝ չխեղաթիւրելու, կարելիութեան եւ անհրաժեշտութեան մասին:

Հիմնահոսանքային պատմագիրի մը հետ կը նամակցէի: Գրեց՝ որ այսօրուայ Հայաստանի պատմագրութիւնը (որուն մաս կը կազմէ ինք, բայց կը փորձէ ինքզինքը անկէ դուրս ներկայացնել) լուրջ ու դիտաւորեալ բազում խեղաթիւրումներ ունի: Հաստատեցի: Աւելցուց, որ հիմա ինք պիտի հրատարակէ այսինչին ԺԹ. դարու յուշերը, ուր կը քննադատուի հայկական շատ կարեւոր հիմնարկ մը, եւ ինք, այդ հիմնարկի վարկը պահպանելու համար, պիտի ջնջէ տուեալ հատուածները, վարկի պահպանումը համարելով հայրենասիրութիւն: Զգրեց թէ ճիշդ կամ սխալ է այդ քննադատութիւնը: Գրեց՝ որ պիտի պահպանէ այդ հաստատութեան վարկն ու պատիւը: Շատ տարածւած վտանգաւոր միտում մը հայկական պատմագրութեան մէջ: Եթէ տուեալ հիմնարկը կատարած է անօրինութիւններ եւ շահատակութիւններ իսկ պատմագրութիւնը թաքուն կը դարձնէ զանոնք, ուրեմն պատմագրութիւնը կը մասնակցի այդ շահատակութիւններուն, նոյնիսկ հարիւր տարի ետք, քանզի կանանչ լոյս տուած կ՚ըլլայ շահատակութիւնները շարունակելու: Մինչդեռ պատմագրութեան լեզուն եւ լեզուամտողութիւնը պէտք է համահունչ ու համապատասխան ընթանան իրադարձութիւններուն հետ, պատմաբանները ըլլան ոչ թէ երրորդ կողմի վերարտադրող մեքենաներ՝ երբ վերարտադրութեան համար բնաւ ալ դժուար չէ այս կամ այն կէտը մէկ կողմ նետել, այլ ըլլան պատմութեան մասնակիցներ, մասնակիցներ՝ 1000-2000 տարիներ ետք, այսինքն՝ ներկայացնեն մեկնողական շարահիւսութիւն մը, իրերը դնելով իրենց գրեթէ տեսանելի շարժումին մէջ, հրաժարելով կեանքէն օտարացած դրուագներու անիմաստ ու անհասկնալի կուտակումներէն: Միայն այս պարագային է որ պատմաբանը չի կրնար դիտաւորեալ թաքուններ ստեղծել, քանի որ, մէկ կողմէ՝ իր սեփական կամքը պիտի թելադրէ համերաշխ ըլլալ ինքն իր հետ իբրեւ պատմաբան, միւս կողմէ՝ գործնական առումով, թաքունն պիտի երեւայ շարահիւսութեան մէջ: Մինչդեռ դէպքերու կուտակումներով գրուած այսօրուայ սիրուած (ոչ-) պատմագրութիւններուն մէջ թաքունները չեն կրնար երեւալ:

Վերոյիշեալը նմոյշ մըն է այն պատմաբաններուն՝ որոնք պատմութեան հարազատութեան անունով կը բիւրեղացնեն պատմութիւնը: Բիւրեղացումը կը համարեն հարազատութիւն: Իսկ ո՞ւր մնաց անոր արտայայտած միւս կարծիքը՝ թէ այսօրուայ պատմագրութիւնը խեղաթիւրուած է: Ոչ-համոզումներու տոպրակ մը, որ ցոյց կու տայ անձին անկարողութիւնը եւ տկարութիւնը տիրապետելու իր կամքին, կամքը դարձնելու անձնական համոզումի հենք: Տկարամտութիւնը կը տիրէ ժամանակակից հայագիր հիմնահոսանքային պատմագրութեան վրայ եւ այդ տկարամտութիւնը քօղարկելու միակ միջոցը մեծ ու կեղծ հայրենասիրական կարգախօսներու ներմուծումն է պատմագրութեան մէջ: Անձը մերժած է վերափոխել ինքզինք:

4




## 3 ՊԱՏՄԱԲԱՆԻ ԱՆՁՆԱԿԱՆ ԿԱՄՔԸ՝ ԻԲՐԵՒ ՀԻՄՔ...

Բայց այստեղ օղակ մը եւս կայ: Մասնաւոր հիմնարկի մը արատները գիտակցաբար վեր չհանելը կը համարուի հայրենասիրութիւն: Բառի, խօսքի, պատումի կեդրոնը հայրենասիրութիւնն է: Հայրենասիրութեան համար արտօնելի է խեղաթիւրել պատմութիւնը: Եւ այստեղ երեւան կու գայ էական հակասութիւնը: Կը ստացուի այնպէս՝ որ հայրենասիրութեան համար արտօնելի է տուեալ հիմնարկին շարունակել շահատակութիւնը: Հայրենասիրութիւն՝ ընդդէմ շահատակութեան վերացումին: Առաջինը կը յաղթէ: Խեղաթիւրումը վաւերացուած է: Հոգ չէ թէ այդ շահատակութեամբ վնասուին մարդիկ՝ հայեր: Կարեւորը պատմաբանին հայրենասիրութիւնն է: Հայրենասիրութեամբ կը վերանայ մարդը, որ զոհն է շահատակութեան: Մինչդեռ իրական, խորքային եւ մարդկային հայրենասիրութիւնը եւ հայրենասէր պատմագրութիւնը այն է՝ որ կը պաշտպանէ ոչ թէ շահատակող վերնախաւային հիմնարկը, այլ շահատակուող ներքնախաւ մարդը՝ հայը: Հայ պատմագրութիւնը վերնախաւային է, միանշանակ:

Մարդը դուրս մնացած է հայագիր պատմագրութենէն: Օրինակ, Կարսի անկումին վերաբերեալ կան երկու մօտեցումներ: Առաջինը՝ գլխաւորն ու հիմնահոսանքայինը, այն է՝ որ անկումը տեղի ունեցած է արտաքին ազդակներու եւ գործօններու բացառիկութեան շնորհիւ: Այս մօտեցումով ամենայն հայոց պատմաբանները կ՚արժանանան բուռն ծափահարութեան: Արտաքին գործօններ, անկասկած, կային: Ոչ միայն կային, այլ շատ կարեւոր դեր խաղացած էին: Բայց այս գործօնները կարելի չէ դիտել առանց մարդու՝ մարդկային գործօնին: Մարդն է գործօնը ստեղծողն ու իրականացնողը: Այս վերջինին կոմնակիցն է Գէորգ Եազըճեան՝ Կարսի անկումի մասին իր յայտնի ուսումնասիրութեամբ, ուր շեշտը կը դնէ հայ մարդուն վրայ իբրեւ պարտուող տարր, մօտեցում մը՝ որ, գոնէ այժմ, կարելիութիւն չունի անցնիլ հիմնահոսանք: Արտաքին գործօնի միակութիւնը աւելի հաճելի է մեր զգայարաններուն, քան բուն մարդկային ներքին գործօնը, որմէ պէտք է սկսէր պատմագրութիւնը:

Պատմաբանը պէտք է սկսի ինքն իրմով, նայի իր մէջ, նախքան դուրս նայիլը: Եւ իր մէջ նայելով՝ հասկնայ մարդը:

Պատմագրութիւնը միակ բնագաւառը չէ անշուշտ: Բանասիրութիւն, երաժշտագիտութիւն, արուեստաբանութիւն ենթակայ են նոյն երեւոյթներուն: Պարզապէս պատմագրութիւնը դարձած է գիտութիւններուն արքան ներկայ հայկական հասարակութեան մէջ, ամէն բան պատմականացնելու մղումով, ուր պատմաբանը աւելի ձայնաւոր է քան, ըսենք, երաժշտագէտը, քանի որ պատմաբանութիւնը կը հաւասարուի ամբողջ ժողովուրդի ճակատագիրի հետ, որմէ՝ բիւրեղացումի յաւելեալ պահանջը եւ պարտադրանքը, այլեւ բիւրեղացումը կիրարկելու դիւրութիւնը: Բայց ո՞ւր մնաց մարդ պատմաբանը՝ իր սեփական կամքով, հեռու արտաքին գրգիռներէ: Այդքան տկա՞ր է անոր սեփական կամքը, որ հաճոյքով կը մասնակցի բիւրեղացումներուն եւ խեղաթիւրումներուն: Մարդը պիտի փոխուի ներսէն, այլապէս դիւրութեամբ պիտի ենթարկուի արտաքին գրգիռներու եւ առանց խռովութեան ինքզինքը պիտի յանձնէ դուրսէն եկած ազդեցութիւններու: Մարդն է որ ինքզինքին թոյլ կու տայ դառնալ ազդեցութիւններու ենթակայ, փոխանակ մաս մը ըլլալու փոխյարաբերութիւններու եւ փոխներթափանցումներու ավերջանալի շղթայի: Մարդը ինքն է որ ինքզինքին պիտի պարտադրէ ազատագրուիլ այդ ազդեցութիւններէն, որուն հասնելու համար պէտք է ինքը փոխուի ներսէն, փոխէ ինքզինքը իր կամքով:

Անձին կամքը եսասիրութիւն չէ բնաւ, ինչպէս ոմանք պիտի ուզեն թարգմանել: Կրնայ եսասիրութեան վերածուիլ, բայց այս պարագային այլեւս չի կրնար կամք համարուիլ: Անձին կամքը շատ կարեւոր է, անիկա չ՚անէանար հասարակական կամքին մէջ: Անձին կամքը իր արժէքը կը ստանայ հասարակութենէն եւ անոր մէջ, մարդկային յարաբերութիւններու ընդմէջէն: Մէկը միւսին կը լրացնէ՝ 1+1+1...=1 սկզբունքով: Այն ինչ որ այստեղ կը խօսիմ, այս համաչափութեան աջակողմեան տարրի մասին է:

Հիմա որոշումը ձերն է:

Եթէ կ՚ուզէք դառնալ ամենայն հայոց պատմաբան, եթէ կ՚ուզէք որ *Արմենպրէսը* եւ սփիւռքեան լրատուութիւնը ձեզի դարձնեն ազգի պատմաբան, եթէ կ՚ուզէք հրաւիրուիլ գաղութէ գաղութ եւ ոսկիով լեցնել ձեր գրպանները, եթէ կ՚ուզէք մեծաշուինդ շնորհանդէսներ կազմակերպել ձեր գիրքերուն համար, ուրեմն ջնջեցէք ձեր կամքը եւ ենթարկուեցէք վերադիր ազդեցութիւններու:

Եթէ արտաքին-լրատուական ուղղահայեաց հռչակը անիմաստ կը գտնէք՝ այլ կը փնտռէք գիտելիքի տարածողական համաբախշում, եթէ ոսկին չի շլացներ ձեր աչքը՝ այլ բաւարար է ապրուստը ապահովելու, եթէ կ՚ուզէք ձեր շնորհանդէսներուն խօսնակները ըլլան ոչ թէ շահաւէտ կուսակից-կուսակցականակիցները այլ մտաւոր համախոհները, եթէ չէք ուզեր դաւաճանել ձեր անձին եւ կը փափաքիք հարազատ մնալ իրադարձութիւններուն, ուրեմն պէտք է տիրապետէք ձեր ներքին ներունակութեան՝ ձեր կամքին: Սեփական կամքի տիրապետութեամբ կը դառնաք ազատագրուած:

Մարդը պիտի սկսի ինքն իրմով: Դժուար է: Արտաքին աշխարհը պիտի յարձակի իր վրայ: Բայց իր ազատագրուած միտքն ու անկախ կամքը պիտի բանան յարատեւութեան եւ տարածականութեան հարթակներ: Ան պիտի ըլլայ ազատ:

Հակասականօրէն, մարդիկ կ՚ախորժին անազատութենէ: Անազատութիւնը արտաքին գրաւիչ գրգիռներու դուռ կը բանայ: Դուռ կը բանայ համատարած խեղաթիւրումի:

## 1 ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 30-ԱՄԵԱԿ

ինքնին հարցական երեւոյթ մը ըլլայ:

**Պետական անազատութենէն դէպի նէօլիպերալ անազատութիւն**

Այսօր Երեւանը եւ յատկապէս անոր կեդրոնը ամբողջութեամբ կ՚ապրի անազատ Հայաստանի համար Ալեքսանդր Թամանեանի նախագծած ու գործադրած հանճարեղ տարածութիւններուն վրայ: Այդ անազատ Հայաստանին մէջ կային բազմաթիւ ազատ տարածութիւններ՝ հանրային պարտէզներ ծառերով եւ առանց ծառերու, ազատ նստավայրեր յատուկ ձեւաւորուած տարածութիւններու վրայ, տեսողական գոհացում տուող բաց տարածութիւններ: Այսօր, ազատ Հայաստանի մէջ, նէօլիպերալ անխնայ ներխուժումը գրաւեց եւ սեփականացուց անազատ ժամանակաշրջանի ազատ տարածքները, զանոնք դարձնելով անազատ՝ սեփական մենաշնորհումի ազատութեան անունին տակ, այլեւ խայտաբղետ ու անհամերաշխ խճողումներով ծրարուած: Ազատ աշխարհի նէօլիպերալ տնտեսվարութիւնը արտադրեց անազատ տարածքներ:

Դէպի ապահանրայնացում՝ հանրային անազատութիւն, ընդդէմ անհատական սեփականաշնորհումի պատրանքային ազատութեան:

Աւելին: Նէօլիպերալ սանձարձակ քաղաքականութեան շնորհիւ անդրազգային ընկերութիւնները դարձան Հայաստանի տէրն ու տիրակալը՝ օլիկարքական հենքի վրայ: Յատկապէս հանքային արդիւնաբերական ընկերութիւններուն կարեւոր մասը ըլլալով ռուսական, Ռուսաստանը այս առումով եւս իր ձեռքերուն տակ կը պահէ Հայաստանը: Անդրազգային ընկերութիւնները պետութիւններ են՝ պետութիւնը փոխարինող: Ասոր մասին կայ կարեւոր գրականութիւն:

Օլիկարքական անդրազգայնութեան միջոցով Հայաստանը օգտագործեց նաեւ Սփիւռքի որոշ ուժայիններու ամենաբարձր գլուխները կամ անոնց հայաստանեան ներկայացուցիչները՝ անոնց շնորհելով, կամ ասպարէզ բանալով ձեռք բերել, մասնաբաժիններ կարեւոր ընկերութիւններու մէջ (սփիւռքեան կուսակցութեան արցախեան օլիկարքութեան մասին տեսնել *Հետքի* 2020 թուականի հետախուզական յօդուածները՝ https://hetq.am/hy/article/113430 եւ https://hetq.am/hy/article/119594): Գլուխներ՝ որոնք կուսակցութիւններու միջոցով իրենց ձեռքին տակ ունին սփիւռքեան լրատուական ցանցերու ազդեցիկ հատուածներ եւ կրնան շարժել ու ամբոխավարել տուեալ զանգուածը (զանգուած՝ որ սփիւռքահայութեան համեմատութեամբ քանակապէս սակաւ է բայց ձայնապէս բարձր): Եւ յեղափոխութենէն ետք ամբոխավարեցին: Անոնք կրնան տապալել ազատ կամարտայայտուած ժողովրդական յեղափոխութիւններ՝ ընկերութենական իրերամէջ բարդ ցանցերու միջոցով, ցանցեր՝ որոնք կը տիրեն երկիրի ամենակարեւոր եւ ամենազգայուն ծալքերուն վրայ եւ տարբեր խողովակներով կը հասնին մինչեւ Սփիւռք: Եւ իրենց ձայնը ունեցան տապալումին մէջ: Նէօլիպերալ սփիւռքեան անազատութիւնը իր փոքր մասնաբաժինը ունեցաւ տապալելու Հայաստանի հանրային ազատութիւնը՝ արտայայտուած Թաւշեայ Յեղափոխութեան ընդմէջէն:

Նէօլիպերալիզմը հակազատական ամենավտանգաւոր աստիճանն է դրամատիրութեան:

Խորհրդային ճնշուածութեան փոխարինեց նէօլիպերալ ճնշուածութիւնը: Երկու անազատութիւններ փոխարինեցին իրարու: Կարեւոր տարբերութեամբ: Առաջինին դիմագիծը, չափերը եւ տարողութիւնները յստակ ու տեսանելի էին: Երկրորդինը՝ ոչ: Վտանգը այնտեղ է՝ ուր չես տեսներ դիմագիծը: Չգիտնալով՝ կը խաբուիս ազատ ըլլալ, մինչդեռ ամէն բան գրաւուած է քանի մը օլիկարքի կողմէ:

**Ձերբազատում երկուութենէ**

Հայաստանի ազգային պետութիւնը (nation state) ունեցած է երեք շրջան.

Առաջին Հանրապետութիւն (1918-1920)

Երկրորդ Հանրապետութիւն (1920-1991)

Երրորդ Հանրապետութիւն (1991-էն սկըսեալ)

Այսօրուայ հայկական ազգային պետութիւնը Երրորդ Հանրապետութիւնն է: Տօնեցինք Հայաստանի Երրորդ Հանրապետութեան հիմնադրութեան 30-ամեակը: Շիտակը, Սփիւռքը այնքան ալ չտօնեց: Յիշեց՝ առանց իր սովորական բարձրաձայնումներուն: Աւանդականներէն մէկուն սեփականութիւնը չէ եղած Սեպտեմբեր 21-ը:

**Յաւելագրութիւն**

Պզտիկ անկապ յաւելում-աւարտ մը, քանի որ բացուեցաւ ամեակի եւ սեփականութեան դուռը:

Սեպտեմբեր 24-ը 40-ամեակն էր Հայաստանի Ազատագրութեան Հայ Գաղտնի Բանակի (յայտնի իբրեւ ԱՍԱԼԱ) հանրածանօթ Վան ռազմագործողութեան (1981): Համաձայն ենք նման գործողութիւններու թէ ոչ՝ ուրիշ հարց: Նման գործողութիւնները արդիւնաւէտ են թէ ոչ՝ ուրիշ հարց: Բայց ԱՍԱԼԱ-ն կատարեց ինչ որ աւանդականներու պատումին մէջ այդ ժամանակ կար՝ զինեալ պայքար, պայքար մինչեւ վերջ: Պատումնաբանողները չըրին իրենց ըսածը, ԱՍԱԼԱ-ն ըրաւ իր ըսածը, եւ ընելով իր դէմ պայքարի հանեց նոյն կարգախօսը պատումնաբանողները: ԱՍԱԼԱ-ի դէմ հայկական պայքարի մասին տեսնել *Հետքի* 2016 Յունուարի յօդուածաշարը՝ https://hetq.am/hy/article/65345: Այնտեղ կան վտանգաւոր փաստաթուղթեր:

Երեւակայեցէք եթէ աւանդական կուսակցութիւններէն մէկը կատարած ըլլար Վանը: Աղմուկ աղմուկի ետեւէ, փառաբանութիւն փառաբանութեան ետեւէ, տօնակատարութիւն տօնակատարութեան ետեւէ: Վանը, պարզապէս, տէր չունի այսօր:

ԱՍԱԼԱ-ի տղոց առաւելութիւններէն մէկը այն էր՝ որ անոնց պատումը լիովին համապատասխան ու համատեղելի էր գործողութեան հետ: Արդի աշխարհի սովորական դարձած խօսքի եւ գործի միջեւ օտարում չկար անոնց մօտ: Հազուագիւտ երեւոյթ:

Ա.

دار شورشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

جاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1901 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2021 — *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* — عدد رقم ١٩٠١ الخميس ٢١ أكتوبر ٢٠٢١


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐԱՑՈՒՄՆ ՈՒ «ՓՈՓԻՒԼԻԶՄԻ» ՀԱԿԱՓԱՍՏԱՐԿԸ

### ՀՐԱՅՐ ՄԱՆՈՒԿԵԱՆ

*Epress.am* կայքին վրայ հրատարակուեցաւ Հրայր Մանուկեանի այս հետաքրքրական յօդուածը, զոր արեւմտահայերէնի վերածելով կը ներկայացնենք *Ջահակիր*ի ընթերցողներուն: Տեղի սահմանափակութեան պատճառով ստիպուած զանց կ'առնենք «Ծանօթագրութիւններ»-ը, ինչպէս նաեւ ցուցիչներ ներկայացնող երկու լուսապատկերներ:

*Ջահակիր*

2021 թուականին Հայաստանը ականատես եղաւ իր երեսունամեայ պատմութեան ամենէն մրցակցային եւ ամենէն ժողովրդավարական ընտրութիւններուն, որ 2018-ի յեղափոխութեամբ Հայաստանի մէջ սկիզբ առած ժողովրդավարացումի գործընթացքի տրամաբանական շարունակութիւնն էր: Հայաստանի ժողովրդավարացումի փաստը, սակայն, չեն ընդունիր ոչ միայն որոշ ընդդիմադիր քաղաքական գործիչներ, այլեւ որոշ անկախ հետազօտողներ: Այս յօդուածով ցոյց պիտի տրուի, որ Հայաստանը իսկապէս կը դառնայ ժողովրդավար, որուն հակառակ պնդումները անհիմն են:

**Ընտրութիւններ**

Նախքան յեղափոխութիւնը, իշխանութեան պատկանելիութեան հարցը, առնուազն ձեւական իմաստով, կ'որոշուէր նախագահական ընտրութիւններով, իսկ յեղափոխութենէն ետք՝ խորհրդարանական: Բոլոր այս ընտրութիւնները, բացի 2021-ի խորհրդարանական ընտրութիւններուն, կա՛մ եղած են ժողովրդավարական, բայց ոչ մրցակցային (1991-ի նախագահականը եւ 2018-ի խորհրդարանականը), կա՛մ պարզապէս կեղծուած են (մինչյեղափոխական շրջանի միւս ընտրութիւնները): Առնուազն երեք հանգամանքներ կը հաստատեն այս պնդումը: Առաջինը՝ ԵԱՀԿ դիտորդներուն զեկոյցները, երկրորդը՝ յետընտրական լուրջ գործընթացքի առկայութիւն-բացակայութիւնը, եւ երրորդը՝ ընտրութիւններու արդիւնքներուն վիճակագրական վերլուծութիւնները:

ԵԱՀԿ դիտորդները 1996, 1998 եւ 2003 թուականներու նախագահական ընտրութիւնները ուղիղ բնագիրով համարած են ոչ ժողովրդավարական եւ միջազգային չափանիշներուն չհամապատասխանող: 2008 եւ 2013 թուականներու ընտրութիւններուն գնահատականը համեմատաբար մեղմ էր, բայց կը շեշտուէր՝ որ եղած են կարեւոր հանգամանքներ (ձայներու հաշուարկն ու քուէարկութեան յաջորդող գործընթացքը՝ 2008-ին, վարչական աղբիւրներու օգտագործումն ու ընտրողներուն աճաբեկելը՝ 2013-ին), որոնք չեն համապատասխաներ ժողովրդավարական չափանիշներուն: Միայն 2018-ի եւ 2021-ի խորհրդարանական ընտրութիւններն են, որոնք ուղիղ բնագիրով կը գնահատուին ժողովրդավարական, թէեւ կը մատնանշուին նաեւ որոշ թերութիւններ:

Միւս հանգամանքը կը վերաբերի յետընտրական գործընթացքին: Մինչյեղափոխական շրջանի բոլոր նախագահական ընտրութիւններուն (բացառութեամբ 1991-ի) ուղեկցած են լուրջ յետընտրական ընդվզումներ, որոնք տեղի չեն ունեցած յետյեղափոխական շրջանի խորհրդարանական ընտրութիւններուն պարագային:

Երրորդ հանգամանքը ընտրութիւններու արդիւնքներուն վիճակագրական վերլուծութիւններն են: Ի տարբերութիւն յետյեղափոխական խորհրդարանական ընտրութիւններուն՝ մինչյեղափոխական նախագահական ընտրութիւններուն մէջ ձայներու բնական բաշխում չէ եղած: Օրինակ՝ այն տեղամասերը, ուր արձանագրուած է անսովոր բարձր մասնակցութիւն, անհամաչափօրէն բարձր եղած է նաեւ իշխանութեան թեկնածուի ձայներուն թիւը: Էականօրէն տարբեր են նաեւ չվերահսկուող եւ վերահսկուող (օրինակ՝ դիտորդներուն կողմէ) տեղամասերու քուէարկութեան արդիւնքները: Այս բոլորը կը վկայէ լցոնումներու գոյութիւնը: Յետյեղափոխական ընտրութիւններուն մէջ նման աղճատումներ չեն արձանագրուած:

**Ժողովրդավարութեան եւ ազատութիւններու ցուցիչները**

Ընտրութիւնները ժողովրդավարական ամենակարեւոր հիմնարկներէն են (եթէ ոչ՝ ամենակարեւորը): Միայն այս հիմնարկի կայացումը արդէն բաւարար է պնդելու համար՝ որ յեղափոխութենէն ետք Հայաստանը կը դառնայ ժողովրդավարական: Բացի այդ, յեղափոխութենէն ետք Հայաստանի մէջ յառաջընթաց կ'արձանագրուի նաեւ խօսքի ու հաւաքներու ազատութեան բնագաւառին մէջ: Ասոր վկայութիւններէն են, օրինակ, ընդգծուած ընդդիմադիր հեռատեսիլի կայանի առկայութիւնը յեղափոխութենէն ետք, ինչպէս նաեւ այն՝ որ ոստիկանութիւնը 2021-ի սկիզբը ուժ չկիրառեց շուրջ մէկ ամիս Բաղրամեան պողոտան փակած փոքրաթիւ ցուցարարներուն նկատմամբ:

Ինչպէս կ'երեւի The Economist Intelligence Unit-ի հրապարակած ժողովրդավարութեան ցուցիչէն, երկար տարիներ շուրջ 4 միաւոր ունեցող Հայաստանը յեղափոխութենէն ետք նկատելի յառաջընթաց կ'արձանագրէ՝ գերազանցելով 5 միաւորը [ցուցիչի լուսապատկերը]:

Freedom House-ի համաշխարհային ազատութեան ցուցիչը, որ աւելի շատ կը շեշտադրէ ազատութիւնները (քան թէ ժողովրդավարութիւնը), եւս կ'արձանագրէ նմանատիպ պատկեր [ցուցիչի լուսապատկերը]:

**«Փոփիւլիզմի» հակափաստարկը**

Հայաստանի ժողովրդավարութեան իբրեւ հակափաստարկ կը բերուի այն, որ Հայաստանի գործող իշխանութիւնը փոփիւլիսթական է, հետեւաբար՝ կարելի չէ խօսիլ ժողովրդավարական հիմնարկներու կառուցումի մասին: Օրինակ, ըստ փիլիսոփայ Աշոտ Ոսկանեանի, յեղափոխութենէն ետք գործ ունինք ոչ թէ ժողովրդավարական կառուցումի, այլ «անսահման փոփիւլիզմի եւ «զրկըւածներու» յիշաչարութեան անխնայ շահագործումին վրայ կառուցուած վարչակարգ»-ի եւ «համաշխարհային պատմութենէն քաջ յայտնի վտանգաւոր տիպար»-ի հետ, «ուր ժողովրդական զանգուածներու եւ անոնց իղձերուն (համա)պատասխանող առաջնորդի հաղորդակցումը կ'իրականացուի անմիջականօրէն, յուզական մակարդակով՝ շրջանցելով հասարակական հիմնարկները եւ հինէն մնացած «վերնախաւերը»»: Այս փաստարկը հիմնուած է քանի մը սխալ ենթադրութիւններու եւ հետեւութիւններու վրայ:

Առաջին սխալը կապուած է փոփիւլիզմ բառի կիրառումի չփոթեցնող բնաբաններուն հետ: Փոփիւլիզմը պարտադիր չէ, որ հանդէս գայ իբրեւ ժողովրդավարութեան հակառակող երեւոյթ, ան կարող է նաեւ ըլլալ ժողովրդավարական: Այսպէս, փոփիւլիզմ կը համարուի, երբ հասարակութիւնը կը բաժնուի երկու միատարր ու հակադիր ճամբարներու, երբ կ'առանձնացուին «մաքուր ժողովուրդն» ու «փչացած վերնախաւերը» եւ կը շեշտուի՝ որ քաղաքականութիւնը պէտք է ըլլայ ժողովուրդի համընդհանուր կամքի արտայայտութիւնը: Բացարձակ միապետութիւններու եւ բռնապետական երկիրներու մէջ տեղի ունեցած ժողովրդավարա- ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄՈՍԿՈՒԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԵԼ Է ՓԱՇԻՆԵԱՆ-ՊՈՒՏԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

Աշխատանքային այցով Ռուսաստան կատարած այցի շրջանակում, Հոկտեմբերի 12-ին վարչապետ Նիկոլ Փաշինեանը Կրեմլում առանձնազրոյց է ունեցել Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի հետ:



Ողջունելով վարչապետին, Ռուսաստանի նախագահը նշել է.

«Յարգելի Նիկոլ Վովայի, շատ ուրախ եմ Ձեզ տեսնել, շնորհակալութիւն, որ ընդունեցիք հրաւէրը: Մենք Ձեզ հետ հեռախօսով մշտական կապի մէջ ենք, բայց իհարկէ, հանդիպումները մշտապէս արդիւնաւէտ են անհրաժեշտ արդիւնքի հասնելու համար: Յոյս ունեմ, որ այդպէս կը լինի նաեւ այս անգամ, կը խօսենք եւ ֆորմալ, եւ ոչ ֆորմալ մթնոլորտում: Կը ճաշենք միասին եւ կը քննարկենք ընթացիկ գործերը, կը խօսենք հեռանկարների մասին: ↳ 2

## ՉԵՄ ԿԱՐԾՈՒՄ, ԹԷ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՇՈՒԻՆ ՄԻԼԻԱՐԴԱՏԷՐ ԴԱՐՁԱԾՆԵՐԸ ԿԱՐԱՆ ԽՕՍԵԼ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՈՒ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ԴԱՍԵՐ ՏԱՆ. ՓԱՇԻՆԵԱՆ

Հոկտեմբերի 6-ի Ազգային Ժողով-Կառավարութիւն հարց ու պատասխանի ժամանակ, Հայաստան խմբակցութեան պատգամաւոր Լիլիթ Գալստեանն անդրադարձաւ Շուշիի մասին Նիկոլ Փաշինեանի յայտարարութիւններին ու դիմեց վարչապետին՝ «Ինձ համար հայրենիքը հայրենիք է, ձեզ համար՝ կադաստրային եւ շուկայական գին»:

Ի պատասխան Փաշինեանն ասաց. «Ինձ համար հայրենիքն այն է, որտեղ ապրում են մարդիկ, որտեղ նայելիս՝ լքուած տարածքի տպաւորութիւն չի թողնում: Լքուած բազմաթիւ գիւղեր կան, դրա համար այդ լքուած բազմաթիւ գիւղերի ճանապարհները, մանկապարտէզները, դպրոցները կառուցում ենք, լուսաւորութիւն ենք քաշում, ջրագիծ ենք քաշում: Սիւնիքի լքուած գիւղերում վերջին ամիսներին մէկ մլրդ. դրամից աւելի ներդրում ենք կատարել: Մեզ համար էլ հայրենիքը կենաց չէ, մեզ համար հայրենիքը մարդ է, ծրագիր է, որն իրականացւում է: Այ եթէ մեր կառավարութիւնում հայրենիքի հաշուին միլիարդատէրեր դարձած մարդիկ լինէին, այն ↳ 4

# ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԳԵՐՄԱՆԻՈՅ ՄԷՋ

**Համադրեց եւ թարգմանեց՝ Հ. Ա.**

Ներկայիս՝ Սեպտեմբեր 3-էն մինչեւ գալ տարուայ Յունուար 9-ը, Գերմանիոյ Զիկըն քաղաքի ժամանակակից Արուեստի Թանգարանին մէջ (Museum für Gegenwartskunst Siegen) տեղի կ'ունենայ եգիպտահայ-գանատահայ տաղանդաւոր արուեստագիտուհի Աննա Պօղիկեանի (ծն. 1946, Գահիրէ) անհատական տեղադրութիւն-ցուցահանդէսը, խորագիր ունենալով՝ *Երբեմն անսպասելիօրէն ներկան կը հանդիպի անցեալին*:

Ասիկա Գերմանիոյ թանգարանային առաջին մենագրական (monographic) ցուցահանդէսն է:

Ցուցահանդէսը կը հովանաւորեն Նորթ-Ռայն Վեսթֆալընի Արուեստի եւ Մշակոյթի Նախարարութիւնը, Զիկընի Ժամանակակից Արուեստի Թանգարանի Բարեկամներու Շրջանակը եւ Գանատայի Դեսպանատունը: Ան մաս կը կազմէ Գանատայի մշակութային ծրագիրին իբրեւ 2021-ի Ֆրանքֆուրթի Գիրքերու Ցուցահանդէսի պատուոյ հիւր:

Նշեմ, որ Պօղիկեան, հակառակ իր ունեցած եգիպտական-գանատական կրկնակի անցագիրներուն, տակաւին աշխուժօրէն կ'արտադրէ Գահիրէի կեդրոնը գտնուող իր սեփական սթուտիոյին մէջ, որ իր առջեւ կը պարզէ մայրաքաղաքի գեղեցիկ համայնապատկեր մը:

Ստորեւ գրութիւնս ամբողջութեամբ հիմնուած է ցուցահանդէսի անգլերէն գրքոյկի պարփակուն բացատրութիւններուն եւ այնտեղ հրատարակուած գունաւոր լուսանկարներուն վրայ:

Իր գործերուն մէջ արուեստագիտուհին կը բացայայտէ պատմական, տնտեսական եւ քաղաքական իրադարձութիւններուն ազդեցութիւնը: Ելլելով անձնական դիտանկիւնէ եւ գրական խոր ակունքներէ, ան կը ներգրաւուի աշխարհի ժողովուրդներով, մշակոյթներով եւ վայրերով, շեշտադրելով անոնց գլխաւոր կապող գիծերը: Իր ճամբորդական-թափառական փորձառութիւնները կը թարգմանէ գծագրութիւններու, գեղանկարներու, քոլաժներու եւ տեղադրումներու մէջ:

Այս գաղափարները արտայայտելու համար կ'օգտագործէ ընդարձակ տարածային տեղադրութիւններ (installations), բաղկացած 12 սենեակներէ, ուր տեղադրած եւ համադրած է 2008-2021 թուականներու գործերը:

**Սենեակ** 1. «Վտանգուած մեղուներ եւ մեղրախորիսխներ» (2020):

Կը պարունակէ մեղրախորիսխներու 300 շրջանակներ: Նախապէս մեղրով լեցուած մեղրախորիսխներու բուրմունքը կը տարածուի սենեակին մէջ, նշանակելով թէ գործը կարելի է ճաշակել նաեւ բուրմունքի զգացողութեան միջոցով:

Պօղիկեան զուգահեռութիւն կը տեսնէ ժողովրդավարութեան եւ միապետութեան միջեւ, նկատի ունենալով թէ ինչպէս մեղուները բնազդաբար կ'ապրին միասին: Անոնք համատեղօրէն կը բնակին պետութեան մէջ, կառավարուած թագուհիի մը կողմէ՝ որ պատասխանատու է պահպանել իր գաղութը: Բայց տեղադրումը նաեւ ակնարկութիւն մըն է ամբողջ աշխարհի մէջ մահացող մեղուներուն, որ տեղի կ'ունենայ միջատներ սպաննող թունաւոր քիմիական նիւթերու, օդի ապականութեան եւ կլիմայական փոփոխութեան պատճառով:

**Սենեակ** 2. «Քաղաքներ գետերու կողքին» (2014):

Մոմային նկարչութեան միջոցով արտայայտուած պատմութիւններ, դիտարկութիւններ եւ պահեր՝ ճամբորդելով «Գետերու քաղաքներ» Եգիպտոսի, Հնդկաստանի եւ Պրազիլի ընդմէջէն: Նկարները անձնական դիտարկութենէն անդին ունին քաղաքական եւ պատմական բնաբաններ: Իբրեւ աշխարհագրական սահմաններ, տեղավայրերուն մէջէն հոսող գետերը կը պաշտօնարկեն իբրեւ կարելիութիւններու լուսապատկերներ: Անոնք առեւտուրի եւ փախուստի ճանապարհներ են, հանդիպումի վայրեր, կեդրոնատեղիներ եւ ժամանակի լուռ վկաներ: Գործերը տեղադրելով մեղրախորիսխները յիշեցնող փայտէ շրջանակներու մէջ, Պօղիկեան մեղուի գաղութներու կազմակերպչական կառուցուածքներն ու աշխատանքային մեթոտները կը համեմատէ իր ծննդավայր Եգիպտոսի քաղաքական ու ընկերային կացութեան հետ:

**Սենեակ** 3. «Աշխարհի մէջ. արեւելք եւ արեւմուտք, հիւսիս եւ հարաւ» (2017):

Բնանկարային ձեւաչափով 15 քոլաժներ թուղթի վրայ, որոնցմէ իւրաքանչիւրը տեղադրուած է փայտէ շրջանակով շինուածքի մէջ, որ իր կարգին դասաւորուած է փայտէ կառուցուածքի մէջ, կազմելով 5x3 շարուածքով ցանց մը:

Բացայայտ մեկնութիւն մըն է քաղաքական առաջնորդներուն եւ անոնց գործողութիւններուն համաշխարհային հետեւանքներուն: Քոլաժներուն մէջ արուեստագիտուհին կը համատեղէ բռնակալներու եւ վիճահարոյց քաղաքական գործիչներու լուսանկարները եւ զանգուածային լրատուամիջոցներէ վերցուցած պատկերները, Վլատիմիր Փութինի, Նարենտա Մոտիի, Մաօի եւ Տոնալտ Թրամփի նման անձնաւորութիւնները առերեսելով անասուններու պատկերներով եւ իր սեփական գծագրութիւններով ու գերազունաւորմներով: Ան առանձին տարրերը կը հիւսէ սիւրռէալիսթական բարդ եւ թուացեալ ինքնաբուխ պատկերումներու: Օրինակ, ֆրանսացի ծայրագոյն աջակողմեայ քաղաքական գործիչ Մարին Լը Փէնի կերպարը յարդարուած է կռուող երկու աքաղաղներով: Բերանը լայնօրէն բացած կապիկ մը մտիկ կ'ընէ Տոնալտ Թրամփին, կամ կորիլլա մը թէյասեղանի կը մասնակցի Մարկարէթ Թաչըրի եւ Օկուսթօ Փինօշէի հետ, վերագրում մը անոնց 1998-ի հանդիպումին: Պօղիկեան զանազան ծանօթագրութիւններ կամ նկարագրութիւններ կ'աւելցնէ նկարներուն: Հաճելի պատկերումները մեզի կը յիշեցնեն տուեալ քաղաքական գործիչին սխալականութիւնը եւ երբեմն անմարդկայնութիւնը:

**Սենեկաներ** 3-4. «Հիւսուած քամիներ. տնտեսութեան ստեղծումը՝ մեծածախս ապրանքներ» (2016-2021):

Պօղիկեան ուշադրութիւնը կը հրաւիրէ բամպակի մշակութեան եւ համաշխարհային առեւտուրի հետ կապուած խնդիրներուն եւ տառապանքներուն վրայ: Արդի աշխարհի պատմութիւնը ամբողջապէս փոխուեցաւ «երկրախուզութեան» (exploration) եւ «յայտնագործութեան» դարաշրջանին՝ բանալով իմփերիալիզմի եւ գաղութատիրութեան դուռները: Հոլանտացի, փորթուկալցի, ֆրանսացի, սպանիացի եւ անգլիացի գաւթողներ գրաւեցին անյայտ հողեր՝ արժէքաւոր նիւթերու առեւտուրի նպատակով: Հարաւարեւելեան Ասիոյ համեմունքի առեւտուրը փոխեց ուժային հաւասարակշռութիւնը եւ կեղեքեց ու ճնշեց բազմաթիւ ժողովուրդներ: Բրիտանիան Հոլանտայէն ստացաւ Նիւ Ամսթերտամը՝ այսօրուայ Նիւ Եորքը, փոխան այսպէս կոչուած Համեմունքի Կղզիներու (Մալուքա Կղզիներ) եւ Պանտա Կղզիներու վերահսկողութեան: Ժամանակին Նիւ Ամսթերտամը կեդրոն մըն էր ստրուկներու բնակեցումի եւ առեւտուրի. Ուօլ Սթրիթ (Պատի Փողոց) իր անունը ստացած է ստրուկներուն շինած պատէն: Բրիտանացի, սպանիացի եւ փորթուկալցի առեւտրականները 12 միլիոն ստրուկներ բերին Նիւ Եորք եւ բռնի ուժով գործի անցուցին բամպակի, շաքարեղէգի եւ ծխախոտի տնկարկութեան: Մեքենաներու զարգացումէն ետք, ինչպէս՝ Spinning Jenny եւ Cotton Gin, ԱՄՆ-ի մէջ բամպակի արտադրութիւնը դարձաւ աւելի արագ: Աւելցաւ բամպակի պահանջը, որուն հետեւանքով յաւելեալ ստրուկներ հարկադրուեցան աշխատիլ դաշտերուն մէջ: ԱՄՆ-ի զարգացումը իբրեւ տնտեսական ուժ գլխաւորապէս կը պարտի ստրուկի չվճարուած ու պարտադիր աշխատանքին:

Պօղիկեանի գծագրութիւններն ու կտրատային համակցութիւնները կ'անդրադառնան այս պատմական բնաբանին եւ յատկապէս այն անասելի վայրագութիւններուն՝ որոնց ԺԹ.-Ի. դարերուն ենթարկըուեցան բամպակը մշակող ու հնձող

3

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԱՒ ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՊՂՆՁԱՄՈԼԻԲԴԵՆԱՅԻՆ ԿՈՄԲԻՆԱՏԻ ՀԱՐՑԻՆ

Հոկտեմբերի 6-ին, վարչապետ Նիկոլ Փաշինեանը ԱԺ-Կառավարութիւն հարց ու պատասխանի ժամանակ անդրադարձաւ Հայաստանի կառավարութեան՝ Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի համասեփականատէր դառնալու հարցին:

«2000-ական թուականներից ի վեր առաջին անգամ Հայաստանի կառավարութիւնը, ըստ այդմ՝ Հայաստանի ժողովուրդը Զանգեզուրի պղնձամոլիբտենային կոմբինատի համասեփականատէր է: Եւ սա կայացած փաստ է: Եւ ես յոյս ունեմ, որ Հայաստանի ժողովրդի ու կառավարութեան այդ փայաբաժինը կ'աւելանայ, բայց այնպիսի չափերով, որ չի դեֆորմացնի մեր տնտեսութեան շուկայական բնոյթը: Երբ որ յայտարարուեց, որ կառավարութիւնը դառնում է Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի համասեփականատէր, հնչեցին կարծիքներ, թէ այստեղ կայ մութ եւ կասկածելի գործարք: Այ եթէ այս 15 տոկոսի սեփականատէրը լինէր ոչ թէ կառավարութիւնը, այլ լինէր օֆշորային ընկերութիւն, իսկ այդ օֆշորային ընկերութեան սեփականատէրը լինէր մէկ ուրիշ օֆշորային ընկերութիւն, իսկ այդ օֆշորային ընկերութեան սեփականատէրը լինէր ասենք վարչապետի կամ որեւէ նախարարի ընտանիքի անդամ, այդ դէպքում կը լինէր մութ գործարք: Ուզում եմ ասել, որ այս դահլիճում նստող մարդիկ կան, որոնք իրենք գործունէութեան ընթացքում այդպիսի գործարքներ արել են: Եւ կարծում եմ՝ մեր իրաւապահ մարմինները պէտք է լրջօրէն զբաղուեն այդպիսի գործարքներով՝ պարզելու համար դրանց պատճառահետեւանքային կապը, այդ թւում՝ պոտենցիալ դաւաճանական գործարքների հետ», - նշեց Փաշինեանը:

Անդրադառնալով Գէօպրոմայնինգ ընկերութեան ներդրումային ծրագրին՝ Նիկոլ Փաշինեանը ասաց, որ ընկերութեան սեփականատէրերից մէկի կողմից

4

1

# ՄՈՍԿՈՒԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԵԼ Է ՓԱՇԻՆԵԱՆ-ՊՈՒՏԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

«Շուտով ԱՊՀ գագաթաժողովն է, կը ցանկանայի Ձեզ հետ «ճշգրտել ժամերը» այս ուղղութեամբ եւ նաեւ մեր փոխգործակցութեան միւս հարցերի, այդ թւում՝ այսօրուայ դրութեամբ եւ երկարաժամկէտ հեռանկարում տարածաշրջանում կարգաւորման հարցով: Շատ ուրախ եմ Ձեզ տեսնել, բարի գալուստ»:

Իր հերթին վարչապետ Նիկոլ Փաշինեանը նշել է.

«Յարգելի Վլադիմիր Վլադիմիրի, շատ ուրախ եմ տեսնել Ձեզ, սա այս տարի մեր չորրորդ հանդիպումն է: Առաջին հերթին ցանկանում եմ շնորհակալութիւն յայտնել Ձեզ՝ Մոսկուա այցելելու հրաւէրի համար: Նման յաճախակի հանդիպումները, կարծում եմ, վկայում են մեր յարաբերութիւնների բարձր դինամիկայի, փոխըմբռնման, մեր ռազմավարական, դաշնակցային յարաբերութիւնների կարեւորութեան մասին:

«Իհարկէ, այժմ մեր տարածաշրջանում, նաեւ աշխարհում տեղի են ունենում դինամիկ գործընթացներ եւ շատ կարեւոր է, որպէսզի դաշնակիցները յաճախ հանդիպեն, խօսեն, ինչպէս Դուք ասացիք, «ճշգրտեն ժամերը»: Ցաւօք մեր տարածաշրջանի հետ կապուած դեռեւս չի կարելի խօսել իրավիճակի լիարժէք կայունացման մասին: Ինչպէս Դուք էք նկատել, Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը մնում է չլուծուած եւ հասկանալի է, որ հակամարտութեան լուծման ու մեր տարածաշրջանում անվտանգութեան ապահովման գործում Ռուսաստանն ունի առանցքային դերակատարութիւն՝ հանդիսանալով ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահող երկիր: Այս բոլոր հարցերը շատ կարեւոր են, առանցքային, եւ ես շատ ուրախ եմ քննարկել Ձեզ հետ բոլոր օրակարգային հարցերը»:

Կողմերը քննարկել են 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եւ 2021 թուականի Յունուարի 11-ի եռակողմ յայտարարութիւնների կատարման ընթացքին, տարածաշրջանում կայունութեան ամրապնդման, տնտեսական կապերի վերականգնման յետագայ քայլերին ու տեղի ունեցող զարգացումներին վերաբերող հարցեր:

Նիկոլ Փաշինեանն ու Վլադիմիր Պուտինն անդրադարձել են նաեւ հայ-ռուսական դաշնակցային յարաբերութիւնների օրակարգային, ինչպէս նաեւ ինտեգրացիոն միաւորումներում յետագայ փոխգործակցութեանը վերաբերող հարցերի, տեղեկացնում են կառավարութիւնից:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՃԱՀԱԿԻՐԻ* 46-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ ՀԱՅ ԱՆՈՒՆՆԵՐՈՒՆ

Լոյս տեսաւ Ճահակիրի Խձ. (46) Յաւելուածը՝ *Ուղեցոյց եգիպտական սինեմայի հայ դերասաններուն եւ գործիչներուն* (260 էջ):


ՈՒՂԵՑՈՅՑ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍԻՆԵՄԱՅԻ
ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՆԵՐՈՒՆ
ԵՒ ԳՈՐԾԻՉՆԵՐՈՒՆ

Պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Խձ. (46)

ԳԱՀԻՐԷ
2021

Առաջին փորձ մըն է համակարգելու եւ դասակարգելու եգիպտական սինեմայի մէջ հանդէս եկած հայ գործիչները: Այդ գործիչը կրնայ ըլլալ դերասան, պարուհի, երգչուհի, երաժշտահան, ջութակահար, նուագավար, բանաստեղծ, արտադրիչ, ներքին պատկերահանութեան սթուտիոյի սեփականատէր, լաբորաթուարի սեփականատէր, լաբորաթուարի տնօրէն, ձայնի ճարտարագէտ, լուսաւորութեան ճարտարագէտ, ելեկտրականութեան ճարտարագէտ, յարդարիչ, նեկաթիֆի տպագրող, պատկերահան, լուսանկարիչ:

Առաջին մասը կը ներկայացնէ անձնանունները՝ այբբենական դասաւորութեամբ: Իւրաքանչիւր բառայօդուած կը պարունակէ տուեալ անձի մասնակցած ֆիլմերուն ամբողջական ցանկը: Երկրորդ մասը ժամանակագրութիւն մըն է եգիպտական այն ֆիլմերուն՝ որոնց դերակատարներուն եւ անձնակազմին մէջ կը գտնուին հայեր:

Ընդհանուր առմամբ հաշուարկուած է 1062 եգիպտական ֆիլմեր եւ 57 հայ անձնանուններ:

Ստանալու համար դիմել՝
tchahagir@journalist.com.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆՆ ՍԷՅՐԱՆ ՕՀԱՆԵԱՆԸ ՏՈՒԵ՞Լ Է ԱՅԴ ՀԱՐՑԸ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ. ՔԱՐ ԼՌՈՒԹԻՒՆ ՔԱՒԱՆՈՅԻՑ ՅԵՏՈՅ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

«Ակնյայտ է, որ Հայաստան Դաշինքի նպատակների մէջ է այն, որ Հայաստանի ղեկին լինեն համապատասխան մարդիկ, նոր իշխանութիւն, որը կարող է եւ ազատ բանակցել, եւ օգտագործել այն ամբողջ ներուժը, որ 27-30 տարիների ընթացքում մենք ձեռք ենք բերել, եւ կազմակերպչական ունակութիւնների առումով կարող է արագ վերակազմաւորել եւ երկիրը դուրս բերել հոգեբանական այս վիճակից ու ձեւաւորել անվտանգութեան համակարգը, յատկապէս բանակը», յայտարարել է Հայաստան Դաշինքի խորհրդարանական խմբակցութեան ղեկավար Սէյրան Օհանեանը:

Պաշտպանութեան նախկին նախարարին թերեւս արժէ հարցնել, թէ արդեօք 27-30 տարիների ձեւաւորած ներուժ ասելով նկատի ունի նաեւ այն անձնական կարողութիւնը, որ կուտակել են նախկին բարձրաստիճան պաշտօնեաներից շատ շատերը՝ չքեղ դղեակների, թանկարժէք աւտոմեքենաների, անձնական հաշիւներում միլիոնաւոր դոլարների, արտերկրում մեծածաւալ բիզնէսների տեսքով: Դա իհարկէ հռետորական հարց է, իսկ նախկին պաշտպանութեան նախարարին նախորդ տարիների ներուժի առումով, որը նա դիտարկում է իրենց իշխանութեան պարագայում բանակցային ամրութեան հիմք, թերեւս արժէ բարձրաձայնել մի կոնկրէտ հարց՝ «ի՞նչ տարածքային փոխանակման» մոդել է բանակցել Հայաստանի երկրորդ նախագահ, Հայաստան Դաշինքի առաջնորդ Ռոբերտ Քոչարեանը Հէյդար Ալիեւի հետ, եւ ինչ է քննարկել կարգաւորման գործընթացում այդ կապակցութեամբ: Եթէ երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը չի արել այդպիսի բան, չի քննարկել, չի մասնակցել, ապա ինչո՞ւ չի կանգնում եւ յայտարարում, որ ԵԱՀԿ Մինսկի խմբի նախկին համանախագահ Քերի Քաւանոն՝ որի հետ Ռոբերտ Քոչարեանն աշխատել է բանակցային գործընթացում, օրեր առաջ սուտ է խօսել, ասելով, թէ Հէյդար Ալիեւն ու Ռոբերտ Քոչարեանն են «նախաձեռնել» տարածքային փոխանակման գաղափարը:

«Տարածքային փոխանակման» գաղափարը Հէյդար Ալիեւի հետ քննարկելն ու օրակարգ բերելը պաշտպանութեան նախկին նախարար Սէյրան Օհանեանը ե՞ւս դիտարկում է իր ներկայացրած քաղաքական միաւորի եւ դրա առաջնորդի բանակցային «ներուժի» մաս: Սէյրան Օհանեանը տուե՞լ է այդ առնչութեամբ հարց երկրորդ նախագահին, եւ ի՞նչ պատասխան է ստացել: Քաւանոն ստո՞ւմ է, զրպարտո՞ւմ, թէ՞ բացայայտում իրողութիւնները:

## ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆԸ ՉԻ ՄՈՌԱՑԵԼ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՅԱՆՑԱՒՈՐ ԽԱՂԱՄՈԼՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Հայաստանի երրորդ նախագահ Սերժ Սարգըսեանի կողմից պաշտօնավարման ընթացքում գերմանական Բադէն-Բադէն այցելելու, այդ թռիչքների նպատակն ու պետական միջոցների հնարաւոր վատնումը ստուգելու նպատակով հաղորդում է ներկայացուել Գլխաւոր Դատախազութիւն: Այս մասին յայտնել է հէնց գերատեսչութիւնը:

Թէ կոնկրէտ ում կողմից է տրուել հաղորդումը՝ գերատեսչութիւնը չի յստակեցրել: Հաղորդումն ուղարկուել է Յատուկ Քննչական Ծառայութիւն, որտեղ դրա հիման վրայ նիւթեր են նախապատրաստւում:

Յիշեցնենք՝ Իրազեկ Քաղաքացիների Միաւորման ծրագրերի համակարգող Դանիէլ Իոաննիսեանն աւելի վաղ յայտարարել էր, որ Սարգըսեանի՝ Բադէն-Բադէն այցերի վերաբերեալ Փաստերի Ստուգման Հարթակի (FIP) ուսումնասիրութիւնն իրաւապահներին է ուղարկելու:

Ըստ FIP-ի հետաքննութեան՝ Հայաստանի երրորդ նախագահը պաշտօնավարման տասը տարիների ընթացքում Բադէն-Բադէն մեկնել է աւելի քան 16 անգամ, այդ թւում՝ 2016 թուականի Ապրիլի 5-ին, Ապրիլեան պատերազմից անմիջապէս յետոյ: Ապրիլի 6-ից 7-ը Բեռլին կատարած իր այցը Սարգսեանն, ըստ FIP-ի, եւս օգտագործել է Բադէն-Բադէն մեկնելու համար: Սերժ Սարգսեանին աւելի վաղ Բադէն-Բադէնի խաղատներում պետբիւջէի փողերը վատնելու մէջ մեղադրել էին նախ՝ Նիկոլ Փաշինեանը, ապա՝ ընտրութիւններից յետոյ, ՔՊ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանը (Գագօ): Վերջինս յայտարարել էր, որ երրորդ նախագահը խաղատներում պարտուել է շուրջ 100 միլիոն դոլար եւ յաւելել՝ «Էստեղից գումարները մեշոկներով տարել են, որ վճարեն»: Հայաստանի երրորդ նախագահը հերքել էր այդ մեղադրանքն ու դատի տուել Սուքիասեանին:

Իսկ ԱԺ նախկին պատգամաւոր, ներկայումս Երկիր Ծիրանի կուսակցութեան ղեկավար Զարուհի Փոստանջեանը դեռեւս 2013 թուականին ԵԽԽՎ նիստի ընթացքում Սարգսեանին հարցրել էր՝ «Ճիշտ է, որ եղել էք Եւրոպայի խաղատներից մէկում ու 70 միլիոն եւրօ էք տանուլ տուել: Ո՞վ է վճարել այդ 70 միլիոն եւրոն եւ ինչի՞ դիմաց»:

Սերժ Սարգսեանը դրան պատասխանել էր՝ «Ես եւրոպական որեւէ խաղատանը երբեւէ չեմ եղել, ես չեմ խաղում խաղատներում եւ, ցաւօք սրտի, հնարաւորութիւն չունեմ տնօրինելու 70 միլիոն եւրոյի: Եթէ ունենայի՝ գոնէ կէսը Ձեզ կը տայի, որ կեանքից գոնէ գոհ լինէք»:

ԽՈՀԵՐ

## ԱՋԷՐԻՆ ՎԱՏ, ԱՋԷՐԻՆ ԼԱՒ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Թշնամութեան յատկանիշներէն մէկն է հակառակորդ կողմի ամէն բանի պախարակումը, միւս կողմը գտնուող իւրաքանչիւր մարդու սեւացումը:

Այդպէս կը վարուի Ազրպէյճան Հայաստանի նկատմամբ, այդպէս կը վարուի Հայաստան Ազրպէյճանի նկատմամբ:

Լաւ: Կարդանք *Արմենպրէս*ի հետեւեալ պաշտօնական լուրը (4 Հոկտեմբեր). «Գրոսմայստէր Լեւոն Արոնեանը, ով դեռեւս հանդէս է գալիս Հայաստանի դրօշի ներքոյ, Champions Chess Tour Finals-ի 8-րդ տուրում յաղթեց Ադրբէջանի ուժեղագոյն շախմատիստներից Շահրիյար Մամեդեարովին»:

Հրաշալի: Երանի աշխարհի մէջ ամէն մարդ դառնայ առաջնակիր:

Արդարեւ, ուշագրաւ է ներկայացումի կերպը հետեւեալ նախադասութեան գերադասութեան ընդմէջէն. «Ադրբէջանի ուժեղագոյն շախմատիստներից Շահրիյար Մամեդեարով»:

Նախադասութիւնը գրուած է ամենադրական ոճով ազրպէյճանցիին նկատմամբ. ան հաւանութեան տրամադրութիւն կը յառաջացնէ Մամեդեարովի նկատմամբ, քանզի շատ լաւ բան է ըլլալ երկիրի մը որեւէ բնագաւառի ուժեղագոյնը: Նոյնիսկ բառի զուտ լսողական առումով, «ուժեղա*գոյն*»-ի ուժը աւելի ուժեղ կրնայ հնչել քան «*ամենա*ուժեղ»-ը:

Տարօրինակ: Ամէն տեղ ազրպէյճանցին վատ մարդ է, աշխարհի մէջ ինչ վատ բան կայ կ՚ընէ: Հիմա, երբ կ՚ուզենք մեր սեփական ուժի առաւելութիւնը ցոյց տալ եւ ազգային հպարտանք տարածել, ազրպէյճանցին կը դարձնենք դրականօրէն ուժեղ՝ ուժեղագոյն, քանի որ միայն ուժեղագոյնին յաղթելով է որ մեր ենթակայութեան տակ գտնուող անձին ուժը կրնայ դառնալ աւելի արտայայտիչ: Մինչդեռ երեւակայեցէք եթէ հայը յաղթած ըլլար անպիտան, անշնորհք եւ անկիրթ կամ որեւէ այլ բացասական տիպարով ազրպէյճանցիին...:

Համեմատութիւն մը:

Երկու շաբաթ առաջ տօնուեցաւ Եգիպտոսի Հոկտեմբեր 6-ի յաղթանակի 48-ամեակը: 1973-ին յաջորդող մէկ-երկու տասնամեակներուն տարածուեցան իշխանական երկու միաժամանակեայ խօսոյթներ: Երբ պէտք ըլլար ցոյց տալ եգիպտական բանակին ուժը, կ՚ըսուէր թէ ան յաջողեցաւ հերոսաբար նուաճել Իսրայէլի *աննկուն* (ալ-հասին) Պար Լեւի Գիծը: Երբ պէտք ըլլար ցոյց տալ իսրայէլական բանակի տկարութիւնը, կ՚ըսուէր թէ Պար Լեւի Գիծը ընդամէնը *թուղթէ* պատ մըն էր: Այսօր, բարեբախտաբար, վերացած է այս հակասութիւնը:

2

## ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ

ափրիկեան ստրուկները ԱՄՆ-ի հարաւային նահանգներուն մէջ: Նոյնիսկ այսօր, մշակութիւնը ոչ միայն հսկայ եկամուտի աղբիւր է, այլ յաճախ կը կայանայ անմարդկային պայմաններու տակ:

**Սենեակ 5.** «Կարճ պատմութիւն. ինչպէս Արդիւնաբերական Յեղափոխութիւնը փոխեց Եւրոպայի արագընթացքը» (2020):

Բազմամաս տեղադրութիւն մը, ուր փայտի վրայ յենուած թուղթէ տիպարները ստեղծուած են մոմով եւ ներկանիւթով: Մոմաներկային թեքնիքը Պօղիկեան կ՚օգտագործէ իր կրաֆիքական պատումներուն համար:

Վերստեղծուած է պելճիքական Կենթ քաղաքի բամպակի առեւտուրը՝ իբրեւ համաշխարհային (global) տնտեսական շրջածիրի մաս: ԺԸ. դարէն սկսեալ քաղաքը բամպակ կը ներածէր արեւելեան կիսագունդէն եւ ապա Միացեալ Նահանգներէն: Մինչեւ վերջերս բամպակը կը մանուէր, կը հիւսուէր եւ կը կազմուէր Կենթի մէջ, որմէ կ՚արտահանուէր ամբողջ աշխարհին: Ներկայացուած են քոնկոլցի բամպակ քաղողներ, մանող եւ հիւսող մեքենաներ, բամպակի հակերով բեռցուած նաւեր, հիւսուածոյի քոնկոլցի գործաւորներ իրենց վտիտ տուներուն մէջ, եւ Կենթի մէջ լքուած գործարաններու շէնքեր: Ցուցադրուած է ամբողջ գործընթացքը՝ բամպակի աճող թուփերէն մինչեւ քաղհանը, մշակումը եւ տնտեսական հետեւանքները: «Դրամատիրութիւնը չի գործեր», արձանագրուած է տեղ մը: Եւրոպայի արդիւնաբերական յեղափոխութեան ընթացքին հարստութիւնը բաշխուեցաւ անարդար կերպով, Կենթի հիւսուածոյի առեւտրականները դարձան հարուստ՝ շահագործելով տնկարկութեան աշխատաւորները եւ տեղացի գործաւորները: Պօղիկեան ցոյց կու տայ մինչեւ այսօր շարունակուող մարդկային անարդարութիւնները որոնք կ՚ուղեկցին համաշխարհայնութեան (globalisation) եւ դրամատիրութեան:

(Շար. 1)




## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք մեր յարգոյ Հասարակութեան թէ Եգիպտոսի Հայոց Թեմի Կազմական Կանոնագրի 23-րդ յօդուածի տրամադրութեան հիման վրայ, Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ, 19 Նոյեմբեր 2021-ին:

Սոյն ամբողջական ընտրութիւններուն մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու ցանկը կախուած է Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մուտքին եւ Ազգային Առաջնորդարանիս մէջ:

Կը տեղեկացնենք նաեւ, թէ ըստ Կազմական Կանոնագրի 13 եւ 14 յօդուածներուն, ընտրութեան ցանկերը«փակցնելու եւ Հրատարակելու գործողութեան թուականի յաջորդող 7 օրերու ընթացքին, 21 տարեկանը լրացած եգիպտահպատակ եւ երկու տարի Աղեքսանդրիոյ եւ անոր շրջակայքին մէջ բնակող իւրաքանչիւր անձ (այր թէ կին), որուն անուան արձանագրութիւնը մոռցուած է, կրնայ պահանջել որ իր անունը արձանագրուի: Նոյնպէս ամէն ընտրող, որուն անունը արձանագրուած է, կրնայ պահանջել, որ առանց իրաւունք ունենալու արձանագրուած անձին անունը ջնջուի»:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

### 2 ➩ ՋԱՆԳԵԶՈՒՐԻ ՊՂՆՁԱՄՈԼԻԲԴԵՆԱՅԻՆ...

Հայաստանին արուել է առաջարկ: «Մենք այդ առաջարկը քննարկել ենք եւ տեսել ենք, որ Համապատասխանում է Հայաստանի շահերին՝ տնտեսական եւ պետական, որովհետեւ ներառում է երկու շատ կարեւոր բաղադրիչ: Առաջինը՝ պղնձաձուլարանի կառուցում, որը նշանակում է, որ Հայաստանն այլեւս ոչ թէ խտանիւթ պիտի արտահանի, այլ Հայաստանում պէտք է թողարկուի պղինձ: Երկրորդ, այս ծրագրի մասն է նոր ատոմակայանի կառուցումը: Եւ այդ խոշոր ընկերութիւնը ստանձնել է պղնձաձուլարանի հիմնման մասով ներդրումային պարտաւորութիւններ եւ արդէն իսկ բանակցութիւններ է սկսել Հայաստանում նոր ատոմակայան կառուցելու ուղղութեամբ: Ատոմակայանը լիարժէք մասնաւոր կառոյց չի կարող լինել, եւ կառավարութիւնն ակտիւ մասնակցութիւն պէտք է ունենայ: Եւ այնպէս է ստացուել, որ մեր հետաքրքրութիւնները Համընկել են», ասաց նա:



### 1 ➩ ՉԵՄ ԿԱՐԾՈՒՄ, ԹԷ ՀԱՅՐԵՆԻՔԻ...

ժամանակ կը խօսէինք: Եւ ես չեմ կարծում, թէ հայրենիքի հաշուին միլիարդատէր դարձածները կարան էսօր Հայրենիքի ու Հայրենասիրութեան մասին դասեր տան»:

## 1 ➩ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐԱՑՈՒՄՆ ՈՒ «ՓՈՓՈՒԼԻԶՄԻ» ՀԱԿԱՓԱՍՏԱՐԿԸ

կան յեղափոխութիւնները (ներառեալ ֆրանսական յեղափոխութիւնը) տեղի ունեցած են նման բաժանումի եւ Հակադրութեան միջոցով՝ զուգակցուած յուզականութեան չափազանց բարձր աստիճանով: Որովհետեւ ուժեղ եւ կարծրացած բռնատիրութեան դէմ յաջողութեան կարելի է Հասնիլ լայն ու տարասեռ Հասարակական խումբերը իբրեւ Համասեռ միաւոր Համախմբելու միջոցով՝ ընդդէմ իշխող (բռնատիրական) վերնախաւին:

Աւելին, որոշ տեսաբաններ, օրինակ՝ Լօուրընս Կուտուին, Էրնեսթօ Լաքլաու, Շանթալ Մուֆ, ինչպէս նաեւ ԱՄՆ-ի պատմութիւնը ուսումնասիրող շատ պատմաբաններ, փոփուլիզմը կը Համարեն ժողովրդավարական քաղաքականութեան անբաժանելի մասը: Ըստ այս մօտեցումին՝ փոփուլիզմը, առնուազն Լատինական Ամերիկայի պարագային, կը ծառայէ Հանրութեան տարբեր խումբերուն քաղաքականութեան մէջ ներգրաւելու եւ նոյնիսկ ազատագրելու նպատակին, որ Հենքն է ժողովրդավարական քաղաքականութեան: Հիմնուելով փոփուլիզմը դրական ու ժողովրդավարական երեւոյթ Համարող արժենթինցի Լաքլաուի մօտեցումներուն վրայ՝ արուեստի քննադատ Վարդան Ջալոյեան 2018-ի Հայկական յեղափոխութիւնը կը բնորոշէ իբրեւ փոփուլիսթական յեղափոխութիւն: Կը կարծեմ՝ որ ամէն պարագայի ժողովրդավարական յեղափոխութիւն եզրոյթը առաւել ճշգրիտ է, թէեւ Լաքլաուի տեսակէտէն էական տարբերութիւն չկայ եթէ զայն բնորոշենք «փոփուլիսթական» թէ «ժողովրդավարական»:

Արդ, (կիսա)բռնատիրական երկիրներու մէջ, ուր չկան լիպերալ-ժողովրդավարական հիմնարկներ, փոփուլիզմը կրնայ ըլլալ ժողովրդավարական եւ ժողովրդավարականացնող, ոչ թէ ժողովրդավարութեան Հակառակող: Հայաստանը մինչեւ 2018-ի յեղափոխութիւնը կիսաբռնատիրական՝ քրէաօլիկարքական պետութիւն էր, եւ այս փաստը կ՚ընդունի ոչ միայն Ոսկանեանը, այլ ուրիշ անկախ Հայ Հետազօտողներ: Ըստ քաղաքական տեսաբան Մանուէլ Սարգսեանի՝ քրէաօլիկարքական Համակարգի պայմաններուն մէջ գործող Հիմնարկներէն շատերը կը ծառայեն օլիկարքութիւնը օրինականացնելու եւ Հանրութեան լայն խումբերէն պաշտպանելու նպատակին: Յեղափոխութենէն ետք այդ հին հիմնարկներուն եւ «վերնախաւին» շրջանցելը, Հետեւաբար, գոնէ սկզբնական շրջանին, ոչ միայն տրամաբանական է, այլեւ՝ ժողովրդավարական հիմնարկներու կայացումի տեսանկիւնէն, ցանկալի:

Արդարեւ, երբ գործ ունինք արդէն (քիչ թէ շատ) կայացած լիպերալ-ժողովրդավարական հիմնարկներով պետութիւններու Հետ, ուր առնուազն ազատ ընտրութեան հիմնարկը լիարժէք կը գործէ, փոփուլիզմը աւելի շատ բացասական եւ Հակաժողովրդավարական, քան դրական եւ ժողովրդավարական երեւոյթ կրնայ Համարուիլ: Քանի որ Արեւմուտքի պետութիւնները կայացած լիպերալ-ժողովրդավարութիւններ են, ժամանակակից Արեւմուտքի աքատեմիք եւ քաղաքական շրջանակներուն մէջ փոփուլիզմը ճիշդ այսպիսի՝ Հակաժողովրդավարական իմաստով կ՚ընկալուի, առնչուած նաեւ ծայրայեղ ազգայնականութեան, իսլամաֆոպիայի, Հոմոֆոպիայի եւ այլ բացասական երեւոյթներու Հետ:

Հարցը այն է, որ կայացած լիպերալ-ժողովրդավարութիւններուն բնորոշ է Հանրութեան բազմազանութեան (ներառեալ՝ «վերնախաւերու» ներսը), ինչպէս նաեւ Հիմնարկներու եւ խնդիրներու բարդութեան այնպիսի մակարդակ մը, ուր արժէքային տեսակէտէն դատապարտելի, իսկ գործնականին մէջ՝ գրեթէ անհնար է Հարցեր լուծել փոփուլիսթական պարզունակ բաժանումներու (վերնախաւ-ժողովուրդ) կամ պարզ լուծումներու (վտարել իսլամները, դուրս գալ ԵՄ-էն եւ այլն) միջոցով: Նման բարդութենէ եւ բազմազանութենէ Հայաստանը տակաւին շատ Հեռու է, եւ անհրաժեշտ են տասնամեակներ, որպէսզի Հայաստանի մէջ լիարժէքօրէն կայանան (եթէ երբեւէ կայանան) լիպերալ-ժողովրդավարական Հիմնարկները: 2018-ի յեղափոխութեամբ ընդամէնը դրուեցաւ ժողովրդավարացումի գործընթացքին սկիզբը: Պատահական չէ, որ The Economist Intelligence Unit-ը Հայաստանը տակաւին կը Համարէ խառնածին (եւ ոչ թէ ժողովրդավարական) պետութիւն:

Երկրորդ սխալը, որ բնորոշ է «Փաշինեանը փոփուլիսթ է, Հետեւաբար կարելի չէ խօսիլ ժողովրդավարութեան մասին» պնդումին, այն է՝ որ ժողովրդավարական Հիմնարկները կը նոյնացուին քրէաօլիկարքութեան յենարան Հանդիսացած հիմնարկներուն Հետ, իսկ լաւագոյն պարագային՝ իշխանութեան ցանկութիւններուն Հետ: Նման նոյնացումը յստակօրէն կ՚երեւի Ոսկանեանի այլ ձեւակերպումի մը մէջ. «Հայաստանի մէջ ձեւաւորուող կառավարումի Համակարգը աղերսներ չունի ժամանակակից հիմնարկային ժողովրդավարութեան Հետ, քանի որ Հիմնարկները անտեսուած են եւ ոչ մէկ ցանկութիւն կայ ուժեղացնելու այդ Հիմնարկները»:

Նախ, եթէ խօսքը կը վերաբերի, օրինակ, ընտրութեան Հիմնարկին, ապա ան բոլորովին ալ անտեսուած չէ: Ընդհակառակը, յետպատերազմեան ներքաղաքական ճգնաժամը յաղթահարելու Համար գործող իշխանութիւնը դիմեց ճիշդ այդ ընտրութեան հիմնարկին ու ընտրական օրէնսգիրքին մէջ որոշ՝ թափանցիկութեան եւ վերահսկելիութեան տեսանկիւնէն դրական փոփոխութիւններ ըրաւ: Այսինքն, գործ ունինք «անտեսելուն» տրամագծօրէն Հակառակ գործողութեան Հետ: Երկրորդ, Նիկոլ Փաշինեանի յեղափոխական իշխանութիւնը սկզբնական շրջանին լիարժէք կը փորձէր Համագործակցիլ «հին» հիմնարկներուն Հետ (ուժային կառոյցներէն մինչեւ Համալսարանները), այդ փորձերը առաւել յաճախ կ՚աւարտէին անյաջողութեամբ: Եւ եթէ այսօր ինչ-որ Հիմնարկներ անտեսուած են իշխանութեան կողմէ, անոնք, իբրեւ կանոն, քրէաօլիկարքութեան ծառայած, յաճախ՝ մինչ այսօր ծառայող հիմնարկներ են, ինչպէս, օրինակ, Համալսարանական-մտաւորական վերնախաւը: Երրորդ, ժողովրդավարական Հիմնարկները բոլորովին ալ պարտադիր չէ, որ կառուցուին իշխանութեան ցանկութիւններով: Անոնք կը կայանան ընդհանուր քաղաքական գործընթացքի արդիւնքով:

Օրինակ՝ այն Հանգամանքը, որ այսօր Հայաստանի մէջ քանի մը ընդգծուած ընդդիմադիր Հեռատեսիլի կայաններ կան (որ խօսքի ազատութեան հիմնարկի կայացումի տեսակէտէն դրական երեւոյթ է), բոլորովին ալ գործող իշխանութիւններու ցանկութիւնը չէ: Այդպէս եղաւ յեղափոխութեան արդիւնքով: Գործող իշխանութիւնը թերեւս պիտի փափաքէր գրկել ընդդիմութիւնը Հեռատեսիլի կայաններէն: Սակայն յեղափոխութիւնը այնպիսի իրաւական, քաղաքական ու արժէքային դասաւորուածութիւններ ստեղծեց, որ եթէ իշխանութիւնը նման բան ընէ, խիստ բացասաբար պիտի ազդէ վրան: Նոյնը կը վերաբերի նաեւ Հաւաքներու ազատութեան Հիմնարկին: Այնպէս որ, իշխանութիւններուն ցանկութիւնը միշտ չէ որ կարեւոր է ժողովրդավարական Հիմնարկներու կայացումի տեսակէտէն:

**Վերջաբան**

Այսպէս, յեղափոխութենէն ետք Հայաստան սկսած է երթալ ժողովրդավարական ուղիով, քանի որ քանի մը տասնամեակ շարունակ չգործած ընտրութեան Հիմնարկը սկսած է գործել, յառաջընթաց գրանցուած է նաեւ խօսքի եւ Հաւաքներու ազատութեան բնագաւառներուն մէջ: Յեղափոխութենէն ետք Հայաստանի ժողովրդավարացումի փաստը արձանագրուած է նաեւ միջազգային կազմակերպութիւններու զեկոյցներուն մէջ:

Իբրեւ Հայաստանի ժողովրդավարացումի փաստը ժխտող Հակափաստարկ կը բերուի այն անհիմն պնդումը, թէ յեղափոխական իշխանութիւնը փոփուլիսթական է, իսկ փոփուլիզմը միշտ եւ բոլոր տեղերը բնոյթով բռնատիրական եւ ժողովրդավարութեան Հակադրուող երեւոյթ է: Մինչդեռ փոփուլիզմը, իբրեւ կանոն, Հակաժողովրդավարական է այն երկիրներուն մէջ, ուր արդէն կան քիչ թէ շատ կայացած լիպերալ-ժողովրդավարական Հիմնարկներ: Հայաստանի նման պետութիւններուն մէջ, ուր տակաւին չկան կայացած լիպերալ-ժողովրդավարական Հիմնարկներ, յեղափոխական փոփուլիզմը՝ «փչացած վերնախաւի» եւ «մաքուր ժողովուրդի» բաժանումի եւ Հակադրութեան իմաստով, բնոյթով ժողովրդավարական եւ ժողովրդավարականացնող է:

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1902 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՆՈՅԵՄԲԵՐ 2021 | *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* | عدد رقم ١٩٠٢ الخميس ٤ نوفمبر ٢٠٢١


## ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԲԱԶՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆԸ

Խորագիրը՝ *Ղարաբաղեան հակամարտութեան բազմաձայնութիւնը*, կը պատկանի Բուն TV-ին (http://boon.am/), որ այս վերտառութեան տակ դասախօսելու հրաւիրած է 13 հայ մտաւորականներ, պիտի ըսէի՝ մտածող մարդիկ, որոնցմէ իւրաքանչիւրը ներկայացուցած է խնդիրի իր մեկնաբանութիւնը, հիմնուած յատուկ նիւթի մը կամ ենթանիւթի մը վրայ: Մտածելակերպի որակը տարբեր է հիմնահոսանքի միահամուռ եւ աննկուն վճռականութիւններէն, ինչպէս տարբեր է նոյն ինքը Բուն TV-ն, որուն պատկերահանումներուն մէջ ընդհանրապէս տեղ չունին աքատեմական ու փրոֆեսորական վերնախաւի անսասան ու համատարած ներկայացուցիչները:

Տուեալ խորագիրի պատկերահանութիւնները կատարուած են 2019 Մարտ-Դեկտեմբերին, երբ 44-օրեան տակաւին չկար հեռանկարի մէջ:

Ստորեւ իմ անձնական ընտրութեամբս պիտի ներկայացնեմ իւրաքանչիւրէն քաղուած միտքեր ու մտորումներ:

### ՊԱՏՈՒՄԸ ԽԱՂԱՂՈՒԹԵՆԷՆ ԴԷՊԻ ՊԱՏԵՐԱԶՄ

Պատմաբան Գայեանէ Այվազեան («Լեռնային Ղարաբաղի կոնֆլիկտը հայաստանեան պաշտօնական դիսկուրսում»), կը յիշատակէ եօթը տարածքներուն յաջորդական եզրոյթները՝ Գրաւեալ տարածք (Լեւոն Տէր-Պետրոսեանի շրջան), «Գրաւեալ տարածք» (չակերտներու մէջ՝ կարճ ժամանակաշրջանի համար, Ռոբերտ Քոչարեանի շրջանի սկիզբը), Ազատագրուած տարածք (Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի շրջան):

Կը նշէ անցումը խաղաղութեան տրամասացութենէն (discourse) դէպի ռազմահայրենասիրութիւնը. «Ինչպէ՞ս էին դպրոցականները խօսում խնդրի մասին: Լեւոն Տէր-Պետրոսեանի օրօք յայտնւում են դպրոցականների նամակներ թերթերի էջերում, որոնք գրում են թէ իրենք չեն ուզում այլեւս պատերազմ եւ ուզում են խաղաղութիւն եւ խաղաղութեան դիսկուրսն է դառնում թեւածող, դառնում գերակայ, գերիշխող: Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի օրօք առաջ է գալիս ազգային գաղափարախօսութեան անհրաժեշտութիւնը, դպրոցներում հիմնւում են հայրենասիրական ակումբներ, խմբակներ, եւ այդ ռազմահայրենասիրական հռետորաբանութեան չեշտակի աճ ենք մենք նկատում»: Այվազեան կը բացատրէ՝ որ այս ռազմահայրենասիրութեան հետեւանքով հասարակութիւնը մերժեց փոխզիջումի որեւէ տարբերակ, թէեւ երեք նախագահներն ալ բանակցած են տարածքները յանձնելու շուրջ: Անոնցմէ ոչ մէկը, ոչ մէկ ժամանակ բանակցած է ոչ-փոխզիջումային տարբերակներու շուրջ: Պատմաբանը կը հարցնէ՝ ինչո՞ւ հասարակութիւնը չէ մասնակցած (առիթ չէ տրուած անոր մասնակցելու) այս գործընթացքին, այսինքն՝ փոխզիջումային տարբերակներու քննարկութեան: Մինչդեռ Տէր-Պետրոսեանի շրջանին փոխզիջումային տարբերակը բացայայտ էր հասարակութեան առջեւ, միւս երկու նախագահները՝ հետեւելով հանդերձ նոյն փոխզիջումային ուղիին (ուրիշ հարց թէ փուլայինէն անցնելով փաթեթայինի), զայն չներկայացուցին հասարակութեան:

Այվազեանի յիշեալ քաղուածքէն դժուար չէ ցոյց տալ հայրենասիրութեան անհամատեղելիութիւնը խաղաղութեան հետ:

Միջազգայնագէտ Էդգար Էլբակեան («ԼՂ հակամարտութեան հարցում Հայաստանի արտաքին քաղաքականութեան տեսական բացատրութիւնների շուրջ») կը դիտէ եօթը շրջանները ընկալումի տեսանկիւնէն: 1992 Դեկտեմբերին ձայնագրուած ազգագրական երգի մը մէջ, նախկին Ազրպէյճանի ԽՍՀ Ղուբաթլուի շրջանի տարածքը կը կոչուէր «Թուրքի հող»: Այդ տարածքը «Թուրքի հող»-էն նուազ քան մէկ տասնամեակ ետք դարձաւ «ազատագրուած տարածք»: Իսկ քաղաքական ճակատագիրի առումով՝ «յանձնենք՝ անկախութեան դիմաց»-էն մինչեւ «ոչ մի թիզ հող»: 2004-ին հարցըւածներու 32.4%-ը դէմ էր տարածքային զիջումներուն, 2017-ին՝ 86.4%-ը:

Էլբակեանին կը մնար եզրակացնել. «Առկայ վիճակով ԼՂ հակամարտութիւնը չունի այնպիսի լուծում, որ կը բաւարարի երկու կողմերին թէ՛ վերնախաւերի, թէ՛ հասարակութիւնների մակարդակով»:

Իմ կողմէս աւելցնեմ, որ Նիկոլ Փաշինեանի իշխանութեան առաջին շրջանին, ինք եւ տիկինը փորձեցին պաշտօնական տրամասացութեան մէջ մտցնել խաղաղութիւնը, որ հանդիպեցաւ քաղքենի վերնախաւի ահռելի ընդդիմութեան, որուն ազդեցութեան տակ ստիճանաբար իրենց խօսքը փոխեցին հռետորական հայրենասիրութեան, այս անգամ ալ մեղադրուելով փոփիւլիզմի մէջ:

### ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹԻՒՆԸ՝ ԻԲՐԵՒ ՅԱՐՁԱԿՈՒՄ ԿԱՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ

Էդգար Էլբակեան կը փորձէ հակամարտութիւնը դիտել տարբեր անկիւններէ՝ համաձայն միջազգային յարաբերութիւններու գիտակարգի տեսական դրոյթներուն, ինչպէս նոր ռէալիզմը, դասական ռէալիզմը, լիպերալիզմը կամ լիպերալ միջազգայնականութիւնը (liberal internationalism) եւ կառուցողապաշտութիւնը (constructivism): Սպառազինութեան մրցավազքը Ազրպէյճանը կ՚օգտագործէ իբրեւ հարցի ռազմական լուծում (յարձակողական նէօռէալիզմ), մինչդեռ Հայաստանի համար սեփական ապահով գոյութիւնը պահպանելու (պաշտպանողական նէօռէալիզմ) միջոց մըն է ան: Կը հասկնանք, որ երկու պարագաներուն ալ սպառազինութեան մրցավազքի իրականութիւնը առկայ է:

### ՍԹԱԹՈՒՍ-ՔՈՒՕ

Քաղաքագէտ Մանուէլ Սարգսեան («Ի՞նչ է Արցախի ստատուս-քվոն եւ ի՞նչ է նշանակում դրա փոփոխութիւնը») սթաթուս-քուօն կը ներկայացնէ իբրեւ կացութիւն մը՝ որ երեւոյթի մը շուրջ համաձայնութիւն գոյութիւն չունի, ինչպէս Ղարաբաղի հարցը:

Ազրպէյճանի իրաւական ձեւակերպումը շատ յստակ է, կը նշէ Սարգսեան: Ըստ Ազրպէյճանին, Ղարաբաղը իր տարածքն է՝ զոր Հայաստան բռնագրաւած է եւ, համաձայն ՄԱԿ-ի կանոնադրութեան 5-րդ կէտին, իրաւունք ունի ուժի կիրառութեամբ զայն ետ վերցնելու: 30 տարի բոլոր ազրպէյճանցիները կը

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԸ ՄԷԿ ՎԱՅՐԿԵԱՆ ԼՌՈՒԹԵԱՄԲ ՅԱՐԳԵՑ ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ԶՈՀԵՐՈՒՆ ՅԻՇԱՏԱԿԸ

Հայաստանի Ազգային Ժողովը Հոկտեմբեր 27-ի նիստին սկիզբը մէկ վայրկեան լռութեամբ յարգեց 1999 Հոկտեմբեր 27-ի ոճրագործութեան զոհերուն յիշատակը:




ԱԺ նախագահի տեղակալ Ռուբէն Ռուբինեան յիշեցուց, որ 22 տարի առաջ այս օրը խորհրդարանի դահլիճին մէջ տեղի ունեցած է ոճրագործութիւն եւ առաջարկեց մէկ վայրկեան լռութեամբ յարգել զոհերուն յիշատակը:

1999 Հոկտեմբեր 27-ին յարձակում տեղի ունեցաւ Հայաստանի Ազգային Ժողովին վրայ: Կառավարութիւն-ԱԺ հարցուպատասխանի ժամանակ ահաբեկչական խումբի գործողութիւններուն հետեւանքով զոհուեցան ԱԺ նախագահ Կարէն Դեմիրճեան, վարչապետ Վազգէն Սարգսեան, ԱԺ փոխնախագահներ Եուրի Բախշեան եւ Ռուբէն Միրոյեան, Օպերատիւ Հարցերու նախարար Լէոնարդ Պետրոսեան, պատգամաւորներ Արմենակ Արմենակեան, Հենրիկ Աբրահամեան եւ Միքայէլ Քոթանեան:

Վազգէն Սարգսեանի եւ Կարէն Դեմիրճեանի ազդեցիկ գոյութիւնները վերանալով, Ռոբերտ Քոչարեանի համար դուռ բացուեցաւ վերջնականապէս հաստատուելու իբրեւ երկիրի միապետը՝ գագաթնակէտին հասցնելով նէօլիպերալ քրէաօլիկարքութիւնը, որմէ, հակառակ բոլոր բարի միտումներուն, անկարելի եղաւ ձերբազատուիլ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք, չմոռնալով նաեւ քմահաճ խտրական վերաբերմունքը Սփիւռքի հետ, պատճառ հանդիսանալով արդէն գոյութիւն ունեցող ներքին բաժանումներու խորացումին:

## ԿԻՊՐՈՍԻ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐԸ «ԱՆԸՆԴՈՒՆԵԼԻ ԵՆ ՀԱՄԱՐՈՒՄ» ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆԻ ԴԷՄ ԲՈՂՈՔԻ ԱԿՏԸ

Կիպրոսի Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան անունով կ՚ողջունենք Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ՝ Տիար Ալէն Սիմոնեանի պետական այցը Կիպրոս եւ միեւնոյն ատեն անընդունելի կը համարենք կարգ մը անձանց կողմէ անոր այցի դէմ բողոքի ակտը՝ համայն կիպրահայութեան անունով ներկայացնելու միտումը:

Մենք կը կարեւորենք Հայաստան-Կիպրոս կապերու աւելի ամրապնդումն ու խորացումը եւ տարակուսելի կը գտնենք Հայաստանի ներքին քաղաքական տարակարծութիւնները՝ Հայաստանի եւ հայութեան բարեկամ երկրի մը հանրութեան սեփականութիւնը դարձնելու ճիգը, որ միայն կը վնասէ Հայաստանի Հանրապետութեան միջազգային վարկին եւ հեղինակութեան:

Անգամ մը եւս կ՚ուզենք շեշտել, որ Հայաստանի եւ Արցախի համար այս ճակատագրական ժամանակահատուածին, օրուայ գլխաւոր հրամայականը միասնականութիւնը եւ համախմբուածութիւնն է:

**ՍՈՑԻԱԼ ԴԵՄՈԿՐԱՏ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԻՊՐՈՍԻ ՇՐՋԱՆԻ ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆ**

Նիկոսիա, 25 Հոկտեմբեր 2021

# ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԳԵՐՄԱՆԻՈՅ ՄԷՋ

**Համադրեց եւ թարգմանեց՝ Հ. Ա.**

**Սենեակ** 6. «Անաւարտ սէմֆոնի Բ.» (2012):

Գործեր թուղթի վրայ, օգտագործելով գծագրութիւն, բնագիր եւ քոլաժ: Ձանոնք նայելով եւ կարդալով, դիտորդները կը դառնան տիպարներ խորագիրի սէմֆոնիին մէջ, սէմֆոնի մը բաղկացած այն մարդկային ձայներէն՝ որոնք կը հնչեն հակամարտութիւններու, աղէտներու եւ քաղաքականութիւններու համաշխարհային ցանցին մէջ: Քոլաժներուն մէջ այս նիւթը առկայ է լուրերու հաղորդումներու պատկերներուն վրայ, օրինակ՝ Վիեթնամի «Նաւակի մարդոց»-ը, ռազմատենչ Թոնի Պլէրը, կամ Արաբական Գարունի ցոյցերուն պատկերները: Մինչ համաշխարհային պատումները երբեք չեն վերջանար, սէմֆոնիները եւս կը մնան անաւարտ, իւրաքանչիւրը իբրեւ «Անաւարտ սէմֆոնի»:

**Սենեակ** 7. «Նիցչէ եւ բորոտները» (2008-2009):

Պօղիկեանի գործերը յաճախ ուշադրութիւն կը դարձնեն ճնշուած, մեկուսացուած եւ տեղափոխուած մարդոց վրայ, ինչպէս պատերազմներէ, աղքատութենէ, փտածութենէ կամ հիւանդութենէ տառապողները: Անոնց մաս կը կազմեն նաեւ Հնդկաստանի բորոտները: Արուեստագիտուհին յաճախ կ՚անդրադառնայ բորոտային հիւանդներու նիւթին: Հիւանդութիւնը գերմաներէն կը կոչուի նաեւ Aussatz (թափօն) եւ տառապողները յաճախ յայտնի են իբրեւ Aussätzige (վտարեալներ): Ասիկա ցոյց կու տայ թէ ինչպէս մեր լեզուական գործածութեամբ հիւանդները կը մեկուսացուին եւ կը խարանուին: Դեր կը խաղայ նաեւ վարակումի բարձր վտանգը, այնպէս որ առանձնացումը կը հանդիսանայ ազդեցիկ, թէեւ մեկուսացնող չափորոշիչ:

Բորոտային գաղութներ հաստատուած են բազմաթիւ երկիրներ, ոչ միայն Հնդկաստանը: Ամբողջ աշխարհի մէջ կը գտնուին զանազան պետութիւններու կողմէ ստեղծուած եւ գործածուող անթիւ բորոտային կղզիներ: Մարդու իրաւունքները կամ հիմնական մատակարարութիւնները մեծ մասամբ չեն յարգուիր, հետեւաբար այս մարդիկ ոչ միայն մեկուսացուած են, այլեւ լքուած իրենց ճակատագիրին: Բայց եւ այնպէս, կամ ճիշդ այս պատճառով, հիւանդները կառուցած են նոր կեանքեր եւ համայնքներ: Արդարեւ, անոնց խնամքը ամբողջապէս կախուած է ուրիշներու կարեկցանքէն եւ բազմաթիւ բորոտներ կը գոյատեւեն իբրեւ մուրացկաններ:

Նիցչէ՝ որ կը հանդիսանայ Պօղիկեանի գործին մէջ պարբերաբար վերայայտնուող ենթական, հիւանդները նկարագրած է իբրեւ «առողջ» հասարակութեան մակաբոյծներ, անմարդկային վերաբերմունք մը՝ որ կը ձգտի ստեղծել ենթադրաբար աւելի լաւ հասարակութիւն մը ուրիշներու հաշուին: Միւս կողմէ, Պօղիկեան բորոտութիւնը կը համարէ խորհրդանիշ նոյն ինքը հասարակութեան համար: Հիւանդութիւնը, որ ակներեւօրէն կը քայքայէ մարդկային մարմինը, կը ներկայացնէ հասարակական մարմին մը, որուն կառուցուածքները կը գտնուին քայքայումի ընթացքի մէջ:

**Սենեակ** 7. «Պատահար փիլիսոփայի մը կեանքին մէջ» (2017):

Թուրինի փողոցներով քալող անցորդ մը կը տեսնէ ձին ծեծող կառապան մը: Անցորդը կը միջամտէ, խոր կարեկցանքով կը գրկէ ձին եւ կ՚ենթարկուի ջղային խորտակումի: Ասոր կը յաջորդէ հոգեկան խանգարում, որմէ կը տառապի մինչեւ կեանքին աւարտը:

Կ՚ըսուի թէ ասիկա պատահած է 1889 Յունուարի առաւօտ մը: Անցորդը գերմանացի փիլիսոփայ Ֆրիտրիշ Վիլհելմ Նիցչէն էր (1844-1900): Նիցչէի Թուրինի դէպքը մեկնաբանուած է զանազան մօտեցումներով: Ձենք գիտեր որքան ճիշդ է պատմութիւնը, կամ իրականութեան մէջ ինչ էր անկումին բուն պատճառը: Իրողութիւնն այն է՝ որ այս դէպքը նշանակեց հատած մը, եւ Նիցչէի մտաւոր ստեղծարարութեան յաջորդեց խելագարութեան շրջան մը:

Պօղիկեանի գծագրութիւն-քոլաժներու շարքին խորագիրը վերագրութիւնն է այս դէպքին: Ան այցելած է Նիցչէի Թուրինի բնակարանը, առնչուելու համար հիւսիսային Իտալիոյ քաղաքին մէջ փիլիսոփայի ապրած կարճատեւ կենսագրութեան հետ:

Պօղիկեանի գործին մէջ, Նիցչէի ինքնագիտակցական դեգերումը կը սրուի աւերիչ ճեղքուածով, վերջապէս իր




*Սուէզի Ջրանցքի փորումը*: Աննա Պօղիկեանի ցուցահանդէսի գործերէն:

բարձրակէտին հասնելով փիլիսոփային օտարական հեռացումով:

Նիցչէի գրութիւնները նշանակալի ազդեցութիւն ունեցան Ի. դարու սկիզբի մտածողութեան վրայ, ներառեալ անոնց ազդեցութիւնը Սիկմունտ Ֆրոյտի (1856-1939) եւ հոգեվերլուծաբաններու վրայ: Վերոյիշեալ մէկ դէպքը այս բոլորը կը դնէ հարցականի տակ: Անկախ այն հանգամանքէն թէ դէպքը իրապէս այդ ձեւով տեղի ունեցած է թէ ոչ, անընդհատ կրկնուող պատմութիւնը կը նշանակէ չեղում գութն ու «շատ մարդկային»-ը յաղթահարելու Նիցչէի փիլիսոփայութենէն դէպի կարեկցանք: Այս է որ Պօղիկեանի գործը յաջողեցաւ արթնցնել մեր մէջ, գութ՝ թէ՛ կեղեքուած ձիուն եւ թէ՛ բեկեալ փիլիսոփային նկատմամբ:

**Սենեակ** 8. «Անվերնագիր» (2021):

**Սենեակ** 9. «Պալատէն դէպի խրամ» (2021):

Իր անհատական ցուցադրութիւններէն առաջ, Պօղիկեան յաճախ նշանակալի ժամանակ կ՚անցընէ այն քաղաքին կամ վայրին մէջ՝ ուր պիտի ներկայացնէ գործը: Կը սիրէ զգալ տեղական մշակոյթի առանձնայատկութիւնները, տեղւոյն վրայ ստեղծելով նոր տեղադրութիւն մը: Ներկայ համաճարակին պատճառով, այս անգամ ան կը յաջողի Ձիկընի մէջ անցընել ընդամէնը չորս շաբաթ, ստիպուած ըլլալով գործերու երկու շարքեր պատրաստել Գահիրէի սթուտիոյին մէջ: Այս պատճառով, ան այստեղ կը կեդրոնանայ երկու պատմական իրադարձութիւններու վրայ, որոնք երկուքն ալ ունին քաղաքական բնաբան, կը մնան խիստ հրատապ, եւ միասին կը ներկայանան մէկ ցուցադրական տարածութեան վրայ:

«Պալատէն դէպի խրամ»-ը կը բաղկանայ գլխաւորապէս սեւ եւ ճերմակ գծագրութիւններու շարքէ Ingres թուղթի վրայ, զոր արուեստագիտուհին 20 տարի առաջ գնած էր Աղեքսանդրիոյ իտալացի հնավաճառէ: Մօտաւորապէս 40 թուղթերու վրայ Պօղիկեան կ՚առնչուի Սուէզի Ջրանցքի պատմութեան հետ՝ կառուցումի ժամանակ առկայ եւրոպական շահերուն եւ գործողութեան յետագայ ջատագովներուն: Անոր համաշխարհային նշանակութիւնը կրկին ակնյայտ դարձաւ 2021 Մարտի խափանումի ընթացքին:

Պօղիկեան կը հետապնդէ ծովային կապի մասին գաղափարները, որոնք գոյութիւն ունէին ԺԶ. դարէն սկսեալ: Սկսելով 1854-էն՝ երբ եգիպտացի քաղաքապետ Մոհամմատ Սաիտ ֆրանսացի Ֆերտինանտ տը Լըսեփսին կը պարգեւէր Սուէզի Ջրանցքի միջազգային ընկերութեան հիմնադրութեան առաջին մենաշնորհումը, անցնելով Մեծն Բրիտանիոյ եւ 1882-ի Եգիպտոսի գաւթումին դէմ եղած հաստատուն քաղաքական դիմադրութենէն, հասնելով մինչեւ 1888-ի Կոստանդնուպոլսոյ Պայմանագրութիւնը՝ որ տակաւին վաւերական է այսօր եւ բոլոր ազգերուն համար կ՚ապահովէ ապրանքներու եւ ռազմանաւերու ազատ անցքը Սուէզի Ջրանցքէն, ըլլայ խաղաղութեան թէ պատերազմի ժամանակ: Պօղիկեան կը հետախուզէ Սուէզի Ջրանցքը իբրեւ միջազգային առեւտուրի անցք: Օրինակ, աշխարհի առեւտուրի 10%-ը այսօր կ՚անցնի Սուէզի Ջրանցքէն: Ի. դարու սկիզբը, երբ մինչեւ 1956 թուական բրիտանացիները կը վերահսկէին ջրանցքը, իշխանութիւնն ունէին վերահսկելու արեւելքէն դէպի արեւմուտք

↪ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՃԱՀԱԿԻՐԻ* 47-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ԱՐԱԲԵՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ


قائمة الممثلين والشخصيات الأرمنية
في السينما المصرية

إعداد
هايج أفاكيان

جريدة تشاهاجير الأسبوعية
ملحق ٤٧

القاهرة
٢٠٢١

Լոյս տեսաւ *Ճահակիրի* Յաւելուածներու շարքին առաջին արաբերէն գիրքը (Յաւելուած ԽԷ. - 47, 276 էջ), որ թարգմանութիւնն է նախորդ հայերէն Յաւելուածին, բովանդակելով 1062 եգիպտական ֆիլմերու մէջ հանդէս եկած 57 հայ դերասաններու եւ այլ բնադաւառներու գործիչներու ամբողջական ցանկը (բացատրութիւններուն համար տես *Ճահակիրի* նախորդ թիւը):

Ստանալու համար դիմել՝
tchahagir@journalist.com.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՅՈ, ՊԷՏՔ Է ՕԳՏԱԳՈՐԾՈՒԻ ԽՍՀՄ ՔԱՐՏԷԶԸ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Հոկտեմբեր 27-ի Ազգային Ժողովի նիստին, Հայաստան Խմբակցութեան պատգամաւոր Արմենուհի Կիւրեղեան հարցուց վարչապետ Նիկոլ Փաշինեանին, թէ ի՞նչ քարտէզներու մասին կը խօսէր Ռուսաստանի նախագահը: Փութինը ըսաւ՝ որ ռուսական բանակի գլխաւոր շտաբին մէջ կան քարտէզներ, որոնք ցոյց կու տան, թէ ինչպէս անցած են միութենական հանրապետութիւններուն սահմանը խորհրդային շրջանին:

«Արդեօ՞ք դուք գտնում էք, որ իսկապէս այդ սահմանային հարցի քննարկումների ժամանակ Հայաստան, Ադրբէջան եւ Ռուսաստան եռակողմ քննարկումներ են պէտք, արդեօք ռուսական բանակի գենշտաբի քարտէզների շուրջ են անցնելու այդ քննարկումները: Եւ եթէ այո, արդեօ՞ք համոզուած էք, որ այդ քարտէզները համընկնում են կամ գոնէ հիմքում ունեն Հայաստանի վարչատարածքային բաժանման օրէնքը, որի վրայ դուք անընդհատ յղում էք անում: Տեղեա՞կ էք՝ ինչ քարտէզների մասին է խօսքը», - հարցուց Կիւրեղեան:

Վարչապետ Նիկոլ Փաշինեան ըսաւ. «Ես վստահ եմ, որ քարտէզները, որի մասին խօսել է Ռուսաստանի նախագահը, եթէ ոչ 100, ապա 99 տոկոսով համընկնում է Հայաստանի վարչատարածքային բաժանման մասին օրէնքով նկարագրուած Հայաստանին: Այո, ես կարծում եմ՝ պէտք են այդ քարտէզները, այդ քննարկումները: Եւ դա չի նշանակում, որ այդ քարտէզների օրինակներից Հայաստանում չկայ: Այստեղ խնդիրն այն է, որ Ռուսաստանն՝ որպէս նաեւ ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահող երկիր, որպէս միջնորդ, նաեւ այս գործում ներգրաւուածութիւն ունի եւ պէտք է ունենայ»: Նիկոլ Փաշինեանը ըսաւ, որ օրակարգին մէջ կան տարբեր հարցեր, որոնցմէ մէկը ԼՂ հակամարտութեան կարգաւորումն է: Միւս հարցը՝ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ սահմանազատում ու սահմանագծում իրականացնելն է:

«Դելիմիտացիայի համար, այո, պէտք է օգտագործուի ԽՍՀՄ քարտէզը: Թէ որ թուականինը, մենք ասել ենք՝ էն քարտէզը, որ իրաւական հիմք ունի: Մենք պէտք է խորանանք իրաւական հիմքերի մէջ, որովհետեւ մեր ուսումնասիրութիւնը ցոյց է տալիս, որ տարբեր թուականների քարտէզներն ընդամէնը իրար վերատպումներ են: Մենք պէտք է այդ քարտէզներով խորանանք, հասկանանք՝ որն է, որ ունի իրաւական հիմք: Այդ քարտէզների մէջ տարածքային որոշակի տարբերութիւններ կան», - ըսաւ նա:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՆԱԻՐԻ ՅՈՒՆԱՆԵԱՆԸ ԲՈՒԹ ԳՈՐԾԻՔ Է ԵՂԵԼ, ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 27-Ը ԾՐԱԳՐԱՒՈՐՈՒԵԼ Է ԴԵՌ 1990-1991 ԹՈՒԱԿԱՆՆԵՐԻՆ. ՏԱՐՕՆ ՍԱՀԱԿԵԱՆ

ՄԱՐԻԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

*Առաջին լրատուականի* զրուցակիցն է երկրորդ գումարման Ազգային Ժողովի պատգամաւոր, Ռուսաստանի կառավարութիւնում 2000-2003 թուականներին Հայաստանի յատուկ ներկայացուցիչ Տարօն Սահակեանը:

**- Պարոն Սահակեան, Հայաստանի դատախազութեան հաղորդագրութեան համաձայն՝ Հոկտեմբերի 27-ի վերաբացուած գործի շրջանակներում 10 անձ՝ այդ թւում Կարէն ու Նաիրի Յունանեանները հարցաքննուել են: Ներքաղաքական ու արտաքին քաղաքական իրողութիւնները հաշուի առնելով՝ ի՞նչ էք կարծում, ինչքանո՞վ արդիւնաւէտ կարող է լինել գործի քննութիւնը:**

- Նախեւառաջ նշեմ, որ ինձ եւս հարցաքննել են այդ գործով, բայց հրաժարւում են տուժող ճանաչել: Կարծիքս միանշանակ է՝ Հոկտեմբերի 27-ի գործի քննութիւնը ներքաղաքական խնդիրների լուծման համար պէտք չէ օգտագործել, դա շատ վտանգաւոր է: Այսինքն՝ եթէ ուղղութիւնը լինի այնպէս, որ դա արուի ներքաղաքական խնդիրների լուծման համար, ապա անպայման արտաքին վտանգներ կը լինեն: Իսկ եթէ օրինական դաշտում լուծուի՝ ո՛չ ներքին, ո՛չ էլ արտաքին որեւէ վտանգ չի լինի:

**- Դուք ունէ՞ք ակնկալիք կամ յոյս, որ այսքան տարի յետոյ հնարաւոր է բացայայտել այդ գործը:**

- Ես համոզուած եմ, որ գործը բացայայտելու համար որեւէ խոչընդոտ չկայ: Առաւել եւս այն հեքիաթները, որ տասնեակ տարիներ պատմում են, թէ այն կապ ունի արտաքին ուժերի հետ՝ իրականութեան հետ աղերս չունի: Եւ յետոյ՝ քրէական գործն անօրինական կերպով է կարճուել: Եթէ գործը բացել էին, որ օբիեկտիւ քննութիւն իրականացուէր՝ առաջինը պէտք է Աղուան Յովսէփեանը կալանաւորուէր, երկրորդը՝ յայտնի Հրաչեայ Յարութիւնեանը՝ Կրակեմ Հրաչը: Կան բազմաթիւ փաստեր, որ Արմենակ Արմենակեանի սպանութիւնն ահաբեկչական խումբը չի արել: Եթէ գործը բացուել էր օբիեկտիւ քննութիւն իրականացնելու համար, ապա այդ երկու անձինք պէտք է կալանաւորուէին: Այստեղից հետեւութիւն՝ եթէ գործի քննութիւնն այդ ուղղութեամբ չգնաց, նշանակում է, այն օբիեկտիւ լինել չի կարող: Եւ որպէսզի կոծկուի այն հանգամանքը, թէ ինչու իրենք օբիեկտիւ չեն եղել՝ արտաքին, ներքին ուժերի հեքիաթներ սկսեցին մէջբերել:

**- Արտաքինի մասով նշւում է ռուսական յատուկ ծառայութիւնների մասին վարկածը: Դուք դա իրատեսական չէ՞ք համարում:**

- Վարկածն ընդունելի է, թէ ոչ՝ իմ ասելով չէ: Այն, ինչ որ ինձ կապել էր ռուսական յատուկ ծառայութիւնների հետ ու ինչ արել են 20 տարուց աւել, այդ մասն ամբողջութեամբ կեղծ է: Ես իմ հետ կապուած հարցերի տէրն եմ, իսկ եթէ իրենք ռուսական հետք են տեսնում՝ թող հետաքննեն: Ի՞նչ է նշանակում, որ մինչեւ Հոկտեմբերի 27-ը ռուսական յատուկ ծառայութիւնները բանկում գումարներ են դրել կազմակերպելու, դրանից յետոյ շարունակել են, թէ գումարներն ուղղուել են այդ ահաբեկչութիւնը կատարելուն: Երբ բանկը լուծարել են, սննկացման կառավարիչ են նշանակել, այդ ամբողջ բանկի փաստաթղթերը իրենց տրամադրութեան տակ է: Դուք լինէիք իմ փոխարէն ի՞նչ կ՚ասէինք: Ինձ կապում են ռուսական յատուկ ծառայութիւնների հետ, բայց այդ ամէնը մի բանի համար է, որպէսզի կոծկեն Աղուան Յովսէփեանին ու Կրակեմ Հրաչին: Այդ ամբողջ ընթացքում 20 տարուայ մէջ երկրագնդում տարբեր տեղերում մարդիկ էին սպանւում, ինչ է թէ այդ երկուսի մասով պետութիւնն օբիեկտիւ որոշում չէր կայացնում: Իսկ մնացածը քննութեան խնդիրն է: Թող իմ մասով օբիեկտիւ որոշում կայացնեն, մնացածն իմ գործը չէ: Եթէ ռուսական հետք կայ, թող հետաքննեն, ե՞ս եմ խանգարում:

**- Յիշատակւում է ռուսական յատուկ ծառայութիւնների ներկայացուցիչ Լիտվինենկոյի յայտարարութիւնը մահից առաջ, որ Հոկտեմբերի 27-ը կազմակերպել էին ռուսական յատուկ ծառայութիւնները:**



- Լիտվինենկոն դա շրջանառութեան մէջ է դրել ադրբէջանական մամուլի միջոցով: Նոյնը հիմա է՝ ադրբէջանական մամուլը տարբեր բաներ է դնում շրջանառութեան մէջ: Դուք ի՞նչ էք կարծում՝ Ադրբէջանը կամ ադրբէջանական յատուկ ծառայութիւնները շահագրգռուած էին, որ Հայաստանում կայունութիւն լինէր ու յանցագործութիւնը բացայայտուէ՞ր, ես այդ կարծիքին չեմ: Լիտվինենկոյի հետ կապուած չակերտները բացեմ:

2014 թուականին Լիտվինենկոյի դատավարութիւնը Լոնդոնում սկսուեց: Այդ նոյն ժամանակ Թուրքիան սկսեց Բայրաքթարների արտադրութիւնը: 2016 թուականին հրապարակուեց Լոնդոնի դատարանի որոշումը Լիտվինենկոյի յայտարարութեան հիման վրայ: Դրանից յետոյ Եւրոխորհուրդը բանաձեւ ընդունեց Սարսանգի ջրամբարի ուղղութեամբ: Տրուեց պատերազմի ուղղութիւնը, եղաւ ապրիլեան պատերազմը: Այսինքն՝ Լիտվինենկոյի մահուան հանգամանքները մի բան էին ասում, որ Ռուսաստանն ահաբեկիչ է, որ պատերազմի ուղղութիւնը տրուէր: Արդեօք հնարաւոր չէ՞ այս ինֆորմացիան համացանցով փնտրել, ամբողջը կայ: Մի քիչ էլ յետ գնամ: 1998 թուականին Լիտվինենկոն դեռ ռուսական յատուկ ծառայութեան աշխատակից էր: Յայտարարեց, որ իրեն հրահանգել են սպանել Բերեզովսկուն: Այսինքն ինքը շրջանառութեան մէջ դրեց, որ ռուսական յատուկ ծառայութիւններն ահաբեկչութեամբ էին զբաղւում: Երբ փախաւ Լոնդոն, յայտարարեց, որ Հոկտեմբերի 27-ն էլ են ռուսները կազմակերպել: Եթէ նա մինչեւ Հոկտեմբերի 27-ը նման յայտարարութիւններ չանէր, Լոնդոն փախնելուց յետոյ արուած յայտարարութիւնն անհիմն կը լինէր: Մարդիկ նախապատրաստել են այդ վարկածները, որպէսզի 27-ից յետոյ Ադրբէջանի միջոցով այդ վարկածը դնեն շրջանառութեան մէջ, յետոյ Լոնդոնի դատարանի որոշումը լինէր, պատերազմի ուղղութիւնը տային ու մեր երեխաներին կոտորէին: Ես նրա հետ ո՛չ առնչուել եմ, ո՛չ էլ ճանաչում եմ, բայց չի կարելի բանկի գումարները կապել ահաբեկեչութեան հետ, Լիտվինենկոյի ասածներն էլ այդպէս ընդունել… կեղծիքն էլ սկիզբ ու վերջ ունի:

**- Իսկ ի՞նչ ակնկալիք կայ, որ այսքան տարի յետոյ Նաիրի Յունանեանն ինչ-որ բան կը խօսի:**

- Նաիրի Յունանեանն ու Կարէն Յունանեանը պատուիրատուների ու կազմակերպիչների մասին բացարձակապէս ոչինչ չեն կարող ասել: Հոկտեմբերի 27-ը ծրագրաւորուել է 1990-1991 թուականներից: Կազմակերպուել է մինչեւ 1999 թուականը, իսկ կատարողները բութ գործիք են: Պատուիրատուները գնացել հետները հանդիպել են, նստել թէյ են խմել… պատկերացնո՞ւմ էք ինչ է պատուիրուել՝ աշխարհաքաղաքական, ռազմաքաղաքական լուրջ խնդիր՝ տարածքները վերադարձնել, խաղաղապահ զօրքերը մտցնել: Ու այդ պատուիրատուները գնացել Նաիրի Յունանեանի հետ խօսացել են, որ ինքն էլ ասի՞: Ես այդ մասին հաղորդում եմ տուել: Թող ԱԱԾ-ն հերքի, որպէս սուտ մատնութիւն յօդուած դնի իմ վրայ: Ճիշտ հասկացէք՝ այն, ինչ դրւում է շրջանառութեան մէջ՝ հիմա կամ առաջ, ադրբէջանական մամուլում, ես դրան վատ եմ վերաբերւում: Ես չեմ կարծում, որ նրանք կ՚ուզէին, որ Ղարաբաղի հարցը յօգուտ մեզ լուծուէր, երկիրն էլ զարգանար:

ԽՈՀԵՐ

# ԲՆԱԶԴԱԿԱՆ ԲԱՐՔԵՐ ՈՒ ԿԱՆՈՆՆԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Կը խօսիս կուսակցականի մը հետ: Կրնայ պատահիլ անոր ըսես՝ թէ այս ի՛նչ անտանելի ազգ է հայը, ինչպէ՛ս կարելի է հայը այսքան վատութիւն ընէ հայուն, եւ նման բաներ: Կուսակցապաշտ դիմացինդ կրնայ հաստատել ըսածդ: Կամ ալ կրնայ հակաճառել, ըսելով ճիշդ հակառակը՝ թէ աշխարհի ամենէն ազնիւ ազգն է հայը: Յաճախ միջինը կը բացակայի: Ամէն պարագայի, այսպիսով հարցը կը վերջանայ ու կը մոռցուի: Բայց չփորձես յանկարծ քննադատել *իր* կուսակցութիւնը: Կը կրքոտի, կը բորբոքի, դէմքը կը կարմրի, կը դառնայ ջղագրգիռ եւ կը պոռայ ու կը պոռայ: Կը դառնաս թշնամի՝ աւելի քան թշնամին: Յաջորդ օրը ամբողջ կուսակցութիւնը կ՚իմանայ թշնամութեանդ մասին:

Արդ, կարելի է վարկաբեկել հայ ազգը՝ իբրեւ ամբողջատիրական չզանազանուած գոյութիւն, կարելի չէ քննադատել այդ նոյն ազգին ներկայացուցչականութիւնը սեփականացուցած միաւորը: Առաջինը՝ ընդհանրացուած ինքնութիւն մըն է, երկրորդը՝ բեւեռացուած ինքնութիւն: Այլազան ու բազմազան, այլաշերտ ու բազմաշերտ ինքնութիւններ՝ շղթայակապուած ենթակայական-համակեցային ինքնութեամբ, դուրս է ամէն տեսակ դիտարկութենէ:

Կուսակցականապէս մեզի պատկանող իրն ու մարդը *բնազդաբար* լաւ է, կուսակցականապէս ուրիշին պատկանողը՝ *բնազդաբար* միջակ, ընդունելի կամ վատ, յաճախ՝ անգոյ: Վտանգը այդ անիրազեկ բնազդականին մէջ է: Վտանգը չփորձուած բնազդականին մէջ է: Կուսակցութեան մէջ գաղափարախօսութիւնը (գաղափարախօսութիւն՝ ի տարբերութիւն գաղափարէ) այնքան խոր ու վերջնականօրէն ներքնականացուած է, որ այլեւս տեղ չկայ ուրիշին:

Կը բաւէ չկարդացող անձ մը իր կուսակցութեան յարող գրողներէն մէկուն անունը լսէ՝ որուն գրածներէն ոչ մէկ բառ կարդացած է եւ ոչ ալ պիտի կարդայ, որպէսզի զայն *բնազդաբար* համարէ հանճար: Կը բաւէ չկարդացող անձ մը ուրիշ կուսակցութեան յարող գրողներէն մէկուն անունը լսէ՝ որուն գրածներէն ոչ մէկ բառ կարդացած է եւ ոչ ալ պիտի կարդայ, որպէսզի զայն *բնազդաբար* համարէ միջակ կամ անտաղանդ, աւելցնելով՝ հոգ չէ, ան ալ հայ է: «Հոգ չէ»:

Դպրոցի մէջ մեր ուսուցիչը *բնազդաբար* լաւ է, միւսին ուսուցիչը *բնազդաբար* վատ: Գոնէ հաւասարակշռութիւն մը կը ստեղծուի: Իսկ եթէ տնօրէ՞նը ըլլայ այս կամ կողմի ներկայացուցիչ: Հաւասարակշռութիւնը կը խախտուի, պայքարը կը հասնի գագաթնակէտին: Ամրակուռ ջիղեր պէտք են կուսակցականացուած միջավայրի մէջ ըլլալ դպրոցի տնօրէն:

Երբ մենք դպրոց փակենք, *բնազդաբար* կ՚ըսենք՝ ի՞նչ ընենք, ստիպուած էինք, Սփիւռքը հայերէն չ՚ուզեր սորվիլ, Սփիւռքը կը վերջանայ: Ամէն բանի յանցաւորը մեր ներքնախաւն է: Իսկ երբ միւսը դպրոց փակէ, *բնազդաբար* կ՚ըսենք՝ ինչպիսի ապազգային մարդ մըն է ղեկավարը՝ որ նման որոշում կայացուց: Յանցաւորը միւսին վերնախաւն է:

Եթէ մենք հայեր սպաննենք կամ ծեծենք՝ ան ալ համակարգըւած ու պաշտօնականացուած ահաբեկիչ խմբակի կողմէ, *բնազդաբար* կ՚ըսենք՝ արժանի էր մեռնելու կամ ծեծուելու: Իսկ եթէ նոյն բանը ընէ միւս կողմը՝ «հայը հայուն դէմ» պատրաստ կարգախօսը *բնազդաբար* առաջ կը նետենք:

Եթէ մենք մտնենք Հայաստանի խորհրդարան եւ կառավարութիւն, Հայաստանի իշխանութիւնները *բնազդաբար* կը դառնան հրեշտակ, կամ առաւելագոյնը մեղմօրէն կը քննադատուին՝ որպէսզի ձեւականօրէն ցոյց տանք մեր անկախութիւնը անոնցմէ: Իսկ եթէ չմտնենք՝ *բնազդաբար* կը դառնան հրէշ, այնքան հրէշ՝ որ տեղ չկայ նոյնիսկ շատ պզտիկ առաւելութիւն մը տեսնելու: Ալ ուր մնաց եթէ յեղափոխութիւն կատարուի եւ ժողովուրդի կողմէ մերժուածներու կարգին ըլլանք նաեւ մենք: Ամբողջ *բնազդականը* կը խայտայ:

Եթէ նկատէք, կուսակցականներու եւ կուսակցական ակումբներ յաճախողներու մեծ մասը կուսակցականի զաւակներ են: Այնպէս չէ որ անոնք կարդացած են երեք աւանդականներուն կանոնագիրները, անձամբ եւ ԻՆՔՆՈՒՐՈՅՆԱԲԱՐ սերտած երեքին պատմութիւնները եւ ապա միայն ընտրութիւն կատարած: Ասիկա առաւել եւս կը հաստատէ գաղափարախօսային, բայց ոչ գաղափարային, հենքը:

Կան նաեւ ինքնահռչակ չէզոքները՝ իբր արդիւնք կուսակցութիւններուն: Անհասկնալի եզրոյթ մը: Այս չէզոքը արդեօք կարդացա՞ծ է երեք կուսակցութիւններուն կանոնագիրները, ուսումնասիրած երեքին գործունէութիւնը, որմէ ետք որոշած իր չէզոքութիւնը: Ինքզինքը չէզոք համարելով ի՞նչ կը հասկնայ. ընդունի՞լ երեքին գաղափարները, թէ մերժել երեքը:

Կուսակցական-միութենական *բնազդական* դարձած


4




## 2 ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ

Հոսող ամբողջ առեւտուրին վրայ:

**Սենեակ 9.** «Եսականութիւններ եւ Հայելիներ» (2021):

Բաղկացած է ընդարձակ ձեւաչափով թուղթերու կտրուածքներէ եւ նուիրուած սպանիական կրիփի ժամանակաշրջանին ու անոր ազդեցութեան աշխարհի քաղաքականութեան վրայ՝ 100 տարի առաջ կայացած Փարիզի Խաղաղութեան Համագումարի ընաբանին մէջ: ԱՄՆ-ի նախագահ Ուուտրոու Ուիլսոնի վարակը՝ որ մարմնապէս տկարացուց զինք բանակցութիւններու ամենակարեւոր պահուն, լուրջ հետեւանքներ ունեցաւ չորս յաղթական ուժերու հանդիպումներուն համար: Ֆրանսա, Մեծն Բրիտանիա, Իտալիա եւ ԱՄՆ քննարկեցին Գերմանական Ռայխի պայմանները՝ որ պատերազմը կորսնցուցած ըլլալուն դուրս մնացած էր բանակցութիւններէն: Արդիւնքները առաջնորդեցին, ի միջի այլոց, Վերսայի Խաղաղութեան Համաձայնագիրին՝ որ Գերմանական Կայսրութեան կողմէ համարուեցաւ չափազանց բիրտ, վերջապէս ապակայունացնելով միջազգային տնտեսական յարաբերութիւնները: Ցոլացող մակերեսի վրայ Պօղիկեան կը ներկայացնէ այս նիւթի տեսարաններէն եւ դէմքերէն ընտրանի մը, առիթ տալով ներկային ու անցեալին ուղղակիօրէն իրարու հանդիպիլ:

(Տար. 2)

## 3 ԲՆԱԶԴԱԿԱՆ ԲԱՐՔԵՐ ՈՒ ԿԱՆՈՆՆԵՐ

բարքերէն մէկն է ցկեանսութիւնը: Յատուկ է բոլորին: Բարքէ առաջ՝ կազմական օրէնք է, որ յետոյ դարձած է բարք-հասկացութիւն՝ «ցըկեանս», հեգնական երանգով: Խնդիրը այն է՝ որ աւանդական ղեկավարական պաշտօնները տարիներու սահմանափակութիւն չունին: Ղեկավարը ղեկավար է՝ մինչեւ որ դուրս ձգուի, պիտի ըսէի՝ դուրս նետուի: Կանոնագրութիւնները գրած են նոյն այն ղեկավար մարմինները, որոնք ինքզինքնուն տուած են յաւերժական գոյութեան կարելիութիւն: Հասկընալի է, կանոնագրութիւն կամ օրէնք արտադրողը ինքն իր համար սահմանափակումներ պիտի չդնէր:

Աւելի լաւ չէ՞ կանոնագրային օրէնքի միջոցով ղեկավարը սահմանափակէ իր պաշտօնին ժամկէտը, քան թէ մեծահասակ տարիքին՝ տակաւին կառչելով աթոռին, վտարուի պաշտօնէն եւ ապա անտեսուի իր իսկ կուսակցութեան անդամներուն կողմէ: Շրջագիծ մը, որ անընդհատ կը կրկնուի, ուր վտարողը տարիներ ետք պիտի դառնայ վտարուող: Կը կրկնուի միեւնոյն պատումը, վտարուողը անպիտան տարր համարելով զինքը վտարող երիտասարդը, վտարող երիտասարդը անգործունեայ ջոջ համարելով իր ձեռքով վտարածը: Սերունդներու պայքար չէ ասիկա՝ որմէ ծնունդ պիտի առնէր նոր մտածողութիւն, այլ կազմական օրինականութեան թերութիւն՝ որ պիտի խանգարէր նոր մտածողութեան ծնունդը: Վտարել-վտարուելով նոր միտք չի ծնիր:

Եթէ ղեկավարական տարիներու սահմանափակումը տեսականօրէն կարելի է՝ կանոնագրութիւն փոխելով, տեսական եւ գործնական առումներով անկարելի է թելադրել ինքնաքննադատութիւնը: Սփիւռքի կուսակցութիւններուն մէջ ինքնաքննադատութիւն *բնազդաբար* չկայ: Քննադատողը կը վտարուի կուսակցութենէն՝ զինուորի դերը լաւ կատարած չըլլալուն համար: *Բնազդական* զինուորներ են պէտք, ներառեալ *բնազդական* «մտաւորական» զինուորներ, որոնք բարեբախտաբար կը վխտան ամէնուրեք, ոմանք երբեմն նոյնիսկ ծառայելով ղեկավարի սեփական անձին՝ փոխան հիմնարկային դրամի:

Ֆրանսահայ գործարարուհի Աշխէն Գործունեան, *Lragir.am*-ի Սիրանոյշ Պապեանի հետ վերջերս ունեցած հարցազրոյցին յայտարարած է. «Սփիւռքի մէջ քաղաքական աւանդական կուսակցութիւնները պէտք է ինքնաքննադատութիւն ընեն, մտածեն, որ պատմութիւնը փոխուած է, ուրիշ իրականութիւն է, եւ արդեօք իրենք ճի՞շդ են, իրենց կեցուածքը ճի՞շդ է, թէ սխալ: Այն օրը՝ երբ իրենք ինքնաքննադատութեամբ զբաղին եւ իրենց շարքերը մաքրեն, այդ օրը կը սկսին գործել» (https://www.1in.am/3015101.html):

Ինքնաքննադատութիւն՝ կուսակցութիւններուն համար, ի ՆՊԱՍՏ կուսակցութիւններուն: Ինքնաքննադատութիւն՝ անիրագեկ *բնազդականի* տիրակալութեան փոխարէն:

## 1 ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԲԱԶՄԱԶԱՅՆՈՒԹԻՒՆԸ

կրկնեն միայն այս ձեւակերպումը:

Իսկ ի՞նչ կ՚ըսէ Հայաստան: «Ի՜նչ ասես ասում է», իր իսկ հարցումին կը պատասխանէ Սարգսեան: Կարելի է հսկայ ցուցակ կազմել:

### ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԸ ԻՐԵՆՑ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

Հասարակական մարդաբան Էվիա Յովհաննիսեանի («Սոցիալ-մշակութային տարընկալումների թոհուբոհում. հայ փախստականների կեանքը նախկին ադրբէջանաբնակ գիւղերում») ուշադրութեան կեդրոնն է բանաւոր պատմութիւններն ու բազմաքայլ գաղթերը, հիմնուելով case study-ներու վրայ:

Օրինակ, Ալլան ու իր ընտանիքը տեղափոխուած են Շուշիէն: Նախ Ազըրպէյճանէն մեկնած են Ռուսաստանի Վոլկոտոնսք երիտասարդ քաղաքը: Միջէթնիքական հակամարտութենէն փախչած ընտանիքը բազմազգ քաղաքին մէջ շուտով կը կանգնի նոր էթնիքական սպառնալիքի վտանգին առջեւ: Հայաստանի մէջ կը գտնեն ռուս ընտանիք մը՝ որուն հետ կը փոխանակեն բնակարանները, Ալլան ու ընտանիքը գալով Երեւան, ռուս ընտանիքը երթալով Վոլկոտոնսք: Երեխաները կը յաճախեն դպրոց, կը սորվին հայերէն, Ալլան աշխատանք կը գտնէ պանքի մէջ եւ ընտանիքը կը մերուի տեղական միջավայրին հետ: Բայց յայտնի կարծրատիպերը հանգիստ չեն թողուր անոնց, կ՚անուանուին «չուռ տուած հայեր»՝ քանի որ նախապէս հայերէն չէին իմացած, այլեւ ապրած ըլլալով Ազըրպէյճանի մէջ, որոշ հասարակամշակութային առումով կը տարբերէին տեղացի հայերէն: Ասիկա կը ստիպէ անոնց 1994-ին գաղթել Սթաւրոփոլ: Այստեղ է ուր Յովհաննիսեան կը հանդիպի Ալլային եւ կ՚արձանագրէ այս բազմաքայլութիւնը:

Ուրիշ ընտանիք մը հակամարտութեան տարիներուն Ազըրպէյճանէն կ՚ապաստանի Տուշանպէ, ուր 1990-ին սկիզբ առած էթնիքական բախումներուն հետեւանքով կը գաղթէ Հայաստանի Գեղարքունիքի գիւղերէն մէկը, բայց 1990-ականներու սկիզբը գոյացած հասարակական-տնտեսական պայմաններուն պատճառով չկարողանալով գոյատեւել, կը մեկնի Ուքրաինայի Տոնիեցք քաղաքը, ուրկէ եւս կը հեռանայ 2014-ի պատերազմի հետեւանքով: Ողջ կեանք մը՝ իբրեւ փախստականութեան շղթայ:

Պաշտօնական տուեալներով, 3-4 տարուայ ընթացքին 360 հազար հայեր Ազըրպէյճանէն տեղափոխուած են Հայաստան: Յովհաննիսեան կը յիշեցնէ՝ որ այս ժամանակաշրջանին ձեւաւորուած է միջնորդներու խումբ Ղազախ քաղաքին մէջ՝ կազմուած լեզգիններէ, հայերէ եւ ազըրպէյճանցիներէ, որոնք կարեւոր օգնութիւն ցուցաբերած են՝ ստեղծելով ապահովութեան գօտի, անշուշտ ոչ առանց դրամական շահոյթի:

### ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԲՌՆԱԳԱՂԹ ԵՒ «ՀԱԿԱՌԱԿՈՐԴ»-Ի ՄՇԱԿՈՅԹԻ ՊԱՀՊԱՆՈՒԹԻՒՆ

Մշակութային մարդաբան Արսէն Յակոբեան («Բռնագաղթը, մշակոյթը եւ «Նոր» սփիւռքը») կը բացատրէ այն մշակոյթը զոր իրենց հետ կը փոխադրեն գաղթականները: Նոր տեղավայրերու մէջ այդ մշակոյթը կ՚ենթարկուի նոր յարմարեցումներու:

Օրինակ, Պանդ սրբավայր-մատուռը հիւսիսային Արցախի եւ Գանձակի հայութեան կարեւոր ուխտավայր մըն էր եւ մինչեւ 1988 կենդանի էր իր Օգոստոսի ուխտագնացութիւններով: 1988-1991-ի հայերու բռնագաղթի հետեւանքով «գաղթեց» նաեւ Պանդ սուրբը՝ իր շուրջը ձեւաւորուած կրօնական ու ժողովրդական մշակոյթով, հասնելով Հայաստանի Սոթք գիւղը եւ Ռուսաստանի Քրասնոտար քաղաքը, եւ այնտեղ վերաիմաստաւորուելով իբրեւ մշակութային գործօն:

Միւս կողմէ, փորձեր կատարուած են պահպանելու գաղթած-հեռացածներու մշակութային յուշարձանները, բնականաբար, առանց անոնց մշակութային բովանդակութեան:

Ազգագրագէտ Լուսինէ Խառատեան («Հակամարտութիւն եւ յիշողութիւն. բացակայ մարդկանց ներկայութիւն») կը ներկայացնէ՝ որ խորհրդային փլուզումէն քիչ առաջ, Հայկական ԽՍՀ-ի ոչ հայ բնակչութեան մեծամասնութիւնը ազըրպէյճանցիներ էին, 1979-ին կազմելով 5.3%, 1989-ին՝ 2.75%: Ունէին դպրոց, թերթ, ռատիօհաղորդում, թատրոն: Բռնագաղթէն ետք, թէ՛ Հայաստանը եւ թէ՛ Ազըրպէյճանը փորձեցին տեղավայրերը զրկել հակամարտութեան նախորդող մշակութային բովանդակութենէն, տարածքները լեցնելով այլ բնագիրներով: Հակառակ ասոր, կան պահպանուած վայրեր եւ յուշարձաններ: Օրինակ, երկու բնակչութիւններու փոխհամաձայնութեան վրայ, յաճախ խնամուած ու պահպանուած են գերեզմանատուները: Լաւ պահպանուած է Ամասիայի ազըրպէյճանական գերեզմանատունը: Երբեմն հայերն ու ազըրպէյճանցիները կը փոխանակեն իրենց ննջեցեալներուն լուսանկարները, սկիզբը Մոսկուայի միջնորդի մը միջոցով իսկ հիմա արդէն համացանցով: Նոյնիսկ 1990-ականներու սկիզբը, Հայաստանի տեղական իշխանութիւնները այցելած են նորաբնակներուն եւ պատուիրած չդպչիլ գերեզմանատուներուն:

Ուրիշ գերեզմանատուներ, սակայն, չեն պահպանուած, ինչպէս Թոխմախը: Թէեւ այնտեղ պահպանուած է յիշողութիւնը, քանի որ հին աշխատողները այսօր տեղավայրը կ՚անուանեն Թուրքի Գերեզմանոց:

Պահպանուած են նաեւ ժողովրդական ուխտավայրեր ու սրբավայրերու յուշարձաններ:

### ՏԵՂԱՑԻ/ԵԿՈՒՈՐ

Էվիա Յովհաննիսեան արդէն յիշատակեց «չուռ տուած հայեր»-ու հասկացողութիւնը: Կը յիշատակէ տեղացի/եկուոր հակադրութեան ուրիշ օրինակներ:

Սոթք գիւղին մէջ տեղացիներուն գերեզմանատունը առանձին է, փախստականներունը առանձին, քանի որ տեղացիները չարտօնեցին փախստականներուն իրենց մահացածները թաղել տեղի հայկական գերեզմանոցին մէջ: Իսկ Մեծ Մասրիկի մէջ փախստականներուն համար առանձնացուած է անկիւն մը ընդհանուր գերեզմանատան մէջ:

Բացի այդ, վախնալով որ հայ փախստականները կ՚իւրացնեն բնական աղբիւրները, տեղացիները միշտ չէ որ լաւ աչքով նայած են փախստականներուն: Աւելին, փախստականները կը տիրանային օրէնքով սահմանուած իրաւունքներուն, օրինակ՝ մէկ հեքթար հողատարածութեան, մինչդեռ տեղացիները կը յաջողէին ձեռք բերել մինչեւ 50 հեքթար տարածութիւն: Այս ճնշումն էր՝ որ ստիպեց բազմաթիւ փախստականներու վերագաղթել Ռուսաստան եւ Ուքրաինա:

Ա.

(Տար. 1/2)

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1903 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 18 ՆՈՅԵՄԲԵՐ 2021 — *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՌկ.* — عدد رقم ١٩٠٣ الخميس ١٨ نوفمبر ٢٠٢١


## ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԲԱԶՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆԸ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԱՌՕՐԵԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Ազգագրագէտ Մխիթար Գաբրիէլեանի համար («Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւն. պատմութիւն եւ պատմութիւններ»), արցախեան հակամարտութեան եւ ընդհանրապէս հակամարտութիւններու մարդաբանական ուսումնասիրութեան կարեւոր խնդիրներէն մէկն է անոնց դիտարկումը ոչ միայն իբրեւ «պատմութիւն», այլ իբրեւ «պատմութիւններ», ներառնելով առօրեականութիւնը եւ մարդկային պատմութիւնները: Հակամարտութիւնը նորովի լուծումի հնարաւորութիւն ստանալու համար կարեւոր է մէկ պատմութեան պատումը փոխարինել քանի մը պատմութիւններու պատումներով: Իսկ այս պատումները պէտք է ներկայացուին քաղաքացիական իրաւունքներու իրացումի պայքարի բնաբանին մէջ. «Արդէն 1905-1907 թուականներին, մենք տեսանք եւ տեսնում ենք մի մոդէլ, որը նաեւ քաղաքական էլիտաների անմիջական ներգործման արդիւնքում, էթնիկութիւնն է դարձնում կարեւոր: Այսինքն երկու հարեւանի երկու երեխայի կռիւը, եթէ մի քիչ թեկուզ կոպիտ ասենք, որը նախկինում ընդամէնը երկու «լակոտ»-ի կռիւ էր, այդ անմիջական ներգործութիւնների արդիւնքում դարձաւ հայի եւ թուրքի «լակոտ»-ի կռիւ, ընդհանրապէս եւ էապէս փոխելով առօրեականութեան պրակտիկաները եւ առօրեականութեան ստրատեգիաները, ինչին բնականաբար որոշակիօրէն նպատակադրուած ազդում էին նաեւ քաղաքական էլիտաները, որովհետեւ սա ամենայարմար ժամանակահատուածն էր քաղաքական գործընթացների վրայ վերահսկողութիւն ունենալը էթնիկութեան միջոցաւ: Ես դեռեւս չեմ ասում ազգայնականութեան միջոցաւ»:

Գաբրիէլեան կ'աւելցնէ՝ որ անկախութեան առաջին տարիներէն սկսեալ մեր պատմագիտութիւնը եւ հայագիտութիւնը կը շարունակեն խորհրդային շրջանին ձեւաւորուած պատմագիտական մօտեցումները: Այսօրուայ հայոց պատմութեան դասագիրքերը եւ արցախեան շարժումին նուիրուած մենագրութիւնները կը փորձեն ընթանալ *մէկ* պատմութեան ճանապարհով, ընդ որում միայն մեր տեսանկիւնէն ընդունելի պատմութիւն ներկայացնելու եւ շարադրելու տարբերակով, խնդիրը տանելով փակուղի:

Առօրեականաութեան վերացումը կը ծառայէ միայն իշխանութեան եւ անոր վերարտադրութեան, քանի որ ներքեւը ոչինչ մնալով, հնարաւորութիւն կ'ընձեռնուի դասագիրքերուն մէջ պիտակաւորելու, դպրոց մտցնելու եւ իբրեւ գաղափար անընդհատ վերարտադրելու լոկ պաշտօնական տրամասացութիւնը:

### ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Արուեստագիտութեան թեկնածու Արթուր Աւանեսով («Ազգապահպանում, թէ՞ ազգաստեղծում. դասական երաժշտութիւնը 20-րդ դարի Հայաստանում եւ Ադրբէջանում») տեղային երաժշտական մշակոյթներուն մէջ, ընդհանրապէս, կը զանազանէ երեք հիմնական շերտեր՝ հոգեւոր, գեղջկական եւ ժողովրդա-փրոֆեսիոնէլ (վերջինս՝ խորհրդային ձեւակերպումով): Կ'ըսէ՝ որ հայ երաժշտութիւնը իր կայացումին համար նախ եւ առաջ ընտրած է հոգեւոր եւ գեղջկական երաժշտութեան աւանդոյթները (Կոմիտաս վարդապետ): Ազրպէյճանի մէջ կատարուեցաւ ճիշդ հակառակը: Արեւմտեան սեռերով յօրինած առաջին ազրպէյճանցի երաժշտահանները, մշակոյթի կայացումի համար ընտրած են ժողովրդա-փրոֆեսիոնէլ արուեստը, որ յատուկ էր ընդհանրապէս ամբողջ արեւելքին:

Աւանեսով կը բացատրէ՝ որ հայ ազգի առջեւ ծառացած էր ինքնապահպանումի խնդիր, որուն լուծումի եղանակներէն մէկն էր աշխարհին ներկայանալ երեւոյթով՝ որ յայտնի է միայն տուեալ ազգի համար: Կոմիտաս չդիմեց գուսանա-աշուղական արուեստին, թերեւս այն պատճառով՝ որ ան յատուկ էր ոչ միայն հայկական երաժշտութեան այլ ընդհանրապէս ամբողջ տարածաշրջանին: Ազրպէյճանի մէջ տեղի ունեցաւ հակառակ գործընթացքը: Ազգը մշակոյթի միջոցով կայանալէն ետք, այդ մշակոյթը կարիք ունէր ընդհանրանալու մահմետական աշխարհին հետ: Մուղամային օփերաները կը խօսէին այս ընդհանրացումին մասին:

Խորհրդային ներքին արեւելապաշտութիւնը (orientalism)՝ իբրեւ իշխող գաղափարախօսութիւն, լոկ որոշ շրջանի մը համար խաղաց միաւորողի դեր, երբ երկու կողմերու երաժշտահանները ընդհանուր արեւելականութեան տակ ընթացան նոյն ուղիով, 1930-ականներուն ականատես ըլլալով լեզուական համահարթեցումի:

Հակամարտութենէն ետք յառաջացաւ խզում, բնականաբար պիտի արձանագրէր Աւանեսով:

Գրականագէտ Վահրամ Դանիէլեան («Խաղից դուրս գրականութիւն. Ղարաբաղեան կոնֆլիկտը ժամանակակից հայ եւ ադրբէջանական արձակում») կը փորձէ մեկնաբանել հակամարտութենէն ետք գրուած երկու կողմերու գրական այն գործերը՝ որոնք կը բխին գիրար ճանչնալու փափաքէն եւ զերծ են գիրար ոչնչացնելու մղումէն:

Ազրպէյճանական կողմէն, Աքրամ Այլիսլիի *Քարէ երազներ* վէպը գրուած է բաւական վաղ բայց հեղինակը չէ փափաքած զայն յանձնել տպագրութեան: 2004-ի Պուտափեշթի հայ սպայի սպանութիւնը եւ 2012-ին անոր ազատ արձակումը եւ հերոսականացումը Ազրպէյճանի մէջ, կը մղէ հեղինակին 2013-ին Ռուսաստանի մէջ լոյս ընծայել գիրքը, գայթակղութեան տեղիք տալով Ազրպէյճանի մէջ: Թէեւ նիւթը ուղղակի առնչութիւն չունի սպայի դէպքին հետ, բայց կը ներկայացնէ հայ-ազրպէյճանական մարդկային յարաբերութիւնները, ընդհուպ մինչեւ դատապարտելով հայերուն հանդէպ Ազրպէյճանի գործած յանցագործութիւնները:

Սէյմուր Պայճանի *Գուզարք* վէպը (2001) անկարելի սիրոյ պատմութիւն մըն է ազրպէյճանցիի եւ հայուհիի մը միջեւ, որուն արդիւնքը կ'ըլլայ անվերջ հիասթափութիւն ամէն բանի նկատմամբ: 2015-ին, *Epress.am* զայն հայերէնի թարգմանելով կը տեղադրէ իր կայքէջին վրայ:

Նման ուղի կը բռնէ նաեւ Ալաքպար Ալիեւի *Արթուշ եւ Զաուր* վէպը (2009):

Հայկական կողմէն, Լեւոն Ջաւախեանի *Քիրվա* պատմուածքը (2008) կը հանդիսանայ հակամարտութեան անդրադարձող ամենաշատ աղմուկ հանած գործը հայ գրականութեան մէջ: Ստացած է ազրպէյճանական մրցանակ՝ Հարաւային Կովկասի մէջ հանդուրժողականութիւն ու խաղաղութիւն քարոզելու համար: Հեղինակը հակամարտութիւնը կառուցած է զայն փոխադրելով մարդկային յարաբերութիւններու տիրոյթ:

Հակառակ որ Լեւոն Խեչոյեան մասնակցած է պատերազմին, իր *Սեւ գիրք, ծանր բգեզ* վէպին մէջ (1999) չկան պատերազմական բուռն ու դիւցազներգային նկարագրութիւններ: Գիծերէն մէկն է պատերազմի եւ զինուորի ապահերոսացումը: Ատելութեան ու թշնամութեան ոչ մէկ նշոյլ: Կարելի է ընթերցել իբրեւ պատերազմի դէմ գրուած բնագիր:

Հրաչեայ Սարիբէկեանի *Ապուշների ուղեւորութիւնը* վէպը (2015) կ'արծարծէ տարբեր նիւթեր, յետպատերազմեան խաղաղութեան բանակցութիւնները համարելով թղթախաղ, անդրադառնալով խառնածին հայազէրի ամուսնութիւններու դժուարութիւններուն, եւ այլն:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔՆԵՐ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԻՆ ՎՐԱՅ

Նոյեմբեր 8-ին, Ազատութեան Հրապարակին վրայ տեղի ունեցաւ Հայաստան Դաշինքի հանրահաւաքը, որ յատկանշուեցաւ ամենագործունեայ օլիկարքներու բեմելներով եւ գերհայրենասիրական հռետորաբանութեամբ: Ըստ Իրազեկ Քաղաքացիների Միաւորմին, հանրահաւաքին մասնակցած են 3700 հոգի (https://uic.am/14547):

Յաջորդ օրը՝ հանրահաւաք Ազգային Ժողովրդավարական Բեւեռի, 1150 հոգիի ներկայութեամբ (https://uic.am/14569):

## 44-ՕՐԵԱՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Հոկտեմբեր 22-ի դրութեամբ, 44-օրեայ պատերազմի զոհուածներուն թիւն է 3788, որուն 3712-ը զինծառայողներ են, 76-ը՝ քաղաքացիներ: Անհետ կորածներուն թիւն է 243, որուն 222-ը՝ զինծառայողներ, 21-ը՝ քաղաքացիներ:

Գերիներուն ընդհանուր թիւն է՝ 40, որուն 37-ը՝ զինծառայողներ, 3-ը՝ քաղաքացիներ: Ըստ կառավարութեան՝ մինչեւ այսօր Ազրպէյճանէն գերութենէն Հայաստան վերադարձած են 114 զինծառայողներ եւ քաղաքացիներ:

Սեպտեմբեր 15-ի դրութեամբ, վիրաւորուած եւ քլինիքական-մնայուն բուժում ստացած անձերուն թիւն է 7888, ընդ որում հաշմանդամութիւն ստացած են 1464 անձեր, որոնց 113-ը՝ առաջին, 390-ը՝ երկրորդ, 961-ը՝ երրորդ խումբի աստիճանի: (Առաջին կարգի հաշմանդամութիւնը կ'ենթադրէ այլ անձերու լիակատար կախուածութիւն, երկրորդ կարգը՝ մասնակի կախուածութիւն, երրորդը՝ աշխատունակութեան եւ ինքնասպասարկումի որոշակի կորուստ):

Տուեալները հրապարակուած են Ազգային Ժողովի կայքը՝ ի պատասխան Հայաստան Խմբակցութեան հարցումին:

## ԵԱՀԿ ՄԻՆՍԿԻ ԽՄԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահները յայտարարութիւն են տարածել, որում նշուած է, որ Փարիզում Նոյեմբերի 10-ին առանձին հանդիպել են Ադրբէջանի արտաքին գործերի նախարար Ջեյհուն Բայրամովը եւ Հայաստանի արտաքին գործերի նախարար Արարատ Միրզոյեանը: Համանախագահները երկու արտործնախարարներին ընդունել են համատեղ հանդիպման ժամանակ, որի բացումն արել է Ֆրանսիայի արտաքին գործերի նախարար Ժան-Իւ Լը Դրիանը:

Համանախագահները եւ արտգործնախարարները քննարկել են ապաէսկալացմանն ուղղուած հնարաւոր միջոցները եւ գործընթացի յաջորդ քայլերը, ներառեալ ապագայ հանդիպումներն այս ձեւաչափով եւ համանախագահների նախատեսուող այցը տարածաշրջան: Համանախագահները եւ նախարարները քննարկել են նաեւ Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեամբ ստանձնած պարտաւորութիւնների կատարումը:

Համանախագահները վերահաստատել են մարդասիրական հարցերում առաջընթացի կարեւորութիւնը, ներառեալ ձերբակալուածների, ↳ 2

# ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ ԱՆՆԱ ՊՕՂԻԿԵԱՆԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ԳԵՐՄԱՆԻՈՅ ՄԷՋ

***Համադրեց եւ թարգմանեց՝ Հ. Ա.***

**Սենեակ** 10. «Մեղքի մեքենայ» (2013)։

Այս տեղադրութիւն-քանդակին մոթիֆն է ականջը։ Ինքնակենսագրական բաղադրիչ մը կայ այստեղ, քանի որ 1970-ականներու ուսանողական տարիներուն Պօղիկեան ենթարկուած էր լսողական վնասուածքի։ Երեք տեսակ ականջներ կը յայտնուին այս գործերուն մէջ. ներքին ականջը՝ որուն միջոցով մարդ իրերը կ՚ընկալէ փոխաբերականօրէն, ֆիզիքական ականջը՝ որուն միջոցով մարդ կը լսէ արտաքին աշխարհը, եւ հասարակական ականջը՝ որուն միջոցով մարդ կարող է փոխգործակցիլ հասարակութեան հետ։ Պօղիկեանին խորագիրը կ՚ակնարկէ գերմանացիներուն հաւաքական մեղքը, Երկրորդ Համաշխարհային Պատերազմի ընթացքին իրենց կատարած ոճիրներուն պատճառով։ Մեղքի մեքենան կարելի է շարժել գործածելով հեծանիւի շղթային մեքանիզմը։ Անվերջանալի ժապաւէնի նման մեղքը կը չափէ կացութիւնը՝ ականջը մտիկ ընելով անցեալը եւ ձեռքը գործելով իբրեւ յաւերժական ուղեկցութիւն ու սպառնալիք։ Բացի այդ, մեքենան ցոյց կու տայ թէ ինչպէս նոյն ինքը տեղեկութիւնը կը շրջանառէ եւ կը շարժի։

**Սենեակ** 11. «Պարտէզ ենթագիտակցութեան» (2016-2019)։

Այս տեղադրութեան համար Պօղիկեան համատեղած է բոյսեր, քանդակներ, գծագրութիւններ եւ բանաստեղծութիւններ՝ ազատօրէն կանգնած փայտէ կառուցուածքի մը սահմաններուն մէջ։ Գործը ներկայացում մըն է արուեստագիտուհիի ներքին աշխարհին, պատմութեան, ճամբորդութիւններուն եւ ֆրանսական Նիմ քաղաքէն ստացած իր տպաւորութիւններուն։ Այսպէս, ներկայացուած են Նիմի Շատրուանի Պարտէզներուն գծագրութիւնները, բայց կան նաեւ Եգիպտոսի եւ Ափրիկէի բնապատկերներու լուսանկարներ։ Պարտէզի թեման կը վերաբերի նաեւ Նիմ քաղաքի պատմութեան. պարտէզներն ու զբօսավայրերը կը ներկայացնեն այն հողը զոր Օգոստոս Կայսրը զաւթեց եւ ներկայացուց իր զինուորներուն, նախապէս գոյութիւն ունեցող տեղավայրը դառնալով Colonia Augusta Nemausus, այսօրուայ Նիմը։

Փայտէ կառուցուածքները կը կազմեն իրենց սեփական ճարտարապետութիւնը, որ կը հրաւիրէ դիտորդը շրջագայելու՝ առաջարկելով անընդհատ յայտնագործել նոր հեռանկարներ ու առարկաներ։ Բոյսերէն, գծագրութիւններէն եւ քանդակներէն զատ, աչքը կրնայ դեգերիլ նաեւ բանաստեղծական բնագիրի տողերուն վրայէն, որոնք կը կազմեն փայտէ տեղադրութեան անմիջական մասը։ Այս բանաստեղծութիւնները յօրինուած են արուեստագիտուհիին կողմէ եւ կ՚առնչուին մեթաֆիզիքի եւ ալքիմիայի հետ։ Անոնք գրուած են ֆրանսերէն, լատիներէն եւ անգլերէն։ Այցելուները կրնան նախադասութիւնները կարդալ սկսելով որեւէ կէտէ, ցանկացած որեւէ ուղղութենէ։

Գործը կը խթանէ խորագիրի ենթագիտակցութիւնը՝ պարող ու ծփացող բառերու փոխներթափանցումի, բոյսերով պարտէզի, տեղադրութեան միջոցով դեգերումի ընդմէջէն։ Ինչպէս պարտէզի կամ զբօսավայրի մէջ քալելը մեզի կը մղէ երազել, անդրադառնալ կամ փիլիսոփայել, նոյնպէս Պօղիկեանի «Պարտէզ ենթագիտակցութեան»-ը կրնայ մեզի շարժել զանազան ուղղութիւններով։

**Սենեակ** 12. «Աղի առեւտրականները» (2015)։

Բաղկացած է առագաստներէ, փայտի կտորներէ, քոլաժներէ, գծագրութիւններէ, աղէ եւ աւազէ։ Ստեղծուած էր 2015-ին՝ Իսթանպուլի Պիենալին համար։ Առաստաղէն կախուած է ներկուած առագաստանաւ մը։ Անոր վրայ կը տեսնենք քարտէզներու գունաւոր ուրուագծումներ, որոնք կը պարունակեն նախագծուած ճանապարհներ, ինչպէս նաեւ նշաններ եւ աշխարհագրական կողապարներ։ Գետինը պատուած է աղով ու աւազով, տարածուած են խորտակուած նաւու բեկորներ, լայն փայտէ կառուցուածքներու մէջ ցուցադրուած են գծագրութիւններ եւ քոլաժներ։

Այս տեղադրութեան համար Պօղիկեան ուսումնասիրած է պատմական առեւտրային յարաբերութիւնները եւ երթեւեկութեան ճամբաները՝ որոնք ժամանակին ամրապնդեցին Իսթանպուլի առաջնորդ դիրքը։ Աղի առեւտուրը միշտ կարեւոր դեր խաղացած է այստեղ։ Աղը՝ «ճերմակ ոսկի» անուանումով, դարեր շարունակ մնաց իբրեւ յարգի ապրանք, որ կը գործածուէր ոչ միայն սնունդը պահելու եւ համեմելու, այլեւ ստրուկներ ձեռք բերելու համար անհրաժեշտ փոխանակումի միջոց։ Աղի հին առեւտուրի դիտանկիւնէն, տեղադրութեան մէջ Պօղիկեան կը բացայայտէ մեր ժամանակներու համաշխարհային տնտեսական, քաղաքական եւ մշակութային մարտահրաւէրները։ Իր տեղադրութիւնը հիմնուած է իր կողմէ յօրինուած պատմութեան վրայ, ներկայացնելով հին հռոմէական աղի նաւակ մը որ Ն.Ք. 2300-ին կը յայտնուի հալող բեւեռային սառոյցին մէջ։ Պօղիկեանի պատմութեան մէջ, ապագայ քաղաքակրթութիւնները այս նաւակը կը գործածեն սորվելու համար իրենց աշխարհի պատմութիւնը։

«Աղի առեւտրականները» կը միաւորէ աղի պատմութեան հետ կապուած իրադարձութիւնները։ Մեծն Աղեքսանդրի ճանապարհորդութիւնները Եգիպտոսի աղի լիճերուն, Մահաթմա Կանտիի խաղաղապաշտ աղի քայլերթը Հնդկաստանի մէջ, կամ Յունաստանի տնտեսական ճգնաժամը՝ զոր Պօղիկեան կ՚անուանէ «հացի եւ աղի անկումը»։ Թերեւս, համաձայն Պօղիկեանի հեռանկարային գաղափարին, նոյնիսկ արդիւնաբերական զարգացած պետութիւնները նաւակով եւ աղի ջուրով պիտի վերադառնան իրենց սկզբնաւորութեան՝ սպառող համաշխարհային կլիմայական ճգնաժամէն ետք։

* * *

Կարեւոր է այս բոլորը կապել Սփիւռքի ներկայ իրավիճակին հետ։ Սփիւռք ըսելով այս պահուն նկատի ունիմ հիմնահոսանքային Սփիւռքը՝ իր աւանդական կառոյցներով։

Պօղիկեան եգիպտահայ մըն է, որուն եգիպտական ցուցահանդէսներուն մասին ժամանակին եգիպտահայ մամուլը յաճախակի կ՚արձագանգէր։ Իր անձնական կապերը եգիպտահայութեան հետ հիմնուած էին մտերիմ գետինի վրայ։ Բայց, ահաւասիկ, ինչպէս շատ ուրիշ արուեստագէտներ, եկաւ կէտ մը՝ ուր գաղութի եւ Պօղիկեանի յարաբերութիւնները բնագդաբար խզուեցան։ Ինչպէս շատերը, Պօղիկեանին չէր կրնար բաւարարել աւանդականներու չգրուած հրամայական-պայմանները, միաժամանակ աւանդականներու հասողութենէն անդին էր արուեստի ներգրաւուածութիւնը՝ որուն սկսաւ հետեւիլ Պօղիկեան, եւ մանաւանդ՝ արուեստագիտուհիին աճը դէպի գեղարուեստական արդիականացում։

Սփիւռքի հիմնահոսանքային կառոյցներէն ներս մշակութային արդիական ուղղութիւններ չեն մտներ։

Մշակութային ազդակը խիստ կարեւոր գործօն մըն է ազգերու եւ ժողովուրդներու յարատեւութեան եւ առողջ կեցութեան համար, որմէ՝ անոր արդիականացումի եւ նորացումի անյետաձգելի հրաւէրը։

Մինչեւ ե՞րբ Սփիւռքը հայապահպանումի ձախողած գործարքին կառչելով պիտի մերժէ արդիական շարժումները եւ անընդհատ ծաւալուի աւանդութիւններու հանգստաւէտ սահմանագիծին մէջ։ Սփիւռքի հիմնահոսանքի մէջ ոչ միայն չկայ արդիականութիւն, այլեւ յաճախ ծաղրուած է ան։

Այն օրը՝ երբ Սփիւռքը դուրս գայ ինքզինքը մշակութապէս չարդիականացնելու հաստատակամութենէն, կրնանք վստահ ըլլալ անոր յարատեւութեան վրայ։ Այդ օրը լուրջ արուեստագէտները այլեւս պիտի դադրին Սփիւռքէն դուրս հարթակներ փնտռել եւ պիտի չհեռանան Սփիւռքի կառոյց-միութիւններէն։ Աւելի կարեւորը, արդիականացումը պիտի փոխէ ամբողջ սփիւռքեան մտածողութիւն մը, զայն տանի դէպի նոր լուսաւորութիւն եւ բանայ զարգանալու հնարաւորութիւններ։

Պայմանով որ այդ արդիականութիւնը կապուած ըլլայ մարդկային փորձառութեան հետ, ըլլայ մշակութապէս, քաղաքականապէս, գաղափարապէս, մտաւորապէս ներգրաւեալ (ինչպէս Պօղիկեանի արուեստն է), այլ ոչ թէ ենթարկուի «բարձր արդիականութեան» (high modernism) դասակարգային ինքնաբաւ մենակեցութեան։

Միաժամանակ, արդիականացումը պէտք չէ ըլլայ ձեւական, ինչպէս գերհայրենասիրութեամբ եւ աւանդականութեամբ ծորող գրական հանդէս մը կը փորձէ ապակողմնորոշել մեզի՝ երբեմն իր էջերուն մէջ, *իր* հասկցած ձեւով «արդիական» էջ մը հրատարակելով, որպէսզի փաստէ իր սէրը արդիականութեան նկատմամբ եւ պատրաստ պատասխան ունենայ նմաններուս համար։

ՍՓԻՒՌՔԵԱՆ ՀԻՄՆԱՀՈՍԱՆՔԱՅԻՆ ՏԻՐԱԿԱՆ ՄԻԱՒՈՐՆԵՐԸ ՊԷՏՔ Է ԱՐԴԻԱԿԱՆԱՑՆԵՆ ԻՆՔԶԻՆՔՆԻՆ ՄՇԱԿՈՒԹԱՊԷՍ՝ ՆԵՐԱՌՆԵԼՈՎ ԱՐՈՒԵՍՏԻ ԱՐԴԻԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ։

Արդիականութիւնը ոչ միայն չի վնասեր հայկականութեան, այլ կը զարգացնէ զայն ամենայն խորութեամբ ու տարողութեամբ, հայկականութիւնը բարձրացնելով ամենալայն իմաստով մշակութային ազգայնականութեան աստիճանին, բան մը՝ որ առ այժմ անկարելիութիւն կը թուի ըլլայ, «հայապահպանութիւն» (պահպանել՝ դէպի ետեւ, եւ ոչ թէ զարգացնել՝ դէպի առաջ) բառին եւ անկէ սերած բառարանային 4

ԵՐՈՒՍԱՂԷՄ

## ՏԱՍՆԵՐԿՈՒ ՄԻԱԲԱՆՆԵՐ ԿԸ ԴԱՏԱՊԱՐՏԵՆ ՆՈՒՐՀԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԱՆՕՐԻՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ

Երուսաղէմի Սրբոց Յակոբեանց վանքի տասներկու միաբաններ Հոկտեմբեր 28-ին կը տարածեն հաղորդագրութիւն՝ դատապարտելով պատրիարք Նուրհան Մանուկեանի, Տ. Սեւան Արք. Ղարիպեանի եւ Տ. Պարէտ Ծ. Վրդ. Երէցեանի որոշումը 99 տարուայ ժամկէտով Կովերու Տարածքը վարձակալելու աւստրիացի գործարարի՝ Եօթը Աստղանի պանդոկ կառուցելու համար։ Անոնք կը պահանջեն պատրիարքէն ջնջել արդէն ստորագրուած համաձայնագիրը։ Սիոն լեռան վրայ գտնուող այս ռազմավարական տարածութիւնը՝ որ 14-րդ դարէն ի վեր կը կազմէ Հայկական Թաղամասի անբաժանելի մասը, կից է Վանքին, Պատրիարքարանին, Ժառանգաւորաց Վարժարանին եւ Ընծայարանին։

Համաձայն Պատրիարքարանի կանոնագրութեան, միայն Միաբանութիւնն է որ իրաւունք ունի որոշել երկարաժամկէտ կալուածային փոխանցումները, բան մը՝ որ տեղի չէ ունեցած, հետեւաբար, համաձայնագիրը հակառակ է օրինականութեան։

Բացի այդ, միաբանները կը դժգոհին պանդոկին յառաջացնելիք աղմկոտ եւ անհանգիստ մթնոլորտէն. «Վանքին, Պատրիարքարանին եւ Ժառանգաւորաց Վարժարանին ու Ընծայարանին կից հիւրանոցի կառուցումը պիտի մեծ անյարմարութիւններ ստեղծէ եւ խաթարէ Պատրիարքութեան եւ հոգեւոր կրթօջախի բնականոն կեանքը, գործունէութիւնն ու անդորրը՝ մեծապէս վտանգելով ապագայ մեր առաքելութեան իրականացումը»։

Միաբանները կոչ կ՚ուղղեն հայկական հիմնարկներուն եւ հայ հասարակութեան՝ նամակներով եւ այլ միջոցներով արգելք հանդիսանալ ծրագիրի իրագործումին։

Նոյեմբերի սկիզբը, այս կոչին իբրեւ զօրակցութիւն կը միանան՝ Գիսակ Արք. Մուրատեան (Արժանթինի Հայոց Թեմի առաջնորդ), Խաժակ Արք. Պարսամեան (Վաթիքանի Մայր Աթոռի ներկայացուցիչ եւ Արեւմտեան Եւրոպայի հայրապետական պատուիրակ), Վիգէն Արք. Այքազեան (Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Պատուիրակ, Ուաշինկթոն), Արիս Արք. Շիրվանեան (Մայր Աթոռ Սբ. Էջմիածին), Գուսան Վրդ. Ալճանեան (Զուիցերիոյ Հայոց Թեմի առաջնորդական տեղապահ), Բագրատ Ծ. Վրդ. Պուրճէքեան (ԱՄՆ-ի Հայոց Արեւմտեան Թեմ), Բաբգէն Ծ. Վրդ. Անուշեան (ԱՄՆ-ի Հայոց Արեւելեան Թեմ)։

## ԵԱՀԿ ՄԻՆՍԿԻ ԽՄԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

1

ականազերծման, անհետ կորածների, տեղահանուած անձանց կամաւոր վերադարձի եւ պատմամշակութային վայրերի պահպանութեան հարցերը եւ կոչ են արել կողմերին հասանելիութիւն տալ միջազգային մարդասիրական կազմակերպութիւններին։ Համանախագահները շեշտել են նաեւ սադրիչ գործողութիւններից եւ բորբոքիչ հռետորաբանութիւնից խուսափելու կարեւորութիւնը։

Համանախագահները Նոյեմբերի 10-ին եւ 11-ին հանդիպել են Ֆրանսիայի արտաքին գործերի նախարարութեան եւ Ելիսէեան պալատի ներկայացուցիչների հետ եւ քննարկել նրանց ջանքերը՝ միտուած Լեռնային Ղարաբաղի հակամարտութեանն առնչուող կամ դրանից բխող մնացած բոլոր հարցերի համար համապարփակ լուծումներ գտնելուն։

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՃԱՀԱԿԻՐԻ* 48-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՄԻՏՔԻՆ

Լոյս տեսաւ *Ճահակիրի* Խը. (48) Յաւելուածը՝ *Ընթերցումներ Բենիամին Թաշեանի մանկավարժական գաղափարներուն ընդմէջէն (ծննդեան 125 եւ մահուան 50-ամեակներուն առիթով)* (98 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՈՒՆ ԸՆԴՄԷՋԷՆ
(Ծննդեան 125 եւ մահուան 50-ամեակներուն առիթով)
ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ ՅԱՒԵԼՈՒԱԾ Խը. (48)
ԳԱՀԻՐԷ
2021

Գիրքը յատկացուած է 1926-ին Աղեքսանդրիա խմբագրուած եւ Գահիրէի Յուսաբեր տպարանէն լոյս տեսած *Հայ վարժարան* ամսագիրի էջերուն մէջ Թաշեանի ստորագրած մանկավարժական յօդուածներուն:

Թաշեանի շրջանէն մինչեւ այսօր՝ շուրջ մէկ դար է որ հայ մանկավարժական գրութիւններուն եւ մտածողութեան ջախջախիչ մեծամասնութիւնը հիմնուած է «Հայեցի» կրթութիւն անջատողական գաղափարախօսութեան վրայ, կարծես կրթութիւնն ինքնին կատարեալ երեւոյթ մը ըլլայ՝ ուր թերի է միայն «Հայեցի»-ն: Շատ քիչերն են որ կասկածի ենթարկած են բուն, ընդհանուր կրթական համակարգը, որուն բարեփոխութեան կամ յեղաշրջումի պարագային «Հայեցի»-ն պիտի դառնայ դիւրըմբռնելի եւ դիւրաւ գործադրելի: Այդ քիչերէն է Բենիամին Թաշեան:

Գիրքը փորձ մըն է մեկնաբանելու Թաշեանի այս դիրքորոշումը:

Ստանալու համար դիմել՝ tchahagir@journalist.com.

## ՊՈՒՏԻՆ - ՓԱՇԻՆԵԱՆ - ԱԼԻԵՒ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՄԱՆ ՇՈՒՐՋ ՍՏՈՅԳ ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԱԾՈՒԹԻՒՆՆԵՐ ԱՌԱՅԺՄ ՉԿԱՆ

ՆԱՆԷ ՍԱՀԱԿԵԱՆ

Կրեմլը յայտարարում է, որ Պուտին - Փաշինեան - Ալիեւ եռակողմ հանդիպում պլանաւորւում է, սակայն չկայ ստոյգ պայմանաւորուածութիւն, թէ երբ պիտի տեղի կ՚ունենայ երեք առաջնորդների տեսակոնֆերանսը:

«Իսկապէս, մենք հաստատել ենք, որ աշխատանքներ են տարւում նման հանդիպման նախապատրաստման ուղղութեամբ, սակայն այստեղ ուզում եմ նշել, որ մինչ այժմ ստոյգ պայմանաւորուածութիւններ եւ դրան վերաբերող փոխըմբռնում, թէ երբ կարող է նման տեսակոնֆերանսը տեղի ունենալ, դեռ չկայ», - Նոյեմբերի 8-ին լրագրողներին ասել է Կրեմլի խօսնակ Պեսկովը:

Մէկ օր առաջ հակասութիւն էր առաջացել Կրեմլի խօսնակի եւ Հայաստանի վարչապետի յայտարարութիւններում ծրագրուող եռակողմ հանդիպման մասին: Նախ օրուայ առաջին կէսին Կրեմլից յայտարարեցին, որ այս շաբաթ նախատեսուած է անցկացնել եռակողմ հանդիպում, իսկ ռուսական պետական Ռոսսիա-1 հեռուստաընկերութիւնը հաղորդեց, թէ չի բացառւում հանդիպումը տեղի կ՚ունենայ Նոյեմբերի 9-ի փաստաթղթի ստորագրման տարելիցին:

Մի քանի ժամ անց հրապարակուեց վարչապետ Նիկոլ Փաշինեանի ձայնագրուած հարցազրոյցը Հայաստանի հանրային հեռուստաընկերութեանը, որտեղ նա հակասեց Կրեմլի յայտարարութեանը՝ նշելով, որ Նոյեմբերի 9-ին հանդիպելու որեւէ պայմանաւորուածութիւն չկայ:

«Բայց շատ կարեւոր է այդ հանդիպումների կոնտեքստը, այդ հանդիպումների սիմվոլիկան, այդ յայտարարութիւններից ակնկալուող պոտենցիալ արդիւնքը: Այնտեղ, որտեղ մենք կարող ենք արձանագրել արդիւնք, մենք ոչ մի հանդիպումից չենք հրաժարուի, բայց ինքնանպատակ հանդիպումներ անելու կողմնակից չենք նաեւ: Եւ կոնկրէտ Նոյեմբերի 9-ի հետ կապուած կարող եմ ասել, որ այս պահին պայմանաւորուածութիւն այդպիսի չկայ», - ասաց Փաշինեանը:

Եռակողմ հանդիպում նախատեսւո՞ւմ է թէ ոչ, ի՞նչ օրակարգ է ունենալու այդ հանդիպումը: Այս հարցերով դիմեցինք Հայաստանի կառավարութիւն, որտեղից յայտնեցին, որ «այդ թեմայի մասին երէկ խօսել է վարչապետ Նիկոլ Փաշինեանը, աւելացնելու ոչինչ չունենք»՝ այդպէս էլ չյստակեցնելով, թէ ի վերջոյ այդ հանդիպումը տեղի ունենալու է, թէ ոչ:

Նոյեմբերի 7-ին տուած ծաւալուն հարցազրոյցում Փաշինեանն անդրադարձել է նաեւ տարածաշրջանային կոմունիկացիաների բացման մասին՝ նշելով, որ բարձր է գնահատում, որ Մոսկուան հրապարակայնացրել է իր դիրքորոշումը այս հարցում:

Ապաշրջափակուած բոլոր ճանապարհները շահագործուելու են պետութիւնների ինքնիշխանութեան ու տարածքային ամբողջականութեան յարգանքի հիման վրայ, անցեալ շաբաթուայ վերջին յայտարարեց Ռուսաստանի արտգործնախարարութիւնը: Նոյն միտքը Նիկոլ Փաշինեանի հետ հանդիպմանը հնչեցրեց նաեւ Ռուսաստանի փոխվարչապետ Ալեքսէյ Օվերչուկը: Ադրբէջանն ու Թուրքիան սակայն ապաշրջափակման մասին խօսելիս շարունակում են կիրառել «Զանգեզուրի միջանցք» արտայայտութիւնը:

*Ազատութիւն ռադիոկայան*

ԽՈՀԵՐ

## ԳՐՈՂԻ ՍԵՓԱԿԱՆ ԿԱՄՔԸ՝ ԻԲՐԵՒ ՓՈՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ «Խոհ»-երէն մէկուն մէջ (*Ճահակիր*, թիւ 1900) կը նշէի սեփական կամքին կարեւորութիւնը պատմագրութիւնը չխեղաթիւրելու համար, ընդունելով, միաժամանակ, վերադիր պարտադրանքներու առկայութիւնը, իսկ սեփական կամքը հասկնալով իբրեւ գործադրութիւն՝ ոչ-օտարացումի եւ ոչ-ինքնօտարացումի ծիրին մէջ:

Սեփական կամքը, արդարեւ, կարեւոր է ամէն մարդու համար՝ ամէն տեղ եւ ամէն ժամանակ: Ան կարեւոր է մտաւորականներուն համար: Կարեւոր է գրողին համար, որուն կեանքի պատգամն է յառաջացնել բնագիրներ (texts): Գրող՝ այս պարագային սահմանափակ մօտեցումով մը նկատի ունիմ հրապարակագիրը, արձակագիրը եւ բանաստեղծը: Կը պարզուի, որ այս տեսակ գրողներու կարեւոր մաս մը հաճոյք կը ստանայ ճիշդ հակառակէն՝ իր սեփական կամքի ինքնակամ վերացումէն: Զայն վերացնելով, կը հասնի նշանակալի ուղղահայեաց դիրքերու՝ խմբագիր, խմբագրապետ, մինչեւ անգամ միութեան ու կուսակցութեան առաջնորդ:

Բազում անգամներ Սփիւռքի գրողներ ըսած են ինծի՝ «Ինչո՞ւ կը քննադատես, կը կարծես որ կրնա՞ս բան մը փոխել», մինչ իրենք շարունակած են փառաբանել:

Երբ գրողը ի սկզբանէ կը հռչակէ «այս այսպէս է», «միշտ այսպէս եղած է» եւ «բան մը չես կրնար» փոխել կանխադրոյթը, ան ի սկզբանէ վերացուցած կ՚ըլլայ փոխելու կարելիութիւնը եւ ինքզինքը յանձնած անխուով յարմարուէտութեան գիրկը, յարմարուէտութիւն՝ ոչ թէ կեանքի փորձառութեան հետ, այլ ղեկավար-գերղեկավարէն եկած պարտադրանքին ու անվիճաբանելի հրահանգին:

Միւս կողմէն, տարօրինակ է՝ երբ քննադատութիւնը կը կապուի միայն ու միայն փոփոխութեան կամ ոչ-փոփոխութեան հետ, մինչ գովաբանութիւնը՝ որ Սփիւռքի մէջ յաճախ վատի փոխարկումն է բացառիկի, չի կապուիր մտաւոր լճացումի հետ, այսինքն՝ նոյնպէս փոփոխութեան հետ, բայց այս անգամ դէպի ցած:

«Ինչո՞ւ կը քննադատես»: Չափազանց տարօրինակ պատճառաբանութիւն «մտաւորական»-ի մը կողմէ: Մտաւորականը մտաւորականին ստորադասելու միտում մը: Մտաւորականը ինքզինքը իրականութենէն ստորադաս համարելու ստրկային հոգեբանութիւն: Մտաւորականութեան ստրկացումը՝ ինքն իր ձեռքով:

Եթէ տուեալ միութենէն կատարուած է դրամական գողութիւն եւ գրողը իմացութեամբ կը լռէ, ուրեմն ան մասնակցած կ՚ըլլայ գողութեան, այլեւ քաջալերած անոր կրկնութիւնը:

Եթէ դրամ կը մսխուի անարդիւնք կերպով եւ գրողը դիտաւորեալ չ՚ուզեր տեսնել այլեւ կը գովաբանէ մսխողը իբրեւ յաջող գործարար, ուրեմն ան մասնակցած կ՚ըլլայ անարդիւնք վիճակի հաստատումին:

Եթէ անորակ եւ եսասիրական գիրքի մը համար ընկերներ հաւաքուելով շնորհանդէս կը սարքեն եւ գրողը կը գովաբանէ շնորհանդիսային ձեռնարկը, ուրեմն ան մասնակցած կ՚ըլլայ տարածելու անորակ միտքը:

Եթէ բացայայտօրէն անորակ ձեռնարկ մը գրողը կը քննախօսէ իբրեւ բացառիկ յաջողութիւն, ուրեմն ան մասնակցած կ՚ըլլայ ձեռնարկի անորակութեան եւ գաղութի մտաւոր վայրէջքին:

Եթէ գրողը կը գրէ՝ առանց հետաքրքրուած ըլլալու կենդանի շրջապատէն, յամառելով մնալ սեփական եսի գերանձնական զգացումներու շրջանակին մէջ, ուրեմն ան կանանչ լոյս տուած կ՚ըլլայ իր իսկ շրջապատին՝ գործելու ի շահ իր քմահաճոյքին:

Եթէ արձակագիրն ու բանաստեղծը կը մերժեն ներգրաւուածութիւնը՝ բառին լայն, խոր ու բովանդակալից իմաստով, այլեւ կ՚ընդունին բնագաւառներու պարտադիր օտարացումները (ես բանաստեղծ եմ եւ վերջ), ուրեմն մասնակցած կ՚ըլլան եսապաշտային կուռքի կառուցումին, իրեն համար չէզոքացնելով տագնապային բոլոր իրականութիւնները:

Մտաւոր ոլորտը մասնակցողականութիւն է: Կեղծելով իրականութիւնները կամ զանոնք օտարացնելով ինքզինքէն, գրողը մասնակցած կ՚ըլլայ անկումներուն: Ինչո՞ւ չմասնակցի նաեւ վերելքներուն: Յակոբ Պարոնեան, Արփիար Արփիարեան, Երուանդ Օտեան, Վահան Թէքէեան, Միքայէլ Կիւրճեան եւ շատ ուրիշ կարեւոր ու նուազ կարեւոր անուններ՝ իրենց քննական գրական-հրապարակագրական քննադատութիւններով մասնակցած են վերելքներու, հեռու խմբային պատկանելութիւններէ: Իսկ հիմա՝ «ինչո՞ւ կը քննադատես»:

Ամէն բանի գովաբանութիւն կը նշանակէ շատ բաներու խեղաթիւրում: Լաւը՝ լաւ է, այդպէս ալ պէտք է ներկայանայ իբրեւ գրաւոր բնագիր: Բայց վատ գործողութիւնը՝ երբ կը դառնայ դրուատական բնագիր մամուլի եւ գիրքերու մէջ, կը կոչուի խեղաթիւրում: Գրողը՝ իր իսկ կամքով, խեղաթիւրած կ՚ըլլայ եղելութիւնը: Գործողութիւն եւ բնագիր կը դառնան անհամատեղելի, բայց անոնց միջեւ յառաջացած օտարացումը կը յաջողի ջնջել առաջինը՝ յանուն երկրորդին: Իսկ այս օտարացումը կարելի դարձած է՝ քանի որ լռած է հասարակութիւնը: *Լռեցուած է* հասարակութիւնը՝ զայն զրկելով գաղափարապէս մասնակցելու կարելիութենէն:

Ուրեմն, գրողը կը նախընտրէ խեղաթիւրել իր աչքին դիմացը կատարուածը, խեղաթիւրումը համարելով դրականութիւն:

Ալ չեմ խօսիր խնդրականութեան մասին, որ պէտք է հանդիսանայ մտածողութեան հիմք, մինչդեռ այս բառին անծանօթ է հայերուն ծառայելու կարգախօսը իր ուղին ընտրած գրողներու շերտը, ներառեալ ամենուր տարածուող ամենայն հայոց ինքնակոչ բանասէրը, բանասէր՝ որ առ նուազն պէտք է տեղեակ ըլլայ խնդրականացում հասկացողութեան:

Դիմադրութեան, պայքարի, կարծրացած համոզումները ճեղքելու բոլոր կարելիութիւնները հերքելով, գրողը հերքած կ՚ըլլայ իր սեփական կամքը, զայն դնելով վերնախաւի տնօրինութեան տակ: Ամբողջ կեանք մը կ՚ապրի առանց սեփական կամքի դրսեւորումի, գրելով հրապարակագրութիւններ, պատմուածքներ, բանաստեղծութիւններ՝ շրջապատէն անջատուած նիւթերով, անհատապաշտական-թեքնիքական բովանդակութիւններով, դիմելով ոչ-մասնակցողական հրապարակագրութեան տիրակալութեան, այլեւ գրականութիւնը գրականութեան համար լայն հասկացողութեան սխալ մեկնաբանութեան եւ տնօրինութեան, որոնց շնորհիւ, սակայն, կը հասնի նշանակալի գաղութային յաջողութիւններու:

Քննադատութեամբ բան մը չես կրնար փոխել, կ՚առարկէ, բայց առարկողը անվերջ ու անդուլ գովասանութեամբ ամուր կերպով կը պահպանէ եղածը, պահպանելով՝ եղածը կը դարձնէ անորակ: Այսինքն՝ կը փոխէ: Կը փոխէ՝ դէպի վատը: Ուրեմն, *կրնայ* փոխել: Անձնական կամքի կատարեալ բացակայութիւն, գերագոյն հաճոյք ենթարկուածութեան ու հնազանդութեան: Բայց հնազանդութիւն որո՞ւն հանդէպ: Հնազանդութիւն անձի մը կամ փոքրաթիւ ցկեանսներու հանդէպ՝ որոնց հրամանին տակ կը գտնուի միութենական միաւորը:

Գրողը եթէ այնպիսի միջավայրի մէջ կ՚ապրի՝ ուր պարզապէս չի կրնար ուղղակիօրէն քննադատել, գոնէ պէտք է սորվի լռել: Բայց լռելը՝ լոկ իբրեւ երկրորդ քայլ: Լռել՝ *միայն* համոզուած փորձեր կատարելէ ետք: Եթէ ինքնամարզած է իր ներքին կամքը եւ եթէ մտաւորական է՝ բառին իրական իմաստով, ըմբոստութիւնը կրնայ փոխադրել մտաւորական այլ հարթակ: Օրինակ մը: Վահէ Օշական ուժեղօրէն կը քննադատէր իր կուսակցութիւնը: Կրցան լռեցնել, դիպչելով իր ամենանուրբ կէտին՝ ընտանիքին եւ իր սեփական կենսական գոյատեւութեան: Օշական վերջին տարիներուն փոխեց ըմբոստութեան

↳ 4




**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ընտրական իրաւունք ունեցող Աղեքսանդրիոյ եւ անոր պատկանող վայրերուն մէջ բնակող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.

1. Աղեքսանդրիոյ Պատկանելի Թեմական մասնակի ընտրութիւնները տեղի պիտի ունենան, Ուրբաթ, 19 Նոյեմբեր 2021-ին: Քուէարկութիւնը պիտի սկսի առաւօտեան ժամը 9:00-ին եւ վերջանայ երեկոյեան ժամը 5:00-ին:

2. Ընտրող ազգայինները իրենց քուէները կրնան տալ ընտրելու իրաւունք ունեցող եւ 30 տարին լրացուցած ազգայիններու միայն:

3. Պիտի ընտրուին միայն 12 անձեր, որոնց անունները եւ մականունները պէտք է գրուած ըլլան քուէաթուղթին վրայ ու անպայման ներփակուած Առաջնորդարանի կնիքը կրող փոքր պահարանի մէջ եւ գոցուած:

4.Ընտրութեան օրը ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ իր ինքնութեան թուղթը («պըթաքա գաումիա - ԲՆԱԳԻՐԸ ), որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր թիւը եւ ընտրական քարտը, ապա քուէարկէ:

5.Ինքնութեան քարտի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ու պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:

6.Պահանջուած ընտրելիներուն թիւէն աւելի անուններ պարունակող քուէաթուղթէն կը ջնջուին աւելորդ անունները եւ պահանջուած թիւին առընչութեամբ վաւերական կը նկատուի քուէաթուղթը ըստ կարգի (Կազմ. կանոնագիր Յօդ. 17): Իսկ մէկէ աւելի լրացուած քուէաթուղթ պարունակող պահարանները ամբողջութեամբ նաեւ ստորագրուած քուէաթուղթերը չեղեալ կը համարուին եւ կը ջնջուին:

7. Ընտրութեան օրը, ընտրող ազգայինը, ընտրական տոմարին մէջ իր ստորագրութիւնը դնելէ վերջ պիտի մտնէ փոքրիկ առանձնասենեակը, ուր ինք, բացարձակ առանձնութեան մէջ, պիտի գտնէ կնքուած պահարան եւ պարապ քուէաթուղթ, ազատօրէն տալու համար իր քուէն:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## 2 ԵԳԻՊՏԱՀԱՅ-ԳԱՆԱՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ

(բառարանային՝ քանի որ տուեալ բառերուն գործածութիւնը ցնորական իրականութիւն մըն է) բառապաշարներու տարափի տիրակալութեան շնորհիւ, բառեր՝ որոնք կը սպաննեն մշակութային արդիական ազգայնականութեան որեւէ հնարաւորութիւն: Զերծազատուինք բառերու ֆեթիշականացումէ՝ յանուն կենդանի կեանքի հետ կապուած հայկական մշակութային արդիականացումի:

Սփիւռքը անընդհատ կը պախարակէ իր շարքերէն հեռացող հայերը: Սփիւռքը *ինքն է* իր շարքերէն հեռացողներուն պատասխանատուն:

Եգիպտահայութիւնը պատրա՞ստ է ընդունիլ Պօղիկեանի արդիապաշտ (modernist) տեղադրութիւն-ցուցահանդէսը՝ իր քաղաքական, մշակութային, գրական, փիլիսոփայական, պատմական, աշխարհագրական եւ այլ ներգրաւումներով, լսել «դրամատիրութիւն» բառը:

(Վերջ 3)

## 3 ԳՐՈՂԻ ՍԵՓԱԿԱՆ ԿԱՄՔԸ՝ ԻԲՐԵՒ ՓՈՓՈԽՈՒԹԵԱՆ...

ռազմավարութիւնը, զայն փոխադրելով գրական ոլորտ: Գրական եւ գրականագիտական ազատագրուած միտքերու ընդմէջէն շարունակեց հարազատ մնալ իր ըմբոստ էութեան՝ ճեղքելով նոր կարծրատիպեր, կազմաքանդելով կուռքեր: Կուսակցութիւնը չհասկցաւ ըմբոստութեան այս մակարդակը: Իր հասողութենէն անդին էր:

Երբ կը խեղաթիւրես ինքդ քեզի, քեզմէ դուրս գտնուածին խեղաթիւրումը կը դառնայ օրինաչափութիւն: Յետյեղափոխական Հայաստանի պարագային՝ ինքնաքննադատութեան բոլորովին անծանօթ սփիւռքահայ գրողը դարձաւ Հայաստանի նոր իշխանութեան ամենէն յարձակողական ու ամբոխավարական քննադատը: Բնականաբար, քննադատութիւն չէ ըրածը: Չի կրնար քննադատել՝ երբ մերժած է սեփական կամարտայայտութեան բոլոր կերպերը, հերքած է իր կամքի ինքնաքննադատութեան ընդմէջէն մտաւոր ազատագրութեան հասնելու սքանչելի կարելիութիւնները: Ինքզինքը չէ ազատագրած իր իսկ կամքի քննադատութեան միջոցով: Ֆաշական մօտեցում ինքն իր հանդէպ: Եւ յանկարծ ֆաշականութիւնը կը դառնայ ուրիշին քննադատող: Հիթլէրի օրինակը բացայայտ է: Ան չի կրնար ուրիշին քննադատել: Ան կը կործանէ ուրիշը: Բայց կործանելէ առաջ ան կը խեղաթիւրէ ինքն իրեն:

## 1 ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԲԱԶՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆԸ

Դանիէլեան ցոյց կու տայ՝ որ ասոնք դիմացինը ճանչնալու փորձեր են, ուր հակամարտութիւնը չի դիտարկուիր միակողմանի կերպով: Միտումներ են հեռացնելու թշնամութիւնը եւ բացայայտելու մարդկային ճակատագիրները:

Բոլորին մէջ կը բացակային դիմացի կողմը թշնամացնելու, առաւել եւս դիւահարելու միտումները: Վերջապէս, կը գտնուին պատերազմական աղէտին զոհերը՝ որոնք չեն կրնար յարմարիլ հակամարտութեան տրամաբանութեան:

### ԹՈՒԱՅԻՆ-ՎԻՐԹԻՒԱԼ ԱՇԽԱՐՀԻՆ ՄԷՋ

Հասարակական մարդաբան Ալինա Պօղոսեան («Ղարաբաղեան հակամարտութիւնը թուային մարդաբանութեան շրջանակում») կ՚ուսումնասիրէ հակամարտութեան արտայայտութիւնները առցանց աշխարհին մէջ:

Առցանց-վիրթիւալ ոլորտին մէջ, հայ-ազըրպէյճանական յարաբերութիւնները եւ Ղարաբաղեան հակամարտութիւնը պատկերող տեսողական նիւթի բովանդակութիւնը կ՚ամփոփէ քանի մը նիւթերու շուրջ.

1. Յաղթողի եւ պարտուողի, խիզախի եւ վախկոտի, զոհի եւ դահիճի մատնանշում:

2. Միւս կողմի եւ հակամարտութեան հանդէպ զգացմունքներու ցուցադրում՝ կատաղութիւն, ձանձրոյթ եւ վախ:

3. Միւս կողմը ծաղրելու, նուաստացնելու, պատժելու, սպանելու եւ տարածքներ վերցնելու միտումի ներկայացում:

4. Հակամարտութեան մէջ ներգրաւուած այլ պետութիւններու մասնակցութեան մեկնաբանութիւն՝ Թուրքիա, ԱՄՆ, Ռուսաստան:

Ուսումնասիրուած պատկերային նիւթի բոլոր ուղերձները կ՚արտայայտուին յատկապէս խորհրդանիշերով եւ պարզ պատկերներով:

Պօղոսեան կ՚եզրակացնէ. «Ղարաբաղեան հակամարտութեան տեւականութիւնը եւ դրա արդիւնքում կողմերի անհաղորդութիւնը աւելի քան 25 տարի, հայ եւ ադրբէջանցի հանրոյթները անհաղորդ են դարձրել միմեանց: Այսօր երկու երկրներում մեծանում է սերունդ որը երբեւէ չի տեսել միւս կողմին, չի լսել նրան եւ նրա լեզուն, ծանօթ չէ նրա մշակոյթին եւ առօրեականութեանը, բայց գիտի որ պէտք է ատի նրան»: Ատել՝ առանց ճանչնալու:

### ԵՐԿՐՈՐԴ ՀԱՐԹԱԿԻ ԴԻՒԱՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

Երկրորդ Հարթակի Դիւանագիտութիւնը եզրոյթն է այն մօտեցումին՝ զոր կը համարենք վարէն վեր ընթացող դիւանագիտութիւն, հասարակութենէն դէպի իշխանութիւն, ոչ-պաշտօնականէն դէպի պաշտօնական: Միջազգայնագէտ Անահիտ Շիրինեան («Երկրորդ Հարթակի (Track II) Դիւանագիտութիւնը ղարաբաղեան հակամարտութեան համատեքստում») կը բացատրէ այս տեսակ դիւանագիտութեան առաւելութիւնները:

Երկրորդ Հարթակի Դիւանագիտութիւնը այն շփումն է՝ որ տեղի կ՚ունենայ հակամարտութիւններու եւ բաժանարար գիծերու տարբեր կողմերը գտնուող հասարակական, մշակութային, աքատեմիք եւ այլ ոչ-պաշտօնական շրջանակներու միջեւ: Այս տեսակ ուղղակի շփումները թոյլ կու տան յաղթահարելու կամ մեղմելու հասարակութիւններուն միջեւ առկայ վախը եւ իրարու հանդէպ գոյութիւն ունեցող յարձակողականութիւնը, դուռ բանալով փոխադարձ հասկացողութեան: Կաշկանդուած չըլլալով պաշտօնէական դիրքով, քննարկումները կ՚ըլլան աւելի ազատ ու բաց: Եթէ առաջին Հարթակի բանակցութիւնները մրցակցային են, երկրորդ Հարթակինը աւելի համագործակցային է:

Շիրինեան կը բերէ քանի մը օրինակներ Ղարաբաղեան հակամարտութենէն:

1989-ին համայնքային մակարդակով համագործակցութիւն տեղի ունեցած է Հայաստանի եւ Ազըրպէյճանի գիւղերու փոխանակումին համար:

1997-ին ազըրպէյճանցի լրագրողներ այցելած են Հայաստան, 1998-ին գացած են Ղարաբաղ, իսկ 1999-ին հայ լրագրողներ այցելած Ազըրպէյճան:

Մինչեւ 1990-ականներուն վերջը եղած են բազմաթիւ նման հանդիպումներ՝ որոնք բըխած էին ներսէն, այլ ոչ թէ արդիւնքն էին արտաքին հիմնարկներու կազմակերպութեան:

2000-ականներու սկիզբը այս դրական Երկրորդ Հարթակի Դիւանագիտութիւնը մեծապէս սահմանափակուեցաւ: Ան լուրջ ճգնաժամի մէջ մտաւ 2011 թուականէն սկսեալ, յատկապէս Ազըրպէյճանի խոչընդոտներուն պատճառով: Հայերու հետ յարաբերութիւն ունեցող ազըրպէյճանցիները լրտեսութեան մեղադրանքով բանտարկուեցան Ազըրպէյճանի մէջ:

### ՓՈՔՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Հակամարտող կողմերու տարածքներուն վրայ գտնուող փոքրամասնութիւնները՝ որոնք կապ չունին հակամարտութեան հետ, կրնան ենթարկուիլ կողմերու ճնշումներուն: Կամ անոնք կրնան օգտակար եղած ըլլալ ճնշուող կողմին: Այս է ազգագրագէտ Հրանոյշ Խառատեանի («Ովքե՞ր են հակամարտող կողմերի փոքրամասնութիւնները եւ ի՞նչ վիճակում են նրանք յայտնւում») նիւթին իմաստը:

Օրինակ, ընաւ չի խօսուիր Պաքուի եւ Սումկայիթի կոտորածներու օրերուն հայերուն օգնութեան ձեռք մեկնած թալիշներուն, ուդիներուն եւ նոյնիսկ ազըրպէյճանցիներուն մասին:

Ազըրպէյճանի տարբեր ազգային փոքրամասնութիւններ կը բարձրաձայնեն, որ տարիներ շարունակ երկիրի քարոզչութիւնը փորձած է իրենց համոզել՝ որ իրենք կը գտնուին ընդհանուր իսլամական տիրոյթին մէջ, որ իրենք ընդհանուր իսլամական մշակոյթի եւ մէկ հայրենիքի կրող են եւ իրենց հիմնական թշնամին հայն է: Այժմ այս ազգային փոքրամասնութիւնները կը բարձրաձայնեն, որ իրենք հայերուն հետ թշնամութեան պատմական օրինակ եւ դէպք չունին, սակայն նոյնիսկ անոր առկայութեան պարագային, ունին իրենց ինքնութեան առանձին խնդիրը՝ անկախ հայ-ազըրպէյճանական յարաբերութիւններէն:

Իմ կողմէս աւելցնեմ, որ հետաքրքրական պիտի ըլլար նման նիւթով հետազօտութիւն կատարել Հայաստանի մէջ գտնուող սակաւաթիւ փոքրամասնութիւններուն մասին:

### ՓՈԽԱԴԱՐՁ ԴԻՑԱԲԱՆՈՒՄ

Արեւելագէտ Դաւիթ Յովհաննիսեան («Վերախմաստաւորելով ղարաբաղեան հիմնահարցը») դիտել կու տայ՝ որ ԽՍՀՄ տարիներուն երկիրներու բնակիչները կը ճանչնային իրարու եւ փոխադարձ որոշ պատկերացում ունէին՝ միասին սորվելու, բանակին մէջ ծառայելու եւ այլ շփումներու շնորհիւ: Ներկայիս կան երկու հասարակութիւններ՝ որոնք անտեղեակ են իրարմէ, յատկապէս Ղարաբաղեան շարժումէն ետք ծնած սերունդը: Երկու կողմերու մարդոց վերաբերմունքը դիցաբանուած է, այսինքն, իրարու կը վերագրեն այնպիսի յատկութիւններ՝ որոնք ընդհանրապէս յատուկ չեն մարդ արարածին: Անտեղեակութեան հետեւանքով կը ստեղծուի թշնամիի տիպարը: Ասոր նպաստած է նաեւ երկու կողմերու հասարակութիւններուն ռազմականացումը:

* * *

Ասիկա լոկ մաս մըն էր 13 մտածող անձերու խօսքերէն, որոնք համատեղուեցան շնորհիւ Բուն TV-ի նախաձեռնութեան: Թէեւ արտասանուած են 44-օրեայէն առաջ, բայց արծարծուած հարցերը աւելի քան այժմէական կը հնչեն այսօր:

Ա.

(Վերջ 2)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1904 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٠٤ الخميس ٢ ديسمبر ٢٠٢١


## ՑԻՇԵՑՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՄԱՍԻՆ. Ի՞ՆՉ ԿԱՐԵԼԻ Է ՍՊԱՍԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՆՈՐ ՄԱՐՏԵՐԷՆ

**ՔԻՐԻԼ ՔՐԻՎՈՇԷԵՎ**

(Քարնէկի Հիմնադրամի Մոսկովեան Կեդրոն)

Վերջին տասնամեակները Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ եղած անթիւ ռազմական բախումներու հիման վրայ կարելի է ձեւակերպել դիմակայութեան որոշ օրինաչափութիւններ, որոնք դիւրութեամբ թոյլ կու տան կանխատեսել՝ թէ որքան մեծ պիտի ըլլայ յաջորդական բախումը: Օրինակ, հրետանիի գործածութիւնը ցոյց կու տայ՝ որ իրերու դրութիւնը կը լրջանայ. հակառակ պարագային՝ ամէն բան պիտի սահմանափակուէր ինքնաձգային փոխհրաձգութեամբ:

Իրադարձութիւններու լրջութեան եւս ցուցիչ մըն է հակառակորդի զինծառայողներու գերեվարումը: Ակնյայտօրէն վատ նշան է այն հանգամանքը՝ որ Պաքուն ոչ միայն Հայաստանին դեռ չէ վերադարձուցած 2020-ին գերեվարած անձերը, այլ կը գերեվարէ նորերը: Եթէ հայերը օգնութիւն խնդրելու համար անմիջապէս կը սկսին հեռաձայնել Մոսկուա, ուրեմն ակներեւ է՝ որ խնդիրը դուրս է ընթացիկ լուծումի ուղիէն: Ի վերջոյ՝ շատ յատկանշական են կորուստներուն մասին յայտարարութիւնները. որչափ անոնք ուռճացած են, այնչափ կողմերը աւելի մօտ են վերսկսելու պատերազմը:

Այժմ այս բոլոր նշանները ցոյց կու տան, որ Նոյեմբեր 16-ին Հայաստանի եւ Ազըրպէյճանի սահմանին տեղի ունեցած են նշանակալի իրադարձութիւններ: Երեւանը յայտարարած է՝ որ ազըրպէյճանական կողմը ունի «մինչեւ 70 զոհ ու վիրաւոր եւ ռազմական թեքնիքի զգալի կորուստներ», մինչդեռ իրենք ունին միայն մէկ զոհ, 13 գերիներ եւ 24 անյայտ կորսուած զինծառայողներ: Պաքուն հաղորդած է ազըրպէյճանցի եօթը զինծառայողներու մահուան մասին. այս բոլորը կը վկայէ շատ լուրջ մարտական գործողութիւններու մասին:

**Անդրկովկասեան ճենթլմէններու աւանդոյթները**

Յաջորդական՝ այս անգամ վեցժամեայ հայ-ազըրպէյճանական պատերազմը (մարտերը սկսած են մօտաւորապէս Նոյեմբեր 16-ի ժամը 12-ին եւ աւարտած նոյն օրը ժամը 18.30-ին) կայացաւ հայկական անուանումով Ծիծեռնաքար եւ ազըրպէյճանական անուանումով Քիլխալը լերան հատուածը գտնուող երկու դիրքերու համար՝ հայկական Գորիս քաղաքի դրացիութեամբ: Յաջորդ օրուայ առաւօտեան Երեւանը կը խոստովանի՝ որ երկու դիրքերն ալ անցած են «հակառակորդի վերահսկողութեան տակ»: Փորձել ճշդել, թէ ով եղած է առաջին կրակողը՝ բոլորովին անիմաստ է. կողմերը, ըստ հին սովորութեան, իրարու կը մեղադրեն, պնդելով որ հակառակորդը դիմած է «սադրանքի»՝ «սեփական դիրքերը բարելաւելու նպատակով»:

Երկու երկիրներու միջեւ այս տարուայ ընթացքին թէեւ պարբերաբար ու անընդհատ ծագած էին սահմանային վէճեր, բայց չէին յանգեցուցած այսքան լայնածաւալ մարտերու: Նախապէս որոշ վէճեր կը լուծուէին բռունցքներով, որոշ պարագաներու ալ ազըրպէյճանցիները չսպասելով լուրջ պատասխանի, պարզապէս վիճելի սահմանային հատուածներուն վրայ եւ մինչեւ անգամ հայկական տարածքի վրայ անխոչընդոտ դիրքեր կը տեղադրէին:

Տակաւին Մայիսին, հայերը աջակցութեան ակնկալիքով, յայտ ներկայացուցած են ՀԱՊԿ-ին: Նախապէս ներկայացուած յայտերու պարագային, Ղարաբաղի մասով այդ կազմակերպութեան պատասխանը եղած էր միշտ նոյնը՝ միջազգային իրաւունքի համաձայն այդ տարածքը կը պատկանի Ազըրպէյճանին, ուստի դաշնակիցները պարտաւոր չեն ղարաբաղեան հակամարտութեան մէջ Հայաստանին սատարել: Այժմ ամէն բան ուրիշ է. խօսքը բուն Հայաստանի տարածք ներխուժելու մասին է: Սակայն ՀԱՊԿ-ը մերժած է յայտը՝ այս անգամ Սեւ Լիճի մերձակայքը տեղի ունեցած դէպքերը որակելով «սահմանային միջադէպ»: Այսպիսի ձեւակերպումը Երեւանին բաւական բարկացուցած է. կը պարզուի՝ որ ՀԱՊԿ անդամակցութիւնը Հայաստանի համար գործնականօրէն անօգուտ է:

Ամառն ու աշունը այսպիսի «սահմանային միջադէպերը» դարձան յաճախակի: Յատկապէս կը յիշուի Նոյեմբեր 14-ին տեղի ունեցած ամենավերջին միջադէպը. Telegram-ի մէջ յայտնըւած պատկերագրութիւններուն մէջ ազըրպէյճանցիները պարզապէս քանի մը հայկական դիրքեր վերցուցած են առանց դիմադրութեան: Դիրքապահ ծառայութիւն իրականացնող հայ զինուորականները պարզապէս հեռացեր են. միջադէպը Երեւանի մէջ մեծ աղմուկ բարձրացուց եւ յանգեցուց Հայաստանի Պաշտպանութեան Նախարարի պաշտօնանկութեան:

Ծիչդ ասոր համար ալ Նոյեմբեր 16-ին տեղի ունեցած մարտերը աւելի նման էին վերջին պարտութեան ստորացումը յաղթահարելու եւ հակառակորդին դիմադրաւելու հայերու փորձերուն: Ըստ երեւոյթին, ազըրպէյճանցիները փորձած էին նոյն միջոցով նոր դիրքեր եւս գրաւել, իսկ հայերը ջանացած էին իրենց աւելի լաւ դրսեւորել: Առաւել եւս, որ այդ բարձունքներուն վերահսկողութենէն կախուած է Հայաստանի հարաւէն դէպի Երեւան երկարող մայրուղին գնդակոծելու հնարաւորութիւնը: Յիշեցընենք, որ այդ մայրուղիի հատուածներէն մէկուն վրայ ազըրպէյճանցիները արդէն տեղադրած են երկու սահմանակէտեր:

Զգալով որ նորէն ՀԱՊԿ դիմելը անիմաստ է, Հայաստանը յիշած է 1997 թուականի Ռուսաստանի հետ բարեկամութեան, համագործակցութեան եւ փոխօգնութեան մասին երկկողմ պայմանագիրը: Այնտեղ եւս կան այնպիսի ձեւակերպումներ, որոնք կ՚ենթադրեն փոխադարձ ռազմական աջակցութեան ցուցաբերում՝ կողմերէն մէկուն դէմ յարձակումի պարագային: Օրինակ, կողմերը պէտք է «անյապաղ իրարու հետ խորհրդակցութիւններ անցընեն ամէն անգամ՝ երբ կողմերէն մէկուն կարծիքով իր դէմ կը յառաջանայ զինուած յարձակումի սպառնալիք» եւ փոխադարձ համաձայնութեամբ պէտք է «որոշեն աջակցութեան ցուցաբերումի անհրաժեշտութիւնը, տեսակներն ու ծաւալները»:

Սակայն այս համաձայնութիւնը նոյնպէս չգործեց՝ երբ մարտերը կ՚ընթանային վիճելի տարածքին վրայ: Թէեւ Երեւանը ⇘ 4

**ԳԱՀԻՐԷ**

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐԱՆՇԱՆԱԿ ԴԵՍՊԱՆ ՀՐԱՉԵԱՅ ՓՕԼԱՏԵԱՆԻ ՀԵՏ



Ձախէն աջ՝ Կարօ Վարժապետեան, Սիմոն Ջամքէրթէնեան, Հերմինէ Վարժապետեան, Հրաչեայ Փօլատեան, Մարտիրոս Պալեան, Այտա Նաքաշեան եւ Խաչիկ Գասապեան

Կիրակի, Նոյեմբեր 28-ի առաւօտեան, Գահիրէի Հայկական Ընթերցասրահի եւ *Ջահակիր*ի շրջանակի անդամներ այցելեցին Եգիպտոսի մէջ Հայաստանի Դեսպանատունը, բարի գալուստ մաղթելու նորանշանակ դեսպան Ն.Վ. Հրաչեայ Փօլատեանին:

Մտերիմ խօսակցութեան ընթացքին արծարծուեցան զանազան հարցեր կապուած Հայաստանի ներկայ վիճակին, ինչպէս նաեւ Հայաստան-Եգիպտոս եւ Հայաստան-Սփիւռք յարաբերութիւններուն մասին: Անդամները յարգարժան դեսպանին տեղեկութիւններ տուաւ Հայկական Ընթերցասրահի եւ *Ջահակիր*ի գործունէութիւններուն մասին եւ ներկայացուց իր ուղղութիւնը Հայաստանի նկատմամբ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՓԱՇԻՆԵԱՆԸ, ՊՈՒՏԻՆԸ ԵՒ ԱԼԻԵՒԸ ԸՆԴՈՒՆԵԼ ԵՆ ՀԱՄԱՏԵՂ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Նիկոլ Փաշինեանը, Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վլադիմիր Պուտինը եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւը Նոյեմբերի 26-ի եռակողմ հանդիպման արդիւնքներով ընդունել են համատեղ յայտարարութիւն: Դրանում, մասնաւորապէս, նշուած է.

«Մենք՝ Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Ն. Վ. Փաշինեանը, Ադրբէջանի Հանրապետութեան նախագահ Ի. Հ. Ալիեւը եւ Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վ. Վ. Պուտինը, 2021թ. Նոյեմբերի 26-ին հանդիպեցինք Սոչի քաղաքում եւ քննարկեցինք 2020թ. Նոյեմբերի 9-ի յայտարարութեան՝ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան գօտում հրադադարի եւ բոլոր ռազմական գործողութիւնների ամբողջական դադարեցման իրագործման, ինչպէս նաեւ 2021թ. Յունուարի 11-ի՝ տարածաշրջանում բոլոր տնտեսական եւ տրանսպորտային կապերն ապաշրջափակելու մասին յայտարարութեան կատարման ընթացքը:

«Վերահաստատեցինք 2020թ. Նոյեմբերի 9-ի եւ 2021թ. Յունուարի 11-ի յայտարարութիւնների բոլոր դրոյթների յետագայ, հետեւողական իրականացման եւ անվերապահ պահպանման յանձնառութիւնը՝ ի շահ Հարաւային Կովկասի կայունութեան, անվտանգութեան եւ տնտեսական զարգացման: Պայմանաւորուեցինք ակտիւացնել համատեղ ջանքերը՝ ուղղուած 2020թ. Նոյեմբերի 9-ի եւ 2021թ. Յունուարի 11-ի յայտարարութիւններից բխող մնացած խնդիրների շուտափոյթ լուծմանը:

«Նշեցինք Ռուսական խաղաղապահ առաքելութեան ⇘ 3

# ԳԵՂԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՄՈՌՑՈՒԱԾ ԱՌԱՐԿԱՅ ՄԸ

Հ. Ա.

Հանրային մոռցուած արուեստ մըն է գեղագրութիւնը: Եւ աւիկա՝ համակարգիչի ստեղծումէն շատ առաջ:

Մանկավարժական առարկայ մըն էր ան: Կրնամ յիշել, մինչեւ 1960-ականներուն վերջերը եգիպտահայ դպրոցները կ՚ուսուցանէին գեղագրութիւն, թէեւ արդէն բաւական հարեւանցի կերպով: Որքան աւելի ետ երթանք ժամանակով, այնքան աւելի կը տեսնենք գեղագրութեան կարեւորութիւնը դպրոցներուն մէջ:

Ձեռքիս տակ ունիմ *Ուղեցոյց գեղագրութեան հինգ տետրերով նախակրթարաններու համար* խորագիրով դասագիրքին առաջին թիւը, տպագրուած 1925-ին, Աղեքսանդրիա: Հեղինակն ու գեղագիրն է՝ Համազասպ Փանոսեան: Կազմուած է 32 էջերէ, + 2 թերթ թուղթէ կողքերէ, չափ՝ 17.3 x 24.5 սմ. (տետրակի ձեւաչափ):

Համաձայն անուանաթերթին, ան կազմուած է հինգ տետրակներէ.

Թիւ Ա. – Գծերու այբուբէնի եւ գլխագրի վրժթ.

Թիւ Բ. – Պարզ գիր, Սրբագիր եւ Թուանշան

Թիւ Գ. – Պարզ գիր, Սրբագիր Գլխագիր

Թիւ Դ. – Պարզ գիր, Բոլորագիր Գլխագիր

Թիւ Ե. – Պարզ գիր, Կոթագիր, Գլխագիր

Կը նշանակէ, եգիպտահայ դպրոցին համար այդ ժամանակ որքան կարեւոր էր գեղագրութիւնը:



*Ուղեցոյց գեղագրութեան* գիրքի Ա. Թիւին կողքը:

Գեղագրութիւն բառն ինքնին իր մէջ կը կրէ իմաստ մը: Ան աւելի է քան ճիշդ ու յստակ ձեռագիրի գաղափարը: Ըմբռնումն է գեղեցիկի, որմէ՝ գեղագիտական փորձառութեան:


*Ուղեցոյց գեղագրութեան* գիրքի Ա. Թիւէն էջ մը:

Գեղագրող անձը ինքնին հասարակական դէրք մը կը գրաւէր: Գահիրէի մէջ անցեալ դարու առաջին կէսին հռչակ վայելող գեղագիր մըն էր, օրինակ, Մարտիրոս Պալեան:

Գեղագրութիւնը դպրոցականի ճաշակը մշակելէ կը հասնի մինչեւ մասնագիտութիւն: Հիմքը կը մնայ գեղեցկութեան հանդէպ ըմբռնումն ու զգացողութիւնը:

Գեղագրութիւնը արուեստ է: Իրական արուեստը աւելի ու աւելի կը հեռանայ հասարակութիւններէն, անոնց վերադառնալով իբրեւ գերիրական արուեստ՝ շուկայի թելադրած արժէքներու չափանիշներով: Գեղագրութիւնը բան մը չի նշանակեր շուկային համար:

Զանգուածային կրթութիւնը աւելի ու աւելի կ՚ընթանայ դէպի առարկան ու մեղկացուած եղանակով ներկայացուող փորձառնական գիտութիւնները, դուրս մղելով արուեստները: Գեղագրութիւնը մաս կը կազմէ վերջիններուն:

Ստորակէտը աւելի կարեւոր է քան գեղեցիկ նախադասութեան կազմութիւնը, քերականութիւնը աւելի կարեւոր է քան գրութեան ըմբռնումն ու մեկնաբանութիւնը, ճիշդ գիրը աւելի կարեւոր է քան գեղեցիկ գիրը: Ասիկա է այսօրուայ կրթութեան չափանիշը:

Սփիւռքահայկականութեան հռետորաբանութեան մէջ եւս գեղագրութիւնը այլեւս տեղ չի կրնար գրաւել: Ինչպէ՞ս զայն տեղաւորել հայապահպանութեան գաղափարախօսութեան մէջ: Ձեռնարկային արուեստը կ՚որակաւորուի իբրեւ հայապահպանութիւն, դպրոցներուն մէջ արուեստն ու գրականութիւնը կ՚ուսուցանուին հայապահպանութեան համար: Մտաւոր կամքը, սորվելու կիրքը, գեղեցկասիրութեան հմայքը, գեղագիտութեան հաճոյքը դուրս են ուսուցողական ըմբռնումներէն: Տեղ չունին հայապահպանութեան մէջ: Ալ ի՞նչ հայապահպանութիւն գեղագրութեան միջոցով:




ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑԸ

Նոյեմբեր 23-ին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան ունեցաւ աւելի քան երկու ժամ տեւած ֆէյսպուքեան ասուլիս, ուր պատասխանեց լրագրողներու հարցումներուն: Արծարծըւած հարցերը բազում էին: Քաղաքագէտ Մովսէս Յարութիւնեան կը համառօտագրէ կարեւոր կէտերը.

1. Հայաստանը միջանցքի հարց չէ քննարկած ու պիտի չքննարկէ:

2. Ստորագրուելիք ենթադրեալ փաստաթուղթը պիտի վերաբերի միայն յանձնաժողովի ստեղծումին, որուն շրջանակներուն մէջ յետոյ՝ տարիներու ընթացքին, պիտի քննարկուին սահմանզատումի եւ սահմանագծումի հարցերը:

3. Փաստաթուղթին մէջ միջերկիրներու (enclaves) մասին յիշատակում պիտի չըլլայ. հարցը պիտի տրուի յանձնաժողովին: Հայաստանը պիտի պնդէ՝ որ մեր մօտ առկայ միջերկիրները յետագային եւս մնան մերը:

4. Նոյեմբեր 9-ի՝ մեր պարտութեան եւ Ազըրպէյճանի յաղթանակին նուիրուած օրը ցուցադրական եռակողմ հանդիպումին գաղափարը մերժած է հայկական կողմը, ըլլելով այն համոզմանքէն՝ որ բացի մեզի հոգեբանական հարուած տալէ, ուրիշ ոչինչ պիտի տայ:

5. Համաձայն ենք ճանապարհներու ապաշրջափակումին բայց մեր ինքնավարութեան պահպանութեան պայմանով, ինչպէս նաեւ այն ուղիներու/ճանապարհներու միջոցով՝ զոր կ՚որոշէ Հայաստանը (անշուշտ խօսքը միայն մեր տարածքով անցնող հատուածներուն մասին է):

6. Հայաստանը Նոյեմբեր 16-ին գրաւոր չէ դիմած ՀԱՊԿ-ին, քանզի Մայիս 12-ի՝ ազըրպէյճանական ներխուժումին ժամանակ դիմած ենք եւ մնացած անարձագանգ:

7. Հայաստանը այս պահուն չի դիտարկեր ՀԱՊԿ-էն դուրս գալու տարբերակը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԱՐԳԱՒՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ ՊԱՅՄԱՆԸ ՉԻ ԿԱՐՈՂ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԱՌԱՐԿԱՅ ԼԻՆԵԼ. ՄԻՐԶՈՅԵԱՆ

Հայաստանի հետ յարաբերութիւնները կարգաւորելու համար Թուրքիան նոր պայմաններ է առաջադրում: Ինչպէս հաղորդում է *Արմէնպրէսը*, ֆրանսիական *Լը Ֆիգարօ* օրաթերթին տուած հարցազրոյցում այս մասին ասել է Հայաստանի Արտաքին Գործերի նախարար Արարատ Միրզոյեանը՝ պատասխանելով հարցին, թէ պատրա՞ստ է արդեօք Հայաստանը կարգաւորել Թուրքիայի հետ իր յարաբերութիւնները:

«Մենք մշտապէս յայտարարել ենք, որ պատրաստ ենք կարգաւորել մեր յարաբերութիւններն առանց նախապայմանների՝ չնայած Արցախի դէմ պատերազմի ընթացքում Թուրքիայի կողմից Ադրբէջանին ցուցաբերուած հսկայական աջակցութեանը՝ ինչպէս քաղաքական առումով, այնպէս էլ՝ սպառազինութեան մատակարարմամբ եւ հազարաւոր օտարերկրեայ վարձկանների տեղակայմամբ», - ասել է Միրզոյեանը:

Նա յաւելել է, որ դրական ազդակներ են ստացուել Թուրքիայի կողմից երկխօսութիւնը վերաբացելու ուղղութեամբ, բայց այն խրթին է մնում: «Անկարան նոր պայմաններ է առաջադրում: Դրանց թւում Ադրբէջանը եւ Նախիջեւանը կապող «միջանցքն» է: Դա բացարձակապէս չի կարող քննարկման առարկայ լինել: Պետութիւնները պէտք է տարանցում թոյլ տան՝ պահպանելով սեփական տարածքի նկատմամբ ինքնիշխանութիւնը: Տարածաշրջանի հաղորդակցութեան բոլոր ուղիները պէտք է վերաբացուեն», - նշել է Հայաստանի Արտաքին Գործերի նախարարը:

## ԱԼԻԵՒ-ՔՈՉԱՐԵԱՆ «ՀԱՄԱՏԵՂ ՄԵՂԱԴՐԱԿԱՆ» ԸՆԴԴԷՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Գրեթէ միաժամանակ, Ադրբէջանի նախագահ Ալիեւն ու Հայաստանի նախկին նախագահ, խորհրդարանական ընդդիմութեան երկրորդ ուժի առաջնորդ Ռոբերտ Քոչարեանը Հայաստանը մեղադրում են Արցախի դէմ 44-օրեայ Թուրք-ադրբէջանական ագրեսիա «հրահրելու» համար: Բառերը ամբողջապէս նոյնը չեն, սակայն դէ ֆակտօ նոյնն են մտքերը: Այն, որ Ալիեւը փորձում է Թուրքիայի հրամանատարութեամբ եւ վարձկան ահաբեկիչների ներգրաւումով, Պակիստանի եւ Իսրայէլի հետ դաշնակցուած ագրեսիայի պատասխանատուութիւնը դնել Հայաստանի վրայ, դա հասկանալի է, Ալիեւն այլ բան չէր էլ անելու: Բայց, որ գործնականում նոյնն անում է Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը, սա արդէն մեղմ ասած տարակուսելի է: Այն, որ երկրորդ նախագահը կոշտ եւ յաճախ անգամ կոպիտ քննադատութեան է ենթարկում Հայաստանի քաղաքական ղեկավարութեանը, սրա հետ ոմանք կարող են համաձայնել, ոմանք՝ ոչ, կարող են համաձայնել մասամբ, կարող են չհամաձայնել ոճի առումով, բայց հաւանութեան արժանացնել բովանդակութիւնը, բայց բոլոր դէպքերում այդ ամէնը միանգամայն հասկանալի է, անգամ եթէ դիտարկենք լոկ իշխանութեան համար պայքարի տրամաբանութեան մէջ, եթէ մարդիկ համոզուած լինեն, որ դա արւում է ոչ թէ յանուն Հայաստանի լաւագոյն շահի, այլ ընդամէնը յանուն իշխանութեան վերադարձի, յանուն պատերազմի պարտութիւնը դրա հնարաւորութիւն դարձնելու:

Բայց, երբ այդ ամենով հանդերձ Հայաստանի նախկին նախագահը ընդդիմութեան գլխաւորի կարգավիճակով Թուրք-ադրբէջանական ագրեսիայի պատասխանատուութիւնն է դնում Հայաստանի վրայ, դա չի կարող տեղաւորուել որեւէ առողջ դատողութեան շրջանակում, բացառութեամբ մի դէպքի՝ երբ այդ ուժը նաեւ ներկայացնի յստակ եւ համոզիչ ապացոյցներ, որ Հայաստանի քաղաքական ղեկավարութիւնը դիտաւորեալ է իրավիճակը մտցրել փակուղի եւ ստեղծել պատերազմի նախադրեալ: Բայց, ամբողջ հարցն այն է, որ այդ համոզիչ վկայութիւնը Սերժ Սարգսեանի ելոյթն է 2018 թուականի Ապրիլին, երբ պատրաստւում էր դառնալ վարչապետ եւ յայտարարում էր, որ բանակցութիւնը փակուղում է, բանակցութիւն չկայ, որովհետեւ Ադրբէջանը անընդհատ մեծացնում է պահանջները՝ Հայաստանի համար անընդունելիութեան աստիճան: Երբ կայ Սարգսեանի այդ ելոյթը, չափազանց բարդ է համոզել որեւէ ողջախոհ սուբիեկտի, որ բանակցութիւնը փակուղի է մտցրել Հայաստանի յետյեղափոխական իշխանութիւնը: Սա չի նշանակում, որ յետյեղափոխական իշխանութիւնը արցախեան հարցում ամէն ինչ արել է անթերի, արել է ճիշտ, բայց ամբողջ հարցն այն է, որ փակուղին արել է ոչ թէ այդ իշխանութիւնը, այլ այն, որը պատասխանատու է եղել բանակցային այսպէս ասած նախայեղափոխական գործընթացի համար:

Աւելին, չափազանց բարդ եւ թերեւս անհընարին է ներկայացնել յետյեղափոխական փակուղու համոզիչ վկայութիւն, երբ այսօր պատերազմի պատասխանատուութիւնը Հայաստանի վրայ դնող ներհայաստանեան ուժերը հէնց իրենք էին յեղափոխութիւնից յետոյ փորձում «հող յանձնել» արձանագրել ու մեղադրական չեփորել Փաշինեանի բոլոր այն ելոյթներում, որտեղ նա խօսում էր խաղաղութեան անհրաժեշտութեան մասին:

➪ 3

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՊԱՏԿԱՌԵԼԻ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Այսու կը տեղեկացնենք, թէ Ուրբաթ, 19 Նոյեմբեր 2021-ին, տեղի ունեցան Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւնները:

159 ընտրողներէն մասնակցեցան 64 հոգի, որոնց տուած քուէները բաշխուեցան ըստ հետեւեալի.

| | |
|---|---|
| Ալեքսանեան Տիգրան Վահան - | 64 ձայն |
| Արթինեան Վահէ Յարութիւն - | 62 ձայն |
| Թիւթիւնճեան Յակոբ Սերոբ - | 58 ձայն |
| Իսրայէլեան Ռաֆֆի Ստեփան - | 57 ձայն |
| Լէյլէկեան Զաւէն Նուպար - | 62 ձայն |
| Խանցեան Կարօ Արթին - | 64 ձայն |
| Կանիմեան Կարէն Աւետիս - | 64 ձայն |
| Ճուճուեան Կարպիս Արթին - | 54 ձայն |
| Մարտիկեան Հրայր Ներսէս - | 64 ձայն |
| Նախըշքէրեան Ռաֆֆի Զոհրապ - | 48 ձայն |
| Պալեան Մայտա Զաւէն - | 50 ձայն |
| Փալապըյըքեան Ռիթա Կարպիս - | 63 ձայն |

*Նաեւ 5-էն աւելի ձայն ստացած են.*

| | |
|---|---|
| Թօսունեան Պերճ Արթին - | 11 ձայն |
| Հալաճեան Ռաֆֆի Գէորգ - | 8 ձայն |
| Միսկճեան Իւան Կարպիս- | 5 ձայն |

Ասկէ զատ 2 հոգի ստացած են 4-ական ձայն, 2 հոգի՝ 3-ական ձայն, 3 հոգի՝ 2-ական ձայն եւ 9 հոգի՝ մէկական ձայն:

ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

**ԴԻՒԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ**

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԳԱՀԻՐԷԻ ՆՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Այսու կը տեղեկացնենք, թէ Երկուշաբթի, 15 Նոյեմբեր 2021-ին, Հելիոպոլսոյ Պըլըքտանեան հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի 2021 թուականի 3-րդ նիստը՝ ներկայութեամբ 20 երեսփոխաններու: Ժողովի նախագահ Գեր. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանի աղօթքէն ետք տեղի ունեցաւ նոր Քաղաքական Ժողովի ընտրութիւնը:

Յետ քուէարկութեան, Քաղաքական Ժողովի ընտրուած նոր անդամները Առաջնորդ Սրբազան Հօր նախագահութեամբ ընտրեցին իրենց դիւանը:

Նորընտիր ժողովը պիտի գործէ երկու տարուայ շրջանի համար՝ 28 Նոյեմբեր 2021-էն մինչեւ 27 Նոյեմբեր 2023, հետեւեալ կազմով եւ դիւանով.

Տեարք՝

| | |
|---|---|
| Պըլըքտանեան Օննիկ - | Ատենապետ |
| Կրպոյեան Գառնիկ - | Փոխ-Ատենապետ |
| Դոկտ. Սիմոնեան Ճորճ - | Ատենադպիր |
| Պալեան Մարտիկ - | Գանձապահ |
| Եանըգեան Կարէն - | Խորհրդական |
| Զաքարեան Այգ - | Խորհրդական |
| Կէվրէկեան Վահրամ - | Խորհրդական |

Յաջողութիւն կը մաղթենք նորընտիր Պատուարժան Քաղաքական Ժողովին:

**ԴԻՒԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ**

2 ➪ ԱԼԻԵՒ-ՔՈՉԱՐԵԱՆ «ՀԱՄԱՏԵՂ ՄԵՂԱԴՐԱԿԱՆ»...

Այն դէպքում, երբ Թաւշեայ Յեղափոխութիւնից յետոյ բանակցութիւն այդուհանդերձ կար, նշմարւում էր, շարժըւում, երբ Մինսկի Խմբի համանախագահների հովանու ներքոյ սկսում էին քննարկուել «խաղաղութեան նախապատրաստման» քայլեր, այդ թւում հանրային տարբեր խմբերի փոխայցերի պրակտիկայի ներդրումով:

Միջազգային իրադրութիւնը սակայն զարգացաւ իհարկէ բաւականին անյարմար եւ ծանր սցենարով, յանգելով մի կէտի, երբ առաջացաւ Կովկասում պատերազմի թուրք-իսրայէլական շահառութեան պատեհագոյն իրավիճակ, որն էլ նրանք ձեռքից բաց չթողեցին, հիանալի հաշուարկելով նաեւ Ռուսաստանին դիմադրութեան սուղ հնարաւորութիւնները: Ռուսաստանն էլ իր հերթին այդպիսի ռիսկերի յստակ գիտակցումով դրանց սկսել էր պատրաստուել դեռեւս 2017 թուականից՝ Սերժ Սարգսեանին դնելով «երրորդ ժամկէտի» անխուսափելիութեան առաջ, երբ Հայաստանի ու Արցախի գլխին պայթելիքը կը ներգրաւէր նրա այդ քայլի հետեւանքով Հայաստանի դիմադրունակութեան գերթուլացմանը: Յեղափոխութիւնից յետոյ Ռուսաստանը գործի դրեց պլան Բ-ն, այլ կերպ ասած՝ «սորոսականութեան» մեղադրանքը:

ԽՈՀԵՐ

## ԵՒԱ ԳԷՈՐԳԵԱՆ՝ ՇՈՓԷՆԻ 28-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԱՇՆԱԿԻ ՄՐՑՈՅԹԻ ՖԻՆԱԼԻՍԹ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

2021 Հոկտեմբեր 2-23-ին, Վարշաւայի մէջ տեղի ունեցաւ Շոփէնի 28-րդ Միջազգային Դաշնակի Մրցոյթը:

151 դաշնակահարներ մասնակցած են նախապատրաստական փուլին, 78-ը անցած առաջին փուլ՝ անոնց միանալով այլ միջազգային մրցոյթներու 9 դափնեկիրներ, երկրորդ փուլ անցած 45, երրորդ փուլ՝ 23, չորրորդ փուլ՝ 12, որոնցմէ 8-ը դարձած են դափնեկիրներ, միւս 4-ը պաշտօնապէս անուանուած Շոփէնի 28-րդ Միջազգային Մրցոյթի ֆինալիսթներ:

Ֆինալիսթի կոչումին արժանացած է 17-ամեայ Եւա Գէորգեան, իբրեւ պարգեւ ստանալով չորս հազար եւրօ (առաջին մրցանակ՝ 40 հազար եւրօ): Ներկայացած է Ռուսաստան/Հայաստան կրկնակի ազգութիւններով:

Գրեթէ համահաւասար մակարդակով 12 ֆինալիսթներու միջեւ ընտրութեան կատարումը՝ մէկ գագաթի մը համար, խիստ յարաբերական երեւոյթ մըն է: Եւ տակաւին, ստիճանական վայրէջք կատարել առաջինէն դէպի տասներկրորդը՝ գերազանցէն դէպի նուազ գերազանցը, ամբողջապէս պատրանքային երեւոյթ մըն է: Բայց այդպէս պէտք է: Մրցումները այդպէս կ՚ըլլան եւ վերջ: Պէտք է տեղի ունենայ գերադասումստորադասում առաջինէն մինչեւ տասներկրորդը: Այլապէս մրցոյթին մեքանիզմը չի գործեր:

Ան պէտք է ունենայ իր գագաթը, նախ կարողանալու համար փայլեցնել իր սեփական գոյութիւնը իբրեւ միջազգային կարեւորագոյն մրցոյթ, եւ ապա արուեստի գործակալներուն տրամադրելու պատրաստ շուկայացուած ապրանք (դաշնակահարը՝ իբրեւ ապրանք) յետագայ գործարքներու համար՝ նուագահանդէսներ ամենահռչակաւոր երաժշտասրահները, ելոյթներ ամենայայտնի նուագախումբերուն հետ, խտասալիկի եւ տեսասալիկի ձայնագրութիւններ բարձր ապրանքանիշով ընկերութիւններու հետ:

Անշուշտ կան լաւ ու վատ դաշնակահարներ: Բայց այս տարբերութիւնը յաճախ կը յայտնուի նախապատրաստական փուլին, թէեւ աս ալ իր լուրջ խնդիրները ունի եւ անկարելի է 151 կատարողներէն առաջին փուլին համար ընտրել ճշգրիտ 78 լաւագոյնները: Ֆինալիսթներուն պարագային, պէտք է ըսել, դասակարգումը շատ աւելի պայմանական է:

Միջազգային մրցոյթներ նախապէս արձանագրած են կողմնակցութիւններ, երբեմն նոյնիսկ աղմուկներ բարձրացնելով: Բայց ասիկա՝ ուրիշ հարց: Կողմնակցութեան կարելիութենէն անդին, զուտ գեղարուեստական առումով, լաւագոյններու դասակարգումը անկարելիութիւն մըն է: Թիւերը՝ յանձնախումբի անդամներուն նշանակած թիւերը, եւ անոնց գումարումը, կու գան փոխարինել գեղարուեստական անկարելիութիւնը:

Բոլոր ֆինալիսթներուն (ինչպէս նաեւ նախորդ փուլերուն) ելոյթները տեղադրուած են Chopin Institute-ի YouTube-ի պաշտօնական կայանին վրայ՝ https://www.youtube.com/c/chopininstitute/videos: Կ՚արժէ դիտել զանոնք: Պէտք է նուագեն Շոփէնի երկու քոնչերթոներէն մէկը: 9-ը՝ ներառեալ Եւա Գէորգեան, կ՚ընտրեն առաջին քոնչերթօն, 3-ը՝ երկրորդը: Բնական ընտրութիւն մը՝ նկատի ունենալով առաջինին վայելած ժողովրդականութիւնը:

Կատարումներուն պարգեւած գեղարուեստական հաճոյքը՝ մէկ կողմ: Անկասկած, 12 դաշնակահարներն ալ ունին իրենց ուրոյն նուագածութիւնն ու ինքնութիւնը եւ կը տարբերին իրարմէ: Բայց եթէ մասնագէտ դիտորդը կարողանայ զանազանել անոնց լաւն ու նուազ լաւը, առանց դիմելու իր սեփական մեկնաբանական նախընտրութեան, ես կը վերցնեմ արտայայտած կարծիքս: Ես՝ անձամբ, չկրցայ:

Միջազգային մրցոյթները, սակայն, ուրիշ խնդիր մը եւս կը յարուցանեն: Այն է՝ ձգտումը դէպի միակերպութիւնն ու համաձեւութիւնը՝ բացարձակ ինքնութեան պատկերի ստեղծումի համատեղութեամբ եւ միջոցով:

Նախ՝ ինքնութեան հարցը: Խօսքը երկու ինքնութիւններու մասին է՝ բնածիր-բնական եւ արհեստական-ֆեթիշական:

Նուագողներուն միջեւ եղած տարբերութիւնները բնական ու իրական ինքնութիւններ են: Անձերու ինքնութիւններ են: Անձեր՝ իւրաքանչիւրը իր բնաւորութեամբ, համոզումներով, ինչ որ երեւաց Շոփէնի մրցոյթին ժամանակ:

Ասոնց կ՚աւելնան արհեստական ինքնութիւնները: Երբ նուագողներուն միջեւ լաւագոյնի չափանշումը անկարելիութիւն մըն է, բայց եւ այնպէս, կը կայանայ այդ նոյն անկարելի լաւագոյնին ընտրութիւնը եւ կ՚ամրապնդուի միակ գագաթը, ստեղծուած կ՚ըլլայ պատկերային ինքնութիւնը՝ որ ինքնութեան բացարձակացումն է ու արհեստականացումը:

Թիւ 1-ին սահմանումը կ՚ազդէ մեզի նման սովորական ունկնդիրներուս ընկալումին վրայ: Մրցոյթին առաջին հանդիսացած Պրուս Լիուի հանդէպ մեր ընկալումներուն եղանակները տարբեր են յանձնախումբի որոշումէն առաջ եւ վերջ: Թիւ 1-ի իրազեկութենէն առաջ, մենք՝ իբրեւ ունկնդիր, պիտի փորձենք իր նուագին մէջ գտնել ինքնուրոյնութեան եւ անհատականութեան գիծեր, մեզի համար որոշել անոր մեկնաբանական յատկութիւնները: Անկարելի թիւ 1-ի իրազեկութենէն ետք, նախ եւ առաջ զինք պիտի ունկնդրենք իբրեւ թիւ 1, իբրեւ լաւագոյնը, անփոխարինելին, աննմանը: Արդէն իր հանդէպ մեր կազմած բացարձակ ինքնութեան պատկերումով միայն պիտի ունկնդրենք զինք: Լաւագոյն, անփոխարինելի, աննման եւ այլ բառային կարծրատիպերէն ետք միայն պիտի հաղորդակից ըլլանք անոր նուագին, որ անպայմանօրէն պիտի ազդէ մեր սեփական գնահատումին վրայ, պիտի նեղցնէ այդ բառերէն անդին լայն մեկնաբանութիւններ գտնելու մեր սեփական համոզումին աստիճանը, քանի որ հեռուն, տեղ մը, մասնագէտներու կողմէ արդէն որոշուած է թիւը, թիւ՝ որ կը ներկայացնէ իմ փորձառութենէս անդին գտնուող կէտ մը:

Պիտի փափաքէի Եւա Գէորգեանը լսել՝ առանց ֆինալիսթի հանգամանքին: Բայց եթէ ֆինալիսթ չըլլար, ո՞ւր առիթ պիտի ունենայի զինք լսել: Իմ ունկնդրութիւնս հիմնուած է ֆինալիսթի ընձեռած թեքնիքական կարելիութեան վրայ՝ բարձր մակարդակով պատկերահանութիւն նուագախումբի հետ, բոլորին իրազեկուած տեղադրութիւն YouTube-ի վրայ: Համակարգ մը՝ որմէ դժուար է խուսափիլ: Բոլորս մէջն ենք այս համակարգին: Կարեւորը՝ գիտակցիլն է: Ո՞վ գիտէ, կրնայ ըլլալ գիտակցութիւնը փոփոխութեան սկիզբը ըլլայ:

Գանք համաձեւութեան հարցին՝ որուն արտադրողներէն մէկն է միջազգային մրցոյթը, բնականաբար, զանգուածային կրթութենէն ետք:

Սկսիմ հեռու ժամանակներէն: Այս առումով, ԺԹ. դարուն կազմաւորուած եւ Ի. դարուն սկիզբը ձայնագրուած դաշնակահարներուն մեկնաբանութիւնները շատ բան կրնան յուշել: Փատերեւսքիի եւ Ժոզէֆ Հոֆմանի Շոփէնի հանճարեղ կատարումները կրնայի՞ն այսօր նուագողին հասցնել Շոփէնի Մրցոյթի մրցանակի: Միանշանակօրէն՝ ո՛չ: Ինչո՞ւ: Պարզապէս որովհետեւ մինչեւ Ի. դարու արդիական կատարողականութեան հաստատումը, կատարողական արուեստի բնորոշիչներէն մէկն էր բնագիրի հանդէպ ➪ 4




1 ➩

## ՓԱՇԻՆԵԱՆԸ, ՊՈՒՏԻՆԸ ԵՒ ԱԼԻԵՒԸ ԸՆԴՈՒՆԵԼ ԵՆ ՀԱՄԱՏԵՂ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

կարեւոր ներդրումը տարածաշրջանում իրավիճակի կայունացման եւ անվտանգութեան ապահովման գործում:

«Պայմանաւորուեցինք ադրբէջանա-հայկական սահմանին կայունութեան եւ անվտանգութեան մակարդակը բարձրացնելուն ուղղուած քայլեր ձեռնարկել եւ գործընթացը մղել Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի դելիմիտացիայի եւ այդուհետ դեմարկացիայի հարցերով երկկողմ՝ կողմերի յայտի հիման Ռուսաստանի Դաշնութեան խորհրդատուական մասնակցութեամբ յանձնաժողովի ստեղծման ուղղութեամբ:

«Բարձր գնահատեցինք 2021թ. Յունուարի 11-ի յայտարարութեան համաձայն ստեղծուած՝ Ադրբէջանի Հանրապետութեան, Հայաստանի Հանրապետութեան եւ Ռուսաստանի Դաշնութեան փոխվարչապետերի համատեղ նախագահութեամբ գործող տարածաշրջանի բոլոր տնտեսական եւ տրանսպորտային կապերի ապաշրջափակման հարցերով եռակողմ աշխատանքային խմբի գործունէութիւնը: Ընդգծեցինք տարածաշրջանի տնտեսական ներուժը բացայայտելու համար կոնկրէտ ծրագրերի հնարաւորինս արագ մեկնարկի անհրաժեշտութիւնը: «Ռուսաստանի Դաշնութիւնն այսուհետ եւս կը շարունակի ցուցաբերել անհրաժեշտ աջակցութիւն՝ Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան միջեւ յարաբերութիւնների կարգաւորման, ադրբէջանցի եւ հայ ժողովուրդների միջեւ վստահութեան մթնոլորտի ձեւաւորման, ինչպէս նաեւ տարածաշրջանում բարիդրացիական յարաբերութիւնների ստեղծման նպատակով»:

3 ➩

## ԵՒԱ ԳԷՈՐԳԵԱՆ՝ ՇՈՓԷՆԻ 28-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԱՇՆԱԿԻ ՄՐՑՈՅԹԻ ՖԻՆԱԼԻՍԹ

ազատագրուած ընկալումը: Ուշադրութիւն՝ ազատագրում չի նշանակեր խեղաթիւրում: Արդիականութիւնը կատարողին պարտադրեց բնագիրի կուքայնացում: Մինչ-արդիականութեան ժամանակ, բնագիրը կը գործէր իբրեւ ոչ վերջնականացուած ձեռնարկ: Ան հոսող գետ մըն էր, աւելի քան անշարժ ժայռ մը ըլլալէ: Անսահմանափակ ռուպաթօ, արագութիւններու փոփոխութիւններ մէկ նախադասութեան մէջ, հպումի ամենալայն այլազանութիւններ՝ յաճախ մէկ-երկու մոթիֆի համար, զօրեղութիւններու բազմապատկում, *rit.*-երու ցայտունութիւն, եւ շատ նման ընդունուած մօտեցումներ, կատարողներուն միջեւ եղած տարբերութիւնները կը դարձնէին անհամեմատօրէն առատ, հարուստ ու բազմակողմանի:

Ո՞վ ըսաւ որ երաժշտահանը կամ բնագիր ստեղծողը լաւագոյն տիրապետողն է նոյն ինքը բնագիրին: Տիրապետողն է, անշուշտ, գրութեան եւ նուագագրութեան թեքնիքի առումով, առանց որուն կարելի չէ ստեղծագործութիւն յօրինել: Այս տեսակ տիրապետումը անհրաժեշտ է երաժշտահանին համար: Բայց թեքնիքականէն անդին, բնագիրին մէջ գտնուող մեկնաբանութիւններու կարելիութիւններու առումով, ոչ ոք՝ ո՛չ երաժշտահանը եւ ո՛չ ալ կատարողը, կրնան յաւակնիլ տիրապետած ըլլալ:

*Cresc.*-ի հետ մի արագցներ ընթացքը, երեսիդ կը պոռայ դաշնակի այսօրուայ դասատուդ, եթէ համարձակիս նման բան ընել: Ինչո՞ւ: Որովհետեւ այդպէս չէ գրուած: Բայց այդպէս ընդունուած էր ԺԹ. դարուն: Ընդունուած էր աճ՝ աճի համատեղ: Իսկ այսօր, աճ՝ ձայնի ուժգնութեան բարձրացումով, միաժամանակ աճի արգելում՝ արագութեան նկատմամբ, պարզապէս որովհետեւ այդպէս չէ գրուած: Այդպէս չէ գրուած, թէեւ ես այլ կերպ կը մտածեմ, կը զգամ, կը հասկնամ, կը մեկնաբանեմ: Կը նուագեմ մարդկային փորձառութեանս վրայ, այլ ոչ բնագիրի հրամայականին: Բնագիրի հրամայականն է որ այսօր կարելի կը դարձնէ դաշնակահարներուն մասնակցիլ մրցոյթներու: Ասկէ՝ բնական ինքնութիւններու տարբերութիւններու սահմանափակութիւնը: Փոխարէնը՝ ինքնութիւններու բեւեռացում՝ շուկայական թելադրութեամբ:

1 ➩

## ՅԻՇԵՑՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՄԱՍԻՆ. Ի՞ՆՉ ԿԱՐԵԼԻ Է ՍՊԱՍԵԼ ...

յայտարարեց՝ որ օգնութեան խնդրանքով դիմած է Ռուսաստանին, Մոսկուան պնդեց՝ որ Երեւանէն գրաւոր յայտ չէ ստացած, իսկ առանց այդ յայտին օգնութիւն ցուցաբերելու մեքանիզմը կարելի չէ կիրարկել: ՀԱՊԿ-ը, իր կարգին, տեղի ունեցող իրադարձութիւններուն կ՚արձագանգէ սոսկ երեկոյեան՝ կողմերուն պարզապէս երկխօսութեան կոչ ընելով. «Հայկական կողմէ քարտուղարութեան ուղղուած ոչ մէկ պաշտօնական յայտ ստացած ենք: Կը կարծենք, որ հակամարտութիւնը պէտք է կարգաւորուի բացառապէս խաղաղ քաղաքական-դիւանագիտական եղանակով»:

Հայկական իշխանութիւնները այնքան հիասթափուած էին Մոսկուայի վարքագիծէն, որ փաստօրէն վերջնագիր կը ներկայացնեն անոր: «Հայաստանը կը համարէ՝ որ ճգնաժամը հնարաւոր է լուծել Ռուսաստանի եւ ՀԱՊԿ-ի միջոցով: Բայց եթէ անոնք չեն կրնար ասիկա ընել, ապա Երեւանը ստիպուած պիտի ըլլայ դիմել այլ միջազգային գործընկերներու», - կը յայտարարէ Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեան, որ իր անցեալի պատճառով ռուս ուժայիններու շրջանին մէջ ի սկզբանէ չունի լաւ վարկանիշ: Գրիգորեան զինուորական չէ. ան եղած է քաղաքացիական աքթիւիսթ, համագործակցած է Transparency International-ի նման արեւմըտեան կազմակերպութիւններու հետ եւ մասնակցած 2018-ի Թաւշեայ Յեղափոխութեան:

Այս խօսքերէն ետք Գրիգորեան ցուցադրաբար հանդիպած է երեք երկիրներու՝ ԱՄՆ-ի, Ֆրանսայի եւ Իրանի դեսպաններուն հետ, կարծես թէ ուրուագծելով հնարաւոր դաշնակիցներուն շրջանակը: Եթէ առաջին երկուքի հետ հանդիպումը ըմբռնելի է՝ քանի որ ԵԱՀԿ Մինսքի Խումբի համանախագահող եռեակի մասն են, ապա Իրանը էկզոթիք տարբերակ էր: Իրանը թէեւ հայ-ազրպէյճանական կարգաւորումով երբեք չէ զբաղած, վերջերս կատարած է Երեւանին մերձենալու որոշակի քայլեր՝ Պաքուի հետ աճող թիւրըմբռնումներու եւ խնդիրներու յետնախորքին վրայ:

Նման ցուցադրական քայլերու արդիւնաւէտութիւնը, անշուշտ, տարակուսանք կը յառաջացնէ: Նոյեմբեր 16-ի մարտերը, միեւնոյնն է, կը դադրին Ռուսաստանի Պաշտպանութեան Նախարար Շոյկուի հեռաձայնի շնորհիւ, որ կը գրուցէ թէ՛ հայ, եւ թէ՛ ազրպէյճանցի իր գործընկերներուն հետ: Եթէ յաջորդ օրը մարտերը շարունակուէին, ապա բոլորը պիտի յայտնուէին անյարմար վիճակի մէջ. Մոսկուայի մէջ պիտի կայանար ԱՊՀ երկիրներու Անվտանգութեան Խորհուրդներու քարտուղարներուն հանդիպումը, որուն ներկայ պիտի ըլլային թէ՛ Ազրպէյճանի եւ թէ՛ Հայաստանի ներկայացուցիչները:

**Գագաթնաժողով՝ որ չկայացաւ**

Երբ լռեցին թնդանօթները, Ռուսաստանի նախագահի մամուլի քարտուղար Տմիթրի Փեսքովին հարցուցին Փութինի, Փաշինեանի եւ Ալիեւի եռակողմ գագաթնաժողովի մասին, որ պէտք է կայանար երկրորդ ղարաբաղեան պատերազմի առաջին տարելիցին, բայց չկայացաւ: «Անկասկած, ինչ-որ փուլի, նման շփումներ անհրաժեշտ պիտի ըլլան, բայց որպէսզի անոնք հնարաւոր դառնան՝ անհրաժեշտ է երեք կողմերու համաձայնութիւնն ու պատրաստակամութիւնը», - պատասխանեց քարտուղարը:

Հակամարտութեան կարգաւորումին նոր լիցք հաղորդելու ունակ այսքան կարեւոր հանդիպումի ձախողումի մասին բաւական յիշատակուեցաւ Պաքուի եւ Երեւանի մէջ: Բայց զայն կայացնելու «պայմանաւորուածութեան բացակայութեան» մասին առաջինը խօսած է Փաշինեան, եւ այս պատճառով հանդիպումի ձախողութեան մեղաւորութիւնը վերագրուած է իրեն:

Փաշինեանը, իրօք, մեղաւոր կը համարուի, որովհետեւ պատերազմի աւարտի առաջին տարելիցը եկած է՝ առանց կողմերը բանակցային ոլորտի զգալի յաջողութիւններ արձանագրելու: Ազրպէյճանը վստահաբար կը ձգտէր նոր զիջումներ կորզել Հայաստանէն, օրինակ՝ Նախիջեւանը Ազրպէյճանի հիմնական տարածքին հետ կապելիք Զանգեզուրեան միջանցք բանալու համաձայնութիւն, կամ նոյնիսկ՝ Հայաստանի կողմէ հրաժարում Ղարաբաղի նկատմամբ բոլոր յաւակնութիւններէն:

Անշուշտ, նման բան Փաշինեան չէր կրնար ստորագրել, որ, մեծ հաւանականութեամբ, պատճառ հանդիսացաւ ջնջել գագաթնաժողովը: Ասկէ ետք, Ազրպէյճանը վստահաբար կամեցած է յիշեցնել բանակցութիւնները ձգձգելու գինի մասին: Ղարաբաղէն հրաժարիլ չկա՞յ, ուրեմն՝ չկայ սահմանազատում: Սահմանազատում չկա՞յ, ուրեմն՝ կ՚ըլլան մշտական բախումներ, որոնք ներխուժում չեն որակուիր: Չկա՞յ ճանաչուած ներխուժում, ուրեմն՝ չկայ Մոսկուայի օգնութիւն:

Այս գործընթացքը ազրպէյճանցի փորձագէտ Իլկար Վելիզատէն անուանեց «Սահմանազատում պարտադրելու գործողութիւն»:

Յայտարարութիւնները՝ թէ Նոյեմբեր 16-ի մարտերով Ազրպէյճանը կը ձգտէր ուժի կիրարկումով բանալ Զանգեզուրի միջանցքը, անկասկած, չափազանցութիւն են: Սակայն, Պաքուին շատ ձեռնտու չափազանցութիւն: Այնտեղ աշխուժօրէն կ՚ակնարկեն՝ որ Ղարաբաղի նկատմամբ Հայաստանի յաւակնութիւնները ազատ կ՚արձակեն Ազրպէյճանի ձեռքերը՝ Նախիջեւանը Ազրպէյճանի հիմնական տարածքէն տարանջատող Սիւնիքի մարզի նկատմամբ հայելային պահանջատիրութեան համար:

Յետագային, արիւնալի «սահմանային միջադէպերէն» խուսափելու համար, սահմանազատումէն բացի, ըստ երեւոյթին, այլ դեղատոմս չկայ: Ազրպէյճանի համար այդպիսի մարտերը ազդեցութեան կարեւոր լծակ են, որոնք յստակօրէն ցոյց կու տան, որ առանց Ղարաբաղէն հրաժարիլը ամրագրող ամբողջական սահմանազատումին, Պաքուն ունակ է Երեւանի համար լրջագոյն խնդիրներ ստեղծել բուն իսկ Հայաստանի տարածքին վրայ:

Ռուսաստանի ներկայութիւնը նոյնպէս ինքնաբերաբար պիտի չմեղմէ լարուածութիւնը: Սիւնիքի մէջ արդէն տեղադրուած են Գիւմրիի 102-րդ ռուսական ռազմակայանի երկու յենակէտեր, այստեղ են նաեւ ռուս սահմանապահներ, առայժմ տակաւին մէկ՝ հայկական կողմէն: Իտէալական տարբերակը պիտի ըլլար այս տարածաշրջանին վրայ ստեղծել ապառազմականացուած գօտիի նման բան մը՝ առնուազն մինչեւ սահմանազատումի գործընթացքի վերջնական աւարտը: Բայց այս գաղափարը շատ համարձակ է, քանի որ Ազրպէյճանը, միեւնոյնն է, Ռուսաստանին շատ կը քննադատէ հայերուն կողմնապահաբար սատարելու համար: Այդ իսկ պատճառով՝ Պաքուն հազիւ թէ համաձայնի Սիւնիքի մէջ ռուս զինուորականներու իրաւասութիւններուն ընդլայնումը: Իսկ ասիկա կը նշանակէ՝ որ Շոյկույի հեռախօսները տակաւին կը մնան կրակի դադարեցումի ամենէն արդիւնաւէտ մեքանիզմը:

***ԱՆԱԼԻՏԻԿՈՆ***, 18 Նոյեմբեր

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Ձ.*

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ




ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1905 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2021 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՌԿ.

عدد رقم ١٩٠٥ الخميس ١٦ ديسمبر ٢٠٢١


## ՄԻՋԱՆՑՔ ՏՐԱՄԱԴՐԵԼՈՒ ՆԱԽԱԴԷՊՔԵՐԸ. ԵԶՐՈՅԹԸ՝ ԻՐԱՒԱԿԱՆ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՍԱՆԿԻՒՆԷՆ

**ՇՈՒՇԱՆ ՍՏԵՓԱՆԵԱՆ**

44-օրեայ պատերազմի աւարտէն ետք, Ազրպէյճանի բարձրագոյն ղեկավարութիւնը Հայաստանէն կը պահանջէ տրամադրել Ազրպէյճանը Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութեան կապող միջանցք:

Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւ բազմիցս յայտարարած է նաեւ միջանցքը ուժով բանալու մտադրութեան մասին: Մասնաւորապէս, 2021-ին AzTV-ին տուած հարցազրոյցին, Ալիեւ նշած է՝ որ միջանցքին ստեղծումը կը համապատասխանէ Ազրպէյճանի ազգային շահերուն եւ ան պիտի բացուի անկախ այն հանգամանքէն՝ թէ Հայաստանը կ՚ուզէ կամ ոչ. «Եթէ Հայաստանը կ՚ուզէ, մենք աւելի դիւրին կը լուծենք հարցը, եթէ ոչ՝ մենք զայն կ՚առնենք ուժով»:

Ասկէ ետք եւս Ազրպէյճան պարբերաբար վերադարձած է այս նիւթին՝ ուղղակի կամ անուղղակի սպառնալով Հայաստանին:

*Փաստերի ստուգման հարթակը* կ՚ուսումնասիրէ՝ թէ ի՞նչ նշանակութիւն ունի միջանցք եզրոյթը իրաւական եւ քաղաքական տեսանկիւնէն, ի՞նչ նախադէպքեր եղած են, ինչպէս նաեւ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան բանակցութիւններու շրջանակին մէջ ի՞նչ քննարկումներ եղած են Լաչինի եւ Մեղրիի միջանցքներուն վերաբերեալ:

**Պատմական ակնարկ. Լեհական Միջանցք**

Պատմութեան մէջ եղած է այլ պետութեան միջանցք տրամադրելու դէպք: 1919 թուականի Վերսայի հաշտութեան պայմանագիրով Լեհաստանը ստացաւ միջանցք՝ որուն շնորհիւ ելք ունեցաւ դէպի Պալթիք Ծով: Պալթիք Ծով մուտք ունենալը պիտի աշխուժացնէր ծովային առեւտուրը: Լեհական Միջանցքը՝ որ յայտնի է նաեւ Տանցիքի Միջանցք անունով, կը գտնուէր Գերմանիոյ տարածքը եւ Գերմանիան կը բաժնէր Արեւելեան Բրուսիայէն: Լեհական Միջանցքը վիճելի տարածք մըն էր, որ 10-րդ դարէն սկսեալ եղած էր Լեհաստանի կազմին մէջ, բայց 1772-ին Բրուսիա գրաւած էր զայն: Լեհական Միջանցքի տարածքը կ՚ապրէին լեհեր, գերմանացիներ եւ հրեաներ: Միջանցքը կիսաինքնավար էր եւ կը վերահսկուէր Ազգերու Դաշնակցութեան (համարժէք է այսօրուայ Միաւորուած Ազգերու Կազմակերպութեան) կողմէ: Աւելի ուշ արդէն Նացիսթական Գերմանիան կը պահանջէ իրեն տրամադրել միջանցքը: Լեհական կառավարութիւնը չի կատարեր Գերմանիոյ պահանջը, որ Գերմանիոյ համար պատրուակ կը դառնայ յարձակելու Լեհաստանի վրայ: 1939-ին գերմանական զօրքերը կը ներխուժեն Լեհական Միջանցք, իսկ այնտեղէն արդէն՝ Լեհաստան: Երկրորդ Համաշխարհային Պատերազմի Գերմանիոյ պարտութենէն ետք, Լեհական Միջանցքը եւ Տանցիք (այժմ՝ Կիանսք) քաղաքը ամբողջովին կ՚անցնին Լեհաստանին:

**Լաչինի Միջանցք**

44-օրեայ պատերազմէն ետք, Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի միջեւ կապը ապահովող միակ ճանապարհը 5 քիլոմեթր լայնութեամբ Լաչինի Միջանցքն է:

Մինչեւ պատերազմը, հակամարտութեան կարգաւորումի տարբերակներուն մէջ բազմիցս քննարկուած է Լաչինի տարածաշրջանի հարցը:

Այսպէս, 1997 թուականին, ԵԱՀԿ Մինսքի Խումբի համանախագահները կ՚առաջարկեն Լեռնային Ղարաբաղի հարցի կարգաւորումին փուլային տարբերակը, որ կը նախատեսէ Լաչինի Միջանցքը վարձակալութեամբ յանձնել ԵԱՀԿ-ին՝ պայմանով որ օգտագործուի միայն ԼՂ իշխանութիւններուն կողմէ:

Արդէն 1998-ին՝ Ռոբերտ Քոչարեանի նախագահութեան տարիներուն, ԵԱՀԿ Մինսքի Խումբի առաջարկած կարգաւորումի տարբերակներուն մէջ առաջ քաշուած ընդհանուր պետութեան տարբերակի համաձայն՝ Լաչինի շրջանը մշտապէս պէտք է մնար լիովին ապառազմականացուած գօտի:

Աւելի ուշ՝ 2001-ին, Ռոբերտ Քոչարեանի եւ Հէյտար Ալիեւի՝ Քի Ուեսթ քաղաքը տեղի ունեցած հանդիպումին ժամանակ եւս քննարկումներ եղան Մեղրիի ու Լաչինի վերաբերեալ: Ըստ Քի Ուեսթի տարբերակին՝ Լաչինի 20 քմ. լայնութեամբ միջանցքով Արցախը պիտի միանար Հայաստանին, փոխարէնը Նախիջեւանը Արաքսի ափով՝ Մեղրիի շրջանին, կապ պիտի ստանար Ազրպէյճանի հետ:

Արդէն 2000-ականներուն քննարկուող Մատրիտեան սկզբունքներուն մէջ յստակութիւն չկար՝ թէ ո՞ր միջանցքի մասին է խօսքը, սակայն կը նշուէր՝ թէ միջանցքը պէտք է Հայաստանը կապէ Լեռնային Ղարաբաղի հետ: Միջանցքը պիտի ըլլար ԼՂ ժամանակաւոր վերահսկողութեան տակ՝ մինչեւ իրաւական կարգավիճակի յստակումը:

2011-ին, Քազանի մէջ, Ռուսաստանի նախագահ Տմիթրի Մետվետեւ, Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանին եւ Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւին կ՚առաջարկէ փաստաթուղթ մը՝ որ գրեթէ նոյնութեամբ կը կրկնէ 1997-ի փուլային առաջարկը: Ըստ այս առաջարկին՝ Լաչինը պիտի ստանար ժամանակաւոր անցումային միջանկեալ կարգավիճակ: Մինչեւ Լեռնային Ղարաբաղի վերջնական իրաւական կարգավիճակին որոշումը, Լաչինի միջանցքը պիտի գտնուէր Լեռնային Ղարաբաղի իշխանութիւններուն վերահսկողութեան տակ: Թէ ի՞նչ կարգավիճակ պիտի ունենար Լաչինի Միջանցքը՝ չկար յստակութիւն:

**Մեղրիի Միջանցք**

Ինչպէս արդէն նշեցինք, 2001-ին Քի Ուեսթի մէջ, Հայաստանի եւ Ազրպէյճանի նախագահները քննարկած են Մեղրիով ճանապարհ/միջանցք բանալու տարբերակը:

Այդ տարբերակը հետեւեալն էր. հայկական կողմին կը տրամադրուէր Լաչինի Միջանցքը, որ պիտի միացնէր Հայաստանն ու Արցախը: Ըստ այս տարբերակին, հայկական ուժերը պիտի հեռանային ԼՂԻՄ-էն դուրս գտնուող 7 շրջաններէն՝ բացի միջանցքէն, իսկ ազրպէյճանական կողմը Մեղրիի շրջանին մէջ պիտի ստանար ինքնավար անցում, որ Ազրպէյճանը պիտի կապէր Նախիջեւանի հետ: Մեղրիի միջանցքը պիտի ունենար 40 քմ. երկարութիւն եւ 8 մեթր լայնութիւն: Սկզբնական շրջանին կը քննարկուէր կամուրջով Նախիջեւանը եւ Ազրպէյճանը գիրար կապելու տարբերակը: Ապա առաջարկուեցաւ Արաքսի ափով ճանապարհ, որ Մեղրիի շրջանին՝ բնակավայրերու հանդիպումի պարագային, պիտի դառնար կամուրջ, ապա կրկին պիտի իջնէր գետին:

Թէ՛ նախկին նախագահ Ռոբերտ Քոչարեան եւ թէ՛ այդ ժամանակուայ արտաքին գործերու նախարար Վարդան Օսկանեան հերքած են Մեղրիի շրջանը Լաչինի հետ փոխանակելու մասին տեղեկութիւնները: Ըստ անոնց՝ քննարկուած է միայն Նախիջեւանը Մեղրիով Ազրպէյճանին կապող ճանապարհ տրամադրելու տարբերակը:

Քոչարեանը իր *Կեանք եւ ազատութիւն* գիրքին մէջ, որոշ մանրամասնութիւններ ներկայացնելով բանակցային գործընթացքի մասին, կը գրէ նաեւ (էջ 382)՝ որ ինք ու Ալիեւ «ընդհանուր առմամբ՝ բաւական մօտեցած էին այն տարբերակին, ըստ որուն Ղարաբաղը՝ Լաչինի միջանցքով, Ազրպէյճանը կը ճանաչէ Հայաստանի մաս, մեր ձեռքի տակ եղած տարածքներուն եւ Մեղրիով Նախիջեւան ճանապարհի յատուկ կարգավիճակին դիմաց, զոր պէտք է հսկէին միջազգային խաղաղապահները»:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՅԱՂԹԵԼ Է 24 ՀԱՄԱՅՆՔՈՒՄ, ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ՝ 12

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը հրապարակել է Դեկտեմբերի 5-ին Հայաստանով մէկ տեղի ունեցած Տեղական Ինքնակառավարման Մարմինների (ՏԻՄ) ընտրութիւնների արդիւնքները:

Համայնքներից 36-ում ընտրութիւններն անցնում էին համամասնական, իսկ Արագածոտնի մարզի Արեւուտ եւ Մեծաձոր համայնքներում՝ մեծամասնական ընտրակարգով: Ծովագիւղ եւ Սեմիոնովկա բնակավայրերը, որոնք ներառուած են Սեւան խոշորացուած համայնքում, բոյկոտել են ընտրութիւնները: Քուէարկութեանը որեւէ ընտրող չի մասնակցել: Պատճառն, ըստ ամենայնի, համայնքների խոշորացմանը դէմ լինելն է:

36 համայնքներից 24-ում յաղթել է իշխող Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը: Գաւառում, Թումանեանում, Եղեգնաձորում, Սեւանում, Ապարանում, Նոր Հաճնում, Աբովեանում, Նաիրիում, Վանաձորում, Վեդիում, Փարաքեարում եւ Մասիսում յաղթել են ընդդիմադիրները:

Մասիսում յաղթել է գործող քաղաքապետ, քրէական գործով որպէս մեղադրեալ անցնող Դաւիթ Համբարձումեանի դաշինքը:

Աբովեանում ձայների մեծամասնութիւնը՝ շուրջ 46%, ստացել է Բարգաւաճ Հայաստանը (ինչպէս ասում են՝ Աբովեանը հանդիսանում է Ծառուկեանի «սեփականութիւն»-ը), որի քաղաքապետի

↳ 3

## ԱՐԴԻՒՆՔՆԵՐԻ ԲԱԶՄԱԶԱՆՈՒԹԻՒՆՆ ԸՆԴԳԾԵՑ ՏԻՄ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄՐՑԱԿՑԱՅԻՆ ԲՆՈՅԹԸ. ԱՄՆ ԴԵՍՊԱՆԱՏՈՒՆ

Հայաստանում Միացեալ Նահանգների դեսպանատունը յայտարարութիւն է տարածել 2021-ին անցկացուած տեղական ինքնակառավարման մարմինների ընտրութիւնների վերաբերեալ, որն ամբողջութեամբ ներկայացնում ենք ստորեւ.

«Մենք բարձր ենք գնահատում հայ ժողովրդի մասնակցութիւնը Հոկտեմբերի 17-ին, Նոյեմբերի 14-ին եւ Դեկտեմբերի 5-ին կայացած տեղական ինքնակառավարման մարմինների ընտրութիւններին: Գնահատանքի է արժանի նաեւ Հայաստանի՝ ժողովրդավարական ուղուն հետեւելու հայ ժողովրդի ցուցաբերած շարունակական նուիրուածութիւնը:

«Դեսպանատան ոչ մեծ թուով աշխատակիցներ դիտարկել են ընտրութիւնները՝ որպէս այցելուներ: Ուրախ ենք արձանագրելու, որ ընտրութիւնները ընդհանուր առմամբ անցել են հանգիստ, խաղաղ մթնոլորտում եւ եղել են լաւ կազմակերպուած: Արդիւնքների բազմազանութիւնն ընդգծեց ընտրութիւնների մրցակցային բնոյթը, Հայաստանի ժողովրդավարութեան տոկունութիւնը եւ տարիների ընթացքում Հայաստանի գրանցած զգալի առաջընթացը:

«Մեզ նաեւ հասել են ընդդիմադիր թեկնածուների նկատմամբ ճնշումների մասին հաղորդումներ: Խրախուսում ենք իշխանութիւններին հետաքննել չարաշահումների վերաբերեալ մեղադրանքները:

«Մինչ մենք աշխատում ենք կատարելագործելու մեր իսկ ժողովրդավարութիւնը, մենք ողջունում ենք Հայաստանի հաւատարմութիւնը ժողովրդավարական բարեփոխումների իր օրակարգին եւ ակնկալում ենք ամրապնդել մեր երկկողմ կապերը՝ հիմնըւած ընդհանուր ժողովրդավարական արժէքների վրայ», - ասուած է դեսպանատան յայտարարութիւնում:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Արդէն դժուար դարձած է Սփիւռքի մասին գրել, առանց ինքնաքննադատութեան դիմելու:

Մինչեւ ե՞րբ Սփիւռքը պիտի ապրի մեծ պատումներով՝ առանց գիտակցելու ինքն իրեն: Մինչեւ ե՞րբ Սփիւռքը մեծադոյն հայրենասիրական հարցեր պիտի լուծէ՝ առանց ճանչնալու ինքն իրեն: Մինչեւ ե՞րբ Սփիւռքը պիտի քննադատէ Հայաստանը՝ առանց քննադատելու ինքն իրեն: Լրագրութիւն, ձեռնարկ, ասմունք, արտասանութիւն, երգ, պար եւ այլ գործնական-գործադրական բնագաւառներու առումներով Սփիւռքը կը բացակայի Սփիւռքի մէջ, բացի քանի մը անընդհատ կրկնուող անուններէ: Աւելի վտանգաւոր է՝ երբ կը չեչտադրուին սփիւռքահայ հին ու նոր անուններու ընտրանիներ, որոնց գոյութիւնը բացառապէս պէտք է ծառայէ տուեալ միաւորի կամ աւանդականի վերարտադրութեան:

Բենիամին Թաշեանի մահուան 50-ամեակը պէտք էր տօնակատարութեամբ նշուէր: Չնշուեցաւ, ոչ ալ պիտի նշուի: Ինք եւ իր նման շատ մտաւորականներու: *Իրաւ* մտաւորականներու: Մտաւորականներ՝ որոնք գործած են Սփիւռքի մէջ, Սփիւռքի համար:

Ծնած է Ատաբազար, 1896-ին: Ուրեմն, այս տարի նաեւ Թաշեանի ծննդեան 125-ամեակն է: 1923-ին կը հաստատուի Եգիպտոս, 1923-1928՝ ուսուցիչ Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Վարժարանը, 1928-1932՝ պաշտօնեայ Զակազիկի Կամսարականներու ծխախոտի գործարանը, 1932-1936՝ ուսուցիչ Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանը, 1936-1946՝ ուսուցիչ Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանը, 1946-1966՝ անդամ *Յուսաբեր* օրաթերթի խմբագրական մարմինին, 1966-1971՝ խմբագիր *Յուսաբերի*: Կը մահանայ Գահիրէ, 1971 Նոյեմբեր 17-ին:

Ինչո՞վ կը յիշուի Թաշեանն այսօր՝ բացի կուսակցական եւ *Յուսաբերի* խմբագիր ըլլալէ: Կը յիշուի սփիւռքահայ դպրոցներու համար նախատեսուած *Հայկարաններու* հրաշալի շարքով (բազմակի տպագրութեամբ Գահիրէ եւ Պէյրութ), որոնք, շրջան մը յաջողութեամբ գործադրուեցան Եգիպտոսի եւ Լիբանանի կրթական համակարգներէն ներս:

Կը յիշուի *Ներածութիւն հայ գրական պատմութեան* (Գահիրէ, Յուսաբեր, 1961), *Լսարան հայ լեզուի* (Գահիրէ, Յուսաբեր, 1962), *Լեզուական հարցեր* (Գահիրէ, Յուսաբեր, 1963) եւ *Թիւրն ու թերին* (Պէյրութ, Համազգային, 1968) հատորներով՝ հիմնուած *Յուսաբերի* մէջ տպագրուած յօդուածներուն վրայ, որոնց վերջին երեքը զինքը տեղաւորեցին լեզուագէտ-քերականագէտի անկիւնը՝ թէեւ *կարեւոր* անկիւնը:

1962-ին, Խորէն Տէտէեան գլխաւորապէս իբրեւ քերականագէտ կը ճանչնար զինքը.

«Բայց ըսէք իրեն, թէ շաբաթ օրուան «Հայերէն քերականութիւնը» խմբագրականին մէջ *հելլենական* բառին վերջին «եչ»ը գրուած էր «է», յանկարծ, աչքերը ակնոցներուն վրայէն վրադ յառելով կը մրմնջէ.

- Իրա՞ւ, չե՞ս կատակեր, այդ ինչպէ՞ս եղեր է, ո՞ր տողին մէջ էր արդեօք...»(1):

Եւ սակայն, հակառակ նոյն ինքը Թաշեանի համոզումին՝ թէ քերականութիւնը կարեւոր է, բայց բանաստեղծութիւնն ու փիլիսոփայութիւնը աւելի կարեւոր, ինչպէս կ'երեւայ անոր արտայայտած կարծիքէն.

«Բայյօ նոյնքան անթոյլատրելի կը գտնէ նաեւ քերականութեան ուսուցումը, որ ուղղակի փորձանք է նախակրթութեան համար: Քերականութիւնը չեն սորվիր իբրեւ, այսպէս ըսած, հում նիւթ կամ իբրեւ գիտելիք. պարզապէս ճիշդ խօսելու եւ ճիշդ գրելու միջոց մըն է անիկա: Քերականութեան դասագիրքերը բառարանի մը արժէքը ունին լոկ. տղան կրնայ դիմել անոնց, երբ դժուարութեան մը հանդիպի կամ երբ սխալներ ունենայ սրբագրելիք: Ու, ա՛յսքան միայն: Յոյները չորս դար շարունակ բանաստեղծական ու փիլիսոփայական հրաշալիքներ տուին մարդկութեան եւ դեռ չէին գիտեր գոյականը ածականէն զանազանել»(2):

Վերոյիշեալներէն զատ՝ գրեթէ չի յիշուիր:

Միջանկեալ կարեւոր է արձանագրել՝ որ Թաշեան կուսակցական էր: *Յուսաբերի* խմբագրապետութեան տարիները (1966-1971) կը համընկնէին կուսակցական «պայքար»-ի ամենաթէժ շրջաններէն մէկուն: «Պայքար»-ը ընդունեցի չակերտներու մէջ, քանի որ տեղի ունեցածը պայքարէ զատ ամէն բան էր: Ի՞նչ ըրաւ օրաթերթին խմբագիրը այս ամէն բանին մէջ: Գրիգոր Պասմաճեան կը փորձէ ներկայացնել. «Մինչ իր նախորդները ամէնօրեայ գրչապայքարի մէջ էին կուսակցական-համուածական հարցերու շուրջ, Թաշեան խորշեցաւ այդ տեսակամոլ պայքարներէ ու *Յուսաբերի* խմբագրապետութիւնը վարած ամբողջ շրջանին քիչ անգամներ առիթ ունեցաւ անդրադառնալու կուսակցական հարցերու մասին»(3):

Դժուար է ըսել՝ եթէ Պասմաճեանի բացատրութիւնը գոհացուցիչ է թէ ոչ: Լրագիր՝ որ այդ պայքարին մէջ է, նոյնի խմբագիր՝ որ անկէ դուրս է, հազիւ կարելի է մտովին համատեղել: Այս մասին՝ ուրիշ առիթով:

Ներկայ յօդուածով կ'ուզեմ ներկայացնել Թաշեանի գրական ասպարէզի առաջին շրջանը՝ մինչեւ 1930 թուական:

**ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ (մինչեւ 1930)**

Գրիգոր Պասմաճեան.

«Ողբ. Բենիամին Թաշեանի գրական սկզբնաւորութիւնը կը սկսի՝ առաջին աշխարհամարտի նախօրեակին գրուած մէկ յօդուածով: Այդտեղէն ալ կու գայ իր մականունին *Թաշեան* նուիրագործումը, հետեւեալ պարագաներուն տակ.

«Հօրենական մականունն էր *Թուշեան*: Իր ստորագրած այս առաջին յօդուածին ստորագրութիւնը, թերթի խմբագիրին կողմէ կը կարդացուի Թաշեան եւ յօդուածը մամուլին մէջ լոյս կը տեսնէ այս ստորագրութեամբ: Ողբացեալը կ'որդեգրէ այս ձեւը որ կը ճանչցուի այդ ստորագրութեամբ»(4):

Առաջին Աշխարհամարտին կ'աքսորուի ներքին գաւառները, եւ շնորհիւ թրքերէն լեզուի քաջահմտութեան, կը յաջողի մնալ Աֆիոն Գարահիսար: 1918-ի վերջերը, զինադադարէն ետք, կը վերադառնայ Ատաբազար եւ ապա կ'անցնի Պոլիս:

1921 Յունուարին կը սկսի բանաստեղծութիւններ հրատարակել Պոլսոյ *Հայ կին* հանդէսին մէջ(5), մինչեւ 1923 Մայիս այնտեղ ստորագրելով չորս բանաստեղծութիւններ(6):

Մուտքը Պոլսոյ *Ճակատամարտ* օրաթերթէն ներս կ'ըլլայ 1921 Մայիսին բանաստեղծութեամբ(7), ապա՝ Դեկտեմբերէն սկսեալ կարելի է այնտեղ գտնել հրապարակագրութիւններ եւ պղատոնեան մէկ թարգմանութիւն մը(8): *Ճակատամարտի* վերջին բանաստեղծութենէն՝ 1922 Սեպտեմբերէն ետք(9), կը շարունակէ իբրեւ հրապարակագիր թղթակցիլ օրաթերթին մինչեւ 1924 Սեպտեմբեր(10), որմէ ետք լրագիրը արդէն կը դադրի գոյութիւն ունենալէ:

*Ճակատամարտի* յօդուածներուն շնորհիւ կը պարզուին Թաշեանի Պոլիսէն Աղեքսանդրիա անցած ուղիին թուականները: 1923 Փետրուար 6-ին կը գտնուի Աթէնք, այնտեղէն ղրկելով առաջին թղթակցութիւնը *Ճակատամարտին*(11): Վերջին թղթակցութիւնը Աթէնքէն կը կրէ Մարտ 16 թուականը(12): Ի միջի այլոց, կայ նոյն շրջանի անթուակիր յօդուած մը Նիւ Եորքի *Հայաստանի կոչնակին* մէջ՝ ղրկուած Յունաստանի Լարիսա քաղաքէն(13):

1923 Ապրիլին արդէն կը գտնուէր Գահիրէ:

*Ճակատամարտի* գաղափարակից աւագ գրչընկերն էր Գուրգէն Մխիթարեան, որ իրմէ առաջ հաստատուած էր Գահիրէ եւ 1923 Մարտին հիմնած *Նոր շարժում* գրականգեղարուեստական ու գիտական հանդէսը: Ապրիլ 14-ին Թաշեան այնտեղ կը հրատարակէ բանաստեղծութիւն մը(14) եւ կը դառնայ անոր մնայուն աշխատակիցը՝ գրական եւ գաղափարական գործերով: Այնտեղ է ուր Օգոստոսէն սկսեալ կը սկսի հրատարակել իր նորավէպերը(15): *Նոր շարժում* կ'ունենայ ընդամէնը մէկ տարուայ կենսագրութիւն, 1924 Մարտ 22-ին լոյս ընծայելով իր վերջին թիւը:

*Նոր շարժում*ի 1923 Մայիս-Յուլիսի Թաշեանի գրութիւններուն վայրը նշուած է Գահիրէ: Կը նշանակէ, Պոլիս-Աթէնքէն ետք, նախքան Աղեքսանդրիա հաստատուիլը, շրջան մը ապրած է Գահիրէ:

Կը սկսի գրել Գահիրէի *Յուսաբերի* մէջ: *Յուսաբերը* պիտի դառնար իր գրական միտքի օրրանը՝ այնտեղ ցմահ հրատարակելով յօդուածներուն եւ գրութիւններուն ջախջախիչ մեծամասնութիւնը: *Յուսաբերը* հարազատ տուն մը եղաւ իր համար, մնայուն կայան մը՝ գաղափարներու ազատ արտայայտութեան համար:

1923 Յուլիսի վերջ կը տեղափոխուի Աղեքսանդրիա: ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԸ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՊԱՏՇԱՃ ԿԵՐՊՈՎ Է ՕԳՏԱԳՈՐԾԵԼ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Հայաստան Համահայկական Հիմնադրամից յայտնում են, որ Հոգաբարձուների խորհուրդը լսեց «Մենք ենք, մեր սահմանները» համազգային դրամահաւաքի շրջանակներում հաւաքագրուած եւ 2020 թուականի ընթացքում Հայաստանին նուիրաբերուած դրամական միջոցների նպատակային օգտագործման վերաբերեալ խորհրդի կողմից ստեղծուած աշխատանքային խմբի, հիմնադրամի հաշուեքննութիւնն իրականացնող աուդիտորական կազմակերպութեան եւ Հայաստանի ֆինանսների նախարարի զեկոյցները եւ դրանք ընդունեց ի գիտութիւն:

Աշխատանքային խումբը յայտնեց, որ դրամական միջոցների ոչ նպատակային կիրառման մասին հաւաստի որեւէ ապացոյց չի ստացել, ինչպէս նաեւ աշխատանքային խումբն ու արտաքին աուդիտորը զեկուցեցին, որ իրաւական սահմանափակումները խոչընդոտել են Հայաստանի կառավարութեան կողմից ծախսուած գումարների սկզբնական փաստաթղթերի ուսումնասիրումը:

Հայաստանի վարչապետը դիմեց հաշուեքննիչ պալատին՝ առաջարկելով դիտարկել այս հարցով կատարուելիք հաշուեքննութիւններում աշխատանքային խմբին եւ աուդիտորական կազմակերպութեանը փորձագիտական մակարդակով ներգրաւելու հնարաւորութիւնը:

Վարչապետը յայտարարեց Կառավարութեան թափանցիկ եւ հաշուետուողական գործելու պատրաստակամութեան մասին. աշխատանքային խմբի եւ արտաքին աուդիտորական կազմակերպութեան համար հասանելի դարձնել սկզբնական բոլոր փաստաթղթերը՝ աշխատանքներն ամբողջականացնելու համար եւ, որը շատ էական է, վստահեցնել թէ՛ խորհրդին, թէ՛ հանրութեանը, որ Հիմնադրամի ներդրումները Կառավարութեան խողովակներով պատշաճ կերպով են օգտագործուել:

Հոգաբարձուների խորհուրդն ուշադրութեան կենտրոնում կը պահի այս հարցը եւ, ըստ անհրաժեշտութեան, վերստին կ'անդրադառնայ դրան:

Խորհուրդը, արժեւորելով Հիմնադրամի դերը աշխարհասփիւռ հայութեանը համընդհանուր նպատակի շուրջ համախմբելու գործում, կրկին շնորհակալութիւն յայտնեց բոլոր նուիրատուներին եւ աջակիցներին», - նշուած է հիմնադրամի տարածած հաղորդագրութեան մէջ:

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՕՏԵՑԵԼ Է ԿՈՌՈՒՊՑԻԱՅԻ ԴԷՄ ՊԱՅՔԱՐԻ ԲԵԿՈՒՄՆԱՅԻՆ ԿԷՏԻ. ՎԱՐՈՒԺԱՆ ՀՈԿՏԱՆԵԱՆ

Դեկտեմբերի 9-ը կոռուպցիայի դէմ պայքարի միջազգային օրն է: Օրուայ առթիւ *Սիվիլնէթի* Արշալոյս Մղդեսեանը զրուցել է Trancparency International հակակոռուպցիոն կենտրոնի ծրագրերի ղեկավար Վարուժան Հոկտանեանի հետ: Փորձագէտը փաստում է, որ 2018 եւ 2019 թթ. կոռուպցիայի դէմ պայքարում Հայաստանի իշխանութիւններն էական առաջընթաց են գրանցել՝ 14 կէտով բարելաւելով կոռուպցիայի ընկալման համաթիւը: Հայաստանը, նրա գնահատմամբ, այժմ մօտեցել է կոռուպցիայի դէմ պայքարի բեկումնային կէտի: Վարուժան Հոկտանեանը դժուարանում է նշել՝ արդեօք 2020 թ. կորոնաճգնաժամի եւ պատերազմի բացասական հետեւանքներից յետոյ էական առաջընթաց հնարաւոր է կոռուպցիայի դէմ ինստիտուցիոնալ պայքարում:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՐԴԷՆ ԼՐՋՕՐԷՆ ԿԱՅԱՑԱԾ ԵՆ

**Հարցազրուցավար՝ ՍԻՐԱՆՈՅՇ ՊԱՊԵԱՆ**

*Մեր զրուցակիցն է Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունցը*

**Պարոն Սաքունց, ինչպէ՞ս էք գնահատում նախօրէին տեղի ունեցած Տեղական Ինքնակառավարման Մարմինների (ՏԻՄ) ընտրութիւնները: Փաշինեանը յայտարարել է, որ (ՏԻՄ) ընտրութիւնների այս որակը, երբ քաղաքացին Տէր է եւ Որոշող, մեր վաղեմի երազանքն է՝ ի կատար ածուած:**

Ես գնահատում եմ հետեւեալ կերպ. չնայած արձանագրուած առանձին խախտումներին, քանի որ ճնշումները թեկնածուների կամ նրանց վստահուած անձանց, կամ քաղաքացիների նկատմամբ չեն ունեցել կազմակերպուած բնոյթ, ընտրակաշառքի մասին մենք ահազանգեր չենք ստացել, այսինքն՝ ընտրակեղծարարութեան դէպքերը ունեցել են ոչ թէ կազմակերպուած բնոյթ, այլ տեղական նախաձեռնութիւնների տեսքով են եղել, ընտրութիւնները Հայաստանում արդէն լրջօրէն կայացած են: Ընտրողներն իրենք յաղթահարել են վախի ենթարկուելու վիճակը եւ ազատ կարողանում են իրենց դիրքորոշումը ներկայացնել: Իհարկէ, յանձինս այդ խախտումների՝ կան ազատ եւ արդար ընտրութիւնների ընդհանուր պատկերը ստուերող երեւոյթներ, որոնց ուղղութեամբ իշխանութիւնը պարտաւորութիւն ունի քննութիւն իրականացնելու, յատկապէս նրանց նկատմամբ, որոնք իրենց աջակիցների կողմից են եղել: Այս առումով՝ իշխանութիւնը լուրջ պատասխանատուութիւն ունի, բայց մեծ հաշուով զուտ քուէարկութեան, նախընտրական քարոզչութեան հետ կախուած անհամեմատելի վիճակ է, քան մինչ 2018 թուականը:

Միւսը կուսակցութիւնների խնդիրն է. համայնքային մակարդակում քաղաքական կուսակցութիւնները՝ որպէս ինստիտուտ, դեռեւս կայացած չեն: Իհարկէ չեն կարող կայացած լինել, քանի որ օրէնսդրական կարգաւորումներով փաստացի միակուսակցական համակարգի պայմաններ են եղել, բայց իմ համոզմամբ համամասնական ընտրակարգը նպաստող գործօն է, որ կուսակցութիւնները կայանան: Իհարկէ, մենք գտնում ենք, որ տեղական մակարդակում բովանդակային ժողովրդավարութեան ձեւաւորման փուլում ենք գտնւում:

**Սա իշխանութեանն ահազա՞նգ չէ, որ համայնք առ համայնք պարտւում է:**

Քաղաքական առումով իշխող ուժի խնդիրն է, թէ ինքն ինչպէս է կազմակերպելու իր յետագայ կուսակցաշինութիւնը: Եւ ոչ միայն իրենք, միւս կուսակցութիւններն էլ, որոնք յաւակնում են քաղաքական դաշտում գտնուել, պէտք է մտածեն այդ ուղղութեամբ:

**Ձեր քաղաքում առաջատարը Մամիկոն Ասլանեան դաշինքն է, որը գլխաւորում էր նախկին քաղաքապետ Մամիկոն Ասլանեանը:**

Վանաձորի արդիւնքները տիպիկ օրինակ են՝ քանի դեռ քաղաքական ինստիտուտները կայացած չեն, անհատները որոշիչ դերակատարում են ունենում: Եւ այս առումով, այո, Վանաձորի արդիւնքները անակնկալ չէին՝ հաշուի առնելով իրավիճակը, որ մենք ունենք:

**Համայնքներ կան, որտեղ թէեւ ՔՊ-ն առաջատար է, սակայն 50 տոկոսից պակաս ձայն է ստացել, միւսները համախմբւում են իշխող թիմի դէմ: Սա ԸՕ-ի բաց չէ՞:**

Ժողովրդավարութեան մեխանիզմները հէնց այն են, որ կոալիցիաներն այլեւս ազատ են, սահմանափակում չկայ կոալիցիա կազմելու կուսակցութիւնների թուի վրայ, բայց բովանդակային տեսակէտից կարեւոր է, որ կոալիցիաները ձեւաւորուեն ոչ թէ միայն պաշտօնների բաշխման, այլ նաեւ ծրագրային ընդհանրութիւնների համար:

**Համապետական ընտրութիւններից վեց ամիս անց այսպիսի արդիւնքները ՔՊ-ին չե՞ն յուշում, որ յաջորդ համապետական ընտրութիւններին լրջագոյն խնդիրներ կ՚ունենայ:**

Ամբողջ մեր դարդն ու ցաւը ՔՊ-ն չէ, քաղաքական համակարգի ձեւաւորումն է, որի համար շատ կարեւոր նշանակութիւն ունեն սոցիալական փոփոխութիւնները, կրթական համակարգի փոփոխութիւնները եւ այլն: Այսինքն՝ ընտրութիւնների ժամանակ ի յայտ են գալիս այն գործօնները, որոնք ազդեցութիւն են ունենում քաղաքական իրադարձութիւնների վրայ: Խնդիրն այն է, որ մենք ունենանք ծրագրային պայքար եւ դրանց հիմքի վրայ ձեւաւորուող ՏԻՄ մարմիններ:

## 1➩ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ...

թեկնածուն Գագիկ Ծառուկեանի թիկնազօրի նախկին պետ, ԱԺ նախկին պատգամաւոր Էդուարդ Բաբայեանն է: Բաբայեանը, յիշեցնենք, 2019-ին դատապարտուել էր 3 տարի 6 ամիս ազատազրկման, ապա՝ համաներմամբ ազատ արձակուել:

Վանաձորում յաղթել է նախկին քաղաքապետ Մամիկոն Ասլանեանի գլխաւորած դաշինքը՝ ստանալով քուէների մօտ 38.6%-ը: ՔՊ-ն Լոռու մարզկենտրոնում ստացել է ձայների 25.06%-ը:

Ընդ որում՝ Վանաձորում, Փարաքարում, Աբովեանում եւ Նաիրիում ընդդիմութիւնը պէտք է գնայ կոալիցիայի, քանի որ ըստ ընտրական օրէնսգրքի, քաղաքային իշխանութիւնն աւտոմատ կերպով ստանալու համար անհրաժեշտ է ապահովել աւագանիում 50%+1 ներկայութիւն: Եւս 9 համայնքներում կոալիցիայի պէտք է գնայ Քաղաքացիական Պայմանագիրը:

ԽՈՀԵՐ

# ԳԻՐՔԻ ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Գիրքերու առաջին էջերը տեղադրուած «Շնորհակալիք»-ը՝ որ կրնայ գրաւել 1-4 էջ, համեմատաբար նոր երեւոյթ մըն է ողջ աշխարհի համար: Քանի մը տասնամեակներ առաջ նման սովորութիւն գրեթէ չկար: Այսօր, Oxford-ի, Cambridge-ի եւ շատ ուրիշ հրատարակչատուներու համար «Շնորհակալիք»-ի էջերը կը կազմեն գիրքին անբաժան մասը: Նոյնիսկ կարելի է համարել բովանդակութեան մէկ մասը:

Ճիշդ է, գիրքերու մէջ շնորհակալութիւններ յայտնուած են հինէն ի վեր: Բայց այստեղ խօսքը յատուկ խորագիր ստացած գլուխի կամ ենթամասի մասին է, որ տեղ կը գրաւէ նաեւ գիրքի «Նիւթերու ցանկ»-ին մէջ, իբրեւ հրատարակութեան հիմնական բաղկացուցիչ:

«Շնորհակալիք»-ները անուններու չոր յիշատակութիւններ չեն բնաւ, ինչպէս կ՚ըլլայ, օրինակ, մատենագիտութիւն մը: Հեղինակէն անդին գտնուող մատենագիտական անուններ չեն անոնք: Այդ անունները հեղինակին հետ անձնական յարաբերութիւններ ունեցած կենդանի մարդիկ են՝ որոնք հաճոյքով բան մը ներդրած են գիրքին մէջ, հեղինակին համար: Եւ քանի որ հեղինակն ու տուեալ անձը գտնուած են կենդանի յարաբերութեան մէջ՝ ինչ որ ալ ըլլայ այդ յարաբերութեան ժամանակամիջոցն ու խորութիւնը, «Շնորհակալիք»-ը ենթադրուած է նուազագոյն բայց պատշաճագոյն բառերով արտայայտել այդ յարաբերութիւնը: Բառեր՝ որոնք նոյնքան կենդանի պէտք է ըլլան որքան յարաբերութիւնը, բնականաբար, առանց անցնելու սահմանը:

Երախտագիտութեան արժանի օգնութիւնները կրնան ըլլալ շատ տարբեր: Կրնան սկսիլ մէկ նիւթի մը մատակարարութենէն եւ հասնիլ մինչեւ ամբողջ սեւագրութեան ընթերցումը: Ըստ այնմ՝ «Շնորհակալիք»-ին մէջ իւրաքանչիւրին յատկացուած բառերուն որակը եւ ուղղուածութիւնը:

Բացի օգնութեան աստիճանի ներկայացումէն, կարեւոր դեր կը խաղայ հեղինակին մօտեցումը, որ կրնայ երկարիլ բանաստեղծական ոճէ մինչեւ աւելի ընդունուած եւ տարածուած նախադասութիւններ:

Առաւել տարածուած արտայայտութիւններն են՝ «ան մեծ ներշնչանք տուաւ գրութեանս», «ան երբեք չգանգատեցաւ իմ անվերջ հարցումներէս», «երախտապարտ եմ իր արտայայտած անգնահատելի կարծիքներուն համար», «շնորհակալ եմ իր օժանդակութեան եւ խանդավառութեան համար», «շնորհակալ եմ կարդացած ըլլալու համար սեւագրութիւնը եւ նշած ըլլալու իր դիտողութիւնները», եւ այլն: Բոլորն ալ գեղեցիկ խօսքեր:

Կարելի չէ պատկերացնել օգնողին համար որքան ուրախութիւն կը պատճառէ իր անունը եւ օգնութեան բնոյթը տեսնել շնորհակալութիւններու շարքին մէջ: Նոյնպէս, կարելի չէ պատկերացնել որքան ընդվզեցուցիչ է օգնողին տեսնել իր անունին բացակայութիւնը կամ ընդհանրապէս շնորհակալիքի բացակայութիւնը: Օգնողը, վստահաբար պիտի հրաժարի յետագային օգնութիւն ցուցաբերել նոյն հեղինակին: Մարդկային յարաբերութեան դաւաճանում մը տեղի ունեցած է:

Կայ ինքնահաւան մօտեցում մը՝ որ երբեմն կարելի է հանդիպիլ թէ՛ հայկական եւ թէ՛ օտար գիրքերու «Շնորհակալիք»-ներուն մէջ: Այն է. «Բազմաթիւ անհատներ իրենց օգնութիւնը ցուցաբերեցին այս գիրքի աշխատանքին ընթացքին, որոնց կը յայտնեմ իմ երախտագիտութիւնս: Խուսափելու համար վրիպումներէ, կը հրաժարիմ անուններ յիշատակելէ»: Այսինքն, անձ մը՝ որ անձնական յարաբերութեան միջոցով սիրով ընդունած է օգնել, այժմ կը գտնուի մոռացութեան ենթարկուելու վտանգին տակ: Հեղինակին համար այսքան անկարեւո՞ր է մարդկային յարաբերութիւնը: Թէ՞ այդ յարաբերութիւնը եղած է լոկ շահարկումի միջոց: Հասկնալի է, ճիշդը վերջինն է: Հեղինակը հոգեբանօրէն կը դժուարանայ երախտագիտութեան համար անուններ նշել, թէեւ դժուարութիւն չունի, մանաւանդ եթէ բանասիրական աշխատանք է, գիրքի վերջաւորութեան յիշատակել մատենագիտական հեղինակներու եւ գիրքերու անուններ: Ինչպէս վերը ըսի, մատենագիտութեան համար անունը առարկայականօրէն կը գտնուի հեղինակէն անդին՝ հեռաւոր տեղ մը, հեռաւոր ժամանակի մը մէջ, մինչդեռ շնորհակալութեան համար իւրաքանչիւր անուն հեղինակին հետ կը գտնուի կամ գտնուած է ենթակայական յարաբերութեան մէջ, այսինքն՝ տեղ մը կը գրաւէ իր կենդանի փորձառութեան մէջ: Այս ենթակայական յարաբերութիւնը՝ որ հիմքն է համակեցութեան, հեղինակին համար անկարելի կ՚ըլլայ վերածել բառի եւ բնագիրի՝ «Շնորհակալիք»-ի մէջ յիշատակուած յատուկ անձնանուններու ընդմէջէն: Աւելի վատ, եթէ հայութեան պարագային, այս բացթողումը կատարուած ըլլայ համահայկականութիւն քարոզողը՝ որուն գործողութեան հիմքը պէտք է ըլլայ ենթակայական յարաբերութիւններու բնազդականացումը, բայց ոչ վանումը:

Դիտաւորեալ բացակայութիւնը անձի միակութեան եւ իր սեփական հանճարութեան բացառիկութեան միտում մըն է, շեշտադրուած հայկական հրատարակութիւններուն մէջ: Բացառապաշտութիւնը՝ հայկական հիմնահոսանքի ամենասիրելի պատումը պատմագրութեան, գրականագիտոթեան, երաժշտագիտութեան, հրապարակախօսութեան մէջ, ի վերջոյ կ՚ամփոփուի գայն արտադրող անձին մէջ, դառնալով ոչ թէ պատմագրութեան՝ այլ պատմագիրի սեփական անձի բացառիկութիւնը:

Կրնայ պատահիլ, յատկապէս մեր շատ սիրելի Սփիւռքի մէջ, որ գիրք մը գրուի, սրբագրուի, էջադրուի եւ հրատարակութեան պատրաստուի մէկ անձի կողմէ, երբեմն նոյնիսկ ընտանեկան ու ընկերական ճնշումներու, հերքումներու եւ կամ պարզապէս անտեսումներու տակ: Բնականաբար, տեղ չկայ «Շնորհակալիք»-ի: Կարելի է գրել «Անշնորհակալիք»: Բայց անոր արտադրած բացասականութիւնը պիտի ազդէ յետագայ գլուխներու ընթերցանութեան եւ ընկալումին վրայ: Մինչդեռ «Շնորակալիք»-ը բարենպաստ եռանդի աղբիւր է եւ մղում դրական ընթերցանութեան:

«Շնորհակալիք»-ը՝ անոր ոճը, մօտեցումը, ինչպէս նաեւ անոր բացակայութիւնը, կրնայ ցոյց տալ հեղինակի անհատականութեան շերտերը:

Մինչդեռ արեւմտեան հրատարակութիւններուն մէջ «Շնորհակալիք»-ները կը դառնան աւելի ու աւելի կարեւոր, այլեւ ընթերցանութեան համար հաճելի, հայագիր հրատարակութիւնները տակաւին կը խուսափին «Շնորհակալիք»-ի մասնաւոր գլուխներ յատկացնելէ՝ անձնանուններու յիշատակութեամբ:






## 1 ՄԻՋԱՆՑՔ ՏՐԱՄԱԴՐԵԼՈՒ ՆԱԽԱԴԷՊՔԵՐԸ...

**Նոյեմբեր 9-ի յայտարարութեան մէջ Մեղրիի Միջանցք չի յիշատակուիր**

2020 Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութեան 9-րդ կէտը կ՚ըսէ՝ որ կ՚ապաշրջափակուին տարածաշրջանի բոլոր տնտեսական եւ երթեւեկային կապերը. «Հայաստանի Հանրապետութիւնը կ՚երաշխաւորէ երթեւեկային կապերու ապահովութիւնը (անվտանգութիւնը) Ազրպէյճանի Հանրապետութեան արեւմտեան շրջաններուն եւ Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութեան միջեւ՝ երկու ուղղութիւններով քաղաքացիներուն, երթեւեկային միջոցներուն եւ ապրանքներուն անխոչընդոտ տեղաշարժը կազմակերպելու համար»:

Յայտարարութեան մէջ որեւէ ձեւով յստակութիւն չկայ՝ թէ ինչպէս պէտք է իրականացուի երթեւեկային հաղորդակցութիւնը, չկայ որեւէ յիշատակութիւն Մեղրիով կամ Սիւնիքի այլ հատուածով Ազրպէյճանին միջանցք տրամադրելու մասին:

Լաչինի Միջանցքի կապակցութեամբ յայտարարութեան մէջ կը նշուի՝ որ Շուշի քաղաքը շրջանցող միջանցքը կը մնայ Ռուսաստանի խաղաղապահ զօրակազմի վերահսկողութեան տակ, իսկ Ազրպէյճանը կ՚երաշխաւորէ քաղաքացիներուն, երթեւեկային եւ բեռնատար միջոցներուն ապահովութիւնը:

Նոյեմբեր 26-ին Սոչիի մէջ կայացած Փաշինեան-Ալիեւ-Փութին հանդիպումին ժամանակ, կողմերուն ընդունած եռակողմ յայտարարութեան մէջ կը նշուի տնտեսական եւ երթեւեկային կապերը ապաշրջափակելու խնդիրը, սակայն այս պարագային եւս չի գործածուիր միջանցք եզրոյթը:

**Կա՞յ արդեօք միջանցքի տրամադրումի որեւէ յղացում միջազգային իրաւունքին մէջ**

Մասնագիտական աղբիւրներուն մէջ չկայ որեւէ սահմանում՝ թէ ինչ է «միջանցքը»:

Սահմանադրական բարեփոխումներու մասնագիտական յանձնաժողովի անդամ, միջազգային իրաւունքի մասնագէտ Լեւոն Գէորգեան, *Փաստերի ստուգման հարթակ*ի հետ ունեցած զրոյցին նշեց՝ որ միջազգային իրաւունքին մէջ չկայ նման հասկացութիւն. «Միջազգային իրաւունքին մէջ չկայ իրավիճակ՝ որ մէկ պետութիւնը ուրիշ պետութեան պարտադրէ իր տարածքին մէկ հատուածը իրեն տրամադրել, որպէսզի կարողանայ ազատ ելումուտ կատարել: Ասիկա ոլորտ մը չէ՝ ուր միջազգային իրաւունքը ինչ-որ ամրագրուած բաներ ունենայ, կողմերը ինչպէս կը համաձայնին՝ այդպէս ալ տեղի կ՚ունենայ»:

Համաձայն Գէորգեանին՝ ճանապարհ տրամադրելու խնդիրը եւս կը կարգաւորուի կողմերուն փոխադարձ համաձայնութեամբ. «Պետութիւնները կրնան պայմանագիր կնքել ազատ տեղաշարժի համար, որուն համաձայն՝ երկու պետութիւններուն քաղաքացիները կրնան ազատ ելումուտ ունենալ միւս պետութեան տարածքով, օրինակ, կրնան որոշել՝ թէ ելումուտը պիտի ըլլայ վճարովի կամ անձնագրային վերահսկողութեամբ, այսինքըն բացառապէս պետութիւններու փոխադարձ համաձայնութեան խնդիր է»:

Ինչ կը վերաբերի Լեհական Միջանցքի օրինակին, Միջազգային Իրաւունքի մասնագէտի խօսքով՝ տուեալ նախադէպը անտեղի է զուտ այն տեսանկիւնէն, որ 20-րդ դարասկիզբին գործած է լրիւ ուրիշ միջազգային իրաւական համակարգ՝ եղած է ուժի գործադրութեան ազատութիւն, եւ ուժի գործադրութեան միջոցով պետութիւնները կարողացած են պարտադրել ինչ-որ զիջումներ եւ լուծումներ:

Այսպէս, Ազրպէյճանին միջանցք տալու յիշատակութիւն առհասարակ չկայ 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեան մէջ: Աւելին, միջազգային իրաւունքին մէջ գոյութիւն չունի միջանցք տրամադրելու յղացում:

*Փաստերի ստուգման հարթակ*

Արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Զ.

## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Այնտեղէն *Ճակատամարտ*ին կը ղրկէ Յուլիս 24 թուակիր առաջին թղթակցութիւն մը(16):

Աղեքսանդրիա կը մնայ 1923-1928, Պօղոսեան Ազգային Վարժարանին մէջ դասաւանդելով ընդհանուր պատմութիւն եւ աշխարհագրութիւն, Նիկոլ Աղբալեանի տնօրինութեան ամբողջ շրջանին(17):

Ինչո՞ւ Աղեքսանդրիա:

1923-1928-ը այն տարիներն էին՝ երբ Աղեքսանդրիոյ մէջ, արդար ընտրութիւններով Թեմական Ժողովի եւ աղեքսանդրահայութեան առաջնորդութիւնը կը վստահէր Դաշնակցութիւնը: Եգիպտահայ կեանքին վրայ աւանդական կուսակցութիւններու տիրապետութենէն ի վեր մինչեւ այսօր, ասիկա այն միակ վայրն ու ժամանակաշրջանն էր՝ երբ Դաշնակցութիւնը միանձնաբար կը վստահէր գաղութը ղեկավարելու համար սահմանադրական-կանոնադրական անհրաժեշտ քուէները: Այլապէս, մինչեւ 1975 թուական, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովները, միշտ սահմանադրական ընտրութիւններու արդիւնքով, ղեկավարած են անկախներու պլոքը՝ առանց կուսակցութիւններուն, կամ անկախներու պլոքը՝ համալրուած կուսակցութիւններու ներկայացուցիչներով, եւ կամ Ռամկավար-Հնչակեան պլոքը՝ առանձին: Այս վերջինը կը ներկայացնէր Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ ղեկավարութիւնը, երբ 1975-ին, Ռամկավար-Հնչակեան-Դաշնակցութիւն համաձայնութեամբ (որուն պատճառներուն մասին անդրադառնալը բաւական կ՚երկարի) կը ստեղծուի համատեղ բացառապէս կուսակցական խորհուրդ Թեմականի եւ Քաղաքականի համար, որ կը գործէ մինչեւ այսօր:

1923-ին, Դաշնակցութիւնը իր ձեռքը առնելով Աղեքսանդրիոյ ղեկավարութիւնը, Պօղոսեանի տնօրինութեան համար յատուկ կը հրաւիրէ Նիկոլ Աղբալեան, որ ատակօրէն կը վարէ դպրոցը մինչեւ 1928՝ մշակելով մանաւոր կրթական ծրագիրներ, իր կարգին իբրեւ ուսուցիչ հրաւիրելով Լեւոն Շանթ: Այս ծիրին մէջ էր՝ որ Աղբալեան-Շանթի գերակատարութեամբ եւ այլոց համագործակցութեամբ, Գահիրէի մէջ 1928 Մայիսին պիտի ծնէր Համազգայինը: Պիտի չխօսիմ վարժարանէն եւ մշակութային միջավայրէն դուրս կատարուած կուսակցական «պայքար»-ին մասին՝ տխուր մանրամասնութեամբ արձանագրուած կողմերու մամուլին մէջ:

Թաշեան, ուրիշներու հետ միասին, իր ներդրումը կ՚ունենայ դպրոցի բարգաւաճումի գործին:

1926-ին, Գաբրիէլ Թագւորեանի, Հմայեակ Շէմսի եւ Թաշեանի համախմբագրութեամբ լոյս կը տեսնեն *Հայ վարժարան* մանկավարժական ամսագիրի 10 թիւերը (խմբագրութեան վայր՝ Պօղոսեան Վարժարան, տպագրութիւն՝ Գահիրէ, Յուսաբեր), որոնց իւրաքանչիւրին մէջ Թաշեան հանդէս կու գայ յօդուածով՝ ուր կը փորձէ ներկայացնել դասաւանդումի կենդանի գործադրութենէն ստացած փորձառութիւնը(18):

1928-ին, երբ Դաշնակցութիւնը արդէն հեռացած էր Աղեքսանդրիոյ ղեկավարութենէն, Թաշեան կը փոխադրուի Զագազիկ՝ ուր դարձեալ այդ ժամանակ Դաշնակցութիւնը կը ներկայացնէր ամենաուժեղ կուսակցական տարրը: Մինչեւ 1932 կը պաշտօնավարէ տեղւոյն Կամսարականներու ծխախոտի գործարանը, 1932-ին վերջնականապէս հաստատուելով Գահիրէ:

Բացի վերոյիշեալ մամուլէն, 1922-էն սկսեալ Թաշեան յօդուածներ կը ստորագրէ *Հայաստանի կոչնակ*ին (Նիւ Եորք) մէջ, իսկ 1925-1926-ին՝ Յակոբ Սիրունիի *Նաւասարդ*ին (Պուքրէշ):

Մինչեւ 1930 թուական ստորագրած է՝ Բ. Թաշեան, Բ. Թ., Բ. Վէմ եւ Վէմունի:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Խորէն Տէտէեան, «Դիմաստուերներ. Բենիամին Թաշեան», *Սփիւռք*, շաբաթաթերթ, Պէյրութ, 18 Հոկտեմբեր 1962, Դ. տարի, թիւ 41, էջ 6:

2. Բ. Թաշեան, «Մեթոտական բարեփոխումներու պահանջը արդի ուսուցման մէջ. I», *Հայ վարժարան*, մանկավարժական ամսագիր, Գահիրէ, Յուսաբեր, 1 Մայիս 1926, Ա. տարի, թիւ 3, էջ 67:

3. Գր. Պասմաճեան, «Բենիամին Թաշեան (1896-1971)», *Ջահակիր*, շաբաթաթերթ, Գահիրէ, 23 Դեկտեմբեր 1971, թիւ 408, էջ 4:

4. Անդ, էջ 3:

5. Առաջինը՝ Բ. Թաշեան, «Հարսնութիւն», *Հայ կին*, կիսամսեայ հանդէս, Կ. Պոլիս, 16 Յունուար 1921, Բ. տարի, թիւ 6, էջ 490:

6. Վերջինը՝ Բ. Թաշեան, «Ջութակի խորհուրդ», *Հայ կին*, 1 Մայիս 1923, Դ. տարի, թիւ 10, էջ 1318:

7. Բ. Թաշեան, «Յուսալքում», *Ճակատամարտ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 8 Մայիս 1921, նոր շրջան, թիւ 750-2571, էջ 1:

8. Բ. Թաշեան (թարգմ.), «Պղատոնի գեղեցկագիտութիւնը», *Ճակատամարտ*, 12 Նոյեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1218, ԺԲ. տարի, թիւ 3039, էջ 2:

9. Բ. Թաշեան, «Կարօտ», *Ճակատամարտ*, 10 Սեպտեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1164, ԺԲ. տարի, թիւ 2985, էջ 1:

10. Բ. Թաշեան, «Կացութիւնը Եգիպտոսի մէջ. Սուլտանի վերջին դէպքերը (մեր սեփական թղթակցէն)», *Ճակատամարտ*, 10 Սեպտեմբեր 1924, նոր շրջան, թիւ 1780, ԺԴ. տարի, թիւ 3610, էջ 2:

11. Բ. Թաշեան (Աթէնք, 6 Փետրուար), «Որբերը Յունաստանի մէջ. տեսակցութիւն մը Մ. Մօրիսի հետ (սեփական թղթակցութիւն»), *Ճակատամարտ*, 17 Փետրուար 1923, նոր շրջան, թիւ 1300, ԺԲ. տարի, թիւ 3130, էջ 2:

12. Բ. Թաշեան (Աթէնք, 16 Մարտ), «Դպրոցասէր Տիկնանց Վարժարանը Սելանիկի մէջ (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 5 Ապրիլ 1923, նոր շրջան, թիւ 1340, ԺԳ. տարի, թիւ 3170, էջ 2:

13. Բ. Թաշեան (Լարիսա, Յունաստան), «Իմաստասիրական դէմքեր. Զ. Էմմանուէլ Քանդ», *Հայաստանի կոչնակ*, Նիւ Եորք 24 Փետրուար 1923, ԻԳ. տարի, թիւ 8, էջ 236-237:

14. Բ. Թաշեան, «Մահուան երգեր. առ ցաւ», *Նոր շարժում*, գրական-գեղարուեստական ու գիտական, Գահիրէ, 14 Ապրիլ 1923, Ա. տարի, պրակ 5-6, էջ 79:

15. Առաջինը՝ Բ. Թաշեան, «Ճակատագիրը (նորավէպ)», *Նոր շարժում*, 18 Օգոստոս 1923, Ա. տարի, պրակ 24, էջ 361-365:

16. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 24 Յուլիս), «Երեւոյթներ՝ հայկական կեանքէ (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 7 Օգոստոս 1923, նոր շրջան, թիւ 1440, ԺԳ. տարի, թիւ 3270, էջ 2:

17. Արտաշէս Հ. Գարտաշեան, *Նիւթեր Եգիպտոսի հայոց պատմութեան համար*, Գ. հատոր, Վենետիկ, Ս. Ղազար, 1987, էջ 78:

18. Հ. Ա., *Ընթերցումներ Բենիամին Թաշեանի մանկավարժական գաղափարներուն ընդմէջէն (ծննդեան 125 եւ մահուան 50-ամեակներուն առիթով)*, *Ջահակիր*, Յաւելուած ԽԸ., Գահիրէ, 2021: